1955

LES ÉTUDES

ARMÉNIENNES EN EUROPE

([illegible] — XIX)

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԵՒ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

ՅԱՌԵՒՄՈՒՏՍ

( ԺԶ — ԺԹ ԴԱՐ )



ՎԵՆԵՏԻԿ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1895

UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

Schrumpf, Gustav A.,
1844-1892

LES ÉTUDES ARMÉNIENNES EN EUROPE

(SIÈCLES XIV—XIX)

651

Usumnasirutiwnk... 308

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԵՒ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

ՅԱՐԵՒՄՈՒՏՍ

(ԺԴ — ԺԹ ԴԱՐ)

393p.





ՎԵՆԵՏԻԿ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1895

GRAD
EREN
651
02.20-98

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Գաղղիացի հայագէտ մը, կիւստաւ Ադոլֆ Շրումպֆ (G. A. Schrumpf), իր եւ անգլիական լեզուով հրատարակուած քաղաքական ու բանասիրական լրագրի մը մէջ ի Լոնտոն (1890) սկսաւ հրատարակել *Հայկական ուսմանք յԵւրոպա* (Les Etudes Arméniennes en Europe) կոչուած շար մը յօդուածներու։ Փափաքելով մեր ընթերցողաց ծանօթացընել զայն, փութացինք թարգմանել, եւ հետզհետէ հրատարակել *Բազմավէպ* հանդիսարանին մէջ։ Չէինք տարակուսեր որ ազգայնոց հաճոյ պիտի ըլլային այն տեղեկութիւնք թէ՛ եւրոպացի հայերէնագիտաց եւ թէ իրենց գրուածոց. եւ իրականութիւնն այլ նոյնը հաստատեց. զի մերինէն զատ ի նմին ժամանակի սկսաւ հրատարակուիլ ուրիշ թարգմանութիւն մ'ալ ի Տփխիս, արեւելեան գաւառաբարբառով։

Մեզի երեւցաւ թէ ինչպէս տեղ տեղ զեղչելու կարօտութիւն ունէին այն յօդուածներն, երբեմն ալ ուղղութեանց, զոր ջանացինք ընել. սանկ ալ հարկ էր գործոյն ամբողջութեան կատարելագոյն կերպարանք տալու համար, աւելցընել ինչ ինչ, որ հեղինակն չէր ուզած կամ կրցած ընել։ Ասով իր գրուածք առանձինն հրատարակուած ատեն՝ թերեւս նոր կերպարանք մը առած երեւնայ՝ մեր կողմանէ դրուած այլեւայլ յաւելուածներով, որոց նպատակն՝ ինչպէս ըսինք, ուրիշ բան չէ՝ բայց աւելի կերպով ծանօթացընել մերոց՝ արեւմտեայց կամ իրենց այլեւայլ լեզուներով եղած

ուսումնասիրութիւնքը մեր լեզուին, պատմութեան ու մատենագրութեան նկատմամբ։ Այս էր նաեւ Տրումպֆի փափաքը, եւ ազնուութեամբ յայտնած էր մեզ իր գոհութիւնը։

Քառասունեւութ տարուան մեռաւ նա ի Լոնտրա, (1892 ի 16 դեկտ)։ Ծնած յՕպէրհաւսպէրկէն, մերձ ի Ստրասպուրգ, (1844, փետր. 8), նշանաւոր եւ բազմալեզու բանասիրի անուն ստացաւ։ Երեսուն տարի պարապելով յԱնգղիա՝ մայրենի լեզուին ուսուցչութեամբ՝ կը վարժապետէր ապա յ'University College School, զգաղղիական, գերման եւ սպաներէն լեզուս. անդամ ազգային (գաղղիացի) ուսուցչաց ընկերութեան յԱնգղիա, ու բանասիրական եւ արքունի Ասիական ընկերութեանց։ Կենացը վերջին երեք տարիներուն մեծ ջանքով եռեւէ եղաւ հայերէնի ուսման՝ հմուտ ազգայնոյ մը առաջնորդութեամբ անոր պարապելով. Լաւ ըմբռնած էր հին լեզուի ոգին, եւ տեղեակ նորոյն բազմաթիւ գաւառաբարբառներուն։ Բանասիրական ընկերութեան եւ Արեւելագիտաց ժողովոյն մէջ ի Լոնտրա՝ բազմահմուտ բանախօսութիւններ ըրած է հայ լեզուի կազմութեան եւ հանգամանաց վրայ, որոց նկատմամբ ազգային լրագիրք եւ հանդէսք խօսած են գովութեամբ։ Համառօտ գրուածքս ալ զոր կը հրատարակեմք, վկայութիւն եւ յայտնի հաւաստիք մ'է իր ընդարձակ հմտութեանը։

Ընթերցողը պիտի տեսնէ թէ մեր ըրած յաւելուածներուն մէջ շատ տեղ օգտուած ենք՝ հմտագունից նախընթաց ու արդէն տպագրութեամբ հրատարակուած երկասիրութիւններէն։

Հ. Գ. Զ.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

---



ԱՅԱԳԻՏՈՒԹԻՒՆՆ, կամ հայկական լեզուի, պատմութեան և մատենագրութեան ուսումնասիրութիւնն յարեւմուտս, երեք ժամանակաց՝ կամ ինչպէս սովորութիւն եղած է անուանել, պարագայից՝ կրնանք բաժնել։

Ա. Դիւանագիտական, երբ արեւմտեան ազգք և ժողովուրդք, ընդհանրապէս արեւելքի, և մանաւորաբար մեր աշխարհին հետ ունեցած յարաբերութեանց պատճառաւ սկսան ծանօթանալ Հայաստանի, և անոր բնակչաց, պատմութեանը, աշխարհագրութեան և լեզուին։

Բ. Երբ այն առթով, և նախ մեր Թագաւորաց ոմանց խնդրանօք՝ սկսան արեւմտեան հոգևորականք մուտ գտնել ի մեր աշխարհ, և հմտանալով մեր լեզուին՝ աշխատիլ կրօնական և բանասիրական տեսակէտով։

Գ. Ուսումնական, որպիսի հայկական հետազօտութիւնք սկսած են մեզմէ երկու և աւելի դար յառաջ, և որ ինչուան հիմայ կը շարունակուին գովելի ջանիւք և բազմաջան արգասեօք, մանաւանդ ներկայ՝ և իրեն շրջանը արդէն աւարտելու վրայ եղող դարուս մէջ, գրեթէ ամէն եւրոպական ազգերէ գիտուն հայագէտներ մեզի ընծայելով։

Համառօտ գլուխ մը ընծայենք նախ դիւանական տեսակէտով եղած փոխադարձ յարաբերութեանց և ուսումնասիրութեանց, երկու խօսքով յիշելով Օթէոնի

գրչագիրը, զոր վերջերս տպագրութեամբ ծանօթացոյց մեզ Գարրիէր, ուսուցիչ հայ լեզուի ի դպրոցի արեւելեան կենդանի լեզուաց ի Փարիզ։

***

Գաղղիոյ Օթէօն (Autun) քաղաքին եկեղեցական մեծ դպրանոցին մատենադարանին մէջ՝ որբոյն Հերոնիմեայ Թղթոց լատինական գրչագիր օրինակ մը կայ (Թիւ 17 A) կարոլինեան ամենընտիր մանրագրով ի վերջ իններորդ կամ ի սկիզբն տասներորդ դարու գրուած։ Պ. Հ. Օմոն (Omont), Փարիզու ազգային մատենադարանին պաշտօնակալ, և հնագրական արուեստի քաջածանօթ, այս թուականն ստոյգ կը համարի։ Ի վերջ գրչագրին (Թերթ 156), մի և նոյն գրչի ձեռքով յաւելուած կը գտնենք երկար ցուցակ մը իննսուն լատին բառից, իրենց համանիշ հայկական բառերով, և արեւմտեան տառիւք, զորս Օմոն տպագրութեամբ հրատարակեց Մատենադարան հրովարտակաց դպրոցի կոչուած գրոց մէջ (1882, յէջս 563–564)։ Այս հետաքննական յիշատակարան՝ գրեթէ անծանօթ մնացած բոլորովին ուրիշ նպատակ ունեցող հաւաքման մը մէջ, ոչ ըք ի բանասիրաց՝ որչափ մեզ յայտնի է, ետևէ չէր եղած անոր շահեկանութեամբը զբաղիլ և յայտնել բանասիրութեան ինչ որ ի նմա հետաքննելի կրնար համարուիլ։ Ուստի Գարրիէր հարկ սեպեց նորոգ հրատարակութեամբ օգտակար ծառայութիւն մը մատուցանել հայկական լեզուի ուսումնասիրութեամբ պարապողաց։

Որպիսի ալ ըլլայ գիտական արժէք այս փոքրիկ բառգրոց, միշտ մեծարելի և պատուական կը մնայ իր հնութեամբն. վասն զի չենք կարծեր թէ ասկէ աւելի հնագոյն յիշատակ և հաւաստիք մը գտնուի հայ լեզուի ծանօթութեան յարեւմուտս։ Անկէ ետքը հարկ է իջնել մինչև յառաջին ամս չորեքտասաներորդ դարու (1322),

որպէս զի կարող ըլլանք գտնել հայ լեզուի ուսումնասիրութիւն յարքունիս քահանայապետաց յԱւենիոն, ի ձեռն պատգամաւորաց Լեւոն Ե Թագաւորի։

⁂

Կարեւոր կը համարինք քանի մը դիտողութիւններ ընել բառագրոցս յօրինման, և նախ թուականին վրայ յորում գրուած է, և երկրորդ՝ թէ ինչ ոճով և կերպով է յօրինումը։

Գրչագիրն, ինչպէս կանխեցինք ըսել, իններորդ դարուն վերջին կամ տասներորդին սկզբանը կը պատկանի, այսինքն՝ այն ժամանակին յորում Յովհաննէս Զ Հայրապետ Պատմաբան՝ կը գրէր իր Հայոց պատմութիւնը, և Բագրատունի Նահատակ Թագաւոր Սմբատ Ա կը կռուէր փառօք ընդդէմ արշաւանաց թշնամեաց և նախանձու իր հպատակաց։ Բայց այս բառգիրք՝ եթէ չէ և չիկրնար ըլլալ նորագոյն գրչութիւն մը քան զգրչագիրն որ զայն հասուցած է առ մեզ, արգելք մը չկայ որ քան զնոյն հնագոյն ըլլայ։ Հաւանական չիթուիր ոմանց որ ինքն ընդօրինակողն անձամբ հաւաքած և կարգի դրած ըլլայ հայկական բառերն՝ գրքին մէջ պարապ մնացած քանի մը էջ լեցընելու համար. այլ անշուշտ պատրաստ պիտի գտած ըլլայ, և առանձինն ընդօրինակուած կամ անջատ թերթի մը վրայ և կամ ի վերջ գրչագրի մը. որով դժուարին կ'ըլլայ այս բառգրոց յօրինման՝ ճիշդ թուական մը որոշել, այլ այնչափ միայն թէ յառաջ է քան զսկզբնաւորութիւն տասներորդ դարու։

Կը մնայ գիտնալ թէ ինչպէս խմբագրողն կրցեր է ճանչնալ և գրի վրայ առնուլ այդչափ թուով հայկական բառեր։ — Մեզի կ'երևայ, կ'ըսէ Գարրիէր, թէ պատասխանն՝ տարակուսական չէ կարող ըլլալ. նոյն իսկ վեր ի վերոյ քննութիւն մը այդ համառօտ գրուա-

ծին կ՚ապացուցանէ թէ հեղինակին ծանօթ չէր այն լեզուն՝ որոյ վրայ տեսութիւն կամ ակնարկ մը միայն ուզեր է ընել։ Զի ոչ լոկ յաճախակի և անօգուտ կերպով կը գործածէ բառից յոգնակին՝ լատին եզականին դիմաց, այլ շատ անգամ կը վրիպի նաև ի նշանակութեան հայ բառից։ Այսպէս homo (մարդ) թարգմանուած է անձն․ brachium (բազուկ) ձեռն․ manus (ձեռք) ոտք, սիրտ թարգմանուած է pectus և latus․ անդամ՝ renes և coxa. տաճար՝ համանշանակ ենթադրած է ecclesia բառին․ պատարագ կը նշանակէ զոհ (sacrificium) և ոչ խորան, ինչպէս գրիչն կը համարի։ Այս ամէն վրիպակաց պատճառը փնտռելով, — կ՚ըսէ դարձեալ հրատարակողն, — տեսանք որ ուր որ բառ մը կայ որոյ նշանակութիւնը դիւրին է և որոշ և չէ մարթ շփոթել ուրիշ բառի հետ, թարգմանութիւնը ճիշդ է։ Նոյնը չենք գտներ այն բառից նկատմամբ որ մարմնոյ ներքին մասունքը կը նշանակեն, կամ այնպիսիք՝ որ ճիշդ և սահմանափակ նշանակութիւն մը չունենալով, կրնան շփոթիլ ուրիշ մերձաւոր բառից հետ․ այն ատեն ճիշդ թարգմանութիւնը գրեթէ բացառութիւն մ՚է։ Այս դիտողութիւն դիւրաւ կը համոզէ զմեզ որ գրուածքիս հեղինակն անտեղեակ էր հայկական լեզուի, և հայազգւոյ մը տուն տալովը գրած է այս բառերը, որ դիմացը եղող օտարին լաւ հասկընալի ընելու համար՝ ատարկաները կը ցուցընէր, և անունն կ՚ուզէր սորվիլ իրմէ․ սակէ յառաջ եկած են այն ամենայն վրիպակք զոր նշանակեցինք։

Արտասանականին այլ և այլ մանաւորութեանց նկատմամբ որ բառգրոցս մէջ գործածուած ուղղագրութենէն կրնան յառաջագայիլ, փնտռելով թէ ո՛ր գաւառական լեզուին կրնան պատշաճիլ, եթէ ձեռնհաս՝ մանաւանդ ազգային գիտնականէ մը ըլլուին այդ ուսումնասիրութիւնք, շատ հետաքննական կրնան ըլլալ հայ լեզուի համար։

*Մենք կրկին առիթ պիտի ունենանք դառնալ այս գրուածքիս [1], Գարրիէրի և իր երկասիրութեանց վրայ մատենկանս ընթացքին մէջ խօսած ատեն։*

## ԴԻՒԱՆԱԳԻՏԱԿԱՆՔ

*Մեր լեզուի և մատենագրութեան ուսումնասիրութիւն, թէպէտև երկու իրեք դարերէ ի վեր առանձին մտադրութեան և բանասիրական հմուտ քննադատութեանց և հետազօտութեան նիւթ և նպատակ եղած է արևմտեան գիտնոց, բայց իրաւամբ նախամեծար սեպուած է միշտ, մանաւանդ աչքի բերան, իր պատմական բազմակողմանի տեսակէտով։*

*Թէպէտ Աստուածաշունչ գրոց ընտիր թարգմանութիւն, զոր հինգերորդ դարու բազմերախտ նախնիք մեզի ընծայեցին, և յասորւոյն և ի յունականէ բազմաթիւ փոխադրութիւնք՝ օտար չեն նոր ուսումնասիրութեանց գրգիռ և ճարակ ըլլալէն, բայց անոնց գլխաւոր շարժառիթն, ինչպէս հետզհետէ և շարունակաբար պիտի տեսնենք, պատմութիւնն եղած է։*

*Ասոր պատճառը՝ ոչ լոկ այն գրուածոց ներքին արժէքն և հետաքննական ըլլալն է, — թէպէտև առանց կարող ըլլալու իբրև մատենագրութիւն, հաւասարիլ և մրցիլ յոյն և լատին նմանօրինակ դասական երկասիրութեանց, — այլ մանաւանդ անով որ ընդհանուր պատմական ծանօթութեանց և ուսմանց ամբողջութեան մեծ և կարևոր ծառայութիւն մը մատուցանելու սահմանուած են, շատ տեղուանք ոչ աննշան՝ և եւրոպացի գիտնոց բոլորովին անծանօթ պարապներ լեցնելով. և*

1. Un ancien Glossaire Latin—Arménien, publié et annoté par A. Carrière, professeur à l' Ecole des langues orientales vivantes. Paris, 1886.

աւելի յաճախագոյն՝ լոյս սփռելով ուր ընդ աղօտ կամ դեռ եւս մութ է պատմութիւն արեւելից։

« Հայկական ուսմունք, — կը վկայէ անոնցմէ մին, և ի մերձաւորաց մեզ ժամանակաւ, Տիւլորիէ, որ ամենէն աւելի բազմարդիւն վաստակաւորներէն մէկն եղաւ՝ Հայոց լեզուն, մատենագրութիւնն և պատմութիւն հիմնական գիտութեամբ ու չաճագրգիռ գրուածներով Եւրոպիոյ ծանօթացընողաց մէջ, — պատմական ու բանասիրական ուսմանց համար՝ հարուստ ու արգասալիր բովք մը կը բանան. ու արդէն եղած գիւտերը գուշակել կուտան՝ ինչ որ ապագայն մեզի համար կը պահէ։ Իր մատենագրութիւնը, ինչպէս կը նկատենք այն յիշատակարաններէն որովք ճոխացեալ է, անդատին իր երևման առաջին շրջանէն՝ քրիստոնէութեան ազդեցութեան տակ բարգաւաճած է, տոգորուելով կամ իր ազդեցութիւնն ընդունելով ի յունական գաղափարաց որով կամաց կամաց խառնուեցան արեւելեան վարդապետութեան մը հետ։ Կը յառաջագայի կամ կը բղխի աւելի յուսումնական և յիրական ոգւոյ քան յերեւակայութենէ, և անով տուած է գիտնական աշխարհի բազմաթիւ պատմագիրս և ժամանակագիրս, որք դարէ դար իրարու յաջորդելով՝ ճշմարիտ ոսկեղէն շղթայ մը կը կազմեն, որոյ առաջին օղակքը՝ չորրորդ դարուն վերաբերելով, կը տեւեն բովանդակ միջին դարը, և շարունակաբար կը հասնին մինչև առ մեզ »։

Կ'արժէր ուրեմն այսպիսի ազգ, լեզու և մատենագրութիւն մը ուսումնասիրել՝ թէ ե՛րբ կամ ինչ առթով սկզբնաւորութիւնն եղած է այդ հետաքօտութեանց, և ո՛րչափ կամ որպիսի՛ անոնց յառաջադիմութեան չափը. աՀաւասիկ ինչ որ հետաքննելին է մեզ։

Արեւմտից մէջ մեր մատենագրութեան ծանօթութենէն յառաջ է հայ ազգին լեզուին և ժողովրդեան ծանօթութիւնը։ Թողլով հին ժամանակներն, ու իջնելով մինչև ի միջին անուանեալ դարս, խաչակիր զինուորու-

թեանց արշաւանաց առթով կը տեսնենք որ ծովերով ու ընդարձակ սահմաններով իրարմէ զատուած և հեռաւոր՝ արեւմտեան և արեւելեան ժողովուրդք իրարու կը մօտենան, գիրար աւելի կը ճանչնան, ու անով սկիզբն կ'ըլլայ մէջերնին յարաբերութեանց։

Պետրոս անապատական, անուանի իր խստակրօն վարքով, բայց մանաւանդ հրապուրիչ և համոզիչ լեզուով, մեծ գումարման մը մէջ ի Փուաթիէ Գաղղիոյ, առաջի բազմախուռն և եռանդուն ժողովրդեան, կը բարձրացընէ Յիսուսի խաչը, և մարդկային ազգի փրկագործութեան այդ երկրպագելի նշանը՝ խրախոյս և ստոյգ առհաւատչեայ յաղթութեան կ՚ ցուցընէ անոնց որ յօժարակամ և յօժարափոյթ յանձնառու կ'ըլլան մասնակցելու սուրբ երկրին ազատութեան գործոյն։

Առաջին խաչակրութիւնն էր այդ։

* * *

Նմանօրինակ և նմանավառ եռանդն, ինչպէս քաջածանօթ է, այլ և այլ անգամ նորոգուեցաւ ու արծարծեցաւ քրիստոնեայ արեւմտից մէջ. և թագաւորք և իշխանք՝ բազմախուռն բանակաց և արիագունդ կամաւոր նահատակաց գլուխ անցած, մոռնալով իրենց դիւրութիւնն ու հանգիստ, վայելք ու արքունական փառք, խաչակրօնք և խաչանիշք ցամաքաց և ծովերու ընդարձակութիւնն կը կտրէին կ'անցնէին՝ տարերաց բռնութիւնն ու վտանգք արհամարհելով, ու բոլորանուէրք՝ իրենց արեան գնովը կը դիմէին ի փրկութիւն այն աստուածընկալ գերեզմանին, ուր Անմահի մը կամաւոր մահուամբ՝ նորոգատուր կենաց և յարութեան լոյս և յոյս տուեցաւ։

Առաջին և երկրորդ խաչակրութեանց յաջորդեց նաև երրորդ արշաւանք մ'ալ։

Կղեմէս Գ. քահանայապետ Հռովմայ, և մեծանուն և

մեծազօր Փրեդրիկ Շիկամորուս (Պարպարոսա) կայսր Ալամանաց՝ կը միաբանէին նոր պատրաստութեամբ և ուժով կրկին ձեռք զարնել այդ պատերազմին. մին իբր քաջալերիչ և ընդ ամենայն քրիստոնեայ աշխարհ լսելի ձայնովը ու յաստուածակոյս խօսմանց շնորհիւ, և միւսը՝ զինուցը ահարեկիչ ուժով ու պատերազմափորձ արիութեամբ։

Ամէն կողմանէ կը փութային գալ խառնուիլ և միաբանիլ այն բանակին հետ, ու ամենուն զարմացմամբ և պակուցողական սարսափմամբ յառաջ խաղալ դէպ իրենց նպատակը։ Հայաստան ալ կը փութայր իր կողմանէ պարտուպատշաճ մեծարանքն, ու կարևոր սեպուած ու խնդրուած ատեն նաև օգնական ձեռքն կարկառել ասպետական մեծանձն արիութեամբ այն հեռաստան եկուորաց, որոց բարեպաշտ արշաւանաց վախճանին մէջ իր դեղևեալ և յամենուստ վտանգի մէջ եղող ինքնավարութեան հաստատութիւնն ու յաջողութիւնը կը յուսար տեսնել և յերկար վայելել։

Զվրիպեցաւ գէթ մասամբ՝ իրեն այդ քաղաքագիտական տեսութեան մէջ։ —

Այդ մերձաւոր և անմիջական յարաբերութեամբք՝ ծանօթ, բարեկամ և դաշնակից կ՚ըլլային մերքն եւրոպական պետութեանց և ժողովրդոց. Որք և երախտապարտք այդչափ մտերիմ և անկեղծաւոր սիրոյ, անոնցմէ ընդունած բարեաց յիշատակը հետերնին կը փոխադրէին մինչև յարևմուտս. և իրենց ձեռք բերած յաջողութեանց կամ կրած ձախող արկածից մէջ չէին ուզեր անտեսել կամ մոռնալ այն ազգը, որ քրիստոնէական կրօնից ամուր պատուար մ՚էր յարևելս, ուր օր ըստ օրէ աւելի զգալի կ՚ըլլար բիւզանդական յոյն կայսերութեան մերձաւոր անկման իրաւացի կասկածը։ Այս վախճանաւ ոչ միայն կիլիկեան սահմանաց նաւահանգստից մէջ իրենց կայանի տեղ և ոյժ կը փնտռէին, այլ և Հայոց ազատ և անարգել մուտ կը բանային

արեւմտից զանազան շահաստան-քաղաքաց մէջ, և ինչուան արքայական թագ ու գաւազան կը շնորհէին անոնց։

Հայկական ծանօթութեան, կամ մանաւանդ հայագիտութեան սկզբնաւորութիւն յարեւմուտս՝ կրնանք ըսել թէ դիւանագիտութեամբ եղաւ։



Փոխադարձական էր այս ծանօթութիւնը։

Տոհմային քաղաքական, եկեղեցական ու գրականութեան հին պատմութենէ գիտենք թէ մերայինք միշտ հետամուտ և փութաջան եղած են իրենց մերձաւոր և դրացի ազգաց լեզուին ուսմանը։ Պարսիկ, յոյն, ասորի և արաբ լեզուք յաջորդաբար ունեցած են իրենց դարաւոր գործածութիւնն և ազդեցութիւնը։ Խաչակրաց արշաւանք և ծանօթութիւնն կ'ընդելացընեն զմերսն և արեւմտեան ազգաց և ժողովրդոց լեզուին, լատինականին մանաւանդ և փրանկականին, որով ոչ միայն արքունի սովորոյթք, օրէնք և հրահանգք, այլ և լեզուի գիտութիւնն ու սովորութիւն մուտ կը գտնէ. և երբեմն նաև թարգմանութիւնք այն լեզուներէ։ Եւ ինչպէս մերքն արեւմտականաց, իրենք ալ կը սկսին սովրիլ և գործածել մեր լեզուն։

Ռուբինեանց պատմութիւն կեցած է ի հաւաստիս մեր խօսքին ստուգութեան։

Դեռ նոր յայտնուած ու հայ թարգմանութեամբ ալ ծանօթ, Դարդէլ գաղղիացւոյն պատմական գրոց մէջ կ'ընթեռնունք թէ Գուի Լուսինեան թագաւոր՝ կ'առաջարկէ Հայոց որ արեւմտեան ազգաց մտադրութիւնն և համակրանք իրենց վրայ հրաւիրելու նպատակաւ՝ պատգամաւորներ ղրկեն ի Հռովմ՝ վիճակնին ու քաղաքական դիրքը լաւ եւս հասկըցընելու համար. «Յայնժամ, կ'ըսէ պատմիչն, հրաման ետ արքայ և կաթողիկոսն և եպիսկոպոսունք և իշխանք աշխարհին զի մի ոմն եպիսկոպոս

կրօնաւոր, հմուտ գրոց և ճարտար ի դպրութեան անդ նոցա (Հայոց), որոյ անուն կոչէր Եղբայր Յովհաննէս Կորագեցի, և ապետք երկու առաքեցին առ պապն ընդ Դանիելի քահանայի»:

Դարձեալ յ'էջ 76 նոյն գրոց. «Փութացաւ Լեւոն իշխան և գնաց յապարանս արքայի. և եգիտ զի դեռ այն ինչ հասեալ էր սուրհանդակ ի Նէապոլսոյ, Մանուկ անուն, որոյ էր սերունդ ի վերին Հայոց, և գիտէր քաջ խօսիլ զհայ և զնէապոլսական լեզուս»:

Նմանապէս Լեւոն թագաւորի զինակրին համար կ'ըսուի (յ'էջ 78) թէ «գիտէ քաջ զհայ լեզուն՝ և որ խորհրդակից լիցի քեզ»:

## ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆՔ

Երեքտասաներորդ դարուն սկիզբը, Ռուբինեան թագաւորութեան վերականգնման ատեն, երկու կրօնաւորական կարգք հաստատեցան յարեւմուտս, Փրանչեսկեանք և Դոմինիկեանք կոչեցեալք յանուանէ իրենց հիմնադիր նախահարց. և մինչ առաջինքն պարտք և օրէնք ունէին՝ ի Քրիստոսէ երանեալ աղքատութեամբ և խոնարհութեամբ հետեւիլ աստուածուսոյց առաջնորդին, Դոմինիկեանք մասնաւոր պարտք մ'ալ վրանին առած էին, քարոզութեան բանին կենաց առ հաւատացեալս և անհաւատս. ուստի և առանձինն Քարոզիչք կոչուած: Փրանկիսկեանց հեղինակին հոգեկեցոյց վարքն և եռանդ՝ սքանչացուցին զաշխարհ, նախ զԵւրոպա՝ և ապա զԱսիա, յորս առաջին՝ թերեւս և միակ գտուեցան մերքն: Վասն զի Կիլիկիոյ տան թագաւորութիւն երբ դեռ նոր կը բարգաւաճէր, և զարեւմտեայս առ ինքն կը ձգէր՝ ոչ միայն իրեն մերձաւոր Ասորւոց երկրին և Պաղեստինոյ լատինական տէրութեանց, այլ և բնիկ Եւրոպիոյ.

և թէպէտ գլխաւոր պատճառ մը խաչակիր զօրաց անցքը կրնար համարուիլ, և ի մեծ շահաստանն Այասոյ յաճախող արևմտից վաճառականաց բազմութիւնը, որ մեր ազգին ճարտարութեամբ գրեթէ առաջին վաճառատեղի մը դարձեր էր բովանդակ աշխարհի, որով ամենայն եւրոպական պետութիւնք առևտրոյ դաշինք կը կռէին մերայնոց հետ, այլ նաև վասն անցից և գնացից իրենց դեսպանացը Մեծ և Փոքր Հայոց երկիրներէն՝ երթալով առ ղանս Թաթարաց, որք դիւրալուրք քրիստոնական կրօնից հաւանութեան և ընդունելութեան, բանակցութիւնք կ'ընէին ընդ քահանայապետաց Հռովմայ. և սոքա յօժարք ի նիզակակցութիւնն քրիստոնեայ թագաւորութեանց: Այսպիսի մեծ գործոյ մը միջնորդք՝ յիշեալ երկու կարգաց միանձունքը կարծես թէ սահմանուած էին, որք ոչ միայն ոչ լքրև քարոզիչք ղրկուեցան այն կողմերը՝ այլ և առաջին դեսպանք քահանայապետին և արևմտեան թագաւորաց: Որոց երախտապարտ է Եւրոպա նաև այն կարևոր ծանօթութեանց համար՝ զոր այդ հեռաւոր աշխարհաց վրայ տուին, որ կամ բոլորովին իրեն անծանօթք էին՝ կամ խիստ աղաւաղ տեղեկութեամբք. ուստի և մեծ յարգով ընդունեցաւ, և դեռ ես կ'ախորժի քննել և պարապիլ այն առաջին քարոզիչ դեսպանաց գրութեամբք, Բլանգարբենի՝ Րուպրիքի և Նմանեաց. որք մեր երկրէն ալ անցնելով՝ ծանօթացան և ծանօթացուցին. մանաւանդ Րուպրիք՝ որ ի 1254 յամսեան փետրուարի Անի քաղաքին մէջ էր, ու կը տեսնէր անոր հարիւր եկեղեցիքը, և քանի մը ամսէն յարքունիս Կիլիկիոյ կը տեսնէր արքայահօր Կոստանդնի ուրախական հանդէսներն՝ երբ իրենց Հեթում թագաւորին յաջողակ ճանապարհորդութեան լուրն առին և Թաթարաց ղանին քով գտած մեծ ընդունելութիւն:

Դոմինիկեանցմէ ետքը Փրանկիսկեանք ժամանեցին. ճանչցան մերայնոց ուշիմութիւնն և ընտելասէր բնութիւնը. ինչպէս փոխադարձաբար մեր իշխանք ալ անոնց հըմ-

տութիւնն և շատ բանի մէջ առաւելութիւնը քան զմերսն. ուստի ոչ միայն յօժարութեամբ կ'ընդունէին՝ այլ նաև իրենց արքունեաց մէջ անոնց բնակութիւն կուտային. ինչուան թագաւորք և թագուհիք ոմանք ետեւէ եղան որ անմեկին քովերնին մնան հաստատ բնակութեամբ. հետերնին լատին և փռանկ լեզուով խօսիլ կը սիրէին, ինչպէս նոքա ի կրթանս և ի հրահանգս հայ լեզուի:

Դարձեալ Ռուբինեան թագաւորութեան հաստատութենէն մինչեւ ցբարձումն, անընդհատ թղթակցութիւնք կ'ըլլային Հռովմայ քահանայապետաց ու մեր թագաւորաց ու կաթողիկոսաց մէջ, և թղթաբերքն շատ անգամ այդ կրօնաւորք կ'ըլլային: Եւ այս յառաջ քան զկէս երեքտասան դարու, Հեթմոյ ու անոր դշխոյի Զապելի ժամանակ. որոյ խնդրանօք, կ'ըսեն, Դոմինիկեանց ի Տրեւիր փռանկաց գումարած ժողովոյն մէջ (1265) սահմանեցին վանք մը հաստատել ի Հայաստան. Նոյն որոշմունքն ըրին ի Վենետիկ և ի Փերրինեան ժողովոց մէջ: Փրանկիսկեանց համար ալ կ'ըսուի որ չորեքտասաներորդ դարու մէջ իրենց ուխտին վանք մը հաստատած ըլլան Երզնկա (1314): Լատինաց և իրենց ի Հայաստան հաստատուելուն բնական հետեւանք էր որ նաեւ ոմանք ի Հայոց իրենց կրօնին մէջ մուտ գործէին թէ իրենց և թէ անոնց հայրենեաց մէջ յարեւմուտս:

Ոչ անծանօթ է և նորանշան անցք Հեթմոյ Բ, որ Փրանկիսկեան ուխտ մտնելով (1293), աւելի քան յաղգայնոցն՝ ի համակրօնից օտարաց պատուեցաւ Երանէլ մակդիրով. 1313 ին կը յիշուի և հայ Դոմինիկեան մը Գուիտոն անուամբ ի Պոլոնիա, և իբրեւ զգօն մէկը՝ պատգամաւորութեամբ ղրկուեցաւ ի Սիկիլիա՝ թագաւորին սիրտը շահելու:

Արեւելեայց հետ այս հաղորդակցութիւնը շատ աճեցոյց Յովհաննէս ԻԲ քահանայապետ, որոյ հարիւրէն աւելի թուղթերը կան առ թագաւորս և եկեղեցական առաջնորդս ազգիս: Որ և շատ քարոզիչներ ալ ղրկեց,

և մանաւոր Թեմ և Վիճակ ալ տուաւ՝ մեզմէ արդէն յիշատակուած երկու կրօնաւորական ուխտից (1318)· Փրանկիսկեանց՝ Հիւսիսակողմը, իսկ Հարաւելակողմանս Դոմինիկեանց. որոց և Պարսից Սուլտանիա քաղաքին մէջ արքեպիսկոպոսական աթոռ մը շնորհեց, անոր իշխանութեան տակ դնելով ուրիշ վեց եպիսկոպոսական աթոռ. և ընծայական թղթով մը առ Օշին Թագաւոր ղրկելով, կը խնդրէր դիւրացընել ճամբանին, ազգայնոցն ալ յանձնարարելով. ի նմին ժամանակի Թագաւորին և Թագուհւոյն ալ՝ իրենց խնդրանաց համեմատ, քանի մի անձինք յուխտէ նոցին Քարոզչաց: Ոմանք կը կարծեն թէ ասոնց հետ ղրկուած ըլլայ նաև Բարթողիմէոս Փոքր (Պըզդիկ, Parvus), Պոլոնիացի, հռչականուն գիտութեամբ և սրբութեամբ վարուց: Ատրպատականի Մարաղա քաղաքին եպիսկոպոս ձեռնադրեցաւ սա, և հետն իր կարգակիցներէն երկու անձինք առնըլով, հաստատեց աթոռը: Սրբութեան և գիտութեան մեծ համբաւը հռչակուելով, Յովհաննէս Երզնկացի, երեքտասաներորդ դարու մեր մեծ և զգօն մատենագիրը, իր քովը եկաւ. և իրարու փոխադարձ օգնականութիւն ընելով, սրբոյ Ակուինացւոյն Եօթն Խորհրդոց գիրքը թարգմանեցին ի հայ: Նոյն համբաւէն շարժելով նաև անուանի վարդապետն Եսայի Նչեցի, ղրկեց առ նա զՅովհան վարդապետ Քռնացի, որ ի 1328 գնաց ի Սուլտանիա՝ Յակոբ անուն հայրենակից վարդապետի մը հետ. և այնպէս կապուեցան հետը որ չուզեցին ետ դառնալ, ու տարի և կէս հետը կենալով սորվեցան լատին լեզուն, և Բարթուղիմեայ ու իրենց ընկերաց՝ հայ լեզուն սորվեցուցին, և Պետրոս Արագոնացի՝ անոնցմէ մէկը, սպանիացի ազգաւ, այնչափ յառաջադիմութիւն ըրաւ որ Յակոբ Թարգման կոչուած վարդապետին հետ այլև այլ թարգմանութիւններ ըրաւ ի լատինէ ի հայ: Յետոյ զԲարթուղիմէոս եպիսկոպոս հետերնին բերին ի Քռնա, մեծ պատուով և ընդունելութեամբ: Այն ատեն և այսպիսի առթով՝ խոր-

հեցան ըստ արեւմտեան միանձնական կարգաց՝ Միաբա-նող Եղբարց հայազգեաց ուխտ կամ միաբանութիւն մը հաստատել, որոց նպատակն ու դիտումը իրենց անունը և գործը կը յայտնէր։

Նախիջեւանի գաւառին առաջին եպիսկոպոսաց մէջ կը յիշատակուի՝ Մարտինոս անուն Տէքիարի, հաւանականաբար խալացի, որ ի 1419, յետ մահուն Մխիթարայ հայազգւոյ, անոր յաջորդ դրուեցաւ, որ Միաբանողաց քով կրօնաւորեալ, սորվեցաւ նաեւ դհայ լեզուն, և քահանայապետական կոնդակին մէջ գովութեամբ կը յիշուի լաւ կերպով խմանալը զնոյն լեզու և խօսիլը (Armenia fidelibus, quorum idioma bene intelligis et intelligibiliter loqueris)։ Կը յիշուի և Յովհէփ անուն Դոմինիկեան լատին վարդապետ մը, որ թերեւս ի վեր անդր յիշուած թարգմանիչն է սրբոյ Ակուինացւոյն գրոց, որ իրենց ուխտին ընդհանուր կարգապետին կողմանէ այցելու ղրկուեցաւ Միաբանողաց ի Նախիջեւան և ի Սուլտանիա (1422)։ — Կը յիշուի նաեւ Պօղոս Ջիտադինի պոլոնիացի, զոր Պօղոս Ե քահանայապետ (1615) դեսպանութեամբ առաքեց առ Շահ Աբաս արքայ Պարսից. որ փառօք ու պատուով կատարելով իրեն յանձնուած պաշտօնը, երկու գրքոյկ ալ շարադրեց Միաբանողաց գաւառին ուղղափառաց համար. Քրիստոնէական Կատարելութեան մը և Սուրբ Հաղորդութեան խորհրդոյն և Վարդարանի աղօթից, զոր ինքն եղաւ Հայոց մէջ խօթող, օգուտներուն վրայ։ — Գրիգոր ԺԵ քահանայապետ՝ Դոմինիկեանց կարգապետին խնդրանաց համեմատ Նախիջեւանայ վիճակին մէջ դպրոցի մը հաստատութեան հաճութիւն տուաւ, հանդերձ դրամական օժանդակութեամբ. և այս վախճանիս համար՝ Մինուերայի վանքէն գիտնական անձ մը, Գրիգոր Ուրսինոյ, ղրկուեցաւ, բայց ճամբան յելուզակաց ձեռքն իյնալով, ձեռնարկն ալ չյաջողեցաւ, զոր իմէ եաքը այլք ալ ուզեցին փորձել առանց իրենց նպատակին հասնելու. մինչեւ որ Միաբա-

*նոցաց մին կրցաւ յաջողիլ, Հաւատոյ ժողովոյն նպաստիւքը։*

⁂

*Աւգոստինեայ Բակենց հայազգի Միաբանողի հմտութիւնն և արեւմտեայց հետ ծանօթութիւն և երկարատեւ եպիսկոպոսութիւն* (1627–1653) *նոյն վիճակին վրայ, մեծապէս բարգաւաճ ըրին զայն, առ որ սատար եղաւ և յԱպարաներ հաստատուած վարժարանը, և յԻտալիոյ հոն վարժապետելու համար ղրկուած հմուտ ուսուցիչք. որոց մէջ նշանաւորք են Պօղոս Փիրոմալլի՝ յուխտէ Քարոզողաց, և Կլեմէս Գալանոս ի Թէադինեանց։ Առանցմէ առաջինը՝ Կալաբրիոյ Սիդեռնոյ քաղաքէն էր, որ* 1632 *ին նախ եկաւ յԱպարաներ. անտի գնաց ի Նախիջեւան, ուր և տարի մը և աւելի մնաց. ու Արարատայ կողմերը, յԵրեւան և յէջմիածին երթալով այլեւայլ անգամ, մեծ սէր և ընդունելութիւն գտաւ, ինչպէս կ'ըսէ, ժամանակին Փիլիպպոս կաթողիկոսէն։ Փիրոմալ դառնալով յարեւմուտս և ի Հռոմ, Ուրբանոս Ը* (1640) *միւսանգամ ղրկեց զնա առ կաթողիկոսն և առ թագաւորն Լեհաց, ինքնագիր նամակաւ մը, խնդրելով արքայական միջնորդութիւնը Լեհաստանի հայ գաղթականութեան մէջ երեւցած տարաձայնութիւնը վերցընելու։ Կ'երեւնայ թէ Փիրոմալ տարւոյ մը չափ ալ հոն մնացած ըլլայ։ — Իսկ Գալանոս՝ որոյ անունն ու գործերը կրկին առիթ պիտի ունենանք յիշել,* 1636 *ին Վրաց և Եգերաց կողմերը առաքելական քարոզութեան պաշտամամբ ղրկուեցաւ ուրիշ իր ընկերներով. ուր և տասուերկու տարի կեցաւ. բայց աւելի Հայոց հետ յաճախելով, լեզունին սորվեցաւ ու կը գրէր համարձակ. կ'երեւնայ թէ ծանօթանալով ու նաեւ յարաբերութիւնք ունենալով Միաբանողաց հետ, ռճով գրեց անոնց հաստատութեան և գործունէութեան պատմութիւնը, թէպէտեւ*

տեղ տեղ վրիպելով ի ժամանակագրութեան ։ Գալանոս ալ գնաց ի Լեհաստան և երկար ատեն յամեց ի հայ գաղթականութեան, և ապա դառնալով ի Հռովմ, տպագրեց ի լատին և ի հայ՝ իր ծանօթ **Միաբանութեան** գիրքը ։ — Փիրոմալլի այլեւայլ գրուածք շարագրեց հայ և ուրիշ արեւելեան լեզուներով, որոց մին՝ ի հայ, տպագրեալ է ի Հռովմ (1679), և խորագիրն՝ **Ցուցակ ճշմարտութեան հաւատոյ քրիստոնէականին առ Շահ Աբբաս (Բ) արքայ Պարսից** ։ Ձեռագիրք՝ **Ցուցակ երկուց քննութեանց Թերեզայի**, ընդդէմ Սիմէոնի վարդապետի, ընծայեալ առ Գէորգ արքեպիսկոպոս Լիպարեայ. որոյ յառաջաբանին մէջ կը յիշէ թէ ուրիշ այլեւայլ ճառեր և գրքոյկք յօրինած է կրօնական խնդրոց վրայ՝ ուղղեալս առ Տէր Ստեփաննոսին և առ Տէր Ներսէս, **Լեւոնի և Կիւրղի** թղթոց թարգմանութիւններն և **Քաղկեդոնի ժողովոյն** պատմութիւնը. և ընդարձակ **Բառագիրք** մը իբրեւ 35,000 բառից **Հայալատին**, որ կը պահուի ի Հռովմ Հաւատոյ Տարածման ժողովոյ վարժարանին մատենադարանին մէջ. Հայ լեզուի **Քերականութեան** մը, և Պարսկերէնի **Բառարան** մը ։ Ձեռք զարկաւ Սուրբ Գիրքն ալ լատինէ ի հայ թարգմանել, և ուղղել ենթադրեալ եկամուտ խօսքերը սրբոց Հարց ի հայ լեզուի ։ — 1694 տարւոյն ալ յիշատակութիւն կ'ըլլայ Դոմինիկոս անուն հայագէտ միանձին մը ի Պոլոնիոյ, որ կ'առաքի ի քարոզութիւն յԱպարաններ ։ 1709 ին Մարտիրոս Պեսարոս Պարմացի, որոյ ինկագիր թուղթ մի և ստորագրութիւն կայ առ մեզ հայ անախալ տառիւք ։ Նոյն տարւոյն և Անճելոյ Սմոլենսքի, որոյ մականուանէ կը յայտնուի և հայրենիք. Լեհոպոլսեցի էր նա, ուր Հայոց բազմութիւն գտնուելով՝ հաւանական է որ տեղեակ եղած ըլլայ նաեւ անոնց բարբառոյն. մանաւանդ զի և կարգապետն կը վկայէ թէ հայագէտ էր նա ։ — 1738 ին Դոմինիկեանց գաւառահայրն Պորկոմի՝ իրենց Ֆերրարա քաղքին վանքն գտնուելով, հայերէն լեզուով յանձնաբարական գիր կուտայ և վկայութիւն ուղղութեան **Խղճի**

Գէորգ վարդապետի, և նոյն լեզուով կը ստորագրէ. «Ես Պատրի Պեռնարտոս Պեռկոմի ի կարգէ Տոմինիգանաց, երբեմն առաքելական քարոզիչ և գաւառական առաջնորդ գաւառին Նախիջևանու» *:

*
* *

Դոմինիկեանց ու փրանկիսկեանց յաջորդեցին Յիսուսեանք, որք արդէն ծանօթք են յազգային նոր պատմութեան իրենց գործունէութեամբ ի հայ գաղթականութեան Լեհաստանի:

Աղեքսանդրիա, Դամասկոս, Հալէպ, Զմիւռնիա և Պոլիս հաստատուելէն ետքը, ուզեցին նաև ի Հայաստան մտնել: 1650 ին Հաւիգորտ առաջին փորձն ըրաւ, Պարսկաստանէն և կամ Հայաստանի այն մասէն՝ որ հպատակ էր այս տէրութեան: Ինչպէս առաջնոց՝ սոնց ալ գլխաւոր նպատակն՝ կրօնականն էր. բայց իրենց վախճանին հասնելու համար՝ հարկ անհրաժեշտ էր ընտանենալ նախ լեզուին, և ապա մանկութեան դաստիարակութեան գործով զբաղիլ:

Պարսից հպատակ՝ բազմաթիւ հայ գաղթականութիւն մը կար: Զորեքտասաներորդ դարուն վերջին կիսուն՝ Լանկթամուրի սաստիւ և բռնութեամբ հօն վարուածներուն վրայ աւելցեր էին 1605 ին ուրիշ բազմութիւն մ'ալ Շահաբասայ հրամանաւ տարուելով մինչ ի Սպահան: Հաւիգորտ սոնց ուզեց նուիրել իր ծառայութիւնը: Սակայն արքունի հրովարտակի մը կարօտ էր ազատ ու անարգել գործել կարող ըլլալու համար: Գիտնականի համբաւ ու պատիւ ստացած ըլլալով, առանց դժուարութեան կրցաւ ձեռք ձգել ուզած հրամանագիրը, Սպահանի ու Շիրազի մէջ դպրոց և վանատեղի ունենալու, ուստի Եւրոպա դարձաւ իրեն օգնականներ գտնելու:

* Քաղեալ յԱյրարատ երկասիրութենէ Ալիշան վարդապետի:

Զկրնալով դառնալ, Շէզոյ՝ ընկերակիցը, շարունակեց իր սկսած գործը։ Նշանաւոր անձն մը ըլլալով ի գիտութիւնս, մանաւանդ ի չափականս, սորվեցաւ յաջողակութեամբ զպարսիկ և զարաբ լեզուս, և արքունեաց մէջ և ի պաշտաման անձանց հետ յարաբերութիւններն շատցուց։ Բայց չգիտցուիր ինչ պատճառաւ, նախորդին ձեռք բերած հրամանագիրը՝ զօրութիւն մը չկրցաւ ունենալ իր ձեռքին մէջ, որովհետեւ իշխանութիւն չունէր ոչ հաստատուն բնակութիւն մը ունենալու և ոչ ալ ընկերներ բերելու Եւրոպայէն։ Լուդովիկոս ԺԴ գրեց առ Շահն, որ մէկէն ջանայ հաճեցընել զԹագաւորն Գաղղիոյ, բնակարանէ զատ նաեւ յարքունուստ թոշակ ուզելով սահմանել, յորմէ իրենք խոհականութեամբ հրաժարեցան։

Բայց Ցիսուսեանց ընդհանրական առաջնորդին աչքին այնչափ յարգի էր այս հայկական գաւառն ու անոր հագեւոր և ուսումնական յառաջադիմութիւնն, որ Թոնքինէն վերցուց գհռչակաւոր հայրն Տըռոտ, ու Սպահան փոխադրելով՝ նմա յանձնեց տեղւոյն կառավարութիւնը։ Դժբաղդաբար ժամանակ չունեցաւ ծերունին՝ իր փորձառութեանց օգուտները հաղորդել հետը եղող աշխատակցաց, ու յաջորդ տարին մեռնելով (1660), կրկին առաջնորդ եղաւ Շէզոյ։

Արքունի քմահաճոյ կամք մը՝ մեծապէս դիւրացուց Շէզոյի գործը։ Հայք ինչուան այն ատեն ցրուած ու գրեթէ կորսուած ընդարձակ քաղաքին մէջ, յանկարծ հրաման ընդունեցան ի Թագաւորէն՝ որ Սպահանէ ելլելով գետին միւս կողմն անցնին, ուր իրենց տրուած գեղեցկադիր երկրին վրայ՝ բոլորովին հայկական քաղաք մը շինելով՝ ի յիշատակ իրենց հեռաւոր հայրենեաց՝ Նոր Ջուղա կոչեցին։ Քրիստոնեայ ընտանեաց մէկտեղ ժողվուիլը՝ ոչ լոկ դիւրացուց, այլ մեծապէս արդիւնաւոր ըրաւ Շէզոյի գործը, որ ոչ միայն հոգեւորական պաշտամամբ կը պարապէր, այլ նաեւ բժշկութեան արուես-

տիւ, ու չորս իրեն ծանօթ արեւելեան լեզուներով գրքեր ալ կը շարադրէր: Մահուընէն առաջ իրեն օգնական հասան Տըլամաղ և Մէրսիէ և այլք, որոնք Ջուղայէն անդին ալ տարածեցին իրենց գործը: Ինչուան Գաղղիոյ Թագաւորաց հետ նամակագրութիւններ ալ ունեցան Հայոց եպիսկոպոսունքն և մեծամեծք, ինչպէս քիչ ետքը պիտի տեսնենք, ու շատերը սկսան Եւրոպա անցնիլ վաճառականութեան համար:

Ցիսուսեանց ձեռք բերած այս ընդունելութիւն ու յաջողութիւնը պատճառ պիտի ըլլար իրենց և գործերնուն դէմ հակառակելու:

Իրենք չքան ու չարունակեցին աշխատիլ, մինչեւ ութուտասներորդ դարուն իրենց դէմ յարուցուած մրրիկը՝ քշեց հեռացուց զիրենք նաեւ ի Ջուղայէ:



Ըսինք յառաջ թէ Սպահանէն անդին ալ հարկ սեպեցին Յիսուսեանք տարածել իրենց գործոյն սահմանը: Շիրուանի գաւառին մէջ ալ ուղեցին հաստատուիլ: Դժուարինը արքունի հրամանագիրը ստանալուն վրայ էր: Երբ հայրն Փօթիէ՝ գրեթէ անօգուտ ջանքով այս բանին ետեւէ կ'ըլլար, Լեհաց Թագաւորին կողմանէ դեսպանութեամբ հասաւ կոմսն Տըսխիլըի, և յայտնեց թէ ինչպէս իր արքունեաց կողմանէ յանձնարարուած էր իրեն Շամախիի մէջ Յիսուսեանց տան մը հաստատութեան ետեւէ ըլլալ: Դեսպանը ամէն ջանք ըրաւ խափանիչ արգելքները յաղթելու և յաջողելով, ի Վարշաւ վերադարձին՝ հետն առաւ զՓօթիէ՝ Շամախիէ անցնելու ատեն, հաստատել զնա նոր բնակութեանը մէջ: 1687 սեպտ. 27 զոհ իր անձնանուիրութեան՝ սպաննուած գտնուեցաւ Փօթիէ յանկողնի:

Այն անակնկալ պատահարով չյուսահատեցան Յիսուսեանք: Սպահանի վանահայրը՝ ղրկեց զՏըլամաղ,

որ թէպէտ վաթսունըհինգ տարուան ծերունի մ'էր, բայց մեծապէս օգտակար երեւցաւ իրեն յանձնուած գործին, այնպէս որ հարկ եղաւ իրեն օգնական մ'ալ տալ, զՇամբիոն՝ որ նոր հասած էր ի Գաղղիոյ: Քիչ ատենէն ուրախութեամբ կրցան գրել և ծանուցանել թէ «Երբեք չէինք կրնար ենթադրել թէ Շամախի այսչափ հարկաւոր առաքելութիւն մը ըլլար»: Չէ թէ հոն Հայոց բազմաթիւ ըլլալուն, ուր ընդհակառակն սակաւաւորք էին, 'այլ գաւառին մէջ գտնուած բազմամարդ գիւղից պատճառաւ և կարաւանաց անցուդարձի յաճախութեան՝ բազմութիւն ճանապարհորդաց գործելու դիւրութիւն և միջոց կ'ընծայէին: Անոնց հետ տեսութիւն ու ծանօթութիւն բաւական չէին սեպեր. այլ կարաւաններու ընկերելով՝ հոն ալ կը ջանային հրահանգել և ուսուցանել իրեն դիմողներն, անանկ որ Փօթիէի եղերական մահուընէն զատ՝ ուրիշ աղէտք մը կամ նեղութիւն չկրեցին. «Երկու անձի տեղ չորս հոգի ալ ըլլայինք՝ – կը գրէին – աշխատանքը պակաս չէր: Ամէն ազատութիւն տրուած է մեզ: Պարսկաստան գացող Եւրոպիոյ դեսպանաց ողորմարաշխ կը սեպեն զմեզ. Լեհաց թագաւորը ամէն եռանդեամբ պաշտպան կեցած է. մեծ նեցուկ էր մեզ և թագաւորն Լուդովիկոս ԺԴ, զոր Գաղղիա կորոյս: Հայք և Պարսիկք մեծ համարումն ունէին՝ արքային մեծութեան և արդեանց վրայ»:

***

Փօթիէի մահուընէն ետքը՝ երկու Յիսուսեանք հնոյն Նինուէի աւերակաց վրայ հանդիպեցան իրարու. Բառնաբաս և Նօյ (Nau), որոնց երկուքին ալ խորհուրդն էր Հայաստանի և Հայոց համար աշխատիլ: Երկար մտածելէն ետք՝ որոշեցին որ հայրն Բառնաբաս երթայ ի Բաղէշ, իսկ միւսն դառնայ ի Բերիա՝ նոր ընկերներով իրենց գործոյն աւելի ընդարձակութիւն և ոյժ տա-

լու ։ Բաղէշի մէջ որչափ ալ առջի բերան դժուարութիւններ կրեցին, բայց տեղական իշխանութեանց զօրաւոր պաշտպանութեամբը, և իրենց բժշկական արուեստի և ընակչաց այն ատեն բոլորովին անծանօթ գիտութեանց ունեցած հմտութեամբ՝ սիրուեցան ու մեծարուեցան, որով գիւրացաւ իրենց մուտքն ի Կարին, ուր Թագաւորական հրովարտակաւ, զոր ձեռք ձգեց Գաղղիոյ Կիլլեբաք դեսպան, 1688 ին մտաւ Ռօք իր ընկերներով ։ Մահտարաժամէ մեռնելով, Սպահանէն իրեն յաջորդ կը փութայ հայրն Վիլլոտ, որուն օգնական հայրն Լըվէր գպրոց կը բանայ տանիկ, հայ ու գաղղիացի լեզուները սորվեցընելու, և որոյ կը յաջորդէ նոյն պաշտամամբ՝ իր կրօնակիցն Փոթիէ ։

Ծանօթ են մեր բանասիրաց Վիլլոտի այլևայլ երկասիրութիւնք ի հայ լեզու, յորոց ոմանք տպագրուեցան այս ի Հռովմ, հաւատոյ Տարածման ժողովոյն բազմալեզու տպարանին մէջ և ի Վենետիկ ։ Անոնց մէջ յիշատակենք . Մեկնիչ սրբոյ Պատարագին (տպ. ի 1714), Պատմութիւն կաթողիկոսաց և Թագաւորաց Հայոց, (1713), Բառգիրք Լատին - Հայ, (1713), Զորք Խոհմանց, (1714) Պատմութիւն վիճաբանութեան զոր Նոր Ջուղայի առաջնորդին հետ ունեցեր է, որ կը յիշատակուի առ Տէր-Յովհաննեանի, և կ'երեւնայ թէ ի Վենետիկ եղած ըլլայ տպագրութիւնն ։ Մեզ անծանօթ է այս գրուածք ։

*
* *

Վիլլոտի համառօտ կենսագրական մը աւելորդ չենք համարիր ։

Գաղղիոյ Պար Լը Տիւք քաղաքը ծնած ի 1656 . Յիսուսեան ընկերութեան յօդանալով, առաքելութեան հրաման ընդունեցաւ յաշխարհն սինէական, անցնելով ընդ Տաճկաստան, Պարս և Թաթարս ։ 1688ին Մարսէյլէ ճամբայ ելաւ, ու Կոստանդնուպոլսոյ վրայէն անցնելով

ընդ Տրապիզոն և Կարին, յաջորդ տարուան 6 յունուարի հասաւ յԵրեւան և անտի ի Գանձակ, և մարտի սկիզբը ի Շամախի, Կասպից ծովուն քով՝ ուր, ինչպէս ըսինք, երկու տարիէ ի վեր Ցիսուսեանք իրենց բնակութեան տեղ և ուսումնարան հաստատեր էին. և արդէն Հայաստանի ուրիշ կողմանք այլեւայլ դպրոցներ ունէին, և իրենց անձնանուիրութեամբ և ուսումնական գործունէութեամբ աւելի համբաւ և մեծարանք ստացած՝ քան իրենց նախընթաց վեղարաւորքը, աւգոստինեանք, կարմեղականք, թէադինք և դոմինիկեանք: Շամախի հինգ ամիս կեցած ատեն՝ ետեւէ եղաւ Վիլլոտ տաճիկ, պարսիկ և հայ լեզուաց ուսման: Ապա ճամբայ ելաւ երթալ ի Պարս, անցնելով Կուր և Երասխ գետերէն ընդ Արտաւիլ, Սուլթանիէ, Սավա, Քաշան, և հոկտեմբերի 16 հասաւ ի Սպահան: Իր բնակութիւն ի տան Ցիսուսեանց ի Ջուղա կարծածէն աւելի յերկարեցաւ, զի Լեհաստանի դեսպանին մահը արգելք եղաւ Վիլլոտի ի Չին անցնելու հրամանագիրը ձեռք ձգելու, ինչպէս կը յուսար՝ ուստի 1690 ին Սպահանէն մեկնելով, հինգ տարուան միջոցի մէջ տասն անգամ ճամբորդութիւն ըրաւ ի Կարին, յԵրեւան, ի Տրապիզոն և ի Պոլիս, ուստի 1696 ին միւսանգամ ճամբայ ելաւ Պարսկաստան դառնալու: Հռոդոս ու Կիպրոս կղզիներէն անցնելով, ելաւ ի Տրիպոլիս Սիւրիոյ, ուստի յԱնտիոք և ի Բերիա, ու շատ դժուարութեամբք և նեղութիւններ կրելով՝ հասաւ վերջապէս ի մայրաքաղաքն Պարսից, և ուր տասուերկու տարի կեցաւ: Իրեն հոգեւորական նպատակէն զատ, ետեւէ եղաւ քննել, գիտել այն կողմերը բնակող ժողովրդոց և ազգաց բարքն, սովորութիւնները, կառավարութիւնը, քաղաքականութեան հանգամանք ու վաճառականութիւն, և իր ըրած տեսութիւններն հմտաբար գրի վրայ առաւ. և այն ատենուան ճանապարհորդաց մէջ գրեթէ միակ կը համարուի որ արեւելից, և Պարսկաստանի վրայ ստուգապատում

և մեծաւ մասամբ վստահելի տեղեկութիւններ աւանդեց․ և ի մասնաւորի՝ դեսպանութեանն զոր Լուդովիկոս ԺԴ ղրկեց առ Շահ-Հիւսէյին։ Յասլր դեսպանին յաջորդ Միքայէլի հետ 1708 ին եկաւ Վիլլոտ ի Սպահանայ դառնալու ի Գաղղիա, ընդ Դավրէժ, Երեւան, Կարս և Կարին, ու Անատոլիոյ մէկ մասն ալ կտրելով, հասան յԵւդոկիա, ի Նիկոմիդիա, ի Պոլիս և անտի ի Գաղղիա․ ուստի Վիլլոտ անցաւ ի Հռովմ, ուր և տպագրեց իւր գրքերը զոր յիշեցինք։ Վիլլոտ մեռաւ Նանսի քաղաքին մօտ ի հասակի 87 ամաց (14 յունուար 1743)։ Իրենն է անանուն հրատարակուած և հետեւեալ խորագիրն ունեցող գրուածն, Voyage d'un missionnaire de la compagnie de Jésus, en Turquie, en Perse, en Arménie, en Arabie et en Barbarie, տպագրեալ ի Փարիզ ի 1730։ Կարգաւորեալ ոճով գրուած տեղեկագիր մը, որ հիմայ դժուարագիւտ գրուածք մ'է, և Վիլլոտի յիշատակարաններն են՝ իրեն միաբանակցի մը ձեռքով կարգի դրուած և տպագրուած հեղինակին մահուընէն ետքը, քանի մը յաւելուածներով՝ այն անցից և պատմութեանց որ իրմէ վերջ հանդիպած են։

Այլեւայլ հայկական գրչագիրք ալ հետը բերած է Վիլլոտ յարեւելից, որք զետեղեցան և կը պահուին ցարդ յազգային մատենադարանին Փարիզու, և ցանկեցան սպա ի Վիլֆուռս արեւելագիտէ։

Անցողաբար յիշենք թէ յառաջ քան զՎիլլոտ՝ Փրանկիսկոս Ռիվոլա Միլանու կանոնիկոսը, որ հեղինակ է հայերէն Քերականութեան մը (1621), յօրինած է հայէ ի լատին Բառագիրք մ'ալ, որոյ առաջին տպագրութիւնն եղաւ ի Միլան (1621), և կրկին անգամ ի Փարիզ, Ռըշըլիոյ ծիրանաւորին հրամանաւն և ծախիւք․ շատ անկատար ու վրիպակօք լի երկասիրութիւն մը, ուր Աստուածատուր Ներսիսովիչ եպիսկոպոսի յօրինածը, հրատարակուած ի Հռովմ (1695), և մանաւանդ հօրն Վիլլոտի՝ անհամեմատ ի վեր են իրենց արժէքով քան զՌիվոլեանն։



Երեւանի մէջ ալ ուզեցին Յիսուսեանք իրենց տեղ մը ունենալ։ Նախիջեւանի այլեւայլ քաղաքներէ՝ ուր յառաջ Միարանողք եւ իրենց վանորայք կը գտնուէին, բազմաթիւ Հայեր իրենց աղէտից եւ թշուառութեանց մէջ աչուընին եւ յոյս յարեւմուտս դարձուցած՝ Լուդովիկոս ԺԴ Գաղղիոյ թագաւորին դիմեցին, անոր պաշտպանութիւնը խնդրելով։ Թագաւորը առանց ժամանակ կորսնցընելու գրեց առ Շահն. «Սէրը, կ՚ըսէր, զոր ունեցեր եմք միշտ ամէն քրիստոնէից. եւ մասնաւորաբար Նախիջեւան գաւառին ուղղափառ Հայոց վրայ, որոնք ձեր զօրաւոր ինքնակալութեան մէջ ապրելու բարեբաստութիւնն ունին, յորդորամիտ ըրած է զմեզ, ինչպէս մեր նախորդքը, յայտնել ձեր մեծափառութեան մեր երախտապարտ գոհութիւնը՝ զոր մեր յանձնարարականաց միջոցաւ, կը վայելեն նոքա՝ իրենց քաղաքապետներէն։ Բայց որովհետեւ քաղաքապետք կը փոփոխին, եւ անոնց տեղ անցնողները չեն կրնար տեղեակ ըլլալ այն բարեզգած մոռացութեանց զոր ունի ձեր մեծութիւն նկատմամբ այն ամէն բանին որ շահեկան է մեզ, կը խնդրենք նորոգել այն հրամանները, որպէս զի Նախիջեւան գաւառին Հայ ուղղափառք անդադար անոնց արդիւնքը կարենան տեսնել։ Ջունինք տարակոյս թէ մեծափառ տէրդ այս պաշտպանութիւնը պիտի տարածէ ամէն քրիստոնեայ եկեղեցեաց վրայ, եւ պիտի օգնէ Կեսարուպոլսոյ եպիսկոպոսին, որուն մեր այս գիրը յանձնեցինք, եւ ի Պաղտատ մեր հիւպատոն անուանեցինք, որպէս զի ձեռքէն եկածն ընէ վաճառականութեան, մեր միութեան եւ բարի յարաբերութեանց, զոր կը փափաքինք որ յաւիտենականաբար հաստատուին այս երկու ինքնակալութեանց մէջ։

«Վստահ ենք դարձեալ որ մեծափառ տէրդ պիտի

պաշտպանէ ձեր պետութեան մէջ գտնուած գաղղիացի կրօնաւորներն, և մանաւանդ զՅիսուսեանս՝ որոնց վրայ առանձին գորով մը ունինք, և որք ի բացակայութեան Կեսարուպոլսոյ եպիսկոպոսին, ձեր քով պիտի մնան, իբրու հաւաստի նշանակ մը մեծարանաց և բարեկամութեան զոր ունինք ընդ ձեզ »։

Թագաւորն այս թղթին հետ այլևայլ ընծաներ ալ ղրկեց՝ աստեղաբաշխական գործիներ, նշանաւորք իրենց կատարելութեամբ և գիւտին նորութեամբ, որք մոլորակաց խաւարումը և միացումը կը ներկայացընէին։ Ասոնց բացատրութեան համար՝ երկու Յիսուսեանք ընտրուեցան, որ ղրկուին առ Շահն, Լոնժոյ և Փոթիէ։ Տարի մը ճանապարհորդելէն ետք՝ երկու պատգամաւորք հասան ի Սպահան (1683), և Կեսարուպոլսոյ եպիսկոպոսը իբրու փոխանորդ աթոռոյն Հռովմայ և բդեշխ Գաղղիոյ՝ յանձնեց Շահին թէ թագաւորական թուղթը և թէ ընծաներն։ Շահը Յիսուսեանց ուսումնականութեան վրայ զմայլած, « Գոհ եմ, ըսաւ, ձեզմէ. կը յուսամ որ դուք ալ ինձմէ. և պիտի ջանամ որ ձեր գոհութիւն օր ըստ օրէ առաւել աճի ». և հրովարտակաւ հրամայեց որ հաստատուին յԵրևան։

Բայց այս ամենայն յաջողութիւնք սակաւատև եղան։ Կարծիք մը թէ արևմտեան տէրութեանց ծածուկ գործակատարքն ըլլան, միշտ կասկածոտ ըրաւ վրանին արևելեան ազգերը և պետութիւնք։ Ուր ուրեմն ստիպուեցան թողուլ հեռանալ։

***

Կ՚երևնայ թէ յիշեալ առաքելական քարոզիչք մեծապէս գոհ էին իրենց ի Հայաստան անցուցած կեանքէն։ Այս ենթադրութեան ստուգութիւնը յայտնապէս կը տեսնուի 1694 ին ի Փարիզ տպագրուած՝ « Արդի վիճակ Հայաստանի » (Etat présent de l'Arménie) կոչուած

գրքէ մը, որոյ հեղինակն է Թոմա Շարլ Ֆլէօրիոյ Յիսուսեանն, Թղթակից իր ուխտին առաքելական քարոզչաց, որպէս զի հարկաւոր տեղեկութիւններ ստանալով կարող ըլլայ ուղղել անոնց ջանքը։ Այդ գրքէն քանի մը հատուածներ աւելորդ չենք համարիր մէջ բերել. Իրենց բուն քարոզչաց խօսքերն են, որ ապրեցան այն ժողովրդեան մէջ՝ որոյ սովորութիւնները կը ստորագրեն.

« Աշխարհիս վրայ քիչ ազգ կայ, կ'ըսէ, որ Հայոց ազգին նման ընտիր բարեմասնութիւններ ունենայ։ Ամէն տեղ կը տեսնուի թէ Հայք մեծ ողջմտութիւն և խոհականութիւն ունին։ Քիչ կը խօսին, շատ կը խորհրդակցին, և ի գործառնութիւնս մեծապէս յաջողակ են։ Իրենք են արեւելքի մէջ վաճառականք, և կը սատարեն Եւրոպայի զանազան քաղաքաց վաճառականութեան։

« Իրենց ամենէն աւելի գովելի յատկութիւններէն մէկն ալ ընտիր գրոց ընթերցասիրութիւնն է. անով կ'անցընեն տօնական օրերուն մեծ մասը։ Այնչափ կը յաճախեն յընթերցումն Նոր կտակարանին, որ շատք գրեթէ ի բերան սորուած են զայն... Հիւրը՝ միշտ սիրալիր ընդունելութիւն կը գտնէ քովերնին. հաճոյք մը կը սեպեն անոր օթեվան տալ և պատուասիրել... Խօսակցութեան մէջ մեծ քաղցրութեամբ, սիրով ու պարկեշտութեամբ կը վարուին... Կռիւ հակառակութիւն հազիւ թէ կը տեսնուի մէջերնին. երբ մէկու մը հանդիպին որ մէկէնիմէկ կիրք կ'ելլէ, չկամելով ի չափաւորութեան մնալ, համարմունք չեն ունենար այնպիսի անձին վրայ։

« Հայրն Վիլլոտ ամէն ջանք ի գործ դրաւ այսպիսի ընտիր բարեմասնութիւնք ունեցող ժողովրդի մը մտաւոր և բարոյական մշակութեան. Նախ հայերէն լեզուով քարոզեց՝ որուն քաջահմուտ էր, և քարոզներուն վրայ աւելցուց նաեւ երիտասարդաց ընտանեկան կրթութեան համար կարեւոր խօսակցութիւններ »։

Նոյն քարոզիչք՝ հետեւեալ տեղեկութիւններն կու տան

*հայ լեզուին վրայ. « Բաց ի Թուրք լեզուէն, որ սովորական է բոլոր աշխարհին, Հայք իրենց աշխարհիկ լեզուն ալ ունին՝ որ ժողովրդական է, ինչպէս նաեւ մասնաւոր լեզու գիտնոց համար՝ զոր գրաբար կը կոչեն։ Այս լեզուով կը շարագրուին գրքերը։ Քիչ մը անախորժ, և շատ դժուարին է անոր ուսումը. վասն զի աշխարհիս վրայ խօսուած լեզուներու մէկին հետ ալ նմանութիւն չունի. բայց և այնպէս մեծավայելուչ, ամէն բացատրութեանց յարմարութիւն ունեցող ճոխ լեզու մ'է։ Իր արտադրած ամենէն աւելի վերացեալ բառերը կրօնից, գիտութեանց և արուեստից, յայտնի ապացոյցք են թէ նախընթաց դարուց մէջ տգիտութիւնը տիրած չէր ի Հայաստան, և թէ պիտի ունենար — ինչպէս յայլուստ գիտենք թէ ունէր, — իր անուանի վարդապետքը և ճարտար ուսուցիչքը։ Շատ գեղեցիկ են հայ լեզուին տառերը. ոմանք ենթադրեցին թէ սուրբ Յովհան Ոսկեբերան եղած ըլլայ անոնց հնարիչն. բայց ինչ որ ստուգագոյն է՝ մեծ արդիւնք մը սեպուած է՝ գիտնական այս լեզուն կարդալն ու հասկընալը։ Երկու դար յառաջ գրչագրէ զատ ուրիշ գիրք չունէին. հիմայ շատ են տպագիրքն, զոր հրատարակել կու տան ի զանազան քաղաքս Եւրոպիոյ »։*

## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆՔ

*Հայկական հետազօտութեանց յարեւմուտս գլխաւոր և առաջին նպատակն էր ըսինք պատմականն. ուստի և ազգային պատմչաց և անոնց գրուածոց վրայ պարապմունք՝ իրաւամբք փափաքելի պիտի ըլլային իրենց, որ թերեւս մեզմէ աւելի յարգ և կարեւորութիւն գիտցան ընծայել այդ երկասիրութեանց, և զանոնք ողջամիտ և անաչառ քննութեան բովքէն անցուցած ատեննին ալ՝*

*ոչ նուազ զգուշաւոր խոհականութեամբ և շրջահայեցութեամբ ուղեցին վարուիլ, որպէս զի մեր անցելոյն մէջ՝ ժամանակին աւերիչ ձեռքով գործուած բազմաթիւ և բազմակողմ աւերակաց վրայ, ուրիչ նորանոր աւերմունք չաւելցընեն, առանց յաջողելու քանդուածը ընտրելագոյն և աւելի գոհացուցիչ կերպարանաց տակ վերընծայել մեզ։ Ցաճախ կրկնուած գանգատ մը՝ և շատ անգամ լսուած նաև մեր բանասիրաց կողմանէ. « Այս տարօրինակ քննասիրութեան, — ըսած է անոնցմէ մին, — ճգանց հակառակ՝ ազգերը շուտով չեն բաժնուիր այն պատմական ճշմարտութիւններէն՝ զոր իբրև իրենց էութեան մէկ մասը կը պաշտեն, և չեն թօթափեր տակաւին մինչև անգամ այն աւանդութիւններն՝ որ իրենց կենաց զանազան յիշատակներուն հետ կապուած՝ հոգեշունչ ներգործութիւն ունին իրենց ներկայ գործերուն և ուղղութեանց վրայ։... Ո՞ր պատմութեան ծագումն ամփոփուած չէ մթին ամպերու մէջ, ամպեր՝ որոնց միջէն միշտ ճշմարտութեան նշոյլներ կ՚երեւին։ Բայց և այնպէս այսօր ամենէն աւելի լուսամիտ ժողովուրդն՝ իր պատմութեան մասունքն, թէ և սոէպ մոտացածին, իբրև նուիրական աւանդ կը պահէ պահպանէ և իր զաւակաց կ՚աւանդէ, յաոկապէս շեշտելով այնպիսի պարագաներ, դէպքեր և դէմքեր որ արիութիւն ու անձնանուիրութիւն ներշնչող զօրութիւն մը, առաքինութեան հետեւելի տիպար մը կրնան ըլլալ... Հայութիւնն ևս այս քննադատական ոգւով կը ճարակի, ցաւալի աւերումներ գործելով իր պատմական անշուք աւանդութեանց մէջ, որ լիովին անչքութեան և մինչև իսկ չքութեան պիտի մատնուին եթէ մի և նոյն ոգին շարունակի »։*

*Ոչ այսպիսի էր արեւմտից կարծիքն ու դատաստան, ուստի փափաքանօք փնտռեց այդ երկերը, և երբ իրեն տրուեցան՝ սիրով և երախտագիտութեամբ ընդունելով օգտուեցաւ անոնցմէ։*



Այս տեսութեամբ, առաջին երախայրիք և ճաշակն ընծայողաց մէջ, ժամանակագրական կարգով կը գտնենք զգերմանացի հայագէտն Մարտինոս Գեմբիոս, հեղինակ Եկեղեցէ Հաւէրէն Հայաստանու կամ Dissertatio de Statu Armeniæ Ecclesiastico et Politico, tam pristino quam hodierno կոչուած վիճաբանական գրքի մը, և զԿղեմէս Գալանոս իտալացի Թէատինեան կրօնաւորն, զոր քիչ յառաջ արդէն յիշեցինք, Միաբանութիւն եկեղեցւոյն Հայոց (Conciliatio Ecclesiæ Armenæ) եռահատոր գրքին հեղինակն ի հայ և ի լատին, մինչդեռ առաջնոյն երկասիրութիւն սոսկ լատին լեզուով է։ Չենք գիտեր թէ ո՛րչափ էր առաջնոյն մեր լեզուին նկատմամբ ունեցած գիտութիւնը, մինչ երկրորդս բաւական հմուտ կ'երեւնայ թէ՛ լեզուին և թէ պատմութեան։ Երկուքին ալ ի ճակատ իրենց գրոցը դրած խորագրէն կը յայտնուի թէ գլխաւոր նպատակնին կրօնական է, թէպէտ և իրարմէ տարբեր տեսութեամբ և դիտմամբ. որովհետեւ մէկը կալուինական վարդապետութեան հետեւող, իսկ Գալանոս արեւմտեան–լատին եկեղեցւոյ, բնականաբար իրենց համոզման համեմատ է նաեւ բռնած ուղղութիւննին։ Սակայն ինչ որ մեզ համար հետաքրքնական է, բաց ի կրօնականէն՝ պատմական այլեւայլ տեղեկութիւններ ալ կ'ընծայեն մեզ իրենց գրքերով մեր ազգին հին անցելոյն և իրենց աւելի մերձաւոր ժամանակաց վրայ, որոնք իրաւամբք հարկ էր որ մեծապէս շահագրգիռ ըլլային և մասնաւոր մտադրութեան արժանաւորք, որովհետեւ մեր պատմութեան սէրը և փոյթն աճեցընելով իրենց դրած սկզբնաւորութեամբ՝ նախկին պատճառք եղած են հետեւաբար և ժամանակաւ աւելի արգասաւոր ըլլալուն։ Գեմբիոս՝ չըլլալով անշուշտ այնչափ ծանօթ մեր պատմութեան բուն և ազգային

աղբերաց, բանագատուեր է յօտարաց՝ ի յոյն և ի լատինական դասական մատենագրաց և յայլոց արեւմտեայց քաղել ընդհանրապէս իր երկասիրած մատենկան նիւթը, որ շատ տեղ օտարանալով ի մերոցն՝ կը պակսին և ի ստուգահաւատ ըլլալէ։ Ոչ նոյնպէս և կամ հաւասար չափով նաեւ Գալանոս, իր բազմամեայ՝ գրեթէ հնգետասան տարի բնակութեամբն ի Հայաստան և յարեւելս, և ծանօթացած ոչ լոկ աշխարհիկ, այլ նաեւ գրական լեզուին, որով և մատենագրելու բաւա՛կան վարժութիւն ստացած։ Իր վարուց արկածք, ձեռնարկք և երկասիրութիւնք գրուածքիս նպատակէն դուրս ըլլալով, մեր այս ուսումնասիրութեան չեն վերաբերիր։ Ուստի գոհ ըլլանք պարզ ակնարկ մի միայն ձգելով, կամ յիշատակութիւն մը միայն ընենք այնպիսի երկասիրութեան մը, — նկատելով զայն առանց կանխակալ կարծեաց, և ոչ իր բուն արժանիքէ մը աւելի հիացմամբ, — որ ունենալով ալ իր բազմաթիւ վրիպական տեսութիւններն և կարծիք՝ ազգերնուս թէ՛ քաղաքական և թէ կրօնական վիճակին վրայ, առաջին կրնայ համարուիլ հայ ազգն և իր պատմութիւն արեւմտեայց ծանօթացընողներու մէջ, որով իր երկասիրութիւնն ունի կարեւորութիւնն և արդիւնք։

Իրեն գլխաւոր նպատակ դրած է, ըսինք, կրօնականը․ բայց ջանացած է եկեղեցականին հետ աւանդել նաեւ ազգին քաղաքական պատմութիւնն, իր ձեռքը գտնուած հայ աղբերաց օժանդակութեամբ, որոց շատք հասած են մինչեւ առ մեզ․ բայց հաւանականաբար ուրիշներն ժամանակի անցից համար ունեցած է նաև այնպիսի երկասիրութիւնք՝ որոց բարեբաղդաբար հանդիպած կ'ըլլայ լեհաբնակ հայ գաղթականութեան քով, ուր բաւական ժամանակ կեցած է, և մանաւոր պաշտօն ալ վարած յօգուտ և յուսումնական բարգաւաճանս գաղթականութեանն համար հաստատուած դպրանոցին մէջ ի Լէոպոլիս։ Այդ գրուածք, որ կը թուին ունենալ պատմական կարեւորութիւն, մինչեւ հիմայ մեր ձեռք հասած

չէն, բայց եթէ Գալանոսի երկասիրութեանց միջոցով, որ տպագրեալ է ի Հռոմ ի 1650–1666։

Հեղինակը՝ որ արդէն 1645ին հայ լեզուի **Բեր—կո—նա—քի—ն** մ'ալ հրատարակած էր, որ նոյն նիւթին վրայ եւրոպացւոյ մը ձեռքով յօրինուածներուն մէջ առաջինն է, գրուածքին յառաջաբանին մէջ կ'ըսէ թէ ինքն գոհ պիտի ըլլայ աւանդելով հայկական պատմութիւնն և աւանդութիւններն՝ հռովմէական եկեղեցւոյ վարդապետութեանց հետ՝ առանց ուղելու վիճաբանութեան մէջ մտնել.

«Հայք կ'ենթադրեն, կ'ըսէ, թէ արեւմտեայք խիստ ճարտարք են ի գործածութեան հնարից, և թէ շատ դժուարին է պատճառաբանութեամբք զիրենք համոզել։ Ուստի հարկ է գոհ ըլլալ, պարզապէս դիմացնին դնելով զդէպս, որպէս զի իրենք իրենցմէ կարող ըլլան դատել»։



Գեմբիոսի գրուածք՝ նուիրեալ է ի հեղինակէն առ Սեգիսմոնտ Ա. Բիրքէն, և տպագրեալ յամի 1665 ի Հռեգիոամոնտ Բրուսիոյ։ Յառաջաբան ընծայականին մէջ՝ այս երկասիրութեան յօրինման ձեռք զարնելու պատճառ կը դնէ Հայոց ազգին, կամ մանաւանդ եկեղեցւոյն վրայ, հրատարակուած ու չատերուն ընդունելի կարծուած, ինչպէս ինք կ'ըսէ, անհիմն՝ և քմահաճ տեղեկութիւններն, տուեալ ի յունաց և ի լատինաց։ Իր գլխաւոր վախճանն է զանոնք մերժելով՝ Հայոց եկեղեցւոյ ի հռովմէականէն ունեցած տարբերութիւններն աչքի առջեւ դնել, և վեչտասաներորդ դարու նորաղանդ վարդապետութեանց չատ բանի մէջ ունեցած համաձայնութիւնը ցուցանել իր ենթադրութեամբ։

Հարիւր երկոտասան միջակ դրիւք իջից մէջ ամփոփուած երկասիրութիւն մ'է, յորում ի բաց առեալ հեղինակին անձնական տեսութիւններն և կրօնական հա-

մոլմունք, տեղ տեղ ալ նաեւ պատմական եւ աշխարհագրական սխալմունք, ընդհանրապէս հետաքննական տեղեկութիւնք կան ազգերնուս նախնական եւ երբեմն նաեւ իրեն ժամանակաց քաղաքական եւ կրօնական վիճակին վրայ, գէթ աղօտ լոյս մը ուղելով սփռել՝ մինչ դեռ եւս ոչ այնչափ ծանօթ ազգ եւ ժողովուրդ մը կրնար համարուիլ արեւմտեայց իր նախնի պատմութեամբ, հին լեզուով եւ կրօնական վարդապետութեամբ։

Մտադրութեան արժանաւոր է նաեւ անով որ գրուածքին մէջ մերթ ընդ մերթ նաեւ հայկական բառեր ալ գործածած է, եւ նոյն լեզուի խոշոր եւ տձեւ տառիք, որ մանաւորաբար փայտի վրայ փորագրուած են անկերպարան եւ անարուեստ ձեւերով։ — Վեց գլխի բաժնուած է բովանդակ գիրքը, յորոց առաջին երեքը աշխարհագրութեան եւ քաղաքական պատմութեան կրնան պատկանիլ, վերջինները եկեղեցականին։

Զորրորդին մէջ աստուածաշունչ գրոց հայկական թարգմանութեան վրայ խօսելով կ՚ըսէ. « Աստուածաշունչ տառից հայ թարգմանութիւնը՝ բազումք ի հմտից եւ ի տեղեկաց Ոսկեբերան հայրապետի կ՚ընծայեն, թէպէտեւ Քսեստոս սենացի՝ միայն նոր կտակարանի եւ սաղմոսաց թարգմանութեան զնա հեղինակ կը համարի։ Կ՚աւանդեն թէ երբ Ոսկեբերան կապանօք աքսորական տարուեցաւ ի Հայաստան, այդ դժուարին գործոյն ձեռք զարկած ըլլայ եւ յաջողած։ Նոյն կարծեաց հետեւող է եւ Թէոդորետոս, որ յետ Ոսկեբերանի ծաղկեցաւ (440), վկայելով թէ իր ժամանակէն յառաջ եղած է սուրբ Գրոց ի հայ թարգմանութիւն։ Ասոնցմէ տարակարծիք է Անգեղոս Ռոքքա, որ միայն հայ այբուբենից հեղինակ եւ գտիչ կը համարի զՈսկեբերան։ Մենք բաւական կը սեպենք, կ՚ըսէ, յիշեցընել թէ Հայք զպատուականագոյն գանձ աստուածային տառից ոչ միայն ունին, այլ եւ կը պանծան. եւ Ոսկեբերանի, Գրիգորի Նազիանզացւոյ եւ այլոց բարերար թարգմանութեամբ՝ փրկագործ հաւատոց մէջ հաստատուած են։

« Այս Թարգմանութիւն մեծապէս կը գրուատի ի զանազանից, և կը գտնուի յայլևայլ տեղիս և ի մատենադարանս Եւրոպիոյ։ Կը յիշատակէ զայն՝ Նուիրական Հնութեանց անխոնջ խուզարկուն Աթանաս Քիրխէր, և կ'աւանդէ թէ ընտիր գրչագիր մը սուրբ Գրոց Հայ Թարգմանութեան պահուած է ի Վատիկանեան գրատան. և անուանին Հոտտինկէր կը գրուցէ թէ այլ և այլ օրինակք աւետարանաց և սաղմոսաց կը գտնուին յՈքսոնեան գրատան։ Պաւարիոյ մատենադարանին մէջ ալ յոյն գրչագիր մը կայ, կ'ըսէ, յորում այսպիսի ինչ կ'աւանդի, թէ Թէոդոսի Թագաւորութեան ատեն, երբ Պարսից վրայ կ'իշխէր Վռամշապուհ, և բնակիչք Հայաստանի գիտակ էին յոյն լեզուի, գտնուեցան ոմանք որ սրբոյն Գրիգորի կարգադրածին հակառակ՝ զսաղմոսարան և զեկեղեցական երգս թարգմանեցին ի հայ։ Զոր երբ լսեց կայսրն Թէոդոս, յանդիմանեց զՀայս որ ի սրբոյն Գրիգորէ աւանդուած պատուիրին հակառակեր էին »։

Վեցերորդ և վերջին գլխոյն մէջ երկու նախադասութեամբք կը զբաղի։ Առաջին թէ հայ եկեղեցի իր այսօրուան դիրքովը և վարդապետութեամբ՝ արդեօք հերձեալ կը համարուի՞։ Երկրորդ՝ թէ առ ո՞ր եկեղեցի կը միտի։

Առաջին նախադասութիւնը կը մերժէ, տալով հայկական եկեղեցւոյ ուղղափառ դաւանութեան վկայութիւն, զանազան հաւաստիք և ընծայութիւնք մէջ բերելով, և ջանալով օտարացուցանել զՀայս և զվարդապետական նոցա ի Հռովմայ, և մերձեցընելով առ կրօնական վերանորոգութիւն, որում կը պատկանէր, ըսինք, հեղինակն։ Նոյնը աւելի բացայայտ կը քարոզէ երկրորդ նախադասութեան լուծմանը մէջ։

## ԹԵՍԷՈՍ ԱՄԲՐՈՍԻՈՍ

*Թէսէոս Ամբրոսիոս փաւիացի հետամուտ և հմուտ էր* (1469–1540) *արեւելեան լեզուաց, և որոց ուսումը արեւմտից մէջ մտցընելու և ընտանեցընելու վախճանաւ,* 1539 *թուականին երկասիրութիւն մը հրատարակեց ի Փաւիա հետեւեալ խորագրով.* – Introductio in Chaldaicam linguam, Syriacam atque Armenicam et decem alias linguas. Characterum differentium alphabeta, circiter quadraginta, et eorumdem invicem conformatio. Theseo Ambrosio ex comitibus Albonensii F. V. Doct. Papien. Canonico Regulari Lateranensi, a Sancti Petri in Celo Aureo Papiæ Prepositu Authore. MD. XXXIX.

*Ինչպէս ճակատն կը ցուցընէ, արեւելեան լեզուաց ուսման ծառայելու նպատակաւ յօրինուած է այս մատեան, չենք կրնար ըսել թէ ո՛րչափ և որպիսի՛ արգեամբք, և յորում կարեւոր մասն մը կը գրաւէ նաեւ հայկականն. և առաջին փորձ մը կը համարուի, արեւմտեայց ծանօթացընելու զայն: Աշխատասիրողն, գէթ իր դարուն մէջ և ժամանակակցաց առջեւ, բաւական հռչակ և անուն ունեցող անձ մը կը թուի. որոյ հաւաստիք պէտք է սեպուին, ի սկիզբն տպագրիս գրուած բազմաթիւ վերտառութիւնքն և քերթուածք, ի դրուատ և ի գովեստ իր հմտութեանն. բարեկամ և թղթակից էր մեծահամբաւ Փոսթէլի արեւելագիտի գաղղիացւոյ:*

*Ի խորագրին յիշատակուած երկու արեւելեան լեզուաց, ինչպէս նաեւ հայկականիս քերականական ուսումնասիրութիւն մ՚է այս գրութիւն:* — *Յէջն* 16–20 *կը խօսի մեր ձայնաւոր տառից վրայ* (De Armeniorum

vocalibus), ինչպէս նաեւ ուրիշ արեւելեան լեզուաց՝ մասնաւոր ու առանձին գլուխներով։ Աստ յ՚էջն 142–193 երկար գլուխ մը Զրուցք Հայոց, Ներածութիւն (De Armeniorum literis, et introductione) զայն կոչելով, և նախընթացաբար պատմական տեղեկութիւն մի դնելով Հայաստան աշխարհի վրայ. « Ասիոյ գաւառ մ՚է, կ՚ըսէ, ի մէջ Տաւրոս և Կաւկաս լերանց, ծանօթ՝ ինչպէս կը համարինք, անոնց որ հետամուտ են արտաքին մատենագրաց գրուածներուն, և հին և նոր սրբազան կտակարանաց։ Թողլով զՊտղոմէոս։ Սոլինոս, Ստեփանոս, Լուկանոս, Ծննդոց գրոց ութերորդ գլխոյն մէջ կը կարդանք թէ յեօթներորդ ամսեան ջրհեղեղի՝ հանգեաւ տապանն ի լերինս Արարատայ. այսպէս նաեւ ի գիրս չորրորդ Թագաւորութեանց, թէ երբ Սենեքերիմ ասորեստանեայց թագաւոր յետ պարտութեանն յիսրայէլացւոց դարձաւ ի Նինուէ, և պաշտօն և զոհս կը մատուցանէր աստուածոյն Նեսրաքայ, Ադրամելէք և Սանասար որդիքը սրով զարկին զնա և սպանին, և ինքեանք փախան յերկիրն Հայոց. թէ յայնմ աշխարհի են Տիգրիս և Երասխ, և Լուկանոս կ՚ըսէ իր վեցերորդ գրոց մէջ թէ « Հռովմայեցին կը խմէ Հայաստանի Երասխայ ջրէն »։ Հայաստան ի ժամանակուս, կ՚ըսէ, կը հնազանդի թագաւորին Պարսից, որ Սոֆի կը կոչուի. իսկ հոգեւորական գլուխն է Սիմոս (?) պատրիարք, որ Հնդկաստանի նախագահին՝ Յովհաննու քահանայի կը հնազանդի։ Վերջի ատեններս, կ՚ըսէ, Թուրքք տիրեցին Դավրէժ (Troisan) մեծ քաղաքին, ու սրով և հրով կործանելով զայն՝ բոլոր քրիստոնեայ բնակիչներն՝ քառասուն տարուընէ վեր եղողներն խողխողելով, մնացածներն ալ գերեցին կամ վաճառեցին։ Քաղաքին բնակչաց անուանիներէն մին՝ Յովհաննէս անուն, Պաւղոս քահանայապետին ոտքը գալով՝ իր գթութիւնն ու պաշտպանութիւնն խնդրեց դժբաղդ հայրենակցացն համար։

Հայոց տառից թիւը երեսունուինն կը դնէ Թեսէոս,

նշանակելով անոնց ձեւերն ու հնչմունքը, թէ արեւմտեան և թէ արեւելեան տառադարձութեամբ. զոր օրինակ՝ բէն գրին դիմաց կը դնէ եւրոպական տառիւք թէ byen և թէ pyen. գիմ տառին՝ giem և chiem, դային դիմաց da և ta, և այլն:

Ապա առանձին գլուխներով «Ցուցակ բաժանման հայ-կական տառից. — Ցուցակ բաժանման բաղաձայնից. — մասնաւոր գլխակարգութիւն մը ի սուրբ գրոց քաղուած հերբայեցի բառից և անուանց՝ դիմացնին նշանակելով համանիշ հայ բառն և անունն, և անով գաղափար մը տալ ուղելով եւրոպացւոց՝ հայ բառերու հնչման: Ասանկ՝ օրինակի համար, կը դնէ հայ տառերով Աբամ բառն, և յետոյ այդ եբրայական անուան տրուած այլեւայլ նշանակութիւնք՝ նախ հայ և ապա նաեւ լատին տառիւք: Խօսի նաեւ անոնց տառադարձութեան վրայ: Այսպէս ալ հայ տառից, յայբէ մինչև ի վերջինն, յարմար կամ անյարմար, իմաստուն կամ իմաստակ անդրադարձութեանց նիւթ կ'առնու ու կը ճառէ վրանին, այլեւայլ օրինակներով կամ հայագիր բառերով: Մէջ բերուած օրինակներն ընդհանրապէս ի սուրբ Գրոց առնուած են, մանաւանդ ի Նոր կտակարանէ. բայց մերթ ալ ի Հընոյն, ինչպէս նաեւ ի հայ թարգմանութենէ Պորփիւրի գրոց:

Ի վերջ գրոցն զետեղուած են տէրունական աղօթքն, նախ ի քաղդէական լեզու, ապա ի հայ և յատինի. նոյնպէս նաեւ հրեշտակային ողջոյն, մեծացուցէ օրհներգութիւն և այլն:

# ԱԿՈԼՈՒԹ ԱՆԴՐԷԱՍ

*Գերմանիոյ մէջ՝ հայկական ուսմանց առաջին սկզբնաւորութիւնն եղած է հաչականուն արեւելագիտին Անդրէի Ակոլութի ձեռքով, որ ի* 1654 (6 *մարտ*) *ծնած է ի Բռեսլաւ, և մեռած ի* 1704 (4 *Նոյեմբերի*)։ *Կենսագիրքը՝ իբրու զարմանալիք մը կը ներկայացընեն զինքը ի յիշողութեան. և թէ վեցամեայ հասակին՝ արդէն իր ամէն ուղածը կրնար բացատրել հերրայական լեզուով։ Շարադրած գլխաւոր գրքերն, որ արեւելեան մատենագրութեան կը վերաբերին, երկուք են. առաջինն՝* **Քառալեզու** *կուրանք* Τετραπλα alcoranica, sive specimen Alcoram quadrilinguis; arabici, persici, turcici et latini, *տպագրեալ ի Պերլին* (1701), *և յիսուն և եօթն էջերու մէջ ամփոփուած ճաշակ մը արաբական օրինագրքին. որոյ ամբողջ թարգմանութիւնն ալ կ՚ուզէր ընել և հրատարակել Փրեդրիկ Գ կայսրընտիր իշխանին ծախքովը։*

*Երկրորդ գրուածքին հայ և լատին խորագիրն է.* **Աբդիաս Հայերէն.** Obadias armenus, quo cum analisi vocum armenicarum grammatica et collatione versionis armenicæ cum fontibus aliisque maximum partem orientalibus versionibus exhibetur primum in Germania specimen characterum armenicorum in celeberrima academia Lipsiensi procuratorum a M. Andrea Acolutho Vratislav. Siles. Anno epochæ Messianæ MDCXXC Armenorum MCXXIV. Lipsiæ, typis Justiniani Brandi.

*Երկար ուղերձիւ մը կը սկսի, նուիրելով* Inclytæ Cesareæ Reipublicæ Vratislaviensis, *յիշատակելով արեւելեան լեզուաց ուսումնասիրութեան վիճակը յՆ-*

րոպա, և մանաւանդ ի Գերմանիա յառաջ քան զ1680․ թէ սակաւաթիւք էին անոնց հետամուտքը, աւելորդ ու գրեթէ վնասակար համարելով այդ ուսմամբք պարապիլը․ և թէ ինչպէս երեսի վրայ էին երրայեցի, ասորի, քաղդէական, արաբ, եթովպացի, պարսիկ և թուրք լեզուք։ Իսկ հայկական լեզուի համար կ'ըսէ թէ «ցայսօր արտաքսուած էր այն ի Գերմանիոյ»․ (At enim vero exul atque extorris in hunc usque diem è Germania fuit armenorum lingua)․

Գրուածքն՝ ինչպէս անուննէն ալ յայտնի է, Աբդիու մարգարէութեան հայկական ու անոր Ակոլութի ձեռքով եղած լատին թարգմանութիւնն է, իբրև նմոյշ մը մեր նախնեաց ոսկեղէն թարգմանութեան, որ այն ատեններն կը սկսէր ծանօթանալ արևմտեան գիտնոց, և իրաւամբ իւր վրայ կը հրաւիրէր ամենուն մտադրութիւնը։ — Էջք տպագրին՝ յառաջնոյն մինչև ցեօթներորդն՝ երեք սիւնակաց բաժնուած են․ յորս առաջինն՝ հայ ընթերցուածին՝ լատին տառերով փոխագրութիւնն է․ երկրորդն՝ հայերէն լեզուով և տառիւք, իսկ երրորդն՝ լատին թարգմանութիւն։ Յ'7 էջէն ց'53 քերականական մանրամասն վերլուծութիւն մը կը բովանդակէ և բացատրիչ ծանօթութիւններ․ իսկ երեք վերջին էջք՝ կը ներկայացընեն զհայ այբուբեն և անոնց զօրութիւնը։

Թեսէոս Ամբրոսիոսի և Ռիվոլայի հետեւողութեամբ՝ որպէս զի այս ձեռնարկին մէջ կարող ըլլայ յաջողիլ, մասնաւոր հայկական տառեր փորագրել և ձուլել ստիպուեցաւ շատ ու ծանր ծախքով։

Ակոլութ սորված էր ուրիշ բազմահմուտ արեւելագիտի մը քով, Աւգոստեայ Ֆայֆէր (1640–1698), որ նախ ի Վիւրթէմպէրկ և ապա ի Լայպցիկ ուսուցիչ էր աստուածաբանական ուսմանց։

Ժամանակակիցքը կը կոչեն զԱկոլութ՝ ամենահմուտ հին եգիպտական և հայ լեզուաց և իմաստութեանց․ (lingua et sapientia ægyptiaca et armenorum potis-

simum linguæ restituta)։ Ուզած է ապացուցանել թէ հայերէնը հին եգիպտական լեզուի հետ յարակցութիւն և նմանութիւն ունենալով, պէտք է որ անկէ յառաջացայ։ Բայց բանասէրք ժամանակին, ինչպէս Սպանհէյմ և Լայպնից, չհաւանեցան իր այս կարծեաց։ Նամակ մ'ալ ունի առ Լուդուիկ Փիքէ՝ Սորպոնի աստուածաբանն, գրեալ ի Վրատիսլաւէ (26 մայիս 1696), յորում կը յիշեցընէ նմա թէ ինն տարի յառաջ (1687) գրած ըլլայ առ ինքն՝ որ թէպէտ փարիզացի՝ բայց լատինականին հաւասար գիտութեամբ կը գրէ, կ'ընթեռնու և կը խօսի հայերէն լեզուով։ (Parisinus scribit, legit, audit, loquitur scilicet armenice, quasi latina legat).

Մեզի համար նոր է այս ծանօթութիւնը, թէպէտև յայլուստ գիտենք Փիքէի մեծարանքն և մեծ համարում սուրբ Գրոց հայ թարգմանութեան վրայ։

Աբդիու գրոց և Ակոլութի վրայ տեղեկութիւններ կրնան գտնել խնդրողք Marsch. *Bibliotheca Sacra*. — Nova Acta hist. eccles. — Chambers, *Biographie*. — Allgemein - Geshrten Leicon․ Փոքր հանդիսի (Ա․ Տարի), և ուրիշ զանազան գրուածոց մէջ։

## Հ․ ՊՐԷՆՆԷՐ

Վխտանեանց Խորենացւոյ պատմութեան լատին թարգմանութենէն քանի մի տարի յառաջ անոր համառօտութիւնն ալ ընծայեցաւ նոյն լեզուով ի Ստոքհոլմ Շուետաց՝ Հենրիկ Պրէնների ձեռքով։ Շուետացի էր սա, ծնեալ ի 1669։ Կարոլոս Ժ դեսպան մը ուղեց ղրկել ի Պարս՝ վաճառականական փոխախակի յարաբերութիւններն կարգի դնելու նպատակաւ։ Պրէններ արքունի հրամանաւ ընկերացաւ դեսպանին։ Ի դարձին պատե-

բազմ հրատարակուած ըլլալով ընդ Ռուսս և ընդ Շուէտս, մեծին Պետրոսի հրամանաւ կալանաւորեցաւ ի Մոսկուա, և միայն խաղաղութեան դաշնադրութեանը հաստատուելէն ետքը կրցաւ ազատութիւնը ձեռք ձգել (1721)։ Դառնալով ի Շուէտս, արքունի մատենադարանապետ անուանեցաւ, ու մեռաւ ի 1732։ Իր լեզուով շարագրած է Տեղեկագիր մը Պետրոսի մեծին արշաւանաց ընդդէմ Պարսից, և լատինական համառօտութիւն մը, ինչպէս ըսինք, Խորենացւոյ պատմութեան գրոց, ծանօթութեամբք՝ որ և տպեցաւ ի Ստոքհոլմ (1723)։ Առաջին թարգմանութիւնն էր այդ թանկագին երկասիրութեան. Պրէննէր այս գրուածը շարադրեց երբ ի բանտի էր յաշխարհին Ռուսաց՝ այն համառօտութեան վրայէն զոր կրօնաւոր ոմն Դոմինիկեան ըրեր էր ի Հռոմ ի վանս սրբոյն Սաբինայ ի 1699 թուականի, որոյ հանդիպեցաւ Պրէննէր ի Սպահան, և իրմէ ընդունելով օգտուեցաւ յիւրում հրատարակութեան։ Թարգմանութեանս լատին խորագիրն է. Epitome commentariorum Moysès Armeni de origine et regibus Armenorum et Parthorum; (breviori stylo compositum per Joannem Bartholomeum a Sancto Hyacintho); item serius principum Iberiæ et Georgiæ: cum notis et observationibus Henrici Brenneri. Accessit ejusdem epistola ad Dr Ericum Benzelium, de presenti statu quarundum gentium orientalium. Stockholmine, 1723. in 4. էջք 108։

Մենք այս երկասիրութեան անուամբ եւեթ ծանօթ ըլլալով, առ այժմ չենք կարող աւելի ընդարձակ տեղեկութիւն մը տալ՝ յառաջաբանին և ծանօթութեանց պարունակութեան։ Փափաքելի է որ փնտռուի ի մատենադարանս Փարիզի, Լոնտոնի և մանաւանդ երկասիրողին հայրենեաց, և բանասիրաց հաղորդուի։ Այսչափ միայն ըսենք որ փափաքողք կրնան այս գրոցս ծանուցման և քննադատութեանց ծանօթութիւն առնուլ՝

եթէ յաջողին ձեռք ձգել, Acta eruditorum Lipsiensium ab an. 1682 ad an. 1731. տպագրեալ ի Լայպցիկ ի յիսուն հատորս. ուր ի հատորն 1724 տարւոյ յէջս 436–9 Պրէննէրի գրոց վրայ տեղեկութիւն մը կայ։ — Նոյնպէս ի գիրսն Acta literaria Sueciæ, յամի 1727 յէջս 457։

Քիչ յառաջ յիշուած Դոմինիկեան Բարթուղիմէոս կրօնաւորն, Պրէննէրի աշխատակից, կը գրէ առ նա ի 1669 (յապրիլի), ի Սպահանէ, մանրամասն ծանօթութիւններ տալով նմա զվանորէից գաւառին Նախիջեւանու, և զվանորէից զոր արեւմտեայք ունէին ի Հայս, ի Վրաստան և ի Պարսկաստան. զորս տասնըչորս կը գնէ թուով. և իր ուխտակցաց համար կ'ըսէ թէ վանք մը ունէին ի Սպահան, ուր կը գտնուէր նաեւ միաբան մի յԱպարաններոյ։

## Մ. Վ. ԼԱՔՐՈԶ

Գալանոսէ ետքը յարատեւութեամբ հայկական լեզուի պարապող արեւմտեայց մէջ կը գտնենք զԼաքրոզ։

Մաթիւրէն Վէյսիէ տը Լաքրոզ, բազմահմուտ ու բազմաջան արեւելագէտ, ծնած է ի Նանթ Գաղղիոյ (1661, դեկտ. 4). հարուստ ծնողաց որդի, որուն ուսումնական դաստիարակութիւն մը տալու նպատակաւ ամենեւին ծախուց չխնայեցին։ Այնչափ դիւրութեամբ սորվեցաւ նա զլատին լեզու, որ կը խօսէր ու կը գրէր համարձակ այն հասակին մէջ՝ յորում այլք իր ուսումնակիցք և հասակակիցք՝ հազիւ թէ ընդելացած կ'ըլլային լեզուին կանոնաց։ Մեռաւ ի 1719։

Բազմաթիւ երկասիրութեանցը մէջ՝ անոնք միայն յիշատակենք որ մեր լեզուին և մատենագրութեան կը վերաբերին։

**Պատմութիւն քրիստոնէութեան յԵթովպիա և ի Հայս.** (Histoire du Christianisme en Ethiopie et en Arménie)։

**Գանձ Լաքրոզեան Նամակաց** (Thesaurus epistolicus Lacrozianus), *երեք հատոր, տպագրեալք ի Լայպցիկ, 1762–46, յորս շատ տեղեկութիւնք և ակնարկութիւնք կան մեր լեզուին և մատենագրութեան պատկանաւորք*։

**Բառարան հայ լեզուի**, *ձեռագիր, և որոյ վրայ տասուերկու տարի աշխատած է*։

*Ասոնցմէ աւելի մեզի համար հետաքննականն է ենթադրեալ* **Ստեփաննոսի Սիւնեաց** *կամ* **Օրբէլեանի Պատմութեան Մնացորդաց**, *որոյ վրայ քիչ մը եսքը*։

*Բարեկամ և թղթակից էր Լաքրոզ իրեն ժամանակակից ուսումնականաց շատին. սանկ Սպանհէյմ, Պայլ, Լանֆան, Լէյպնից, Կուփեր, Յ. Ալբ. Փաբրիկիոս, Վոլֆ և այլք*։

*Ասոնցմէ մին*, Գ. Կ. *Գոեթիոս*, (Goethius), *կը գրէ առ նա ի Լայպցիկէ յամի* 1717, *Ակոլութոսի՝ միւս այլ հայագիտի, զոր յիշեցինք, մահուընէն եսքը, մոտը գտնուած արեւելեան ձեռագրաց հաւաքման վրայ համառօտ տեղեկութիւն մը տալով, և կը յաւելու. « Ասոնց մէջ հայկական լեզուով գիրք մ'ալ կայ, զոր իր պարունակած նիւթոյն համար շատ պիտանի կը համարէիր, և եթէ յիշողութիւնս զիս չխաբեր՝ քանի մը թերթերն ալ թարգմանութեամբ համառօտած էիր։ Եթէ կ'ենթադրես թէ այդ գրուած կարող ըլլայ օժանդակութիւն մը ընծայել քու Հայոց պատմութեան նկատմամբ ըրած հաւաքմանդ, իմացու ինձ. և ես յօժարամիտ կուտամ որ գործածես զայն, ինչպէս նաեւ մեր մատենադարանին մէջ գտնուած ուրիշ որ և իցէ գիրք »*։

*Թէ ինչ էր Լաքրոզի աշխատասիրած այս հաւաքմունք, զոր թղթակիցն կը յիշէ, չենք կրնար որոշ բան մը ըսել, որովհետեւ տպագրուած չըլլալով՝ անծանօթ մնացած կամ անուամբ միայն յիշուած երկասիրութիւն մ'է*։

Այնչափը միայն կրնանք ըսել, քաղելով նոյն իսկ իւր նամակներով տուած տեղեկութիւններէ, թէ նոյն միջոցին կը պարապէր նա Ստեփաննոսի Սիւնեցւոյն անուամբ իր ձեռքն հասած պատմական երկասիրութեան մը լատին թարգմանութեամբ: Ինքն Լաքրոզ՝ 1717 ին առ Թէոփիլ Պայէր գրած նամակին մէջ յիշատակութիւնը կ'ընէ անոր քով գտնուած այս գրքին, Ստեփաննոսի Սիւնեցւոյ Պատմութիւն Օրբէլեան նախարարաց կոչելով զայն, և փափաք կը յայտնէ որ գէթ քիչ ատենուան համար իրեն յանձնուի ի հետազօտութիւն *:

Ակոլութի քով գտնուած գրչագրին վրայէն՝ Լաքրոզ ըրած է իւր թարգմանութիւնը ի վեցերորդ գլխոյն, և որ հրատարակուած է ի չորս թղթակցութեանցն ընդ վերոյիշեալ Թէոփիլի Պայէր, աւելցընելով նոյն գրքէն նաև քանի մը հատուածք, յորս կը խօսի հեղինակն զԹաթարաց: Այս զանազան քաղուածք, ատեն անցնելէն ետքը, կրկին տպագրուեցան առանց որ և իցէ փոփոխութեան, ի 1810 ի Ս. Պետրբուրգ, այսպիսի խորագրով. Excerpta ex libro Stephani Synensis, archiepiescopi, scripto sub finem sæculi XIII, cui titulus est Պատմութիւն Օրպէլեանց (Badmutiun Orbeleanzz), Hystoria Satraparum Or elensium in majore Armenia: à M. V. Lacrozio, Bayero tranmissa. Կը գտնուի դարձեալ նոյնը տպագրեալ յառաջին և ի միակ տետրակի արեւելից վերաբերեալ հաւաքման մը, զոր միտք ունէր Յ. Կլափրոտ շարունակաբար հրատարակել, և որ կը կոչուէր; Arkbiv für Asiatische litterature, geschichte und sprachkunde, erster band; p. 114–118:

Առ նոյն Պայէր գրած նամակաց այլեւայլ հատուած-

* Utinam tamen uno aut altero è numero librorum Armenicorum, quos istic perlustravi, mihi per brevissimum temporis spatium usura concederetur. Inde, ut nosti, descripsi olim *Stephani Synensis histor am Satraparum Orpelensium*, libellum quantivis pretii.

ներէն յայտնապէս կ՚երեւնայ որ Լազրոզ մեծ կարեւորութիւն կուտար Օրպէլեանց պատմութեան հրատարակութեան, և թուի թէ ամբողջ թարգմանութիւնն ալ պատրաստած էր։ Եւ թէպէտ հեղինակը, կ՚ըսէ Սէն-Մարտէն, այնչափ կարգաբան չէ իր պատմութեանը մէջ, զանազան պարապներով (lacune) յաճախ կ՚ընդհատի, սակայն կը կարծենք թէ արժանաւոր է Լազրոզի յարգանաց, և շատ կերպով կրնայ օգտակար ըլլալ Ասիոյ ընդհանուր պատմութեան, ոչ միայն Օրբէլեանց տոհմին վրայ գրածներովը, որ ուրիշ տեղ չեն գտնուիր, այլ նաեւ Մողոլաց աշխարհակալութեանց պատմութիւններով, ու Վրաստանի մէջ հանդիպած յեղափոխութիւններով, որոց տարեգիրք սակաւածանօթք են մեզ։ Ուստի արեւելաբանք մեծ ծառայութիւն մը ընել կը համարինք նոյն պատմութեան բովանդակ բնագիրն ու թարգմանութիւնը հրատարակելով։ Հայկական առաջին սկզբնագիրը պիտի ըլլայ այն Գաղղիոյ մէջ ամբողջապէս հրատարակուած, հանդերձ գաղղիական թարգմանութեամբ»։

Այսչափ Սէն-Մարտէն։ Մենք աւելցընենք որ թէ ինքն և թէ Լազրոզ սխալեցան Ստեփաննոսի Սիւնեցւոյ երկասիրութիւն ենթադրելով զայն, համանուն և բոլորովին տարբեր գրութիւն՝ գեռ այն ժամանակ բանասիրաց անծանօթ, իսկ հիմայ ծանօթ ամենուն։ Լազրոզի և Սէն-Մարտէնի թարգմանութիւնը՝ բոլորովին տարբեր հեղինակի մը գործ է, և վրիպակաւ ի Լազրոզէ, որոյ կարծեաց հետեւող եղած է և Սէն-Մարտէն՝ Ստեփաննոսի Սիւնեցւոյ ընծայուած։ Պատմութիւն Մոնղոլաց խորագրով տպագրութիւն մ՚ալ կայ գրուածիս ի Մադրաս 1775։ Սոյն թարգմանութիւնն է զոր ամբողջովին գաղղիական թարգմանութեամբ ընծայեց Սէն-Մարտէն։



Ուրիշ երկասիրութեամբ մ՚ալ կը պարապէր ի ժամանակին Լաքրոզ, — Խորենացւոյ պատմական գրուածքովը՝ — յառաջ քան զՊրէններ և զՎիստոնեան եղբարս. և յաճախ կը հանդիպինք որ իր բանասէր և բանիբուն բարեկամք՝ առ նա ինքն ուղղած նամակներուն մէջ, և Վիստոնեանք մանաւանդ, իր կարծիքն կ՚ուզեն իմանալ այդ գրուածին վրայ՝ զոր միտք ունէին լատինական թարգմանութեամբ ծանօթացընել Եւրոպիոյ։

Գէորգ Վիստոն արդէն ճաշակ մը իրենց թարգմանութեան ղրկած էր առ նա, և ի 1730 ի Լոնտոնէ կը գրէր. « Հաճութիւն չես ցուցըներ մեր դիտաւորութեան՝ Մովսիսի ———դէլւոյ ի լատին թարգմանութեան։ Մեծարելով ալ քու դատաստանդ, աւելի չափաւոր ենք ի մեր կարծիս։ Ցամենայնի ջատագով չենք Խորենացւոյն պատմագրութեան. որ եթէ յաճախ առասպելախառն, սակայն ոչ միշտ անօգուտ և խոտելի։ Մեր խորհուրդն և մտածութիւն է՝ նախնի մատենագրաց գրուածներն հաւատարմութեամբ ի լոյս ընծայել, և մեր կրցածին չափ՝ այդ նորագիւտ և հաճոյական պատմութիւնը հմտից խորհրդածութեանց ենթարկել. որպէս զի անանկով թէ հայկական ուսում բարգաւաճի, և թէ ուրիշ գրքերու ալ, նաև աստուածաշունչ գրոց թարգմանութեանը քննութեան, որոյ յարգը մեզմէ աւելի կը ճանչնաս ու կը մեծարես, դուռն բացուի ուսումնասիրաց։ Խորենացւոյ վրայ, — որովհետև քան զամենայն սիրելի է մեզ ճշմարտութիւն, — միտք ունինք համառօտ ծանօթութիւններ աւելցընել, որոնք կրնան ծառայել թէ իր պատմութեան զանազան տեղերը լուսաւորելու, և թէ միանգամայն անընդունելի համարուածներն մերժելու։ Այս նպատակիս հասնելու համար՝ մեծապէս օգտակար և հաճոյական պիտի ըլլան մեզ այն տեղեկութիւններ զոր

խոստացար յղել · քու աշխատասիրած Մովսէսցւոյ գրոց, Հեթմոյ և Ներսիսի մեկնաբանութեանց հետ՝ փափաքելի է մեզ գիտնալ Խորենացւոյ մէջ գտնուած քանի մի անիմանալի բառից ճիշդ նշանակութիւնն ալ » ։

Լաքրոզ նոյն 1730 ի 20 ապրիլի գրած նամակաւ առ Գուլիելմ Վիստոն, հարցանէր բարեկամին հետեւեալ տեղեկութիւնները կուտար · « Խորենացւոյ վրայ իմ կարծիքս կ՚ընթեռնուս ի ծանօթութիւնս վիպասանական քերթուածի Կլայեցւոյն Ներսիսի ։ Միայն քանի մը խօսք աւելցընեմ ։ Կը համարիմ թէ այդ պատմութիւնը շարագրողը ապրած ըլլայ ի միջոցի իններորդ և տասներորդ դարուց, յաւուրս Բագրատունի իշխանաց, որ մեծ ազդեցութիւն ունէին յայնմ ժամանակի, և իշխանք էին բովանդակ Հայաստան աշխարհի ։ Կը կարծեմ դարձեալ թէ զինուորական անձ մը եղած ըլլայ · զի համառ և յայժ ճշգրիտ կը գտնեմ զնա ի նկարագիրս մարտից և պատերազմաց · ինչպէս կը նկատես որ ի լուսանցս գրոցն տեղ տեղ նշանակած եմ ։ Կը յղեմ նաեւ Ներսիսի Կլայեցւոյ Ցէ[illegible] ուղէ վիպասանական քերթուածը, զոր մասնաւոր մտադրութեամբ կը յանձնեմ. սակաւագիւտ գրութիւն մ՚է, և ինձ մեծապէս սիրելի » ։

Վիստոնի խնդրանաց համեմատ՝ իրենց անծանօթ կամ անիմանալի կարծուած Խորենացւոյն քանի մի բառից ալ նշանակութիւնը կուտայ ։ Այս ծառայութեան մէջ ալ յաճախ կը սխալի Լաքրոզ, յայտնելով իր ոչ այնչափ հմտութիւնը ի հայ լեզուի · ուր Վիստոնեանք մեծապէս օժանդակուած կ՚երեւնան ի Նուրիջան Ղուկայ՝ մեզի արդէն ծանօթ և ճարտար տպագրչէ Ամստերդամի ։ Աւելորդ կը սեպենք օրինակներ մէջ բերելը ։

Քանի մը տարի ետքը գրուած նամակի մը մէջ (1735 յունիս 19), յառաջ քան զհրատարակութիւն պատմութեան Խորենացւոյն, կը գրէ նոյն Գէորգ Վիստոն · « Խորենացւոյ վրայ՝ երկու կողման պատճառներն ալ խնամքով կշռելով, համառօտիւ յայտնեմ կարծիքս ։ Մե-

զի կ'երեւնայ թէ բաւական հմտութիւն ունեցող մատենագիր մ'է, դիւրահաւատ քան քննադատ, և այլոց երկասիրութիւններէն օգտուելով յօրինած է զիւր պատմութիւն. հաւատարիմ և խոհական, սակայն յաճախ անստոյգն ու վրիպականն իբրեւ ճշմարիտ աւանդելով։ Հինգերորդ դարու մէջ ապրած է. և չկայ պատճառ մը յետագայ դարուց մէջ զինք դնելու. ուր ամենայն ազգային մատենագիրք, և ի մասնաւորի Շնորհալի իր վիպասանականին մէջ կ'ընդունին այդ դարուն մարդ ըլլալը »։

1731 յուլիս Թուականաւ ալ կը գրէ առ Լաքրոզ. « Ինչ որ քու աշխատասիրած Կլայեցւոյ վիպասանական քերթուածոյն և Խորենացւոյ պատմութեանց ծանօթագրութեանց համար նշանակեցի, չեմ ուզեր որ կարծես թէ այն մտքով գրած ըլլամ՝ իբրու թէ ինք զինքս բաւական սեպելով այսպիսի խնդրոց մէջ հետդ ասպարէզ իջնելով վիճաբանելու։ Այլ միայն ճշմարիտն որոնելու և անոր խելամուտ ըլլալու դիտմամբ. ու իբրեւ մոլորահետ ի ճանապարհէ՝ քեզ և այլոց հետեւիլ։ Յայսպիսիս և ուրիշ յոր և իցէ հետազօտութիւնս՝ միայն զճշմարիտն և զստոյգն արժան է փնտռել, ինչպէս և դու զնոյն գործես »։

1735 յուլիս 13 գրած թղթով մ'ալ կ'իմացընէ Լաքրոզի թէ Խորենացւոյն պատմութեան իրենց ձեռքով լատինական թարգմանութիւնն արդէն հրատարակուելու վրայ է, և համառօտիւ ծանօթութիւն կուտայ ի գլուխ գրոցն դրուած յառաջաբանին պարունակութեանը։

*
* *

Վիէննայի կայսերական մատենադարանին մէջ գրչագիր հաւաքածոյ մը կը պահուի Լաքրոզի ընդօրինակութեամբ, (Cod. Arm. 22), գրեալ ի Պերլին և հոն Թագաւորական ձեռագիրներէ օրինակած։ Բայց ի գրչա-

գրաց՝ յորոց հաւաքումն եղած է, յիշատակարաններէն, տեղ տեղ կը հանդիպինք նաեւ Լաքրոզի գրածներուն ի հայ լեզու և ի գիր. այսպէս յէջ 340. « Ես ես Մատուրինոս Վըիսսերը Լակրոզը Նաննետացի զայս աւետարանագիր տարագրեցի Բերլին մայրաքաղաք, առեալ ի ձեռագրեալ մատենէ, որ ի թագաւորական գրատանպահի. Յամի Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՉԺԴ (=1714) ի Մարտ ամսոյ է »։ Նոյն յիշատակարանը նման խօսքերով, միայն թուականաց տարբերութեամբ, կը կրկնուի սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի և Նիկողայոսի հայրապետի վարուց պատմութեան վերջը։

Ուրիշ գրչագիր Հ[illegible] մ'ալ կայ նոյն կայսերական մատենադարանին մէջ, նոյնպէս գրչագրեալ ի Լաքրոզէ (Cod. Arm. 23). իր թարգմանութեանց, ծանօթութեանց և ընդօրինակութեանց հաւաքումը։

Յ'էջ 1–50. Շարադրութիւն Հոմերական, վիպասանութեամբ սակս Հայկազանց սեռի, և Արշակունեաց զարմի. ի սկզբանցն ի վախճան։ Ասացեալ Ներսիսի եղբօր կաթուղիկոսի Հայոց Տէր Գրիգորիսի յիւրականըս նախնիս. ի համրակութեան ելով տիս. — Compositio Metrica narrationis Historicæ de genere Armeniorum... Այսպէս բովանդակը հանդերձ լատին թարգմանութեամբ՝ վերնագիր դնելով Carmen historicum Nersis Patriarchæ. Գրութեան առաջին սիւնը հայ բնագիրն. երկրորդ սիւնը լատիներէն թարգմանութիւնն է։ Լաքրոզ՝ յիշատակագրութիւն մը կը դնէ ի լատին լեզու. Descripsi et in linguam Latinam converti ex editione Veneta Poematum Nersis, sive libri quem a primis vocibus Armenio appellant Յիսուս որդի Jesus ordi... Berolini A. D. N. I. C. MDCCXIII. Maturinus Veyssière La Croze.

Էջ 51–57. Carmen Historicum Haithonis, sive Հեթմոյ, Regis Armeniæ, editum in fine Bibliorium editionis Amstelodamensis A. C. 1666, ubi extat pa-

gina էջ 829; post Indices, latinitate donatum a me Maturino Veyssière La Croze. Վերնագիրն է. « Ոտանաւոր բարեպաշտի արքային Հայոց Հեթմոյ. « Որ ծառայեալս եմ բիւր ախտից » և այլն։ Սեան մէկը հայ բնագիրն, միւսը թարգմանութիւն։

Էջ 58–62. Additio Uscani de Festo Paschatis (Յաւելուած Ոսկանայ վասն տօնի Զատկին. և յետոյ այլեւայլ ծանօթութիւնք Լաքրոզի)։

Էջ 63–103. Annotationes in Carmen Historicum Nersis Patriarchæ (Ծանօթութիւնք ի վիպասանութիւնս Ներսիսի Հայրապետի)։

Էջ 104–122 Ad Carmen Haithonis Regis annotationes. (Ծանօթութիւնք յՈտանաւորն Հեթմոյ արքայի)։

Էջ 123–142 Appendix de reliquis Regibus Armeniæ Minoris (Յաւելուած վասն այլոց թագաւորաց Փոքուն Հայոց)։

Էջ 1 (նոր սկսեալ) 1–146. Յուցակ ազգաբանութեան թագաւորաց Հայոց Յովհաննէսի տէր Անւոյ և իշխան Հայոց Մեծաց։ Դիմացը լատին թարգմանութիւնն ի Լաքրոզէ, սիւն առ սիւն։

Էջ (նոր) 134–145. Excerpta quædam de statu Armeniorum, sub finem sæculi XIV, ex Historia Schildtbergeri germanice scripta. Միայն լատիներէն, երկսիւն գրութեամբ։

Էջ 146–180 Յաւելուածք։

Էջ 146–168. Հատուած յաշխարհագրութենէ Խորենացւոյ (Ա.-է.)։ Վերնագիր լատիներէն թարգմանութեան. Appendix altera in qua Miscellanea quædam Geographica utriusque Armeniæ et vicinarum regionum. Descriptio Asiæ ex opusculo geographico Mosis Choronensis editio Amstelodami 1668. Դիմացը սիւն առ սիւն լատիներէն թարգմանութեամբ։ Յետոյ յիշատակագրութիւն. « Տարագրեցի և թարգմանեցի ի Բերլին ես Մատուրինոս Վէյսիերը Լակրոզը։

Յամի Քրիստոսի ՌՉԺԳ (1713) ի Յունիս ամսոյ ի՟։ Նոյնը և ի լատին լեզու։

Յետոյ Լուսինեանց տոհմին վրայ հատուածք ի գրոցն Estienne de Lusignan, Histoire generale de l'ile et Royaume de Chypre։ – Նոյն գրքէն․ Généalogie des Princes d'Arménie Mineure. — Genéalogie des Roys d'Arménie, և այլն։ Իսկ ի վերջն (յէջ 180) քաղուածոյ յԱռաքել պատմագրէ *։

## Յ․ Յ․ ՇՐՕՏԷՐ

Ութեւտասներորդ դարուն մէջ երեւցած ամենէն աւելի նշանաւոր հայագէտն էր՝ Յովհան Յովակիմ Շրօտէր (Սկրոտեր), ծնեալ ի Նայքիրխըն որ ի լանդկրաւութեան Հէս-Գասսէլլի, ի 6 յուլիսի ի 1680․ ուսաւ զհեբրայականն և ուրիշ արեւելեան լեզուներ ի համալսարանին Մարպուրկի, Գէորգ Օթթոյ (1634–1713) ուսուցչին ձեռքին տակ, և որ յետոյ յանձնեց զինքը համբաւանուն Յովբ Լուտոլֆի փրանքֆուրթեցւոյ։ Հոն մասնաւոր ջանքով եռեւէ եղաւ Շրօտէր ուսանել զեթովպացին։ Լանդկրաւը 1707 ին դիւրացոյց Ութրեխթ երթալու միջոցները, ուր աշակերտեցաւ Ռէլի, Լէյտէքէրի և մանաւանդ Ռէլանդի, երեք անուանի ուսուցչաց։ Հոլանտա եղած ատեն իմացաւ թէ հայ արքեպիսկոպոս մը, Թովմաս Գողթնացի, իր քեռորդւոյն Ղուկայ Նուրիջանի հետ եկեր էր յԱմստերտամ, հայերէն լեզուով գրքերու հրատարակութեան նպատակաւ․ Շրօտէր՝ որ արդէն Մարպուրկ եղած ատեն սկսեր էր

* Տաշեան վարդապետին կազմած Վիէննայի կայսերական մատենադարանի գրչագրաց ցուցակէն քաղեցինք այս ծանօթութիւնները, որովք կը ստուգուին Լաքրոզի թղթակցութեանց մէջ յիշատակած աշխատասիրութեանց տեղեկութիւնները։

այդ լեզուին ուսմամբ զբաղիլ, փութաց երթալ յԱմբս-տերտամ՝ նոյն եպիսկոպոսին հետ ծանօթանալու համար։ Այս հմուտ ուսուցչին առաջնորդութեամբ՝ արագ ու մեծ յառաջադիմութիւն ունեցաւ. ու երբ երկու ամ-սէն Թովմաս ուզեց վերադառնալ ի Հայաստան, Շրօ-տէր փափաքեցաւ ընկերանալ նմա։ Լանդկրաւը արդէն համոզուած էր բանալ և դիւրել նմա զայն ուղեւորու-թիւն, երբ Թովմաս արքեպիսկոպոս յանկնկալս և ծանր խօթութեամբ անկողին ինկաւ։ Շրօտէր միայնակ գնաց յԱրխանկէլ և ի Մոսկուա, իրեն սպասելու դիտաւո-րութեամբ։ Ուր հասնելով՝ արքեպիսկոպոսին մահուան լուրն առաւ. բայց և այնպէս միտքը դրաւ շարունակել համբորդութիւնը Աստրախանի վրայէն։

Զկարենալով Ռուսաց կառավարութենէն մուից հրա-մանագիր ընդունիլ, բռնադատեցաւ Շրօտէր դառնալ միւսանգամ յԱմստերտամ, ուր իրեն բաղդովը՝ դեռ եւս կը բնակէր Նուրիջան. որով կրցաւ շարունակել իր ուսումը, և ունեցաւ խորհուրդ և կամք՝ հայ լեզուի քե-րականութեան ու բառգրքի մը յօրինման։ Քերականու-թիւնը ի լոյս չընծայած՝ ուղեւորութիւն մը ըրելով յԱնգղիա, ժամանակին ամենէն անուանի գիտնոց հետ ծանօթանալու պատեհութիւնն ունեցաւ, Պէնթլէյի, Հուստընի, և այլոց։ Գրուածքը հրատարակեցաւ յԱմս-տերտամ ի 1711, և խորագիրն է. «Արամեան լեզուի գանձ»; Hoc est: Joh. Joachimi Schröderi Thesaurus linguæ Armenicæ, antiquæ et hodiernæ, cum varia praxios materia.

***

Աւելորդ չենք համարիր մէջ բերել աստէն, մեր ժամա-նակը սակաւագիւտ սեպուած գրքիս բովանդակութիւնը ըստ գլխոց, համառօտելով նաեւ իր կարծիք և դիտողու-թիւններն, որ թէպէտ մեր ժամանակաց լեզուագիտու-

թեան յառաջադիմութեամբ մեծապէս կորուսած կը համարուին իրենց կարեւորութիւնը, բայց անով հանդերձ հետաքննական ըլլալէն չեն դադրիր։

Ա. Քննախօսութիւն Հայ լեզուի հնութեան, յեղափոխութեանց, յանկութեան և գործածութեան վրայ։

Բ. Քերականութիւն և Առոգանութիւն կամ Չափագիտութիւն հին լեզուին։

Գ. Դաւանութիւն եկեղեցւոյն Հայոց, թարգմանութեամբ ի լատին և ծանօթութեամբք։

Դ. Տեսութիւն Հայոց արդի կամ գործածական լեզուին։

Ե. Երեք տրամախօսութիւնք Հայոց նուիրական, աշխարհական և ընտանեկան սովորութեանց վրայ։

Զ. Թղթագրութիւն, և այլն։

Գիրքն ընծայուած է Հասսիոյ լանդկրաւ Կարոլոսի առաջնոյ, իր Մեկենասին, զոր արժանապէս դրուատելէն ետքը կը յաւելու հեղինակն. «Արեւելից մէջ, ի Մոսկուա և այլուր՝ հմուտ և գիտնական անձանց հետ ունեցած յարաբերութեամբքս ստացած տեղեկութեանցս առհաւատչեայն քեզ կը վերընծայեմ՝ զԳանձ հայկական լեզուի. գանձ մը՝ ցանկացեալ ցարդ յիմաստնոց Եւրոպայ, և բազմաց անծանօթ իր պարունակութեամբը, նկատմամբ լեզուին մեծարգոյ հնութեանը, կատարելութեան, և աստուածաբանական, պատմական, իմաստասիրական ուսմանց մեծապէս օգտակարութեան»։

Հմուտ, հետաքննական և մեր լեզուին համար պատուաւոր Յառաջաբանէ մը ետքը, Շրօտէր ի գլուխ գրոցն դնելով հայկական տառերով ու լեզուով Հանդերձ Աստուծով, սկսի խօսիլ հայ լեզուի հնութեան վրայ (De antiquitate linguæ Armeniæ)։ Որչափ չահագրգիռ՝ այնչափ ալ դժուարին կը գտնէ բազմահմուտ հեղինակն այս խնդրոյս լուծումը. առ որ բաւական չի սեպեր՝ յոյն և լատին դասական մատենագրաց քով գտնուած գրիւ և անկատար տեղեկութիւններն. և ոչ ժամանակաւ աւելի նորագոյն՝ հնախօյզ և հնագէտ հեղինակաց խու-

զարկութիւնքն և քննադատութիւնք։ Սակայն եթէ չուզենանք ալ, կ'ըսէ, ինչուան ի ժամանակս Նոյի ի վեր հանել անոր ծագումն և սկզբնաւորութիւն, այլ առանց տարակուսի բաբելոնեան աշտարակին շինութեան ու աստուածասաստ պատուհասիւ կործանման ատենին կը վերաբերի. և զոր կը ջանայ հաւատարմացընել ի յիշատակարանաց հնութեան՝ Հայոց ազգին իր հաւատարմութեամբն արգոյ՝ պատմագիրն Մովսէս Խորենացի, որ քաղելով ի գրուածոց հնոց Քաղդէացւոց և Յունաց՝ թողուց, կ'ըսէ, պատմական ընտիր երկասիրութիւն մը, յորմէ պիտի օգտուի և ինքն յապացուցանել իր ենթադրութեան և կարծեաց ստուգութիւնը հայ լեզուի հնութեան նկատմամբ։

Արդէն ծանօթ, և ինչուան դարուս սկիզբը ազգերնուս մէջ ընդհանրապէս տիրող կարծեաց հետեւողութեամբ, լեզուաց զանազանութիւնը ազգաց իրարմէ բաժանման և ցրման հետեւանք սեպելով, զՆոյ և իր սերունդը այս բաժանման և ցրման անմասն համարելով, մանաւանդ թէ ըստ սուրբ Գրոց՝ զինքը ջրհեղեղէն փրկող տապանին Արարատ լերան վրայ հանգչելովը՝ ո՞վ կրնայ տարակուսիլ, կ'ըսէ, որ ութ հոգիք՝ մարդկային ազգի կրկին նախահարք, հոն հաստատելով իրենց բնակութիւնն՝ խօսած ու ընտանի լեզունին ալ չիծաւալեցին. և ժամանակ անցնելէն ետքը՝ իրենցմէ սերեալքն շրջակայ երկիրներն բռնադատուելով ցրուիլ, նոյն լեզուն գործածեցին, իրենց հարցն ու նախնեաց լեզուն, մինչեւ աշտարակին շինութեան պատճառաւ՝ շփոթեցան լեզուք, և մարդիկ բաժնուեցան իրարմէ։ Այս ըստ ինքեան մեծ ոյժ ունեցող փաստին առջեւ, ինչ որ հեբրայական կամ ուրիշ հին լեզուաց համար ենթադրութիւններ մէջ բերուած են, ամենէն աւելի զօրաւոր կը գտնէ ի նպաստ հայկականին եղածներն։

Հեբրայականին հնութեան և անկէ յառաջ եկած այլեւայլ նախնի ազգաց լեզուներու վրայ խօսելէն ետքը,

կ'անցնի Շրօտէր Խորենացւոյ պատմութեան առաջնոյ մասին ծանօթ աղբեր՝ Մարիբասայ գրքին։ Կը գնէ ըստ գրութեան նորա՝ հայ նահապետաց և թագաւորաց անուանքն, ի Հայկայ մինչեւ յերեսներորդ վեցերորդ յաջորդ նորա, ի Պարոյրէ մինչեւ յԱրտաշէս կամ յԱրտաշիր արշակունի, թուելով զնա ութսներորդ ի Հայկայ։

Այսոնք ամէնքը Հայոց նահապետք և թագաւորք կը գնէ՝ յերկուց հարստութեանց. զառաջինն ի Հայկայ մինչեւ ցՎահէ, և զերկրորդն՝ յԱրշակայ առաջնոյ մինչեւ ցԱրտաշիր։

Հայկայ համար, կ'ըսէ, յետ յիշատակելոյ զնա Մարիբասեան գրոց համեմատ և անոր խօսքերով, թէ մի էր ի նոցանէ որք «յղացեալ ամբարտաւանութեամբ ծնան զամբարիշտ խորհուրդն աշտարակաշինութեան», թէ առաջին եղաւ որ իր հետ միաբանողներով և ազգը ձեւացընողներուն հետ խօսեցաւ զհայ լեզու (Haik primus haicanam linguam loquitur gentis suæ conditor)։ Կը համարի թէ յառաջ քան զկործանումն աշտարակին՝ հեբրայական լեզու խօսող հօրէ ծնած ու դաստիարակուած էր նա, և մինչեւ ի կործանումն որ ի Սենաար՝ նոյն լեզուն կը խօսէր։ Բելայ բռնութեան չկարենալով հանդուրժել, կ'ապստամբի իրմէ, և կ'երթայ ի սահմանս Արարատայ, որ է ի հիւսիսակողմանս, «հանդերձ որդւովք և դստերօք, և որդւոց որդւովք»։ Ու յառաջ տանելով մարիբասեան աւանդութիւնը, թէ «Գայ և բնակէ ի բարձրաւանդակ դաշտի միում, և անուանէ զանուն լեռնադաշտակին Հարք... շինէ և գիւղ մի և անուանէ յիւր անուն Հայկաշէն» վրայ կը բերէ. «Ահաւասիկ հայկական լեզուի հնութեան կրկին վկայութիւնք. վասն զի Հ—ք՝ մեծին Հայաստանի գաւառ մ'է, ինչուան հիմայ այս անունով կոչուած, և շէն Հայոց լեզուին մէջ ցարդ գործածական բառ, ուստի շինել և շին—ըն—ն»։ Կը յաւելու նաեւ ի հաստատութիւն իւր

կարծեաց Հայոց Յոյբ, Գեբեղմանք տեղեաց անուանք, այսպէս կոչուած ի բնակչաց երկրին, և նոյն անուններով հասած մինչեւ առ մեզ։ Ասոնց, և Հայկազանց ժամանակի նահապետաց անուանց և անոնց նշանակութեանց վրայ յերկար՝ և իր առեննին տեղեկութեամբք՝ համառօտ խօսելէն ետքը, և որ մեզի և նորագոյն գիտութեանց համար արդէն հնացած և իրենց արժէքը բաւական կորսուած կը սեպուին, կ՚անցնի Շրօտէր երկրորդ գլխով մը հայ լեզուի վիճակին կամ ունեցած կերպարանափոխութեանց վրայ (De fatis linguæ Armeniacæ) խօսիլ։

***

Կը ջանայ այս գլխոյն մէջ ցուցնել թէ ինչ որ հայ ժողովուրդն և ազգ, նոյնպիսի վիճակ մը ունեցած է նաեւ իր լեզուն։ Ազգին ծաղկեալ ու բարգաւաճ վիճակին համեմատ՝ լեզուն ալ ճոխ, ընտիր և բարգաւաճ եղած է. անոր տկարացած, անշուք ու նկուն պայմանն՝ ունեցած է իր մեծ ազդեցութիւնն նաեւ լեզուին վրայ։ Վայելուչ ծանրութեամբ իրենց բնիկ լեզուն կը խօսէին, կ՚ըսէ, Հայկազունք՝ երբ թագաւորական ու իշխանական գահոյից վրայ բազմող նահապետաց ու արքայից քաջարի գործունէութեամբ կ՚իշխէին մերձաւոր՝ ու երբեմն նաեւ հեռաւոր ազգաց վրայ. բայց երբ յատուկ թագաւորութիւնն ու իշխանական ազդեցութիւնը կորսուին, ու Սարակինոսք, Խորազմեայք և Թաթարք սկսան տիրել իրենց բնիկ երկրին ու հայրենեաց, այդ իշխանութեանց ու տիրապետութեանց ի հարկէ ու բռնադատ ազդեցութիւնը կրեց նաեւ լեզուն, որով սկսան գաւառական բարբառք երեւնալ, իրարմէ բոլորովին տարբեր, ու ինչուան նաեւ իրարու անիմանալիք։

Հայ լեզուի առաջին ծաւալող կը համարի զՀայկ*՝

* Ինչպէս յայտնի է՝ Շրօտէր կը չփոթէ զՀայկ ընդ Արամայ։

որ Բելայ և անոր բանակին վրայ տարած յաղթութե
նէն ետքը ետեւէ եղաւ, կ'ըսէ, իր իշխանութիւնն ընդար
ձակել. և անցնելով ընդ Եփրատ, Փոքուն Հայոց ա
մէն բնակչաց, մինչեւ ի Կապադովկիա՝ իրեն հպատա
կութեան տակ եղող ժողովրդոց պատուիրեց հայկակա
լեզուն խօսիլ. զոր և կը հաւատարմացընէ Խորե
նացւոյ վկայութեամբ, թէ « Հրաման տայ բնակչա
աշխարհին ուսանել զխօսս և զլեզու հայկական ». ու
անդրադարձընել կու տայ Տրոմէր թէ Խորենացի չըսե
զլեզուն Հայկայ, այլ զլեզու հայկական (մեր լեզուն), ին
չուան հեղինակին դարուն արդէն ծանօթ լեզուն, և ո
Հայկազանց ու Հայկայ լեզուն էր կ'ըսէ: — Հայկա
ատեն ու իր բարեբաստ կառավարութեամբն, կ'ըսէ Տրօ
մէր, այնչափ խոր արմատ ձգեց հայ լեզուն, որ իր իշ
խանութեան տակ եղող ամէն ժողովրդոց սովորակա
լեզու մը եղաւ, և հաստ մինչեւ առ մեզ. ձեռագրա
և տպագրաց մէջ գրեթէ իր ամբողջութեամբն, ծանրու
թեամբ և վսեմական ոճով գերագոյն բարբառ մը:

Ի Խորենացւոյն (ինչպէս նաեւ յայլոց) յիշատակուա
նախարարութեանց վրայ ալ կը խօսի Տրոմէր, և երբեմ
նաեւ քմահաճոյ մեկնութիւններ տալով անոնց անուան
նշանակութեան. ինչպէս Գնթունիքը առաջ եկած կը սեպ
կուանթ (guanto) բառէն, իբրու սպասաւորք արքունի
տան: Ասոնց ամենուն անուանց մէջ՝ իրենց պաշտաման
կամ յանձնուած իշխանութեան յատուկ նշանակութիւն
մը համարելով նկատել, կը հետեւցընէ թէ հայկական
լեզուն այն ատեններէն ի վեր պէտք էր որ սովորական
եղած ըլլար ազգին մէջ. և թէ այն ժամանակ միայն
սկսաւ փոփոխութիւններ կրել և օտար ազդեցութեանց
կնիքը, երբ Հայք այլեւայլ մերձաւոր ու մերթ նաեւ
հեռաւոր ազգաց հետ բռնադատուեցան պատերազմունք
ունենալ. մանաւանդ մեծին Աղեքսանդրի մահուընէն
ետքը՝ յունականն ընդ հանուր արեւելս գործածական
ըլլալով, Հայոց մէջ ալ մուտ գտաւ, բայց առանց բուն

լեզուին հետ խառնուելու կամ ձուլուելու, արուեստից՝ կամ այն ատեն ծանօթ մակացութեանց բառերէն զատ. զորս եթէ ուզենանք հայ լեզուէն հանել, նաեւ ինչուան քրիստոնէական հաւատքն ընդունելնէն ետքն ալ, քիչ բառ կը գտնենք, կ՚ըսէ, որ յոյն ծագումն ունենան։ Այսպէս հիւսիսակողման Հայք, որ յաճախակի վերաբերութեանց մէջ էին ընդ Ասորիս և Պարսս, ինչուան նոյն ատենները անարատ պահեցին լեզուն։ Ընկերական և միջազգային անհրաժեշտ յարաբերութիւնք ալ, կ՚ըսէ, չկրցան վնասել լեզուին անխառն անարատութեան մինչեւ Քրիստոսի թուականին չորրորդ դարը, քանի որ Հայկազունք և Արշակունիք կանգուն և յաղթող պահեցին իրենց իշխանութիւնը։ Բայց երբ իրենց նախկին փայլը կորուսին կամ բոլորովին ինկան, սկսան մուտ գտնել Հայոց մէջ պարսիկ և յոյն տառք՝ փոխանակ հայկականաց. և առ այս վկայութիւն կը բերէ Խորենացւոյ հանրածանօթ խօսքը թէ «Գիր Պարսից և Յունաց, որովք այժմ գիւղից և գաւառաց, եւս և իւրաքանչիւր տանց առանձնականութեանց և հանուրց հակառակութեանց և դաշանց՝ այժմ առ մեզ գտանին անբաւ գրուցաց մատեանք»։ Մեծ Հայաստան ալ ի Փոքուէն բաժնուելով, առաջինն Պարսից ազդեցութեան ու իշխանութեան տակ կ՚իյնար, իսկ միւսն Յունաց կայսերութեան։ Այս բաժանման հետեւանք կ՚ըլլար՝ Հայաստանի ծանր ու անհանդուրժելի նեղութեանց տակ իյնալն ու հեծելը, և անթիւ ձեռագիրք՝ մանաւանդ անոնք որ յոյն տառերով գրուած էին, հրոյ ճարակ կ՚ըլլային։ Այսպիսի աղիտից առաջն առնըլու համար՝ լեզուին յարմար, ու հայ ձայներն լիուլի բացատրող տառեր գտնելու ետեւէ կ՚ըլլային Մեսրովպ և իւրքն, և յաջողեցան իրենց փափաքելի գիւտին մէջ։



Հայկական տառից գիւտին պատմութիւնն աւանդէ Շրօտէր՝ մեզի ծանօթ ի հին աղբերաց քաղելով, ու Թարգմանչաց նախանձելի ու մեր ազգային գրականութեան բարգաւաճմանց պատմութիւնն ընելէն ետքը, կը յաւելու միւս ալ խորագիր մը Երջանիկ դարուն աներջանիկ վախճան կոչելով․ յորում համառօտիւ կը նկարագրէ Հայ լեզուին և դպրութեանց աղէտքը․ որ որչափ ալ ծանր եղան, կ՚ըսէ, սակայն չկրցան կորսնցընել զայն խօսող ազգը և անհետ ընել յերկրէ, և վրայ կը բերէ․ « Ունեցան, ինչպէս ցարդ ևս ունին Հայք, ամէն դարու մէջ՝ սրբակրօն վարուք և գիտութեամբ նշանաւոր անձինք, որք ընդհանուր անկման և բարբարոսութեանց դիմամարտելով՝ ազգին կրօնքը, և եկեղեցւոյ հասարակաց պաշտամանց հետ պահպանեցին նաեւ լեզուն իրենց բազմաթիւ գրաւոր երկասիրութեամբ։ Այսպիսիք եղան աշակերտք Թարգմանչաց՝ Եղիշէ, Ղեւոնդ, Ենովք, Գինթ, Դաղան, Կորիւն, Աբրահամ, Յովսէփ, Եզնիկ։ Իրենց հետեւողք Յովհան Մանդակունի, Անանիա Շիրակացի, Մովսէս և Կոմիտաս Արշարունեաց, Իսահակ Ձորափորոյ, Ստ․ Սիւնեաց, Գր․ Նարեկացի, Գր․ Մագիստրոս, Գր․ Վկայասէր, Ներսէս Կլայեցի, Ներսէս Լամբրոնացի, Վարդան վարդապետ, Յակոբ Կլայեցի, Յովհաննէս Պլուզ, Մխիթար Գոշ, Գր․ Սկեւռացի։ Նոյնպէս երկու վերջին դարուց մէջ և ինչուան ի ժամանակս հեղինակին ապրողք, Պաւղոս և Իսահակ Մուղնեցիք, Յովհաննէս Ուռհայեցի, Մելքիսեթ Երեւանեցի, Խաչատուր Կեսարացի, Ոսկան Երեւանեցի, Ստեփանոս Լէօպօլսեցի, Միքայէլ և Սիմոն Ջուղայեցիք, Մովսէս Բաղիշեցի, Աղեքսանդր պատրիարք Էջմիածնի, Առաքել Դավրիժեցի, Վարդան Թոխաթեցի, Մեսրովպ, Սուքիաս եպիսկոպոս, Աստուածատուր Լէօպոլսեցի, Թով-

մաս եպիսկոպոս Վանանդեցի, Ղուկաս Նուրիջան, և այլք։

« Առանց ջանիւք և գրուածներով հին հայկական լեզուն պահուելով, ապագային ալ աւանդուեցան, ու անցեալ և մեր այս դարուն մէջ, կ'ըսէ, տպագրութեան շնորհիւ յաւերժական եղան։ Հայ տպագրութեան արուեստին սկզբնաւորութիւնն եղաւ ի Վենետիկ՝ ի ձեռն վարդապետաց ոմանց, ու նոյն քաղաքը բնակող վաճառականաց. յետոյ ի Ջուղա, մերձ ի Սպահան Պարսից. ի Հռոմ՝ Հաւատոյ տարածման ժողովոյն ու դպրոցին տպարանին մէջ. յԱմստերտամ, ի ձեռն Ոսկանայ Երեւանեցւոյ, որ ապա իւր տպարանն փոխադրեց Գաղղիոյ Մարսէյլ քաղաքը, ուստի ի Կոստանդնուպոլիս։ Հայկական տպագրութիւնք եղան նաեւ ի Լէոպոլիս (Լեհաց), ի Փարիզ՝ Ռիշլիոյ ծիրանաւորին ջանիւք, ի Լիփսիա՝ յԱկոլութոսէ։ Առանցմէ վերջ՝ ամենընտիր տպագրատունն կանգնեալ յԱմստերտամ, ծախիւք Թովմաս արքեպիսկոպոսի, որոյ արժանաւոր ժառանգն և յաջորդ եղաւ՝ իր քեռորդին և ամենայն գովութեանց արժանաւոր Ղուկաս Նուրիջան »։

Ու մի առ մի կը թուէ Շրօտէր այս տպարաններէն ելած հրատարակութիւնքն՝ առաւելապէս եկեղեցականք, և որոց յոյժ կարօտ էր ազգն։ Այս ամէն կարեւոր, և մեզի արդէն ծանօթ տեղեկութիւններէն ետքը, կը յաւելու հեղինակն թէ ինչպէս իր ատենի հայազգեաց սիրելագոյն և փափաքելի պարապմունքն էին, մանաւանդ դեռ ի կանգուն մնացած վանս, այս ուսումն իրենց լեզուին և եկեղեցւոյ Նուիրական գիտութիւնք. անանկ որ ի պաշտօն և ի ծառայութիւն սեղանոյն մտնել ուզող անձինք՝ պէտք է որ յառաջ սորված ըլլան իրենց հայ լեզուն. հետամուտ ըլլան աստուածաշունչ գրոց և ուրիշ եկեղեցական մատենից գիտութեան. լաւլի տեղեկութիւն ունենան հաւատալեաց, շարականաց, եկեղեցւոյ արարողութեանց, ժողովոց և աւանդութեանց հարց։

Հայոց մէջ կը հանդիպիս, կ՚ըսէ, շատերու՝ որ ոչ միայն սաղմոսներն, այլ նաեւ Յոբայ, Սողոմոնի Առակաց, Եսայեայ մարգարէութեան, Պաւղոսի թղթոց, և նաեւ սուրբ Գրոց մեծագոյն մասին այնչափ ընտանի են, և սերտած ի բերան, որ պէտք եղած ատեն կը գրուցեն, և ամէն օր անոնց ո՛ր մասը և ինչուան ո՛ւր կը կարդացուի յեկեղեցւոջ՝ անվրէպ կ՚իմացընեն, ի մեծ զարմանս լսողաց։ Տեղեակք են նաեւ իրենց ազգային եկեղեցւոյն և սրբոց վարուց պատմութեանց։



Հայկական լեզուի այլ և այլ վիճակի և յեղափոխութեանց վրայ այսչափ հմտութեամբ և աշխատանօք խօսելէն ետքը, կը խոստանայ ձեռագիր և տպագրեալ մատենագրութեանց վրայ ընդարձակագոյնս ճառել՝ Մոդէ-Նոդոյն Հայկական կոչուած ուրիշ մէկ երկասիրութեան մը մէջ, որ հրատարակուած՝ կամ թերեւս շարագրուած ալ չէ. և կ՚անցնի առանձին գլխով մը խօսիլ հայ լեզուին հոգւոյն կամ բնութեան վրայ (De Indole linguæ Armeniacæ).

Հեղինակին երկասիրութեան այս գլուխն ալ հետաքրքրնական է, միշտ՝ ինչպէս կանխեցինք ըսել, համեմատութեամբ լեզուաբանական ուսմանց և գիտութեան որ իր ժամանակին ընդունելի էին։

Հայկականը գլխաւոր լեզուաց դասակարգին մէջ դնելով, կը յաւելու Շրոտէր թէ իր մէջը կ՚ամփոփէ այլեւայլ նախնական անուններէ զատ՝ յաւուրց անտի աշտարակագործութեան առ մեզ հասած նաեւ օտար բառեր, ուրիշ ազգերէ և ի լեզուաց փոխառութեամբ։ Առաջնոց կարգէն կը համարի, օրինակ իմն, գրաւոր Աստուած և կը մեկնէ աղբիւր ած, հրեշտակ՝ իբրու հոգի կենդանի։ Աւելորդ է ըսել թէ այսպիսի բաղմաթիւ նախնական համարուած կամ ենթադրուած բառից մեկնու-

նութեանց մէջ կը հեռանայ ի սորայ գիտութենէ. թէ֊պէտ և իր այս գրութեանն հետեւողներ ալ ունեցած է, ինչպէս յայտնի է բանասիրաց։

Ինչպէս Խորենացւոյ խօսքերով հաւատարմացուցինք, կ՚ըսէ, զանազան ազգութիւնք խառնուեցան ընդ Հայոց, և կամ դրսէն պատերազմաւ և բռնութեամբ մասու գործեցին յաշխարհն, իրենց խօսած և գործածած լեզուաց հետքն ձգելով հոն։ Ի Գնթունեաց և ի Բագրատունի ցեղէ մտած կը համարի այլեւայլ եբրայական բառեր. ինչպէս ընփայղ, օր, տախտ, փղոր, փեհեն, պէն և այլն. նոյն֊պէս ի Քաղդէացւոց՝ օրէն, նոնորպ, նորէան, տողալ, լալ, և այլն. յարաբականէն՝ անոփ, բողէ, րոբոզ, րէկոանփ, ծանա֊գորհ, և այլն. ի նախնի լեզուէ Պարթեւաց՝ բախտ, զատ, զատրոր, բրէնչ, պրախտ, և այլն. ի յունէն արփայ, էնէղէցէ, հէրոանոս, բրաբէան, սոսնց ամենուն համեմատական նոյ֊նանիշ բառերն ալ իրենց լեզուով ու տառիւք մէջ բերե֊լով, ու երբեմն ոչ դոյզն հմտութեամբ և ճարտար ան֊դրադարձութեամբք։

Որչափ այլ այսպիսի և սոնց նման բազմաթիւ ե֊կամուտ բառերով ճոխացած կը գտնէ զհայ լեզու, միւս կողմանէ ալ նկատելով անոր ճոխութիւնն զոր ունի ի բնութենէ լեզուին, մայր լեզու մը կը նկատէ զայն, յորմէ ծնած են և բարգաւաճ կերպարանք առած և ցայսօր չարունակուած զաւառական ազգային բարբառք. և յորոց մեծապէս օտարացած կը գտնէ իր հայ բարե֊կամաց և փոճառականաց ոմանց, որ այն ատեն կը գտնուէին յԱմստերտամ, գրութիւնքը և խօսքը, խառն արաբ, պարսիկ և թուրք բառերով։ Խօսքին հաւաստիքն ալ մէջ կը բերէ այնպիսի գրուածներով յ՚էջս 229 և ի հետեւեալսն, ինչպէս նաեւ գրուցատրութեանց և նա֊մակաց օրինակներով յ՚էջ 391, և այլն։



*Խօսելով ապա հայերէն քերականութեան մասանց բանի վրայ, և անոր ուրիշ յատկութեանց, կ'անցնի չորրորդ գլխով մը հայերէն լեզուի կիրառութեան կամ գործածութեան* (De usu linguæ Armenicæ) *վրայ:*

*Լեզու և խօսք յԱստուծոյ տրուած են, կ'ըսէ, մարդուս. որպէս զի մեր մտաց մէջ եղածը՝ բերնով արտաբերենք. և ինչ որ յօգուտ է հասարակաց և կարեւոր ի գիտութիւն և ի տեղեկութիւն՝ մեզի հետ ապրողաց կամ մերձ եղողաց աւանդենք. իսկ գիր՝ Պղատոնի և Կիկերոնի վկայութեամբն ալ՝ նոյնպէս երկնապարգեւ ձիրք մ'է, որպէս զի լեզուի և խօսքի տեղ բռնէ: Անոր միջոցով՝ ականջաց լսածը և իմացած՝ աչաց ալ կ'երեւութանան. և հեռաւորաց հետ ալ՝ ինչպէս ներկայ եղողաց, կը խօսակցինք. և մտածութիւնք, հին և նոր գիրք, խօսք, գործ, ինչպէս թէ իրօք մեր աչաց առջեւ հանդիպած ըլլային, այնպէս կ'իմանանք և կ'ըմբռնենք: Զանազան օտար լեզուաց և գրոց ծանօթութեամբ և գիտութեամբք ալ անոնց հետ յարաբերութեանց մէջ կը մտնենք. և ինչ որ նուիրական, նշանաւոր, հասարակաց կամ առանձինն գրուած կայ առ նոսա կամ գործուած, գրով կը տեղեկանանք և մեզ կը յատկացընենք: — Այս ընդհանուր ծանօթութենէն ետքը կը յաւելու Շրօտէր.*

*Սորա միջոցով, հայկականն ալ որ հեբրայականէն ետքը ամենահին լեզուաց մէկն է, իր վրայ հասած բազմարկածեան դէպքերու մէջ ալ յաջողեր է սուրբ Գրոց անգուգական և աստուածաբանական ուսմանց հետամտից մեծապէս յարգի թարգմանութենէն զատ՝ պահել և ինչուան առ մեզ հասցընել բազմաթիւ ընտիր երկասիրութիւնք. ոչ լոկ հին ու արեւելեան եկեղեցեաց, ժողովոց, կանոնական սահմանաց նկատմամբ, այլ և կարի հետաքննական պատմական գրուածներ, յուշարարք ի-*

*րենց նախնի թագաւորաց և իշխանաց քաջարութեանց, պատերազմաց և խաղաղութեան, կառավարութեան և քաղաքագիտական հանճարոյ. բնական և իմաստասիրական գիտութեանց, խոտոց, պտղոց, մետաղաց անուանք, և անոնց վրայ տեղեկութիւնք։ Եւ այս ամէն լեզուի ձրից վրայ համառօտիւ կը խօսի հեղինակը, ինչպէս նաև ի մասնաւորի աստուածաշունչ գրոց թարգմանութեան, և անոր նախկին տպագրութեան յԱմստերտամ։ Կը յիշատակէ ապա՝ իրեն ծանօթ մեր ազգային պատմըչաց անուանքը, հայկական ժամանակագրութեան և Ազարիայի թուականին վրայ ալ ծանօթութիւններ տալով, և այլն։*

*Կը դնէ յետոյ զքերականութիւն հայ լեզուի, խօսելով առանձին նաև քերթողական արուեստին վրայ։*

*Ցրուէր յօրինեց նաև բառարան մը հայ լեզուի, որ երբեք չհրատարակուեցաւ, և կը գտնուի հիմայ ի մատենադարանին Գասսէլի։ Քերականութեան տպագրութենէն ետքը դառնալով ի Մարպուրկ, արևելեան լեզուաց ուսուցիչ անուանեցաւ, ինչպէս յետոյ նաև աստուածաբանականին։ Մեռաւ յ'*19 *յուլիս* 1756. *մահուընէն տարի մը յառաջ նոյն պաշտօնը յանձնուած էր որդւոցը միոյն, Յովհաննու Գուլիելմի* (1726–1793), *որ հօրը նման արևելագէտ մ'էր։*

## ՎԻՍՏՈՆ ԵՂԲԱՐՔ

*Հայ տպագրութեան պատմութիւն կ'աւանդէ մեզ թէ Վանանդեցի Թովմաս արքեպիսկոպոս* 1695*ին Խորենացւոյ Պատմութեան գրոց սկզբնագրին առաջին տպագրութիւնն ըրաւ յԱմստերտամ, իրեք տարիէն ալ իր անուանն ընծայուած Աշխարհացոյցն։*

*Հետաքննական նորութիւն մ՚էր որ կ՚ընծայուէր բանասիրաց, և բնական էր որ անով ախորժէին պարապիլ ուսումնասէրք, թէ հեղինակին անձամբը և թէ պատմութեան գրքովը. ուստի* 1736*ին հայկական բնագրովը ու ի հանդիպոյ լատին թարգմանութեամբ ի լոյս կ՚ընծայուի Խորենացւոյ Պատմութիւն ու Աշխարհագրութիւն՝ Վիստոնեան եղբարց ջանիւք և աշխատասիրութեամբ։ Հայ խորագիրն է. Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն և Աշխարհագրութիւն. իսկ լատինն.* Moysis Choronensis Historiæ Armenicæ libri III. Accedit ejusdem scriptoris Epitome Geographiæ. Præmittitur Præfatio, quæ de literatura ac versionis sacra armenica agit; et subjicitur Appendix, quæ continet Epistola duas armeniacas, primam Corinthiorum ad Paulum apostolum, alteram Pauli apostoli ad Corinthios, nunc primum ex codice Ms. integre divulgatas. Armeniace ediderunt, latine verterunt, notisque illustrarunt Gulielmus et Georgius, Gul. Whistoni filii, Aulæ Clarensis in Academia Cantabrigiensi aliquandiu Alumni. Londini, 1736։



*Ընդարձակ և հմուտ յառաջաբան մը ունի այս թարգմանութիւն, զոր հրատարակիչք իրենց արժանապէս պատիւ բերող հմտութեամբ պատշաճ սեպեր են դնել ի գլուխ գրոցն։ Երկարօրէն կը խօսին աստուածաշունչ Գրոց հայկական թարգմանութեան վրայ. օրինակներով կը ցուցընեն անոր յարգը, չքաշուինք ըսել՝ նաեւ առաւելութիւնն ուրիշ հին թարգմանութեանց վրայ։ Գրուածքին այս մասը ու անոր քննադատութիւնը՝ մեր այս երկասիրութեան սահմանէն դուրս է։*

*Խորենացւոյ պատմութեան գրոց վրայ խօսելով ընդհանրապէս կ՚երկրորդեն իրենց այն ամէն կարծիքները զոր արդէն հաղորդած էին առ Լաքրոզ, ինչպէս տե-*

անք նախընթաց քանի մի էջերու մէջ։ Սակայն քննադատականին առջեւ անարդարանալի համարուած կամ մատենագրական թերութեանց և պատմական յայտնի անճշդութեանց վրայ խօսելու առեննին ալ չափաւորք կ'երեւին քան զբազումս, որ իրենցմէ ետքը պարապեցան մեր պատմահօր անձին և անոր գրուածքով։ Այլ մեծարողք միշտ իր անձնականութեան, աւելի յօժարեցան խաբուող, կամ իրենց խօսքովն՝ դիւրահաւան համարիլ զնա, քան որ և իցէ պատրուակաւ կամ դիտմամբ խաբելու աշխատող. ուստի և իր երկասիրութիւնը ամենայն մեծարանաց և հետաքննութեան արժանաւոր խոստովանեցան։ Ով որ, կ'ըսեն, կը կարծէ թէ այս պատմութեան գրքէն օգուտ մը քաղելը կարելի չէ, զայնպիսին բոլորովին անգրագէտ մէկը կը համարինք. ուստի և յոյսերնիս մեծ է թէ արդարադատ և հմուտ ընթերցողք՝ մեր այս ձեռնարկը պիտի չարհամարհեն, որ այսպիսի ամենահին լեզուով շարագրուած երկասիրութիւն մը ի խաւարէ ազատելով ի լոյս կ'ընծայենք։

Այս տողերը կը գրէին ու կը հրատարակէին Վիստոնեանք 1736 մայիսի առջի օրերը։

Եւ յիրաւի, մեծ մտադրութեան արժանաւոր եղաւ իրենց այս իմաստուն ձեռնարկը։ Այդպիսի շահագրգիռ երկ մը և անոր հրատարակութիւն՝ կարելի չէր որ միակողմանի եւեթ արգասիք ունենար. կարելի չէր որ նոյն ժամանակին բանասիրութիւն հաւասար արժէք և կշիռք տար անոր՝ միայն հրատարակողաց տեսութեան և կարծեաց համեմատ։ Պիտի երեւնային, երեւցան ալ, շատ բանասէրք՝ որ ինչպէս յառաջ քան զհրատարակութիւն գրոցն, անկէ ետքն ալ քննադատականին ամէն խստութեամբ պիտի վարուէին այնպիսի պատմագրի մը երկասիրութեան նկատմամբ՝ որ բոլորովին նոր էր իրենց անձամբն ու գրուածքով, և չէր համաձայներ արդէն ծանօթ և նախընթաց յոյն և հռովմայեցի պատմագրաց մինչեւ առ մեզ հասած երկասիրութեանց հետ, որոնք

ունեցեր էին և կը շարունակէին ունենալ մեծ կշիռ և արժէք ուսումնասէր և բանասէր աշխարհի մէջ։ Խորենացւոյն պատմութեան լատին թարգմանութիւն՝ սահմանուած էր արդարեւ արեւմտեան բանասիրութեան մտադրութիւնը հրաւիրել մեր պատմութեան և մատենագրութեան վրայ. և Վիստոն եղբարցմէ ընծայուած այս առաջին հայկական երախայրիք՝ փափաքելի պիտի ընէր ուրիշ նորութեանց ի խնդիր ելլել և համակրիլ անոնցմով։

Այսր սկզբնաւորութիւնն և յառաջադիմութիւն գաղղիական ազգին կերպով մը պարտապան է ուսումնական աշխարհ։



Քանի մի դարէ հետէ, Խաչակրաց արշաւանաց ժամանակէն ի վեր, արեւելեան ազգաց պատմութեամբ, հնախօսութեամբ ու աշխարհագրութեամբ պարապող մեծ ազգը, ունենալով նաեւ քաղաքագիտական նպատակ մը՝ իր ազդեցութիւնը ա՛լ աւելի տարածելու և սիրելի ընելու այդ հեռաւոր աշխարհաց մէջ, ունէր իր պետական պաշտօնեայքը, ուսումնական և հետազօտող ճանապարհորդքը և առաքելական քարո՛զիչք, որոնք ուշի ուշով կը պարապէին այն ժողովրդոց և անոնց աշխարհաց ուսումնասիրութեամբ, և փոյթ ունէին փոխադրել յարեւմուտս նաեւ անոնց գրաւորական և ի նախնեաց աւանդուած ճոխութեան մէկ մասը, թէ զանոնք անկորուստ պահելու պահպանելու, և թէ անոնցմէ օգտուելու դիտմամբ։ Իրենց տեսութենէն և այս նպատակէն չէր կրնար վրիպիլ և Հայաստան աշխարհ և ժողովուրդ։

Մեծին Լուդովիկեայ փառապանծ թագաւորութեան ժամանակ և անկէ ալ յառաջագոյն՝ Գաղղիոյ մայրաքաղաքին մեծ և բազմահարուստ մատենադարանն սկսեր էր իր ճոխութեանց կարեւոր և ազնուագոյն մասն սե-

պել հայկական գրչագրաց հաւաքումը, չխնայելով ոչ աշխատանքի և ոչ ծախուց։ Ջանոնք ցանկելու հոգն ու աշխատութիւն վրան առնող հայերէնագէտն Վիլֆուա՝ հետեւեալ երեք դասակարգի կը վերածէ.

Ա. Մեծին Լուդովիկի թագաւորութեան ատեն՝ արքունի մատենադարանին մէջ գտնուած հայ գրչագիրք էին 100 թուով։

Բ. 1730 ին ստացուած գրչագիրք, երեք թուով, որ հինգ տարի վերջը հասան ի Փարիզ։

Գ. Դարձեալ նոյն թուականին ստացուած ուրիշ գրչագիրք, քսան և աւելի թուով։

Մայրաքաղաքին ուրիշ գրատանց մէջ ալ կային սակաւաթիւ հայ գրչագիրք։

Արքունի գրատան հարիւր երեսուն և աւելի գրչագրաց թիւը եռապատկեցաւ և քառապատիկ եղաւ մեր օրերը, և որ քան զոր կը ճոխանայ։ Վիլֆուայի յօրինած ցուցակը՝ զոր արդէն հրատարակած են Մոնֆոքոն և Մինեի, հետեւորդ ստացմամբք մատենադարանին շատ ճոխացած է, և նոր ցուցակք արդէն յօրինուած և պատրաստք են ի տպագրութիւն։

Այս հաւաքման մէջ առջի բերան քիչ էին պատմական երկասիրութիւնք. բայց իրենց նոյն իսկ սակաւաւոր թուով՝ բաւականք ի գրգռել զհետաքննութիւն, և յորդորամիտ առնել զգաղղիացիս յուսումն հայ լեզուի և ի խնդիր նորա պատմական հնութեանց։ Այս փութոյն և ջանից մեծապէս օժանդակած են արդէն յիշատակեալն Վիլֆուա, իր աշակերտն և հետեւող Լուռտէ, մեղի ծանօթ և երախտապարտ անուանք, և իրենց ժամանակէն քիչ ետքը՝ ի Փարիզ հաստատուած հայերէն լեզուի ուսման վարդապետական աթոռը՝ ի Դպրոցի արեւելեան կենդանի լեզուաց։ Խրաւացի է որ այս երկու անձանց, և այս ուսումնական հաստատութեան վրայ համառօտ տեղեկութիւն մի ունենան ընթերցողք։

# ՎԻԼՖՌՈՒԱ

Ութեւտասներորդ դարու արեւելագիտաց մէջ հռչակաւորն Գուլիէլմ Վիլֆռուա, ծնաւ Փարիզ (1690), պատուաւոր ընտանիքէ։ Տիրոնի արքայարանին մէջ ուսմանց ընթացքն աւարտելով, ինքզինք տուաւ մասնաւոր ջանքով յուսումն և ի կատարելագործութիւն եբրայական լեզուի, և Սուրբ Գրոց լաւ խելամտութեան համար կարեւոր ուրիշ լեզուաց։ Պըզանսոնի եկեղեցական դպրանոցին համբաւ՝ հոն ձգեց զինքը, ուր վարդապետ եղաւ աստուածաբանութեան և սրբազան կարգերն ընդունեցաւ։ Տաղանդովը Տակըսոյ արքունի դիւանադպրին հաճոյանալով, անոր պաշտպանութեամբ Օռլէանի դքսին քարտուղարի պաշտօնն ընդունեցաւ։ Սըվէն քահանայի ի Կոստանդնուպոլսոյ ի Փարիզ փոխադրած ձեռագրաց մէջ՝ բաւական թուով հայերէն ընտիր ձեռագիրք կային. և որովհետեւ նոյն ժամանակին գիտնոց մէջ ի Փարիզ՝ միայն Վիլֆռուա քահանայն էր տեղեակ նոյն լեզուի, իրեն յանձնուեցաւ զանոնք քննելը և մանրամասն տեղեկագիր մը կազմելը։

Վիլֆռուա՝ Սուրբ Գրոց բաղդատական ուսմանց սիրող և հետամուտ, երիտասարդ հասակէն տուեալ եղած էր յաջողութեամբ, ինչպէս ըսինք, բաց ի հեբրայականէն, նաեւ արեւելեան ուրիշ հին լեզուաց։

« Տղայ հասակէս, կ՚ըսէ, մասնաւոր ախորժ և բուռն բերում կը զգայի Սուրբ Գրոց ուսման։ Տասուիրեք տարուան էի երբ արդէն ծանօթ և ընտանի էին ինձ եբրայեցի տառք և նշանակք, և որոց հետամուտ էի և փութաջան։ Բայց անկէ անդին չգնաց իմ յառաջադիմութիւնս. կամ այն պատճառաւ որ տղայական հասակ անհաստատ է ընդհանրապէս, և կամ առիթը կը պակ-

մէջ այդ բերմանս հետեւելու։ Հինգ տարի ետքը՝ ութեւտասնամեայ եղած ատենս, այդ ուսման կարեւոր և անհրաժեշտ գրքերը գնեցի, ամենայն ջանքով այդ լեզուին պարապելու դիտաւորութեամբ։ Սկսայ դաս առնել անձէ մը՝ որ լաւ հմուտ էր հեբրայականին. բայց տասնհինգ օրէն՝ ուսուցիչս չհամարձակեցաւ յառաջ վարել սկսած դասախօսութիւնը. որովհետեւ կը հակառակէր անոր հռետորականին վարդապետս։ Դիմացս եղած այս արգելք՝ փոխանակ քչուցանելու, աւելի եռանդ մը վառեց յիս և մեծագոյն փափաք այս նուիրական լեզուին։ Լոկ անձնական ջանքով և հետապնդութեամբ՝ երբայեցի լծորդութեանց դժուարին ասպարէզը կտրեցի անցայ, և այնուհետեւ բոլոր կարելի եռանդեամբ տուի ինքզինքս յուսումն կիտից և անոնց փոխադրութեանց, և որով կը պարապէի 1709 ին ծանր ձմրան երկար գիշերները։ Թանկագին ժամանակ մը՝ զոր շահեկանագոյն կերպով կրնայի գործածել Սուրբ Գրոց բնագիրն ուսումնասիրելով քան ռաբունեաց մնոտեաց. բայց այն ատեն ուրիշ էր կարծիքս, ենթադրելով թէ առանց կիտից՝ հեբրայականին ուսման շէնք կը կործանէր կ'իյնար։

«Ինչ ալ ըլլայ, քիչ ժամանակէն այնչափ եղաւ յառաջադիմութիւնս յընթերցման, որ ա՛լ բուն սկզբնագրին վրայ կարող էի Սուրբ Գրոց ընթերցմանն պարապիլ։ Բայց ամէն գիտութեամբս ալ՝ նկատմամբ կիտից, մերթ ընդ մերթ դժուարութիւնք կ'ելնէին դիմացս, որով և իմաստք անիմանալի կը մնային։ Այն ատեն բնագիրը լուսաբանող մեկնըչաց հարկ կ'ըլլար դիմել. և կը տեսնէի որ որչափ մեկնիչք՝ այնչափ ալ տեսակք մի նոյն տողին մեկնութեան. և հետեւաբար՝ այնչափ առիթք անստուգութեան ինձ համար։ Հեբրայականին հետ՝ կը զբաղէի նաեւ հին պատմութեանց ժամանակագրութեան և աշխարհագիտական ուսմամբ. որպէս զի կարող ըլլամ Սուրբ Գրոց իմաստից խելամտութեան աւելի պայծառ լոյս մը ծագուած տեսնել։

Քսանուերկու տարուան կը մտնէի ի Թրոյա՝ ի մեծ դպրանոցն եկեղեցական, հաչականուն Տըլավինեիի ձեռքին տակ, որ յետոյ Սան քաղաքին արքեպիսկոպոսն եղաւ. ու երկու տարիէն պատուեց զիս՝ ընդունելով ի փոքրիկ դպրանոց վիճակին, ուր աստուածաբանականին և հայրագիտութեան ուսումնասիրութիւնը, որոց պարապեցայ ամբողջ չորս տարի, որչափ ալ չափի մէջ դրաւ հետաքննութիւնս Սուրբ Գրոց ուսման, բայց առանց կորուսանելու զայն յաչաց և ի սրտէս: Քահանայական ձեռնադրութիւն և վարդապետական աստիճանի տիտղոսն ընդունելով ի Պըղանսոն՝ ի վերջ կոյս 1716 տարւոյն, բարեբաստագոյն գտնուեցայ այնուհետեւ բոլորովին իմ հակամիտութեանցս և բերմանցս հետեւելով մեծաւ եռանդեամբ տալու ինքզինքս՝ իմ սիրելի ուսմանցս և պարապմանց:

« Փարիզ դառնալէս ետքը՝ մեր դարուն ամենամեծ մարդոց մէկը, — և այս չէ իր բոլոր գովութիւնը, — ինձ պատուիրեց որ երբեմն երբեմն փոքր մարգարէից գրքերն կարդամ իր առջեւը՝ իրենց սկզբնագրին լեզուովը: Ըրած իմաստուն անդրադարձութիւններն և խոհական դատաստանք թէ բնագրին և թէ անոնց ամենէն աւելի մեծանուն մեկնըչաց խօսքերուն, բացին աչքերս և իմացուցին թէ միայն հեբրայական լեզուին գիտութիւնը բաւական չէր դիտած վախճանիս հասնելու »:

*
* *

Շարունակելով պատմել այն առթով քաղդէացի, արաբ, ասորի, եթովպական ու սպանիացի լեզուներու ուսմանն հետեւիլը, կը յաւելու. « Օր մը Ուօլթընի Սուրբ Գրոց բազմալեզու տպագրին յառաջաբան տեղեկութեանց 91դ էջին յառաջին սեանն դրուած հետեւեալ տողերն աչքիս հանդիպեցան. Գրիգոր սկոլաստիկոս ասորի կ'աւանդէ թէ ամենուն ծանօթ է որ Հայք՝ որչափ

ալ ի յոյն լեզուէ ըրած ըլլան աստուածաշունչ Սուրբ Գրոց թարգմանութիւնը իրենց լեզուով, սակայն ասորականին հետ ալ համեմատեցին օրինակնին, և որուն տեղ տեղ ալ համաձայնեցան։ Ըստ դիպաց հանդիպելով այս տողերուն, և որոց կրկին անգամ ընթերցումը աւելի ազդեցութիւն ըրին վրաս, մէկէն գրավաճառի մը դիմեցի՝ հայերէն լեզուի քերականութիւն և բառգիրք մը փնտռելով քովը։ Վրան վեց ամիս անցաւ առանց յաջողելու ձեռք ձգել ուզած գրքերս. վերջապէս մէկու մը ձեռքով փափաքս կատարուեցաւ, 1729 ին, և սկսայ անմիջապէս աշխատիլ հայերէն լեզուին վրայ։

«Քանի ծանրագնի եղաւ ինձ առջի բերան՝ այս ահարեկիչ (terrible) լեզուն. որուն քով ուրիշ ամէն լեզուաց ուսումն, նոյն իսկ արաբականին, խաղալիկ մը կ'երեւնար ինձ համեմատելով հայկականին հետ։ Խիստ և ամենադժուարին հնչումն, բառեր՝ որ բոլորովին խուժադուժ (barbare) և անօրինակ կը թուէին. Ռիվոլայի պակասաւոր քերականութիւն մը. նոյն հեղինակէն շարադրուած բառգիրք մը, քերականութենէն ալ անկատար. որովհետեւ պարունակած բառերն՝ վեցերորդն ալ չեն լեզուին ամբողջութեանն. և վերջապէս քրիստոնէական վարդապետութեան գիրք մը՝ այնչափ անհոգ և անմտադիր անձանց ձեռքով հրատարակուած, յորում չէ կարելի գտնել էջ մը ուր չվխտան իրարու կպած, կամ իրարմէ անջատ բառեր խառնուած չփոթած իրարու հետ։ Այս ամէն հանգամանք և դժուարութիւնք կարծես կը միաբանէին՝ ինչպէս դիւրին է գուշակել, նոյն լեզուին ուսումէն պաղեցընելով զիս եւ կեցընելու։ Բայց կը ջանայի քաջալերել զիս, արծարծել վառել զհուր եռանդեանս, անոնցմէ ամենեւին չահաբեկելով։ Տասը հոլովմունքը սորվեցայ, որոց իւրաքանչիւրը տասը փոփոխութիւնք ունին. և ձգեցի ինքզինքս բայերու խոնարհմանց և անկանոններու մէջ որ բազմաթիւ են, և վեց ամսէն աւելի անցուցի ի դժուարին նախակրթանս հայ

լեզուի։ Վերջապէս յաջողեցայ քիչ մը հասկընալ իմ քրիստոնէական վարդապետութեանս գիրքը. բայց իմանալով միանգամայն թէ անկարելի պիտի ըլլայ ինծի ա՛լ աւելի յառաջադիմել սիրած լեզուիս ուսման մէջ այսպիսի անյաջող առաջնորդներով, գնացի (ի 1731) ի մատենադարանն արքունի, ուստի ի փոխ առի զօրինակ աստուածաշունչ գրոց։ Այս օրուընէն սկսայ երկու գործի մէկտեղ ձեռք զարնել. այսինքն՝ հայկական լեզուի լուրջ պարապման, հետեւելով անդուլ ամէն օր յետ ճաշածամու, և թարգմանել զԵրգոց երգս Սողոմոնի. համեմատութեամբ ընթերցուածոց քաղդէացի, ասորի, յոյն, արաբ, եթովպացի և սպանիական կամ ֆէլլըմըէան թարգմանութեանց։ Այս աշխատասիրութիւնս ներկայացուցի Սալիէ քահանային, որոյ դատաստանը մեծապէս կը յարգեմ, և որ ծանոյց ինծի թէ կը գտնուին ի նմա բոլորովին նոր տեսութիւնք՝ որ ցարդ մէկէ մը զուրցուած չեն. և թէ խոհականութիւն չէր հրատարակել այնպիսի ատեն մը՝ յորում ազատամիտք ամէն բանով կը զեղծանին։ Իմ գործած բացատրութիւնքս թէպէտեւ աւելի զգուշաւորք կը թուէին՝ քան ուրիշ թարգմանութեանց մէջ, սակայն Սալիէ խիստ գողտր գտաւ։ Ուստի իր իմաստուն խորհրդոց անսալով, յօժարակամ մէկդի դրի զայն, այնչափ սիրով՝ որչափ աւելի աշխատութեան կարօտութիւն կար իմ նոր գրութիւնս բացայայտելով՝ գոհացուցիչ ընթերցման արժանաւոր ընել զայն։



« Երգոց երգոյն վրայ սկզբնաւորեալ երկասիրութենէն հրաժարելուս՝ հայկական ուսմանս վնաս մը չեղաւ։ Դարձայ միւսանգամ յարքունի մատենադարանն, ուր յաջողեցայ գտնել հայ լեզուի բառգիրք մը. և ուրախութեամբ ընդունելով զայն՝ ուսմանցս սենեակն մտայ, նոյն

օրուընէ անոր գործածութիւնն սկսելով։ Կարծածէս աւելի օգտակար եղաւ ինձ այն գիւտ։ Հայ աստուածաշունչ մատենից վրայ ըրած երկամեայ և յարատեւ հետազօտութիւնք՝ բաւական ընդելացուցած էին ինձ նոյն լեզուին մէջ սովորաբար և յաճախակի գործածուած բառերն. իսկ նոր ձեռք ձգած բառգրոցս օգնականութեամբ՝ հասկընալու վիճակի մէջ էի անոնցմէ դուրս մնացածները, և որ կարեւոր էին ուսումս կատարելագործելու համար։ Սրտիս մէջ բնածին աշխատելու սէր և եռանդ՝ յորդորամիտ ըրին զիս Փարիզ քաղաքէն հեռանալ, ու հայկական լեզուի ուսման աւելի մտադրութեամբ պարապիլ։ Աստուածաշունչը տեղը դարձընելով, առի ուրիշ գիրք մը՝ Հայոց հայրապետի մը երկասիրութիւն. ու վերադառնալով ի գիւղ՝ տեսայ որ ընտիր գրուածք մ'էր ձեռք ձգածս. Ներսէս Գ. մեծ հայրապետին ընդհանրական թուղթն էր այն, զոր յաթոռն կաթողիկոսութեան բազմած ատեն ուղղեր էր առ ամենայն հայաստեա ազինս։ Ետեւէ էի ի թարգմանել զայն, բայց ոչ առանց ծանր վաստակոց. վասն զի ամէն իմաստ՝ նոր դժուարութիւն մը կը հանէր դիմացս։ Արեւելեան շատ ազգաց յատկաբանութիւնք (idiotisme) միանալով հայկաբանութեան ոճերու հետ, որոց դեռ այնչափ ծանօթացած չէի, կարծես ամենայն ճիգն ի գործ կը դնէին ետ կեցընելու յառաջադրեալ նպատակէս։

« Բայց որովհետեւ նախախնամութիւնն պատրաստեր ու սահմանած էր զիս այս դժնդակ աշխատանքին, նոր ձեռք բերած գրքերուս մէջ կը հանդիպէի այնպիսեաց ալ որ կրնային մի առ մի դիւրացընել ինձ առջեւս ելած ամէն դժուարութիւններ։ Ներսիսի Շնորհալւոյ ընդհանրականին թարգմանութենէ ետքը՝ քաջալերուեցայ ի թարգմանութիւն սրբոյն Գրիգորի Նարեկացւոյ հայ վարդապետի մէկ ճառին։ Հեղինակին դժուարագոյն ոճը և գրութեան լեզուն՝ թելադիր եղան ինձ գէթ քիչ մը ատենուան համար ետ կենալ այս աշխատութենէն. բայց

ապա դժուարութեանց առջեւ արիութիւնս կրկնապատիկ եղաւ. ու վեց ամսուան մէջ օրը տասներկու կամ տասնըչորս ժամ միակերպ աշխատելով, ընդհանրական Թուղթը և Նարեկացւոյ ճառը թարգմանեցի ամբողջ։ Բայց այսպիսի յաջողութեան մը ուրախութիւնը շատ նուազեցաւ կրած քառամսեայ հիւանդութեամբս և որ մերձեցոյց զիս ի դրունս մահու. և արգասիք էր այն յերկար պարապմանցս և անոր մէջ յաջողելու համար կրած աշխատութեան։ Հազիւ քիչ մը ապաքինած, փափաքելի էր ինծի սիրելի հայկական լեզուի ուսման շարունակութիւնը։ Բարեբաղդաբար այն տան մէջ ուր կը բնակէի՝ հայերէն քանի մի տպագիրք գտնուեցան։ Կը զբաղէի մերթ ընդ մերթ անոնց ընթերցմամբ. և երբ առողջութիւնս գտայ, սկսայ ասդիէն անդիէն հայերէն հատուածներ թարգմանել։ 1734 մարտ ամսոյն՝ կրկին աչքէ անցուցի Շնորհալւոյ Թղթոյն թարգմանութիւնը. զոր սկզբնագրին հետ բաղդատելով շատ ճշդութեամբ եղած կը գտնէի, ու քանի մի սրբագրութիւններ ընելով կը համարէի թէ տպագրութեամբ հրատարակուելու անարժան երկ մը չէր, և հաճոյական ընդունելութեան կրնար հանդիպիլ, իբրու նմոյշ մը այն գրչագրաց՝ որոց յաբեւելից ժամանումը արդէն հռչակուած էր ի Գաղղիա։

« Բայց յառաջ քան զհրատարակութիւն այս հետաքընական երկասիրութեան, համոզուեցայ թէ առաւելագոյն յարգ պիտի ստանար այն եթէ հարկաւոր եղած տեղերը ծանօթութիւնք ալ աւելցուէին։ Արքունի մատենադարանն երթալով՝ հանդիպեցայ հոն նոյն սուրբ հայրապետին ուրիշ այլեւայլ գրուածոց։ Այս գիւտը՝ խորհուրդ մը միտքս ձգեց, որ լոկ ընդհանրական Թղթոյն թարգմանութեամբ գոհ չըլլամ. այլ ետեւէ ըլլալ գտնելու իրեն ուրիշ երկասիրութիւններն ալ. ու թարգմանելով միացընել ընդհանրականին հետ, և ամբողջը միանգամայն հրատարակել, որով ձեւանար քառածալ բաւական մեծկակ հատոր մը։

« Այսպիսի հետազօտութիւնք առիթ տուին ինձ նոր աշխատասիրութեան մը ձեռք զարնելու. արքունի մատենադարանին մէջ գտնուած հայ գրչագրաց ցուցակ մը յօրինել, պէտք եղած տեղեկութիններով անոնց ամենուն վրայ։ Սկսելով թերթել և աչքէ անցընել այդ գրչագիրքը, տեսայ որ շատերը հաւաքմունք են, զորս հարկ էր առանձին քննութեան ենթարկել. որով միտքս դրած գրութիւնը ի գլուխ հանելու համար դէթ երեք ամսուան կարօտութիւն ունէի։ Չէի սխալած ենթադրութեանս մէջ. վասն զի սկզբնաւորութենէն մինչև յաւարտ հասցնելը՝ ինն ամսէն աւելի տևեց։ Հոս պատշաճ կը սեպեմ քանի մը խօսք աւելցնել այն ձեռագրաց վրայ ընդհանրապէս. այսինքն՝ տառից որով գրուած են, և դժուարութեանց որոց հարկ եղաւ յաղթել՝ անոնց ընթերցումը ինձ ընտանի ընելու համար։

*
* *

Փարիզու Ազգային Մատենադարանի հայկական ձեռագրաց վրայ Վիքթորիայի ընդհանուր ծանօթութիւնը. — « Հայկական ձեռագրաց ցուցակիս վերջը պիտի գտնէ ընթերցողը անոնց թիւը՝ որոց քննութեամբն զբաղեր եմ։ Նշանակուած են ի նմա անոնց արտաքին երևոյթ (forme), տեսակք տառից որովք գրուած են և վերադիրք. և այդ վերջինը չունեցողներուն՝ բանադատուած եմ իմ կողմանէս աւելցնել անոնց պարունակութեանն համեմատ։

« Բազմաթիւ են այս դասակարգին պատկանող գրչագիրք. վասն զի Հայք՝ ճանչնալով արդէն իրենց գործածած գրքերը, և գիտնալով անոնց անուանքը, հոգ չեն ունեցած նշանակել անոնց վերադիրքը ի գլուխ գրոցն. որով ընդհանրապէս ոչ նախաբան տեղեկութիւնք և ոչ ալ յառաջաբան ունին։ Գլխակարգութիւնք սովորաբար պակաս չեն. բայց յաճախ անորոշ և անհաւատարիմ կերպարանօք. որով և կը հանդիպի նշանակուած

տեսնել զայն ինչ՝ որ իրապէս կը պակասի ի գիրս. ուստի եթէ ուզենայ ոք որոշ գաղափար մը ունենալ անոնց բովանդակութեանն, պէտք է որ ամբողջ գլուխը աչքէ անցընէ։

Ասոնք են առաջին ներկայացած դժուարութիւնք՝ որոց պէտք էր յաղթել, և անհրաժեշտ հարկաւոր՝ իւրաքանչիւր գրչագրի ընթերցման մէջ յաջողելու համար։ Ասոնց վրայ յաւելուլ արժան է ուրիշ դժուարութիւն մ'ալ. գրչագրաց շատին սկզբնաւորութեան կամ աւարտման պակսիլը, և ոմանց մէջ ալ թէ մէկը և թէ միւսը »։

Յայլ և այլ և արդէն ծանօթ դասակարգութիւնս կ'որոշէ Վիլֆոտօ գձեւս հայկական տաղից, և են՝ Նէ-խ-Բ-ֆէր կամ Գ-ւ-խ-ֆէր, Բ-ւ-ր-ֆէր, Ն-ո-ր-ֆէր, Գ-ո-շ-ն-ֆէր, Ծ-ո-չ-ի-ֆէր և այլն. և կը յաւելու.

« Ասոնք են զանազան ազգք տաղից՝ որոց հանդիպեցայ ի գրչագիրս։ Բայց պէտք չէ ենթադրել թէ կենդանիք կամ ծաղկըներ ներկայացընող տառք՝ արուեստով ու ճաշակով յօրինուած ըլլան, և որոց մեծ բացակայութիւն կը տեսնուի. վասն զի այն տառից ամենէն աւելի ճարտարագոյն համարուած հայ արուեստագէտք՝ չէին կրնար բաղդատուիլ եւրոպացի նորավարժ աշակերտի մը հետ ալ։ Եթէ արուեստական միայն ըլլար այս թերութիւն, ըսելիք մը չունէինք. բայց այսպէս չէ. վասն զի ենթադրած են թէ ընտիր ախորժակի ցոյց մ'է և պատուաբեր իրենց ճարտարութեան՝ այնպէս իրարու հետ խառնել տառերն որ մարդ չիգիտեր ո՛ր կողմանէ և ինչ կերպով զանոնք ընթեռնուլ։ Բայց աւելի տագնապեցուցիչն՝ յաճախ հանդիպելն է երեք կամ չորս տող բանից՝ խորտակեալ (brisé) տառիւք, որոց մասունք բաժան ի մարմնոյ իրենց բուն տառից, նախընթացից կամ հետեւորդաց հետ կը շփոթին։ Հանդիպեր է ինձ երբեմն ութ օր անցընել՝ առանց կարող ըլլալու ճանչնալ թէ ինչ տառք են և ինչպէս պէտք է ընթեռնուլ զանոնք. և անտարակոյս մեծ դժուարութիւն մ'է այս աչաց և վայրապար կորուստ ժամանակի։

« Բայց այս ալ բաւական չէ ։ Երկաթագիր գրչագիրք յոյժ դժուարընթեռնլիք են. եթէ ի պատճառս ձեւոյ տառից, որ թէպէտ փայլուչք են, այլ բառից իրարմէ զատուած չըլլալուն պատճառաւ՝ ամբողջ իմաստք, և երբեմն նաեւ երկարք, այնպէս իրարու քով սեղմ միացած են՝ որ կարծես թէ իրենց ամբողջը բառ մը միայն կը ձեւացընեն. և հարկ կ'ըլլայ մի և նոյն իմաստը չորս հինգ անգամ ընթեռնուլ, և երբեմն նաեւ ամբողջ սիւնակը, որպէս զի իմանաս թէ ինչ նիւթի վրայ կը խօսի հեղինակը աչքիդ դիմացն եղող տողերու մէջ ։ Այնպիսի նեղիչ աշխատանք մ'է այս գլխոյ և աչաց, որ յաճախ չկարենալով չարունակել՝ բռնադատուած եմ ուրիշ օրուան ձգել աշխատութիւնս...

« Թանաքը զոր գործած են Հայք ի գրչագիրս, մերթ խիստ գէշ տեսակէն է. և ասոր պատճառը կամ ամենաքիչ խիժի կիրառութիւնն է, և կամ անոր չափազանց թանձր ըլլալը ։ Խիժի պակասութեան հետեւանք է որ տառերն երկար չեն դիմանար, մանաւանդ գիճին տեղ մը գրուած կամ պահուած ատեններն ։ Ասկէ զատ, եթէ էջի մը վրայ քիչ մը ջուր թափուի, տառք՝ որոց վրայ ջուրը կը տարածուի՝ անդարմանելի կերպով կ'եղծանին. և ինչ պիտի ըլլան եթէ պատահմամբ տղմի կամ ջրոյ մէջ ինկնայ գրչագիր մը ։ Ուստի պէտք է զգուշանալ, և խնամոտ ձեռաց յանձնել անոնց պահպանութիւնը ։ Մեծ խնամք ունենալովս առ այդ, ամենայն ջանք և փոյթ ի գործ դրած եմ անոնց անաղարտ մնալուն ։ Ուրիշ անպատեհութիւն մ'ալ, երբ թանաքը խիստ թանձր ըլլայ. վասն զի մագաղաթէն կամ թղթէն լաւ կերպով չծծուելով, և հետը հաստատապէս չմիանալով, վրան ժամանակ անցնելէն ետքը՝ գիրը կը ջնջուի կամ կը զատուի, ուրիշ բան չթողլով՝ բայց եթէ անորոշ կամ աննշան հետք տառից ։

« Թանաքէն զատ Հայք ուրիշ չորս տեսակ հեղուկ ալ կը գործած են իրենց գլխագիր տառից գրութեան հա-

մար։ Այս չորս հեղուկք՝ այլ և այլ գոյն ունին. կարմիր, մութ կարմիր, ծիրանեգոյն և կապոյտ։ Կարմրագոյնք աւելի հեշտեաւ կ'եղծանին. իսկ ծիրանին ու կապոյտ՝ որոց գործածութիւն համեմատաբար ցանցառ է, յերկարատեւք են։ Թուղթը թէ՛ ընտիր է և թէ թանձր. յառաջ քան զգրութիւն կը յղկեն ու տողերը գծերով կը նշանակեն. ծծուն թղթոյ ամենեւին հանդիպած չեմ ի հայ գրչագիրս »։



Վիլֆռուա մանրամասն կը խօսի Փարիզու մատենադարանին մէջ իր ատեն գտնուած Ճառընտրաց, Յայսմաւուրաց, Քերականութեանց և անոնց մեզի ծանօթ պարունակութեան վրայ. և ի վերջոյ կ'անցնի ճառել հայկական բանաստեղծութեան ու տաղաչափութեան մասին. « Պարզապէս, կ'ըսէ, գաղափար մը եւեթ տալու համար և վեր ի վերոյ կերպով ի գիտութիւն հետաքըննողաց թէ ինչ է և որպիսի բանաստեղծական արուեստ առ Հայս։

« Մագիստրոս կը վկայէ թէ քան զՅոյնս մեծագոյն արուեստի մը կարօտ ենք՝ ոտանաւոր գրելու համար. վասն զի միացած է ի մեզ չ֊փն ու նոյնավերջական յ֊նգ. երկուքը իրարու հետ միաբանեցընելով ախորժալուր ընելու համար՝ մեծ հանճարոյ կարօտութիւն կայ, և գործադրութիւնը դժուարին. բայց այսպիսի արուեստէ մը յառաջ կու գան զարմանալի հատուածք քերթողականք։ Մենք տողերը կը վերջացընենք մերթ երկու և մերթ երեք տառիւք՝ որ կը նմանին իրարու երկու տողից մէջ ալ. և այս կերպով կը ձեւանան վեց կամ չորս ոտք ունեցող տողք։

« Յարաբացւոց, — կը շարունակէ նոյն բանասէր իշխան, — ընդունած ենք այս մեծ արուեստը, և որոյ հետամտութիւն և ուսում՝ յերկար ջանից ու աշխատու-

թեան արգասիք են. վասն զի հարկաւոր է ուսանել նախ անոնց տառերն, յետոյ լեզուն և քերթողութիւնը։

« Ցոյնք չափ կը գործածեն իրենց տողերը կազմելու համար, բայց յանգ չունին. ուր բովանդակ Արաբաց մէջ սովորութիւն եղած է երկուքին ալ հաւասար գործածութիւնը, թէ՛ չափու և թէ յանգաց. հարսանեաց հանդէս մը չի կատարուիր առ նոսա՝ առանց գեղեցիկ և նոր քերթուածոց՝ զոր նուիրեն ամուսնոց։ — Հայոց մէջ յԱրաբիա գնացողք կը յիշատակուին, բանաստեղծական արուեստ սորվելու նպատակաւ (Սահլ?) ամն որդի Շապհոյ, զոր այլք քաղդէացի կը համարին, և Ահարոն քահանայ։ Սոքա թարգմանիչք էին ի յոյն և յարաբ լեզուաց. պարապեցան նախ ի թարգմանութիւնս բժշկական մատենից. բայց որովհետև լաւ չէին հասկընար զհիպոկրատ և զԱսկլեպիադ, բռնադատեցան ի թարգմանել զքերականութիւն, զտրամաբանութիւն և զիմաստասիրութիւն. յետոյ ի թարգմանութիւն այլ գրոց, մինչև լիուլի հմտացան արուեստին։ Ամէն անգամ որ կը յաջողէին աւարտել թերթի մը թարգմանութիւնն, կը մատուցանէին զայն առ թագաւորն, որ առատաբար վարձատրելով, մաքուր ոսկւով շրջապատել կու տար իրեն ներկայացուած թերթերը։

« Արաբացի ու հայկական բանաստեղծութեան վրայ տրուած այս ընդհանուր գաղափարէն եաքը, Յովհան Երզնկացի, որ ժամանակաւ կրտսեր է քան զՄագիստրոս, իր ձեռքն եղած հեղինակաց խօսքերը մէջ բերելով, իրեք կանոն կ'աւանդէ, որ կը սորվեցընեն թէ ինչպէս ձայնաւորք՝ երկարք ի բնէ, կը ողին. և ինչպէս սուղք բնութեամբ՝ տեղ տեղ կ'երկարին։ Այս կանոններն են, նախ՝ ինչպէս երկու վանկով ձևացած բառի մը վերջին երկձայնն կամ երկբարբառ կը ողի՝ երբ հետևեալ բառն սուղ միավանկ է։ Երկրորդ՝ տարակուսելի ձայնաւոր մը կը ողի, երբ յերկու բաղաձայնից մին որովք կազմած է բառը, նայ կամ կակուղ ըլլայ։ Երրորդ՝ երբ երկա-

վանկ բառի մը առաջինն ըլլայ երկար և երկրորդն սուղ։ Ուրիշ կանոն կամ ազատութիւն մ՚ալ կայ հայկական բանաստեղծութեան մէջ, որով շնորհուած է բառի մը առաջին մասը դնել ի վերջ տողին, և զմիւսն ի սկիզբն երկրորդին։

« Ասոնք են քերթողական առանձնաշնորհութիւնք զոր Հայք առած են յԱրաբաց։

« Մագիստրոս չաւանդեր մեզ թէ ո՛յք են զանազան տեսակք տողից որ գործածական ըլլան Հայոց մէջ։ Յիշատակուած կը գտնեմ թէ՛ վեցաչափը և թէ քառաչափ. բայց տասնավանկ ալ գտած եմ, ինչպէս նաև իննավանկ »։

Չափուց վրայ խօսելէն ետքը, քանի մի դիտողութիւններ կ՚ընէ Վիլֆուռա նաև նոյնավերջ յանգաց նկատմամբ։ « Որովհետև, կ՚ըսէ, այն ժողովրդոց ծանօթ չէ արական և իգական յանգաց զանազանութիւն, զոր կը տեսնենք ի գաղղիականին, չենք կրնար սպասել որ յանգք փոխուին երկերկու տողից մէջ, ինչպէս առ մեզ։ Իրենց թոյլ տրուած է որ տողք շարունակին վերջանալ մի և նոյն յանգով, որչափ հաճոյ երեւնայ քերթողին, բաւական է որ տողք հաւասարաթիւ ըլլան. որով կրնան, եթէ ուզեն, երկու, տասն, քսան՝ երեսուն տողք և աւելի՝ միշտ Է տառով վերջացընել. Նոյնպէս նաև Էւ, Էօղ, Իւ, և այլն։

« Ասիկայ պէտք չէ որ զարմացընէ զմեզ. վասն զի գաղղիական քերթողական արուեստն ալ նոյն ոճով էր ի մետասաներորդ դարու. թերևս առաջին խաչակրութեան ժամանակ և առթիւ յԱրաբացւոց ընդունուած սովորութիւն մը »։

Մեր քերթողական արուեստին այս համառօտ տեսութենէն, կ՚անցնի Վիլֆուռա խօսիլ հայ քերականութեան և անոր հանգամանաց վրայ, զոր աւելորդ կը համարինք մէջ բերել։



Յառաջ ալ յիշեցինք թէ Թագաւորական (ազգային) մատենադարանին հայկական գրչագրաց ցուցակն յօրինած է Վիլֆռուա, անոնց ամենուն պարունակութեանց համառօտ տեղեկութիւններով։ Եւ նախ քանի մի նախաբան ծանօթութիւնք գրուած են ի դիւրութիւն և ի գիտութիւն այդ ցուցակը գործածող բանասիրաց, մանաւանդ իր ազգակցացը և ընդհանրապէս ամէն եւրոպացի հայերէնագիտաց. «Զի կրցայ, կ՚ըսէ, ըստ փափաքանացս կարգաւորել այդ գրչագիրքն ըստ նիւթոց, կամ հատորներու չափուն և դրից համեմատ. այլ մէկ կողմանէ ինչ որ ինծ կը յանձնուէր, անոնց վրայ քննութիւններս կ՚ընէի։ Կարելի ալ չէր ուրիշ կերպով վարուիլ, մինչ անոնց բովանդակութեանը լիուլի տեղեկութիւն չունէի։

«Այս գրչագրաց իրարմէ տարբեր ժամանակներ եղած ստացումը զատեցի և որոշեցի, նշանակելով վրանին զԹուականն յորում բերուեցան ի մատենադարանն արքունի. բայց որովհետեւ անոնցմէ երկուքը՝ որ Գօլպէրի գրատան մէջ եղած ձեռագրաց հետ գնուեցան, շատ առենէ ի վեր փոխադրուած են ի Գաղղիա, հարկ սեպեցի զանոնք յառաջ նշանակել քան զյետոյ բերեալսն ի Կոստանդնուպոլսոյ յամի 1730։

«Այն Թուականին ստացուած ձեռագիրներէն շատը կազմուած չըլլալով, ուրիշ դասաւորութիւն մը ըրի անոնց, առանձինն կրկնակի տալով և Թուագրով։ — Նշանակեցի իւրաքանչիւրոց գրչութեան դարն ու Թուականը։ Եւ որովհետեւ բազմաթիւ են գրչութեան Թուական չունեցողքն, բաւական սեպեցի ենթադրութեամբ միայն որոշել անոնց ժամանակը կամ դարը։ — Գրչագիրքս, բաց յերկուց կամ յերից, էջերը նշանակող Թուագիրք ալ չէին կրեր։ Այս տաղտկալի աշխատու-

թիւնն ալ ըրի անոնցմէ շատին վրայ, ոչ եթէ՝ ինչպէս առ մեզ սովորութիւն է, ի վերին կողմն իջիցն դնելով զթուականարս՝ այլ ի ստորեւ, ինչպէս սովոր են ընել Հայք։

« Կը ծանուցանեմ, կ՚ըսէ, հայազգի գաղղիագիտաց, որոց ձեռք կրնայ իյնալ իմ այս ցուցակ, որ տեղ տեղ իրենց արդի հնչմանէն խոտորեր եմ։ Այսպէս վարուելուս պատճառ, ձեռագրաց վրայ ըրած քննութիւններովս՝ հին Հայոց ճիշդ հնչման կերպը գտնելս եղած է, մանաւանդ զի Շրոտէր՝ որ հայերէն լեզուն սորված էր բո՛ւն ազգային ու հմուտ ուսուցչաց քով, ընդհանրապէս շատ տառից նկատմամբ՝ այս հնչմանց կը հետեւի յիւրում քերականութեան տպագրելոյ յԱմստերտամ ի 1711։

« Վերջապէս գիտել կու տամ, կ՚ըսէ, որ ձեռագրաց գրչութեան թուականն նշանակած ատենս չեմ հետեւած արդի Հայոց սովորութեան, որով հայկական թուականին սկզբնաւորութիւնը Քրիստոսի 551 թուականին կը դնեն. մինչ ես այդ թուէն երկու տարի ետքը դրած եմ, հետեւելով հռչակաւորն Անանիայ Շիրակացւոյ հեղինակութեան, որ ի վեցերորդ դարու, նոյն տարւոյն մէջ հաստատեց Հայոց թուականը։ Այս վախճանաւ քննեցի՝ հայկական եկեղեցւոյն գործածութեան համար իրմէ կարգադրուած կաղանդացոյցը, և հարկ սեպեցի իրեն հետեւողութեամբ կրկին հաստատել զթուականն՝ որոյ հեղինակն է, ինչպէս միաձայն կը հաւատարմացընեն հին և նոր Հայք։ Նորոց այս սխալը՝ Հայոց թուականին սկզբնաւորութիւնը 551 թուականին դնելով, մեծապէս զգալի կ՚ըլլայ հետեւեալ օրինակաւ։ Կոտֆրուա տը Պույոն, Երուսաղեմի տիրեց Հայոց 546 թուականին. եթէ արդի Հայոց մէկուն հարցընես թէ Քրիստոսի ո՛ր թուականին հանդիպեցաւ այդ, 551 թուականն 546 թուոյն վրայ յաւելլով պիտի ըսէ թէ Երուսաղեմի տիրեցին փռանկք ի 1097 թուականի։ Ուր ես Անանիայ

*Շիրակացւոյ և Սամուէլի Անեցւոյ ժամանակագրութեան հետեւելով՝ որ կ'որոշեն Գաղղիոյ պատմութեան այս փառապանծ թուականն*, 553 *յաւելլով* 546 *թուոյն վրայ, պիտի պատասխանեմ թէ Երուսաղեմի առումը հանդիպեցաւ ի* 1099, *և որ համաձայն է մեր (գաղղիացի) պատմըչաց*։

*« Դեռ չեմ կրցած հասկընալ թէ ուստի՞ յառաջ կու գայ արդի Հայոց մէջ մուտ գտած այս սխալ, և ինչ աղբիւրէ առնելով* 551 *ին կը դնեն իրենց թուականին սկզբնաւորութիւնը, մինչ զայն հաստատողը, ինչպէս ըսի*, 553 *ին կը դնէ, ազգին հաճութեամբ և հրամանաւ սահմանելով մանաւոր կաղանդացոյց մը, զոր կը գործածեն ցարդ, և յորմէ երբեք խոտորած չեն ազգային գիտնականք »*։



*Վիլֆրուայի ծանօթ երկասիրութիւնքն, նկատմամբ մեր լեզուին և մատենագրութեան, հետեւեալքն են.*

1.° *Արդէն շատ անգամ մեզմէ յիշատակուած արքունի մատենադարանին մէջ գտնուած հայ ձեռագրաց ցուցակը հետեւեալ խորագրով.* Catalogue des manuscrits arméniens de la Bibliothèque de Roy; dressé en 1735, par l'abbé de Villefroy.

2.° Remarques sur le Catalogue précédent. Idée des manuscrits les plus intéressants.

*Այս երկու գրուածք՝ թարգմանուելով ի լատին հրատարակուեցան ի ցանկի գրչագրաց արքունի մատենադարանին. բայց բուն սկզբնագիրն տպագրեցաւ ի Մոնֆոքոնէ ի բազմահմուտ գիրսն* Bibliotheca bibliothecæ manuscriptorum, *ի* 1739, *Հատոր Բ. յ'էջ* 1015–1027։ *Միւս այլ տպագրութիւն Մինեի, ի* Nouvelle Encyclopédie Théologique. Dictionnaire des Manuscrits, *Հատոր Ա. յ'էջ* 1120–1240.

3.° Discours préliminaire de la notice des manuscrits arméniens de la Bibl. de Roi։ *Ցարքունական (այժմ ազգային) մատենադարանի ի Փարիզ.* Ms. p. XIV. *զոր կը յիշատակէ և Գաթրըմէր* (Է. Քաթրըմէր)։

4.° Lettre au R. P.** en lui envoyant une traduction française des cantiques arméniens, composés dans les V. et VI. s. pour les fêtes de la Nativité de S. Jean-Baptiste et du mystère de la Présentation au temple. (Ի Mémoires de Trévoux, 1735, *յամսաթերթն օգոստոսի, յ'էջ* 689, *հանդերձ յառաջաբան տեղեկութեամբ դշարականաց*։ *Անդ, յ'էջ* 1341–81)։

5.° Canon de la Nativité de S. Jean Baptiste. *որ որ է գաղղիական թարգմանութիւն շարականին* Աչե-ֆոկանն որբորոնեան։

*Յովհաննու կարապետին ծննդեան կանոնը՝ Մովսէսի Խորենացւոյ կամ Անանիայ Շիրակացւոյ կ'ընծայէ, և զԽորենացի՝ հեղինակ կը համարի Տեառնընդառաջի տօնին շարականաց*։

6.° Récit de martyre de S.t Christophe (= *Քրիստափորի վկային*), de la famille de Shanaghloükh, et de ceux qui ont été immolés par le fer avec lui. Tiré du Ménologe arménien. Manuscrit de la Bibl. du Roi. (*Անդ*, 1752, *յամսաթերթն սեպտեմբերի, յ'էջ* 2110)։

7°. *Ոսկեբերանի ներբող ի սուրբ Լուսաւորիչն, ի հայ թարգմանութենէն փոխադրեալ ի լատին* (Աստուածաբանական ճառից սկզբնաւորութեամբ ճառն).—(B. Jo. Chrysostomi encomium sancti Gregorii Illuminatoris ex armene lat. versum) *և զետեղեալ ընդ անհարազատ գրուածս սուրբ Հայրապետին ի Մոնֆոքոնէ. ի հատ ԺԲ. յ'էջ* 822։ Opp. gr. et lat. cura et studio Bern. de Montfaucon. Parisiis, 1718–38)։



Զրպետեանն ի յառաջաբանի Քերականութեանն կ'աւանդէ ըստ վկայութեան Լուտէի թէ Վիլֆոռս հայերէն քերականութիւն մ'ալ յօրինած ըլլայ։ Անշուշտ այս երկասիրութիւնն է որ գրչութեամբ Լուտէի կը պահուի ի մեր մատենադարանի, և որոյ յառաջաբանէն քաղեր ենք իր վարուց և հայ ուսմանց տեղեկութիւնները։ Գրուածքիս խորագիրն է De la langue arménienne, հմուտ և հետաքննական ճառով մը մեր լեզուին վրայ, յորմէ հարկ կը սեպենք հետեւեալ տողերը թարգմանելով մէջ բերել, որովք կը տեսնուի այն մեծ սէրն և համարում զոր ունէր մեր ազգին և մատենագրութեան նկատմամբ.

« Գեղեցիկ դպրութեանց համար մեծ նշանակութիւն ունեցող և չայեկանագոյն դիպաց մէջ, ամենէն աւելի օգտակար կրնանք համարիլ 1730 ին յարեւելից առ մեզ հասած և յանուն Լուդովիկեայ ԺԵ առաքուած յոյն և հայ գրչագրաց հաւաքում մը։ Եթէ գրականական ախորժակաց տէր անձինք, որոց զմայլական հաճոյքն է խնամասունն Յունաստան, նորանոր լոյսեր կը յուսան քաղել ի յոյն գրչագրաց, որովք պիտի օգտուի նաեւ հասարակութիւնն ընդհանրապէս, քանիպատիկ յուսոյ առիթ կ'ընծայեն հայ գրչագիրք։ Հինն և նուիրական Յունաստան արդէն լիուլի ծանօթ է. իրեն գլխաւոր յիշատակարանք ձեռուընիս են ի վաղուց, և նորանոր գիւտք որ օր ըստ օրէ կրնան յայտնուիլ, տարա՛կոյս չիկայ որ պիտի ծառայեն աւելի լոյս և կենդանութիւն սփռել այն տեղեկութեանց վրայ, զոր հելլեն հմտութեամբ անուանի անձինք՝ երեք հարիւր տարիներէ ի վեր մշակեր և դեռ եւս կը մշակեն յեւրոպա։

« Հայկական գրչագիրք ընդհակառակն նոր մատենագրական աշխարհ մը կը ներկայացընեն մեզ, ուր եւրո-

պացի մը տակաւին մուտ գործած չէ, անոր մէջ ամփոփուած ճոխութիւնքը հասարակաց ծանօթացընելու համար։ Անոնք որ մինչ մեր ատեններն՝ հաստատած են հօն իրենց բնակութիւնն, առաքելական քարոզիչք, նպատակ և վախճան ունենալով ի կրօնից յանձնուած աշխատութիւն և գործ մը, զայն միայն ունեցեր են տեսակէտ. պաշտամանը գործոյն անհամաձայն գտնելով Հայաստանի հնութեանց հիմնովին ուսումնասիրութիւնը, այդ կողմանէն անդին չեն ուզած անցնիլ։

« Անտարակոյս հաճոյական զարմանք մը պիտի ազդէ երբ գիտցուի որ եթէ ծանօթանալու ամէն արժանաւորութիւնն ունեցող ազգ մը կայ, Հայոց ազգն ու երկիրն է։ Թերեւս անհաւատալի երեւնայ լսելը թէ Ասիոյ ամենէն հռչականուն ակադեմիայն եղած է գրեթէ հազար տարուան միջոց, Քրիստոսի 440 թուականէն մինչ յառումն Կոստանդնուպոլսոյ, և որոյ հետեւանք եղաւ ուսմանց և գիտութեանց անկումն ոչ միայն ի Յունաստան, այլ նաեւ ի Հայս։

« Կը համարձակիմ ըսել թէ իններորդ դարէ մինչեւ յերեքտասաներորդն՝ Հայաստան կրնար ուսուցիչ ըլլալ երկրիս մեծագոյն մասին, բովանդակ այն միջոցին ճոխացած ըլլալով այնպիսի հռչակաւոր անձնաւորութեամբք որ հմտացեալք էին ամենայն գիտութեանց. աստուածաբանք, սրբազան ճարտարախօսք, քերթողք, իմաստասէրք, եկեղեցական մատենագիրք, պատմաբանք, աստեղաբաշխք, ճարտար թարգմանիչք, հմուտք ասորի, արաբ, պարսիկ և լատին լեզուաց։ Կրնամ իսկ յաւելուլ թէ ոմանք իրենց յարգի քերթողաց այնչափ լաւ կ՚իմանային հին գաղղիական բարբառը, որ չորեքտասաներորդ դարու մեր վիպասանից մէկուն գրուածքը թարգմանեցին հայ չափական ոտիւք։ Սէրը զոր ունեցան Հայք յուսումն գլխաւոր լեզուաց՝ զոր հիմայ իսկ յիշատակեցինք, պէտք է որ նոյն ազգը մեծապէս սիրելի և պատուական ընէ մեզ. վասն զի իրենց իմաստունքը թարգմանեցին ինչ

որ ընտիր և օգտակար գտան այն լեզուաց գրականութեան մէջ, զհայրենիսն աւանդապահ ընելով ամենազգի իմաստուն մատեններ։ Հայաստան մէյմ' որ ծանօթանայ, այնուհետեւ կը բացուին դրունք արեւելից, և կը յայտնուին մեզ անյուսալի ճոխութիւնք. և եթէ յաջողինք նորանոր գրչագիրք ձեռք բերել, չենք կրնար բացատրել թէ ո՛րչափ և որպիսի լոյս պիտի ընդունինք թէ այս գիտնական ազգին և թէ մերձաւոր ժողովրդոց պատմութեան վրայ »։....

9°. Ի մատենին The Bible of every Land կ'ընթեռնունք թէ Վիլֆռուա իր ժամանակին բանասիրաց հետ միախոհութեամբ ձեռք զարկած ըլլայ յամին 1775 ի նոր հրատարակութիւն աստուածաշունչ գրոց, օգտուելով հայ թարգմանութենէն ալ. և թէ իբրու նմոյշ մը՝ Ամբակումայ մարգարէութեան գիրքը տպագրելով, յետոյ այդ ձեռնարկ խափանուած ըլլայ։ Մենք այդ հրատարակութիւնն ալ տեսած չենք։

Քիչ ետք՝ պիտի յիշատակենք այս նկատմամբ Լուռտէի ձեռքով եղած աշխատասիրութիւնը։



Հայ պատմութեան և մատենագրութեան մեծապէս օգտակար երկասիրութեան մ'ալ ձեռք զարնելու միտք ունէր Վիլֆռուա։ Հայ ձեռագրաց ի Փարիզ և անոնց համառօտ բովանդակութեան նկարագիրն ընելէն ետքը, կ'ըսէ. « Իրաւամբ կրնան պահանջել յինէն՝ այս մեր ծանօթութեանց համառօտութիւն մը, յօրում ի մի հաւաքուած տեսնուին ինչ որ կրնայ վերաբերիլ Հայոց մէջ ծաղկած ամէն գիտութեանց և արուեստից։ Օրինակ իմն, աստուածաբանական ուսմանց տեսակէտով՝ մէկ գլխակարգութեան մը տակ զետեղեմ՝ իրենց ամէն աստուածաբանքը և անոնց գրուածոց անուանք։ Հաճոյիւք պիտի նկատեն իրենց մէջ գտնուած քերթողական երկասիրու-

թիւնք, երգեր, բանաստեղծութեան մնացորդք՝ անոնց հեղինակ հայ քերթողաց անուններուն հետ։ Հանոյական պիտի ըլլայ իրենց գիտել համառօտիւ, ի մի գլուխ ամփոփուած, թէ որո՞նք են յունական եկեղեցւոյ այն գրուածներն, զոր Հայք անկորուստ աւանդեցին, և որ տակաւին հրատարակուած չեն։ Համոզուած եմ թէ դոհ պիտի ըլլան մեծապէս երբ իմանան թէ արդեօք հայ թարգմանութիւնքը բաղդատեր եմ այն սկզբնագրաց հետ որոց վրայէն փոխադրուած են։ Վերջապէս, իրաւամբ կրնան հարցընել ինձ թէ ինչու գէթ ցուցակ մը չեմ հրատարակեր Հայաստանի թագաւորաց, և այդ մեծ եկեղեցւոյն պատրիարքաց վրայ ծանօթութիւն մը։ Կը խոստովանիմ թէ իմ ընթերցողէս պիտի գանգատէի եթէ չպահանջէր յինէն թէ՛ նշանակածներս և թէ ուրիշ զանազան տեղեկութիւններ, զորս երկար կ'ըլլայ մի առ մի յիշատակել։ Բայց կը խնդրեմ իրմէ մտադրել, թէ ինչ որ այժմ այս ամէն նիւթոց վրայ հրատարակուի, կանխահաս պտուղ մի պիտի ըլլայ և անկատար եւսկասիրութիւն։ Նոր լոյսերու կը սպասեմ ի հայ գրչագրաց և ի տպագրաց, զորս տակաւին քննած չեմ, և կատարեալ գործ մը ընծայելու համար, ինչ որ փափաքելի է և կարելի, դեռ մեծ աշխատանք կայ ինձ ընելիք։ Բայց որպէս զի ամէնքն համոզուին թէ կ'ուզեմ հասարակաց այս իրաւացի պահանջքը գոհացընել, և որ միանգամայն անհրաժեշտ կարեւոր է հայկական մատենագրութեան, թոյլ տրուի ինձ առաջի առնել իմ գաղափարիս ուրուագիծը, եթէ նախախնամութիւն շնորհէ ինձ զմիջոցս առ ի շարունակել զուսումնասիրութիւն իմ ի վերայ Հայաստանի։

« Հայ լեզուի գրչագրաց և տպագրաց վրայ քննութեանց առեն երեք նպատակ ունէի. և նախ թագաւորական գրատան հայ ձեռագրաց ցուցակը կարգի վրայ առնուլ, և հետեւաբար ամեն փափաքողաց առջեւ դնել անոնց բովանդակութիւնը. երկրորդ՝ իմ առանձին օ-

գուստ փնտռելով, ետեւէ ըլլալովս այն աշխատանքին՝ լաւագոյն եւս վարժիլ ի հրահանգս նոյն լեզուին, և տեղեկանալ ինչ որ անոր կը վերաբերի. և երրորդ՝ անոնց ամենուն որ այս լեզուին ուսման պիտի պարապին՝ լաւագոյն օրեր և միջոցներ պատրաստել՝ և կարելի եղած լոյսը ընծեռել, որպէս զի ընդհանուր գաղափար մի ունենան Հայաստանի թէ նուիրական և թէ արտաքին վիճակին վրայ: Հա՞րկ է աւելցընեմ չորրորդ նպատակ մ'ալ, որոյ առջեւ պէտք չէ անտարբեր մնալ: Արդեօք հասարակութիւն աւելի հաճոյիւք և օգտակարութեամբ չը՞նդունիր այն երկասիրութիւններն որ ետեւէ ետեւ պիտի ընծայուին, երբ պատրաստուած ըլլան արդէն ընդհանուր և յաճախ մասնաւոր տեղեկութեամբք՝ որոնք մեր այս առաջին մասին մէջ պիտի դրուին իրեն դիմաց: Այս վախճանաւ յօրինեցի ու կարգի վրայ առի 1730 թուականին ի Կոստանդնուպոլսոյ հասած գրչագրաց վրայ ծանօթութիւններ: Իսկ հիմայ կը մնայ ինծ՝ գիտութեան ախորժ և սէր ունեցողներն գոհացընելու համար, քննել նախ արքունի մատենադարանին մէջ, 1730 էն ստացմանէն յառաջ գտնուած գրչագիրքը: Երկրորդ՝ քննել այնուհետեւ սոյն լեզուով եղած Գոլպերեան գրատան մէջ գտնուածներն, որ գեղեցիկ դպրութեանց սիրող ծիրանաւորին ջանիւք փոխադրուեցան յարքունի մատենադարան: Յետոյ կուզան նոյն լեզուով տպագիրք ոչ միայն յարքունական մատենադարանի, այլ ուր որ կարելի ըլլայ գտնելը: Չորրորդ՝ աչքէ և հետազօտութենէ դուրս չեմ ուզեր թողուլ սրբոյն Վիկտորի գրատան մէջ պահուած քանի մի հայ գրչագիրքը: Հինգերորդ՝ պիտի խնդրեմ ի Բիննոն քահանայէ գրել ի Վենետիկ, ուր Հայք տպարան մը ունին, իրենց լեզուով տպագրուած գրոց ցուցակ մը ուղելու: Պիտի բաղդատեմ ընդ գտեալսն յարքունի մատենադարանի, և կը յուսամ որ Բիննոն բարեհաճի տալ բերել ինչ որ պակասի: Վեցերորդ՝ դուրս պիտի չձգեմ ինչ որ Ցոյնք և

Լատինք գրեր են Հայոց նկատմամբ, և այս ամէն գրուածոց վրայ զատ տեղեկութիւններ պիտի տամ։ Եօթներորդ պիտի ընթեռնում ի Հայաստան ճանապարհորդութեանց գրքերը և հաւաքեմ ծանօթութիւններ, որոնց նպատակն ըլլայ՝ ճանչցնել ինչ որ ուղիղ է և ստուգապատում, և նշանակել ինչ որ ընդհակառակն անստոյգ է և պակասաւոր այդ երկասիրութեանց մէջ։ Չպիտի մոռնամ դիտել տալ, օրինակ իմն, թէ աշխարհիս մէջ զուրցուած ամենէն անհաւատալին է ինչ որ Գաւեռնիէ կ'աւանդէ Հայոց մկրտութեան վրայ. և համոզուելու համար բաւական է համեմատել այս խորհրդոյն մատակարարութեան նկատմամբ գրածս (Գ. բ). իրեն պատմածին հետ (Ո–ղէ–որ––Ի–Ն ի Պ–ր––, Գիրք Դ, Գլ. բ.) Վերջապէս պիտի խնդրեմ յիմաստնոց որ բարեհաճին օգնել ինձ իրենց լուսովը և հմտութեամբ՝ ընելիք հետազօտութեանցս, անոնց կարգաւորութեան և նիւթերուն ընտրութեան։... Երբ յաջողի ինձ ի գլուխ հանել այս մտածութիւն, այն ատեն աւելի ընդարձակ ոճով և որոշ հմտութեամբ պիտի խօսիմ հայկական գրոց և անոնց հեղինակաց վրայ» և այլն։ Ուրիշ այլեւայլ զբաղմունք՝ չներեցին Վիլֆուայի այս օգտակար մտածութիւնն ի գործ դնել, որ մեծապէս ձեռնտու պիտի ըլլար՝ նոյն ժամանակին, սիրելի և արգոյ ընծայելով մեր պատմութիւնն ու մատենագրութիւն։ Մեռաւ նա ի 1777, ի 4 ապրիլի։

## Ս. ԼՈՒՐՏԷ

Վիլֆուայի աշակերտաց մէջ, որոց աւանդեց զուսումն հայ լեզուի, գլխաւորներէն մէկն էր Սիմոն — Պետրոս Լուրտէ քահանայն, ծնեալ ի Լիոն իբր ի 1729, և ի 1761 ընտրուած ուսուցիչ եբրայականի՝ Վիլֆուայի

կենդանութեան ատեն, և անոր պաշտաման յաջորդութեան իրաւունքով (survivancier)։ Իրեն նման համակրութեամբ և եռանդեամբ լի առ լեզու մեր և մատենագրութիւն, մասնաւոր յանձնարարականաւ պետական անձանց Գաղղիոյ՝ յամի 1785 եկաւ ի վանս սրբոյն Ղազարու ի Վենետիկ, ստացած ուսումը ալ աւելի կատարելագործելու նպատակաւ։ Յօրինած էր արդէն հայ և լատին ընդարձակ բառգիրք մը, զոր մեր լեզուի աւելի հմտագունից սրբագրութեանն ենթարկել կարեւոր կը համարէր. և այս մի՛ւս վախճան մ'էր այդ ճանապարհորդութեան։ Ասոնցմէ զատ, իր ժամանակին Գաղղիոյ կառավարութեան քաղաքագիտութիւնը՝ դարերէ ի վեր արեւելից մէջ ստացած և պահպանած ազդեցութիւնն ալ աւելի ամրապնդելու և արդիւնաւոր ընելու դիտմամբ՝ հայկական լեզուի ուսման մասնաւոր աթոռ մը կ'ուզէր հաստատել ի մայրաքաղաքին. և զԼուռտէ ղրկելով յիտալիա և ի Վենետիկ, կը փափաքէր այդ մտածութիւնը ի գործ դնելու և դիւրացնելու միջոցներու վրայ խորհիլ, Սակայն երկրին մեծ յեղափոխութիւնը՝ որ քիչ ատենէն վրայ հասնելով բռնացաւ, այդ մտածութիւնն ալ նաւակոծեց, ինչուան որ յետոյ ուրիշ առթով և կերպով հաստատուեցաւ նոյն ուսումն ի դպրոցի արեւելեան կենդանի լեզուաց։

Մէկուկէս տարի մնաց Լուռտէ ի Ս. Ղազար, նոյն միջոցին ուրիշ կարեւոր աշխատութեան մ'ալ ձեռք զարնելով։ Աստուածաշունչ գրոց հայկական թարգմանութեան ընտրութեան վրայ սքանչացած, փափաքեցաւ փոխադրել զայն ի լատին լեզու, հանդերձ բաղդատութեամբ ընդ յունին և եբրայականին, և անցընել ի կարգ տպագրելի բազմալեզու Սուրբ Գրոց։ Գաթրըմէր, գրիչ իր վարուց, և որ տեսած էր զայդ աշխատութիւն, կը վկայէ թէ երեք միածալ հատորք էին, և կը պահուէին ի մասնաւոր գրատան մարգիզ Ֆորթիայ։ Այսպիսի կարեւոր երկասիրութեան մը սկզբնաւորու-

թիւնն ըրած էր ի Վենետիկ, և յառաջ տարած մինչև ի վախճան Թագաւորութեանց գրոց, ինչպէս կը վկայեն նաև ժամանակագիրք մեր. և յետ դարձին ի Փարիզ շարունակելով զայն՝ երկու հատորը աւարտեց. իսկ զերրորդն ի Լիվոռնոյ ի 1797։ Այս երեք հատորոց մէջ կը բովանդակուէին ամբողջ պատմականք Գրոց Սրբոց, և կը պահուին ցարդ յարքունի մատենադարանի Միւնխենի Պաւարիոյ։

Գալէմքեարեան վարդապետին կազմած նոյն մատենադարանի հայկական ձեռագրաց ցուցակէն կը քաղենք սոյն երկասիրութեան նկարագիրը.

« Թիւ գրչագրին, 19. մեծադիր (35. 5+23 սմ). երեք հատոր ամբողջ փառակազմ մատեանք։ Առաջին հատորին կռնակը ոսկեգիր դրոշմուած Bible arménienne traduite par M. Lourdet. Կողին ներքին երեսը տպագիր զինանշան մը կայ, տակը M. le marquis Fortia, rue de la Rochefaucaud, N. 12։ Կողին թղթին վրայ Ex bibl. Quatr. Գրութեան ճակատն Liber Geneseωs, Absolutus, die 11 Aprilis, anno Domini 1792. Այս հատորն Մովսիսի հինգ գիրքն է հայերէնէ ի լատին թարգմանեալ, առանց բնագրի, ճոխ ծանօթութեամբք։ Ի վերջոյ. Explicit totus Pentateuchus, Deo favente et protegente Beatissima Virgine Maria, hac ipsa die 2. Decembr. Anni R. S. H. 1793. Ad majorem Dei gloriam ipsiusque Ecclesia utilitatem.

« Երկրորդ հատորն նոյն զինանշանը, կողին վրայ նոյն գրութիւն։ Այս հատորն է Liber Josue. Ի վերջոյ. Explicit liber Josue die 7 Julii, anno Domini 1794. Judicum, libri Ruth. Ի վերջոյ. Explicit liber Ruth die $9^{bri}$ $21^{a}$, anno Domini 1794. Libri Regum. Explicit liber 1 Reg. die $16^{a}$ April. 1795. Liber Regum II, III, IV, որմէ ետև. Ad majorem Dei gloriam, et auspice Deiparâ Sanctissima Virgine Maria, explicit liber hic Regum quartus Venetiis, anno R. S. H. 1795, die vero Decembris $30^{a}$.

« Երրորդ հատոր. նոյն կազմ, զինանշան և այլն: Կը սկսի Paralipomenum, liber Primus, Secundus. յետոյ Deo juvante absoluti sunt duo libri Paralipomenum, Venetiis, anno R. S. H. 1796 die vero 12ª Octobris. Յետոյ Libri Esdræ I, II; Libri Nehemiæ; Libri Tobiæ die 9ª mensis Julii, anno R. S. H. 1797. Յետ որոյ Liber Judith. որմէ ետեւ Explicit liber Judith in Livorno, die 7ª mensis Januarii, anno R. S. H. 1798: Յետոյ Libri Esther. որմէ ետեւ Explicit liber Esther, post quosdam locorum mutationes, die 2ª Junii, anno R. S. H. 1798. in urbe Florentiæ.

Լուրտէի երկասիրածն է նաեւ հետեւեալն որ կը պահուի նոյն Միւնխենի արքունի գրատան մէջ, և խորագիր կը կրէ. « Գիրք Ծննդոց ի հայէ ի լատին ». Cod. Arm. XX 1785: Մեծ քառածալ (24, 5+18, 5), 216 թուղթ. կանաչ թղթով, խաւաքարտեայ կազմով հատոր մը, Ծննդոց գրոց լատին թարգմանութիւն, մէկ երեսը հայերէն բնագրով, միւս երեսը լատիներէն: Ինչպէս յառաջաբանէն կ'երեւնայ, 1723 ին Մխիթար Աբբահօրմէ հրատարակեալ Աստուածաշնչոյ վրայէն է թարգմանութիւնը: Ճակատն է Biblia Sacra. Armeno–Latina, in Supplementum ad Sacra Biblia Polyglotta Waltonis. Genesis. Tomus primus. Auctore Petro Simone Lourdet, presbytero Parisensi, Regio linguarum Hebraice et Siriace professore, nec non librorum Censore Regio. Parisiis; anno R. S. H. 1785 »:

Այս խորագիր երկու ինչ կը յայտնէ. նախ թէ ինչ վախճանաւ ձեռք զարկեր էր Լուրտէ այս դժուարին աշխատանքին, որ չիրականացաւ վերահաս ազգային քաղաքական յուզմամբք. և երկրորդ թէ արեւելեան գրոց քննիչի պաշտօնն կը վարէր ի Փարիզ, որով իրեն յանձնուեցաւ հայ բառգրքի մը քննութիւն՝ զոր հրատարակել կ'ուզէր հայրն Գաբրիէլ Վիլլաֆորեցի, նախկին առաքելական քարոզիչն, որ երեսուն տարի կե-

*ցեր էր ի Հայաստան։ Այս գրուածքն յարմարցուած էր համանման ուրիշ երկասիրութեան մը վրայ, զոր յօրիներ էր հայրն Յովհաննէս Մկրտիչ ի Դոկսիչիոյ, մեծաւոր կարգի վեղարաւորաց ի Հայաստան։*

*Վիլլաֆորեցի գանգատեցաւ Լուսոէի վրայ, և մեղադրեց թէ իր երկասիրութիւնը երկար ատեն քովը պահելով ընդօրինակած ըլլայ զայն, որպէս զի յետոյ իր անուամբ հրատարակէ։ Լուսոէ նեղուած, իր այնչափ խնամքով յօրինած բառգրոց օրինակն առնելով Վիլլաֆորեցւոյ ներկայութեամբ կրակը ձգեց զայն։ Իրեք տարի վրան անցնելէն ետքը՝ անխոնջ և բազմավաստակ Լուսոէ քահանայն՝ կրկին յօրինման ձեռք զարկաւ և գլխաւորեց, որ դժբաղդաբար չհրատարակուեցաւ։ Ատեն անցնելէն ետքը՝ այս բառգրոց ձեռագիր օրինակը գնոց առաւ Պէլլոյ՝ որ նախկին աշակերտ մ'էր արեւելեան կենդանի լեզուաց գպրոցին։*

***

*Ի դարձին ի Փարիզ՝ գաղափարաց մեծ յեղափոխութիւն տեսաւ ի Գաղղիա, գուշակք ապագայ յուզմանց. և զոր առ մերոն գրած թղթոց միոյն մէջ հետեւեալ խօսքերով կ'ակնարկէ. «Լուաւ, կ'ըսէ, հայրութիւնդ* զոր ինչ այժմ չար լինին ի Գաղղիա. ուր եթէ ոչ ողորմեսցէ մեզ Աստուած, ամենայն ինչ ի կորուստ քրիստոնէական հաւատոց սահին օր ըստ օրէ։ Ի վաղուց հետէ նոր փիլիսոփայութիւն զօրացաւ, և միասին պակասեցաւ բարեպաշտութիւն առ մեզ։ Փիլիսոփայքն՝ ի ձեռն ամանց չարաչար պաշտօնէից՝ հաւանեցուցին զթագաւորն մեր դարձուցանել ի թագաւորութիւնս ոչ միայն զպրոտեստանդս, այլ և զամենայն այլս հերձուածողս։*

* Կը գրէ առ Ստեփանոս վարդապետ Ագոնց, (ապա ընդհանուր աբբահայր Ուխտին և արքեպիսկոպոս), որ իր ուսուցիչն և աշխատակիցն էր։

Իսկ արքայ մեր, թէպէտ բարեպաշտ, որչափ կարէ բարեպաշտիլ թագաւոր, բայց դիւրաշարժ է և նուաստ միտք. ուստի հնարիւք հանին ի նմանէ ղհրովարտակ, զի առակցեսցին ընդ մեզ ակաթոլիկոք ի թագաւորութեան… Ցայսմ ժամանակի թշուառութեանցս սակաւք գտանին ուսումնասէրք »: Ուրիշ նամակի մը մէջ ալ կ'ըսէ. « Ստացայ և աշակերտ հայերէն լեզուի գ.քահանայ մի, առ ի օգնել թարգմանութեան աստուածաշընչի »: Հաւանականաբար Կառնիէ քահանայն էր սա, որուն յանձնեցաւ ապա եբրայական լեզուի ուսուցչութեան աթոռը:

Ոչ աննշան են թուով իր այս հայերէն թղթակցութիւնք ընդ մերսն. և նախագիծ օրինակքն են անշուշտ որոց համար նոյն Գաթրըմէր կ'աւանդէ թէ կը պահուէին ի գրատան Փարիզու, բայց յետոյ ի նորոգ կարգաւորութեանն անհետ եղած ըլլան, չգիտելով թէ ո՛ւր զետեղած է մատենադարանապետն Վան – Պրայէր: — Նամակներէն զատ ձեռուընիս կայ փոքրիկ քերթուած մը յօրինեալ ի նմանէ ի նուէր հարսանեաց դստեր ազնուական Նանի սեպհոյն վենետկեցւոյ:

Իսկ Հայկական Բառգիրք (Dictionnaire de la langue arménienne) գրչագիր օրինակը կը պահուի յազգային գրատան Փարիզու*: — Մեռաւ Լուռտէ ի Փլորենտիա, յամի 1799, յ'9 մարտի:

*
* *

Միւս այլ աշակերտ Վիլֆուայի ի Փարիզ եղաւ Պետրոս Տիւֆուր (Du Four), միանձն դոմինիկեան: Իր մէկ լատին նամակէն՝ զոր ուղղած է առ Նախահայր Ուխտիս յօգոստոսի 1749 տարւոյն, չգիտնալով իր երջանիկ վախճանը որ հանդիպած էր նոյն տարւոյն ապրիլի

* Պատմ. հայերէն դպրութեանց. Հատ. Բ. 416:

27 ին, հետեւեալ տողերը կը քաղեմք. « Վեց ամսէ ի վեր, կ'ըսէ, իմ երեք կրօնակիցներովս՝ հայկական լեզուի ուսման կը պարապինք, հրահանգուելով ընդ առաջնորդութեամբ մեծարգոյ Վիլֆոուս քահանայի, արեւելեան դպրութեանց համբաւանուն ուսուցչին, որ Թագաւորական մատենադարանին ամէն հայ գրչագիրքն աչքէ անցուց եւ անոնց համառօտութիւնն շարագրեց։ Ընթերցման կերպը եւ քերականական կանոններն իրմէ ուսնելով, սաղմոսարանը թարգմանեցինք, որչափ կրնայինք օժանդակիլ Ուիվոլայ բառգրոց աղքատութենէն։ Ետեւէ եղանք ապա Հեթմոյ արքայի մէկ քերթուածը փոխել ի հայէ ի լեզու գաղղիական. եւ արդէն ի գլուխ հանելով զայն, մեր եռանդը առ մեծագոյն թեւակոխել կը համարձակեցընէ։

« Հայ լեզուի ուսմամբ զբաղելնուս պատճառը, լոկ հեռաւոր ժողովրդեան մը բարբառոյն գիտութեամբ, այլոց առջեւ ընդունայն համբաւ կամ պարծանք առնել չէ. այլ հասարակաց օգուտը, ինչպէս պատշաճական է խոհական եւ կրօնասէր անձանց. վասն զի ասով միայն աշխատութիւննիս արդիւնաւոր կրնայ ըլլալ։ Մեր նպատակն է՝ կրօնիւք եւ մատենագրութեամբ ձեր նշանաւոր ազգը ծանօթացընել Գաղղիացւոց, եւ իրեն երկասիրութեանց ընտրելագոյն մասունքը, բարոյականին ընտիր վարդապետութիւնքը, ճարտարխօսութեան սքանչելի կըտորները յեղուլ ի մեր լեզու։ Ուստի թախանձանօք կը խնդրենք որ նշանակես մեզ զանուանս եւ զվաստակ ձեր ընտիր մատենագրաց. զպատմաբանս, զբանաստեղծս, զաստուածաբանս եւ զսրբազան ճարտարախօսս. վասն զի անոնց գրուածոց թարգմանութիւնք մեծապէս օգտակար կրնան ըլլալ կրօնից եւ եկեղեցւոյ։

« Ձեր պատմչաց հայր գիտենք զՄովսէս Խորենացի, որոյ պատմութիւնն արդէն իսկ թարգմանուած է ի Վիստոն եղբարց, բազմարդիւնք եւ մեծարեալք թէ ձեր ազգէն եւ թէ յօտար գիտնականաց. թէպէտ եւ այս

թարգմանութիւն ըստ ամենայնի կատարեալ չէ, ինչպէս լսեր եմ ի Բաղդասարայ Յովհաննիսեան հայազգւոյ, և որ այս առ ձեզ թղթիս առիթ եղաւ: Ձեր մատենագիրն Խորենացի յիրաւի շատ հին, արժանահաւատ և համառօտաբան է. և գաղղիական թարգմանութիւն մը անտարակոյս մեծապէս հաճոյ պիտի անցնի Գաղղիացւոց: Եւ թէպէտ պատմածներէն շատը սխալ ալ չիհամարինք, սակայն չենք ալ գիտեր ինչպէս պաշտպանել զմատենագիրն և իր գրուածը մեր ազգային քննադատից առջեւ, որք բաղում ինչ ի նմա իբրու առասպելական կը մերժեն. օրինակ իմն, Աբգարու ընդ Յիսուսի ունեցած յարաբերութիւնը. — ունի՞ք արդեօք այնպիսի յիշատակարաններ կամ արձանագրութիւնք, որովք դիւրութեամբ կարելի ըլլայ հերքել հակառակորդաց առարկութիւնները,

« Ունինք յայքունի գրատան քաղաքիս Սրբոյ Լուսաւորչի անունով քանուիրեք ճառք, Յովհաննու Երզընկացւոյ ներբողենիւ. սակայն կը տարակուսինք անոնց վաւերականութեան վրայ: — Նոյն տարակոյսն ունինք նաեւ Ս. Գրիգորի Վարդապետութիւն կոչուած գրուածին վրայ:

« Շատ ուրախ եղայ տեսնելով ձեր տաղաչափական մատենագրութիւնքը, որ եբրայական ոտանաւորաց նմանութիւնն ունին, պահելով միանգամայն իրենց վսեմութիւնն ու փայլը: Կը լսեմ թէ ձեր վարդապետաց մին՝ Ս. Թովմայի Ակուինացւոյ աստուածաբանութեան երկրորդ մասը հայկական ոտանաւորի վերածեր է. կը փափաքէի գիտնալ թէ արդեօք աւարտե՞ր է զամբողջն...»:

Այս թուականէն տասը տարի յառաջ (1739) գրուած նամակ մ'ալ կը գտնենք՝ մօտերս հրատարակուած « Ս. Երուսաղեմի ժամանակագրական պատմութիւն »*

* Երկասիրութիւն Աստուածատուր եպիսկոպոսի Տ. Յովհաննէսեանց յառաքելական աթոռէ Սրբոց Յակոբեանց. Երուսաղէմ, 1890:

կոչուած հետաքննութեան արժանաւոր երկասիրութեան մէջ։ Գրողն է մեծանուն ծիրանաւորն Փլէօրի, ուղղեալ առ Գրիգոր Շղթայակիր պատրիարք Երուսաղեմի, ի լեզու գաղղիական. սակայն ի վերջն կը յաւելու թէ «Զայս նամակ ետու թարգմանել ի բարբառ Հայոց, առ ի ցուցանել ձեզ թէ ծանօթք եմք լեզուի ձերոյ, և ի կիր արկանեմք զայն ի դէպս»: Ի հաւաստիս թարգմանչին լեզուին ուղղութեան և ի ցոյց ծիրանաւորին ունեցած համարման առ ազգն և մատենագրութիւն մեր, աւելորդ չենք համարիր հետևեալ տողերն մէջ բերել.

«Մեծ և զգալի մխիթարութեամբ ընկալայ, Տէր, զնամակն ձեր գրեալ յառաջնում աւուր յունվարի ի սոյն ամի։ Սքանչացայ ի վերայ փայլուն և բազմահանճար բանիցն՝ զոր ընծայէ չքեղ և մեծավայելուչ բարբառն հայկական...

«Խնամով պահպանեմք ի փառաւոր գրատան ամենաբարեպաշտ թագաւոր կայսեր մերոյ զբազմաթիւ երևելի յիշատակարանս առեալ ի ժողովոց, և զգրեանս առաջին եպիսկոպոսաց ձերոց, որ անմահ փառք են եկեղեցւոյն Հայոց»....:

Հաւանական կ'ենթադրեմք թէ Վիլֆուայի ըլլայ այս թարգմանութիւն, թերևս և յօրինուած նամակին. թէպէտև նոյն ատեններն, և յառաջ ևս քան զայդ թուական, պակաս չէին նաև Հայ ազգայինք ի մայրաքաղաքին և յայլ քաղաքս Գաղղիոյ, ինչպէս յառաջ մեր տուած քանի մը տեղեկութիւններէն ալ տեսնուեցաւ։ Ասոնց վրայ աւելցընենք 1683 ին գրուած յիշատակագիր մի. «Ի թուին Հայոց ՌՃԼԲ՝ փետրուար ամսոյ երկու աւուրն՝ ես Բաղիշեցի մահտեսի Շահմուրատ գնացի ի թագաւորանիստ քաղաքն Վերսալիա. տեսայ զԹիւթիւնճի Յովհաննէս վարդապետն, Սիսիանցի Զաքարիա վարդապետն, Հալապցի Ղազարոսի որդի Յովսէփն, Էրզրումցի Յովհաննիսի որդի Գրիգորն, Ղազանճի Մուրատն, Ոսկան վարդապետի քուերորդի Սողոմոնն։ Նաև

տեսանք Ֆրանցայու թագաւորն, զկինն, զորդին և զեղբայրն, զեղբօր հարսն և զվէզիրն։ Տեսանք զսէրայներն և զայլ սալթանաթն սէրային. գեղեցիկ շինուածք, ոսկեղէն, արծաթեղէն և ճէվահիրեղէն. ութը կամար մէկ մէկի վրայ, արծաթեղէն և թուրլու թուրլու ամարաթով։ Եւ մին երկայն սրահ՝ որ է խաղալոյ տեղ, որ կէան շինած է, և զկէան Նոր կը շինէին, որ վեց միլիոն խարճ կու գնայր, որ իւր ղափուն էր, և ամենայն երկրի վերայ մէթ անելու տեղ կար։ Թահմին արաք որ տանըվեց միլիոնի զարդ կայր », և այլն։

## ԴՊՐՈՑ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿԵՆԴԱՆԻ ԼԵԶՈՒԱՑ Ի ՓԱՐԻԶ

Նախընթաց գլուխներուն մէջ խօսելով հայ լեզուի ուսումնասիրութեան բարգաւաճմանց վրայ յարեւմուտս, յիշատակեցինք իննեւտասներորդ դարէն յառաջ երեւցող եւրոպացի հայագէտքը։

Դժուարին չեղաւ մեր այդ աշխատանք, զի սակաւաթիւ էին անոնք, զորս յիշեցինք. ուր աւելի ծանր պիտի ըլլար եթէ ուզենայինք զբաղիլ ազգային հայագիտաց վրայ խօսելով։

« Հայ գրականութիւն, ըսած է Վիկտոր Լանկլուա, ի գլուխ Հայ պատմչաց հատուածն դրուած յառաջաբանին մէջ, քրիստոնեայ արեւելից ամենէն աւելի արգասաւոր և հետաքննականներէն մէկը, միայն մեզմէ կէս դար յառաջ սկսուած է յեւրոպա ըրջաբար ուսումնասիրուիլ։ Ինչուան այն ատեն Վիլլոտի և Լաքրոզի ջանքերն յեօթնեւտասներորդ դարու, և Շրոտէրի, Վիլֆռուայի և Վիստոն եղբարց ի յաջորդին, մեծ արգասիք մը յառաջ բերած չէին։ Պէտք է յառաջ խաղալ մինչեւ ի կէս ութ-

եւտասներորդ դարու, յորում պիտի հանդիպինք առաջին ջանից հուշականուն Մխիթարայ Սեբաստացւոյ՝ ազգային դպրութեանց վերածնութեան տեսակէտով։ Այս հանճարեղ անձին ձեռքով՝ հայկական մատենագրութիւն յաջողեցաւ իր նախկին պայծառութիւնը միւսանգամ ստանալ. և այս տողերը գրած ատեննիս ալ (1868) դադրած չէ այդ մեծ շարժումը, զոր տուաւ Պելոպոնիդայ կամաւոր տարագրեալը՝ ազգային ուսմանց և հետազօտութեանց։ Վենետիկ, Պոլիս, Վիեննա, Փարիզ, Պետրբուրգ, Մոսկուա, Թիֆլիզ, Երուսաղէմ, այս մտաւորական շարժման կեդրոններն են, որ օր ըստ օրէ ա՛լ աւելի կը ծաւալի ու կ՚ընդարձակի, և գուշակել կու տայ հայ ազգին համար լաւագոյն օրեր և բաղդ»։

Նախ ի Գաղղիոյ կը սկսինք, զի և այլք յարեւմտեան արեւելագիտաց չեն ժխտեր նմա զայս պատիւ, և կը խոստովանին թէ իրն է արդիւնք՝ դարուս հայկական ուսմանց առաջին զարկը տալուն։ Հայագէտն Հ. Հիւպշման՝ ուսուցիչ ի համալսարանին Ստրասպուրկի, կը խոստովանի առ բանասիրական ընկերութիւնն Լոնտրայի տուած Տեղեկագրին մէջ (1877, մայիսի 13)· դեռ նորերս ալ՝ Կէթթինկէի համալսարանին արեւելեան լեզուաց ուսուցիչն, միւս հայագէտն Պաւղոս Տըլակարտ (ի Gœttinghische gelehrte Anzeigen ի 15 ապրիլ 1887), ի դրուատելն զՕկիւսթ Գարրիէր՝ ուսուցիչ հայ լեզուի ի դպրոցի արեւելեան կենդանի լեզուաց ի Փարիզ։ Բաւական է առնուլ ի ձեռս զհոյակապ հատորն հրատարակեալ ի 1869 յԱկադեմիոյ Արձանագրութեանց և Գեղեցիկ դպրութեանց, և որոյ խորագիրն է «Հաւաքումն պատմըչաց Խաչակրաց. — վաւերականք հայկականք» համոզուելու համար թէ ինչպէս յարատեւ եղած են միշտ հայկական ուսմունք ի Գաղղիա։ Այդ ընտիր երկասիրութեան հրատարակողն՝ Եդ. Տիւլորիէ 1867 տարւոյն Արուեստահանդիսին առթիւ հրատարակած գրուածի մը մէջ այս ուսմանց յառաջխաղացութեան

նկարագիրն տուաւ, ինչպէս և Գարրիէր՝ արդի ուսուցիչն հայ լեզուի և Տիւլորիէի յաջորդն։ Ոչ դոյզն նպաստաւոր եղան մեզ՝ Փարիզու Ասիական ընկերութեան քարտուղարաց Ժ. Մոհլի, Ե. Ռընանի եւ Ճ. Տարմէսդէդէրի տեղեկագիրք, ինչպէս նաեւ գերման արեւելեան ընկերութեան։



Գաղղիոյ մայրաքաղաքին մէջ արեւելեան կենդանի լեզուաց մասնաւոր դպրոցի մը հաստատութեան առաջին գաղափարն ունեցաւ Լ. Մ. Լանկլէս, որ ի 1790 մասնաւոր ուղերձով մը առաջարկեց Ազգային ժողովոյն. ցուցընելով թէ որչափ օգտակար էր հայրենի վաճառականութեան, քաղաքական շահից և գիտութեանց յառաջադիմութեան համար ի Փարիզ կամ ի Մարսէյլ քաղաքաց մէջ հաստատել արար, պարսիկ և տաճիկ լեզուաց համար առանձին ուսուցչութեան աթոռներ, և յանձնել կարող և հմուտ անձանց՝ որ երկար ատեն արեւելք կեցած ըլլալով՝ ընտանեցած ըլլան երկրին բնիկ ժողովրդոց լեզուին և մատենագրութեան, որոնք ամէն առաւօտ քանի մը ժամ հրապարակական դասախօսութիւն ընելու պարտական ըլլան։ Այսպիսի առաջարկութեան՝ նոյն 1790 տարւոյն ժողովոյն ընդունելի ըլլալուն հաւանականութիւն չկար։ Բարեբաղդաբար՝ Լանկլէս այն առաջին ձախորդութենէն յուսահատող և մտաց խորհրդէն ետ կեցող անձ չէր։

Քանի մի տարի ետքը աւելի բարեպատեհ ժամանակ մի իրեն ներկայացաւ։ Յեղափոխական կառավարութեան բռնած ընթացից բնական հետեւանքով՝ բազմագոյնք ի թարգմանաց հիւպատոսարանացն արեւելից՝ հրաժարեր քաշուեր էին իրենց ծառայութենէն. և նոր լեզուաց դպրոցին գրեթէ բոլոր աշակերտք՝ մեծին Լուդովիկի անունն կրող դպրոցէն ելեր զատուեր էին, որ այն մեծա-

փառ անունը փոխելէն ու Հաւասարութեան դպրոց (Collége de l'Egalité) կոչուելէն զատ, սկզբանցը ու վարչութեան մէջ ալ զանազան այլափոխութիւններ կրած էր․ որով յամին 1795 միայն երկու աշակերտք մնացած էին հոն։ Թարգմանաց նուազութիւնն ալ այնչափ զգալի էր, որ պարապ մնացած պաշտամանց համար՝ ընդունակ անձինք գտնել գրեթէ անհնարին էր։ Մէկ կողմէն երկրին վաճառականական ու քաղաքական շահն կը պահանջէր՝ այսպիսի դժուարին դիրքի մը դարմանին փութալ․ միւս կողմանէ ալ նոր լեզուաց ուսման համար հաստատուած դպրոցը՝ պզտի տղայք ընդունելովը, տէրութեան ստիպողական պիտոյիցը օգնելու խիստ դանդաղ միջոց մը կ'ընծայէր։ Հարկ էր փութալ ի հաստատութիւն այնպիսի դպրոցի մը՝ ուր չափահասք քիչ ատենի մէջ կատարեալ ուսումն մը ընդունելով՝ կարող ըլլան հայրենեաց օգտակար ըլլալ, այլեւայլ տեղուանք թարգմանի պաշտօն կատարելով։

Լանկլէս որ 1790 ըրած առաջին փորձէն ետքը անգործ կեցած չէր, յարմար ժամանակը գտնելով՝ միւսանգամ պաշտօնի հասաւ։ 1795 տարւոյն սկզբնաւորութեան դաշնադրականաց կառավարութեան բազմաթիւ պաշտօնէից հետ ունեցած բարեկամական յարաբերութեամբքն օգտուելով, իր նախկին առաջարկութեան մէջ քանի մը փոփոխութիւններ ընելով, կրկին ներկայացոյց զայն Ազգային ժողովոյն․ և այս անգամ ընդունելի եղաւ։ Ուստի 1795 մարտ 30 վճռեցաւ որ

Ա․ Ազգային Մատենադարանին շինուածին մէջ հասարակական դպրոց մի հաստատուի յուսումն արեւելեան այն կենդանի լեզուաց որ օգտակար ճանչցուին երկրին քաղաքավար տեսչութեան և վաճառականութեան։

Բ․ Արեւելեան լեզուաց դպրոցին մէջ պիտի գտնուին ուսուցիչ մը գրաւոր և աշխարհիկ արաբ լեզուի․ ուսուցիչ մը տաճիկ և թաթար լեզուաց․ ուսուցիչ մը պարսիկ և մալայ լեզուաց։



1798 դեկտեմբեր 11ին՝ արեւելեան լեզուաց դպրոցին մէջ դրուած ցուցակը կը նշանակէր թէ « Հայազգին Ջրպետեան իր լեզուին դասախօսութիւնը պիտի ընէր »։ Այս առաջին փորձն՝ արդէն յառաջագոյն սահմանուած լեզուաց ուսման վրայ՝ նոր լեզուի մ'ալ դասախօսութիւնն աւելցնելու՝ միայն երեք տարի տեւեց։ Յակոբ Շահան Ջրպետեան եղեսացի՝ քիչ յառաջ հասած էր ի Գաղղիա. և գաղղիական լեզուի ունեցած անբաւականութիւնն՝ չէր ներեր օգտակար կերպով մայրենի լեզուին դասախօսութիւնն ընել իր աշակերտաց։ Ուստի և հայկական լեզուի առժամանակեայ ընթացքը վերցուեցաւ (1801)։

Զի քաւ Ջրպետ այդ առաջին անյաջողութեամբ. այլ իր ազգին յատուկ յարատեւութեամբ՝ ամենայն փութով և ջանիւք ետեւէ եղաւ սորվիլ զգաղղիական լեզու։ 1806ին հրատարակեց Փ. Մարդէն արեւելագիտի մը (զոր չէ արժան շփոթել ընդ Սէն-Մարդենի) աջակցութեամբ՝ բոլորովին աննշան ու իմաստնոց համար ամենեւին կարեւորութիւն չունեցող գրուած մը « Հետազօտութիւնք ի վերայ հին պատմութեանն Ասիոյ » (Recherches sur l'histoire ancienne de l'Asie)։ Բայց անով կրցաւ հաւաստիք մը տալ՝ գաղղիականին մէջ ըրած յառաջադիմութեան, առաջարկելով որ կարենայ միւանգամ ձեռք առնուլ հայ լեզուի դասատուութեան ընթացքը. Լանկլէս իր կողմանէ դժուարութիւն մը չունենալը առ այն իմացուց. Հասարակաց կրթութեան նախարարն ալ հակառակութիւն չցուցուց նոր փորձի մը, և հաճութիւն տուաւ որ առժամանակեայ ընթացք մը սկսի հայ լեզուի յ'8 դեկտեմբերի 1810 տարւոյն. խոստանալով որ եթէ փորձն յաջողութիւն գտնէ, կարեւորն տնօրինէ հայկական լեզուի ուսման յարատեւ ընթացք մը հաստատելու։

Այս երկրորդ անգամ յաջողեցաւ Զրպետ իր ձեռնարկութեան մէջ։ Իր այն առենուան աշակերտներէն մէկը, Պէլլոյ, հեղինակ «Փորձ հայկական լեզուի» գրոց (Essai sur la laugue arménienne) տպագրելոյ ի Փարիզ ի 1812, որ յետոյ եկեղեցական աստիճանի մէջ մտաւ, կը պատմէ թէ Զրպետ հայ ուսման սկզբնաւորութիւնն ըրաւ ի 1811 ի 15 փետր․ քան աշակերտով, յորոց հինգ միայն կրցան յարատեւել․ այս հնգին մէջ էին ինքն Պէլլոյ և Ժան–Ա․–Սէն–Մարդէն (1791–1832) որ իրաւամբ իր հայրենակիցներէն մէկէն կոչուած է «Փառք արդի հմտութեան և պարագլուխ հայագիտաց Գաղղիոյ»։ 1812 ին հայ լեզուի ուսման վարդապետական աթոռը հաստատապէս սահմանուեցաւ ի Մոսկուա տրուած կայսերական վճռով մը։ Զրպետ նոյն տարւոյն մէջ հրատարակեց «Տեղեկութիւն ի վերայ երկուց հայ գրչագրաց (Թիւ 95 և 99 ի կայսերական մատենադարանին), որ բովանդակեն զպատմութիւն Մատթէի Երիցու, և քաղուած ի պատմագրութենէ անտի վերաբերելոցն առաջին խաչակրութեան, ի հայ և ի գաղ․» (Notice de deux manuscrits arméniens — n. 95 et 99 de la Bibliothèque Impériale — , contenants l'histoire de Mathieu Eretz; et extrait de cette histoire relatifs à la première croisade, en arménien et en français; Paris. = Extrait du tome IX des Notices et extrait de la Bibl. Imp. et autres Bibliothèques =)։ Այս թարգմանութիւն հաւատարիմ չէ․ վասն զի Զրպետ ջանացած է հեղինակին բնագիրը սրբագրել և ոճը գեղեցկացընել։ 1810 ին հրատարակեց «Ընդհանուր նկարագիր Հայաստանի» կոչուած գիրքը (Tableau général de l'Arménie), ու 1816 ին «Խորհուրդք (Թելադրութիւնք) առ Հայս հարաւային գաւառաց պետութեանն Ռուսաց յաղագս մշակութեան բամբակի» (Conseils aux Arméniens des provinces méridionales de l'empire russe, sur la culture du coton her-

bacé)․ 1818 ին օժանդակեց հայկական մասին նկատմամբ՝ հետեւեալ երկասիրութեան․ « Տեղեկութիւն ի վերայ այժմեան վիճակին Պարսկաստանի, ի լեզու պարսիկ, հայ և գաղղիացի, ի Միր Տաւուտ Ծատուրէ, Լանկլեսէ և ի Զրպեռէ » (Notice sur l'état actuel de la Perse, en persan, arménien et français, par Myr Davoud Zadour, Langlès et Cirbied)․ 1820 ին Գաղղիոյ Հնագիտաց ընկերութեան Յիշատակարանաց համար գրեց հատուած մը « Զկառավարութենէ և զկրօնից նախնի Հայոց » խորագրով․ (Le Gouvernement et la Religion des anciens Arméniens)․

***

Ինչուան այն ատեն գաղղիացի հայասիրաց գործածութեան համար քերականութիւն մը շարագրուած չէր։ Դպրոցին կանոնաց համեմատ, ուսուցիչը պարտական էր յօրինել քերականութիւն մը, և տալ զայն ի տպագրութիւն։ Արդէն 1806 էն ի վեր Զրպեռ՝ « Հետազօտութիւնք » կոչուած գրոց յառաջաբանին մէջ կը ծանուցանէր թէ քերականութեան գիրքն աւարտած էր, Բառգրոց յօրինումն ալ յառաջացած․ Նոյն քերականութեան վրայ և համեմատ կը դասախօսէր, սակայն թոյլ կը չարժէր ի գործ հրատարակութեանն։ Նոյն ատեններն՝ Աւգերեան Հ․ Յարութիւն կը հրատարակէր հայանգղիական քերականութիւն մը՝ ծախիւք Լորտ Պայրընի, ու տեղ տեղ նաեւ սրբագրութեամբք։ Ա՛լ պէտք չէր դանդաղիլ․ ուստի և բռնադատեցաւ Զրպեռ՝ իր շարագրածն ալ տպագրել (1823), մեծ ու անմարսելի հատոր մը, ինչպէս կ'ըսէ Գարրիէր, և լի վրիպակօք։ Բարեբաղդաբար՝ Գաղղիոյ մէջ հայերէն լեզուն բարգաւաճ վիճակ մը սկսեր էր ստանալ։ Սէն–Մարդէն արդէն հրատարակեր էր իր « Յիշատակագիրքը » Հայաստանի վրայ (Mémories sur l'Arménie 1818–1819) ու

*Շէզի և Աբէլ Ռէմիւզա արեւելագիտաց աջակցութեամբ հաստատեր էր ի* 1822 *Ասիական ընկերութիւնը, որոյ հրատարակած օրագիրն այնչափ օգտակար եղաւ ապա ի ծաւալել զլոյս ի վերայ արեւելից։*

***

*Նոյն ատեն ի Փարիզ կը գտնուէր Կոստանդնուպոլսեցի գիտնական վարդապետն Յովհաննէս Զոհրապեան* (1760–1829), *որոյ ուսումնական արդեանց վրայ կ'արժէ համառօտ յիշատակութիւն մը ընել։*

1791 *ին բանասիրական ճանապարհորդութիւն մը ըրեր էր ի Լեհաստան, ուր շատ դարերէ ի վեր հաստատուած հայ գաղթականութիւն մը կար, և յաջողեր էր ի Լէօպոլիս հին գրչագիր մը գտնել* 1296 *թուականին գրուած, յորում երեքտասան ճառք Փիլոնի եբրայեցւոյ՝ հին հայկական թարգմանութեամբ, և որոց իննին յունական սկզբնագիրք կորսուած էին։ Վրան քիչ ատեն անցնելէն ետքը տեղեկացաւ՝ թէ նոյն երկասիրութեան ուրիշ հին գրչագիր մ'ալ կայ (գրեալ ի* 1298) *ի մատենադարանի պատրիարքարանին Հայոց որ ի Պոլիս, զոր ձեռք ձգելով կրցաւ պակասները լրացնել և վրիպակքը ուղղել ի Լեհաստան գտած գրչագրին։ Օրինակ մը առաւ սրբոյն Ղազարու մատենադարանին, ուրիշ մ'ալ իրեն քով պահելու համար։* 1816 *ին իւր այս գիւտը հաղորդեց ուսումնական աշխարհի՝ Անճէլոյ Մայ Միլանու ամբրոսեան մատենադարանի գրապետին հետեւեալ խորագիրն ունեցող գրուածքով մը. « Յաղագս նոր անտիպ գրուածոց Փիլոնի հեբրայեցւոյ »* (Philo Judæus de virtute ejusque partibus, invenit et interpretatus est Aug. Maius. Preponitur dissertatio cum descriptione librorum aliquot incognitorum Philonis, cumque partibus nonnullis chronici inediti Eusebii Pamphili et aliorum operum notitia; e codicibus armeniacis petita. Mediolani, typis regiis, 1816)։

1796 ին Զօհրապեան տպագրեց ի Ս. Ղազարու վանս՝ Մովսէսի Խորենացւոյ Պիտոյից գիրքը ընտիր ծանօթութեամբք: Այս գրքին վրայ կրկին պիտի դառնանք Ատոլֆ Պաումկարթնէրի երկասիրութեանց վրայ խօսած ատեններս:

Աշխատած է Զօհրապեան նաեւ Մխիթարեանց յօրինած Հայկազեան նոր բառգրոց վրայ: 1749 ին հրատարակուածին խմբագիր յօրինումը Մխիթարայ աբբայի Սեբաստացւոյ ձեռքովն եղած էր, որոյ շարունակութիւնն յանձնեց իր աշակերտաց, և ի մասնաւորի Անանեան Հ. Մկրտչի: Առաջին հատորն հրատարակուեցաւ ի 1749, իսկ երկրորդն՝ քսան տարի ետքը (1769): Նորանոր ձեռագրաց որ ըստ օրէ յայտնուելովը, իմացուեցաւ նաեւ բառգրոց թերութիւնն ու պակասութիւններ. ուստի և յանձնուեցաւ երեք գիտնական վարդապետաց անոր նորոգ խմբագրութեամբն զբաղիլ: Ասոնք էին հարքն՝ Գաբրիէլ Աւետիքեան, որ ամենընտիր հայ քերականութեան մը հեղինակն է, Խաչատուր Սիւրմէլեան և Յովհաննէս Զօհրապեան*: Այս աշխատակիցք՝ բոլոր ծանօթ գրչագիրներն աչքէ անցընելով, վկայութիւններ պիտի քաղէին: Այսպիսի ծանր աշխատութեան պարապեցան 1784 էն մինչեւ ի 1790, երբ մեծ յեղափոխութեան պատերազմունքն և խռովք՝ շարունակութիւնը խափանեցին: Գաղղիացւոց արշաւանաց ատեն, Պօնափարթ ուզեց սրբոյն Ղազարու Մխիթարեանց ուխտն ալ վերցընել, ինչպէս ուրիշ կրօնաւորական միաբանութիւններն: Զօհրապեան Միլան գնաց, ու միջոցը գտաւ այդ հրամանը խափանելու. և բդեաշխը յանձն-

* Կը վրիպի Շրումպֆ, Աւգերեան Հ. Մկրտիչ վարդապետը շփոթելով ընդ Զօհրապեանի, և սա ընծայելով առաջնոյն ամենամեծ արդիւնքը և աշխատանք՝ այդ գրուածքին կազմութեանը, յօրինման և լրութեան: Ընդարձակ յառաջաբանին մէջ քիչ խօսքով ակնարկուած են իր կրած դժուարութիւնք:

առու եղաւ թողլու զայն «Վենետկոյ Հայկական ակադեմիա» անուամբ։



Զօհրապեան ի 1805 հրատարակեց ի Վենետիկ Հին և Նոր կտակարանի պատմութիւն մը աշխարհիկ լեզուով, որ մեծ ընդունելութիւն գտնելով յազգին՝ այլ և այլ տպագրութիւն ունեցաւ քանի մի տարուան մէջ։ Ամենուն ծանօթ է որ ի հինգերորդ դարու՝ մեծին Սահակայ և իմաստնոյն Մեսրովպայ ջանքով, որուն պարտըկան ենք հայկական տառից գիւտը, աստուածաշունչ Ս․ Գիրք թարգմանուեցան ի հայ, եօթանասնից ընտիր օրինակի մը վրայէն՝ զոր փոխ առած էին Կոստանդնուպոլսի Մաքսիմինոս պատրիարքէն։ Այդ թարգմանութեան առաջին տպագրութիւնն եղաւ յԱմստերտամ ի 1666 Ոսկան արքեպիսկոպոսի ձեռքով․ որոյ մէջ անցուց նաև քանի մը գրոց իր սեպհական թարգմանութիւններն, զոր ըրած էր լատին վուլկաթայի վրայէն։ Նոյնը տպագրեցաւ ի Պոլիս (1705) և ի Վենետիկ (1733)։ Զօհրապեան առաջինն եղաւ որ նոյն գրոց քննադատական տպագրութիւն մը հրատարակեց, 1319 թուականը կրող գրչագրի մը վրայէն, ուրիշ բազմաթիւ գրչագրաց ընթերցուածոց տարբերութիւնները նշանակելով ի ստորև իջիցն իբրև ի ծանօթութեան։ Այդ գրչագրաց մէջ նշանակուած բազմաթիւ աստեղանիշները նկատելով՝ հետևցուց Զօհրապ թէ հայերէն թարգմանութիւնը կատարուած է Որոգինեսի Վեցէջեան (Hexapla) օրինակին վրայէն։ Իր կողմանէ ի սկիզբն գրոցն գրուած ընդհանուր յառաջաբաններն՝ կատարեալ օրինակք կրնան համարուիլ քննադատութեան։ Անվաւեր (apocryphe) կոչուածներէն ալ՝ մէկ քանին գետեղեց յիւրում տպագրութեան, և միտք ունէր անոնցմէ դուրս մնացածներն ալ աւելցընել։ Այս յաւելուածին գրչագիր օրինակն դեռ

պահուած է ի Փարիզ յազգային մատենադարանի. և Գարրիէր անկէ մաս մը հրատարակեց ի 1886 ի Nouveaux Mélanges orientaux, Յովսեփայ Գեղեցկին և Ասանեթի պատմութիւնը։ Ասանեթ դուստր էր Պուդիփարայ քրմին եգիպտացւոյ, զոր Փարաւոն հարսնութեան տուաւ Յովսեփայ. Փարաւոնի որդին կ'ուզէր առնուլ զնա յամուսնոյն, փախցընելով. բայց հարսն՝ հաւատարիմ իր պարտուց և սիրոյն, կրկին դարձաւ առ Յովսէփ։

1816 ին Զոհրապ ի լոյս ընծայեց ի Ս. Ղազար Մեսրոպեան այբուբենից գաղափարքը. իսկ ի 1818 Անձէլոյ Մայ գիտնականին հետ Եւսեբեայ Ժամանակագրութեան հայերէն ձեռագրին լատին թարգմանութիւնն, ի Միլան, քաղաքալ, որոյ համար Սէն-Մարդէն «Իմաստնոց» օրագրին մէջ վկայեց թէ կատարեալ ու հաւատարիմ փոխադրութիւն մ'է հայ գրչագրին *։ Հրատարակիչը՝ տպագրութիւնը լմըննալէն ետքը՝ նուիրեց Փարիզի Ասիական ընկերութեան։ Տարիներ անցնելէն ետքը՝ (1823) հռչականուոնն Ճ. Լէօփօրտի իր կողմանէ ծանօթութիւններ հրատարակեց, հիմ առնըլով Վատիկանի 154 թուով ձեռագիր մը։ Նոյն 1818 տարւոյն մէջ, Զոհրապի հրատարակութեան զուգաժամանակ, Հ. Մ. Աւգերեան, ուրիշ թարգմանութիւն մ'ալ ի լոյս ընծայեց նոյն գրքին, սրբոյն Ղազարու մատենադարանին ձեռագրին վրայէն, մեղադրելով զԶոհրապ որ իրենց ընկերութեան կանոնաց դէմ վարուած էր, հրատարակելով անկէ վերցուած գրչագիր մը։ Այդ խնդրոյն նկատմամբ՝ Յ. Հ. Փեթրմանի պատմածները կրնան գտնել խնդրողք ի յառաջաբանին՝ զոր Շէօնէ դրած է ի սկիզբն իւր թարգմանութեան Եւսեբիոսի (1876)։ Զոհրապի լատին

* Սէն–Մարդէնի աս ենթադրութեան սխալը՝ բաղմաթիւ օրինակներով հաստատեց Աւգերեան Հ. Մ. վարդապետ՝ իր թարգմանութեան յառաջաբանին մէջ։

թարգմանութեան երկրորդ տպագրութիւնն եղաւ ի «Հաւաքման Հարց եկեղեցւոյն Յունաց» Մինիեի (Collection Migne des Pères de l'Eglise Grecque), Սամուէլի Անեցւոյ ժամանակագրութեան թարգմանութեան հետ։



Երբ Զրպետ հրատարակեց իր Քերականութիւնն, Զոհրապ ալ ձեռք զարկաւ Լոնտոնի Աստուածաշնչի ընկերութեան առաջարկութեամբ թարգմանել Նոր կտակարանն յաշխարհիկ լեզու, զոր կը փափաքէր ընկերութիւնն տպագրել տալ ի Փարիզ, թարգմանչին հսկողութեամբ։ «Ասիական» օրագրի խմբագրութիւնն ուզեց որ Զոհրապեան՝ իր թերթին միջոցաւ հրատարակէ կարծիքն ու տեսութիւնը Զրպետի Քերականութեան վրայ։ Հասկընալու համար թէ ինչ ոճով էր այդ քննադատութիւնը, բաւական են հետեւեալ տողերը․

«Զեմ գիտեր թէ այս կարգէ դուրս վարդապետը, որ այդչափ համեստ չափաւորութեամբ խորհուրդներ կուտայ, ո՛ր դպրոցի մէջ իր ուսումն ըրած է․ բայց որ և իցէ կերպով՝ իր ուսուցչին պատիւ չի բերեր․ ուրիշներու դաս տալէն աւելի՝ լաւագոյն էր որ ինք միւսանգամ հոն դառնար… Վասն զի այնպիսի սխալներ կ'ընէ, յորոց յետին աշակերտ մ'ալ կը զգուշանայ․ երես մը չես գտներ ուր խորթ ոճից և խժաբանութեանց չի հանդիպիս»։

Զրպետ բողոքեց և 40 երես գրուածով մը պատասխանեց այդ քննադատութեան, որոյ խորագիրն էր «Ասիական օրագրի 15ր թերթին մէջ Զրպետեան քերականութեան նկատմամբ հրատարակուած քննադատութեան մը հերքումն, Փարիզ 1823»․ որոյ առանձինն տպագրութեան պատճառը՝ յօդուածին չափազանց երկարութիւնն էր, և «Ասիական» օրագիրն յանձն չառաւ իր թերթից մէջ ընդունել։ Զրպետ այս մերժման

դէմ գանգատեցաւ իր աշակերտ Սէն–Մարդէնին, որ ինքզինքն արդարացուց թէ տեղեկութիւն և մասնակցութիւն չունի. և թէ կ'իմացընէ «Իմաստնոց օրագրին», գիտնալով միանգամայն թէ «Ասիականն» վեր ի վերոյ քննադատութիւններն չընդունիր, բայց իր սրտին փափաքն է որ ճշմարտութիւնն յաղթանակէ։ Ջոհրապ «Ասիական» օրագրին մէջ երկար պատասխանով մը ցըցուց՝ այլ և այլ օրինակներ մէջ բերելով, թէ ինչպէս այդ գրուածին հեղինակը բազմաթիւ վրիպակներ գործած է, յայտնելով իր անբաւականութիւնն ի քերականական ուսման։

Այն ատեն Ջրպետեան ձախողակ խորհրդով մը ներկայացուց իր գրուածը Յ. Գլափրոթի, նամակ մ'ալ ուղղելով առ նա (19 օգոստ. 1823) և ցաւ յայտնելով զինք համամիտ տեսնելուն իր հակառակորդաց հետ։ Գլափրոթ առանց քաշուելու փութաց պատասխանել, թէ մանաւանդ բաղդաւոր կը սեպէ ինքզինքը այդպիսի իմաստուն անձանց հետ միաբանելուն, որով առիթ տրուած է տգիտութեան քօղը պատռել մէկդի ձգել և անհիմն յաւակնութիւնները իրենց բուն արժէքին վերածել։ Վրայ բերաւ թէ Ջրպետեանի նախկին աշխատասիրութիւններն ալ մեծ վստահութիւն մը ազդած չէին նորա հմտութեան և գիտութեան նկատմամբ։ Այս նամակն տպագրել տուաւ Գլափրոթ, և այնպէս ղրկեց առ Ջրպետ, «որպէս զի մամլոյ յանձնելու նեղութիւնը չիկրես» ըսելով։

Ջրպետի համար վերջին հարուած մ'էր այն, ուստի չուզեց այնուհետեւ մնալ ի Փարիզ։ 1824 թուականին վերջին հրատարակութիւն մ'ալ ըրաւ Գաղղիոյ հնագիտական արքունի ընկերութեան յիշատակարանաց մէջ, Դիոնեսիոսի Թրակացւոյ քերականութիւնը տպագրելով, որոյ թարգմանութիւնը գտած էր մայրաքաղաքին մատենադարանին 124 և 127 թուանշանները կրող գրչագրաց մէջ։ 1826 ին երեք տարուան համար արձակուրդ

*ուղեց դառնալու ի Թիֆլիզ · ուր հրաւիրուեր էր քաղաքին Ներսէս արքեպիսկոպոսէն, եւրոպական լեզուաց մասնաւոր դպրոց մը հաստատելու դիտաւորութեամբ։ Հոն 1834 ին եղաւ իր մահը։*

* * *

*Երիցեանց՝ իր Կովկասի Հայք նոր երկասիրութեանը մէջ՝ հետեւալ տեղեկութիւններն կուտայ Զրպետի վերջին տարիներուն վրայ* (Ա· 562)։

« *Դասախօսելով Փարիզի կայսերական ճեմարանում* (?) *հայերէն լեզուն և գրականութեան պատմութիւնը, Զրպետը տակաւին* 1814 *թուին ցանկացաւ տեղափոխուել Փարիզից Մոսկուայի նոր բացուող Լազարեան ճեմարանը · բայց թէ ինչ պատճառով այդ չի յաջողվեց – յայտնի չէ մեզ։ Ներսէսը,* 1824 *թուին բանալով Թիֆլիզում իւր ուսումնարանը՝ հրաւիրեց Զրպետին գալ այս տեղ տարեկան* 2000 *ռուբլի ռոճիկով, որ մօտ* 8000 *ֆրանկ էր գոյացնում։ Ըստ պայմանին, այդ գիտնականը պիտի ստանար* 500 *ֆր · ճանապարհածախս և պիտի տեղափոխէր Թիֆլիզ իւր հարուստ գրատունը ու նուիրէր այդ հաւաքումն Ներսիսի ուսումնարանին։ Բաց ի այդ, պայմանաւորուած էին, որ Զրպետը ստանար իւր ռոճիկը այն ամսից երբ դուրս կգար Փարիզից։ Ճանապարհածախսը ստանալուց եօթը ամիս անցած նա հազիւ հասաւ Թիֆլիզ, բերելով հետը մի երկու սնդուկ գրքեր։ Հարցափորձից երեւաց, որ նա իւր գրքերի մեծ մասը ծախել է Փարիզում, աւելորդ բեռը համարելով դոցա բերելը Թիֆլիզ, որպէս անօգուտ այս տեղի ուսումնարանին համար... Ներսէսը զրկախառն ընդունեցաւ գիտնական պրոֆէսորին... Սկզբում ամեն ինչ կարգին էր գնում, և Զրպետը եռանդով էր յառաջ տանում իւր դասերը, ընդհանուր յարգանք վայելելով ամէնքից։ Բայց երբ Ներսիսի բաղդը փոխուեց, Զրպետն*

ալ փոխեց իւր ընթացքը։ Նա շաբաթներով և ամիսներով այլևս չէր իջնում դասարանները, թէ և շարունակում էր բնակուիլ նոյն ուսումնարանում և ստանում էր իր ռոճիկը։ Սկզբում անձնական հիւանդութիւնն էր պատճառ բերում, իսկ յետոյ բացարձակ յայտնեց, որ պահանջում է Խրիմում անցուցած հինգ վեց ամսուայ ռոճիկը, որ Ներսէսը չէր տուած։ Ներսէսը իւր գնալիս՝ ուսումնարանի վերատեսչութիւնը թողեց Ալամդարեանի ձեռքին. իսկ իւր բարեկամ Գէորգ աղա Արծրունուն և Յարութիւն Շերմազանեանին յանձնեց տընտեսական մասը... Սոքա հրաժարուեցին կատարել Ջրպետի պահանջմունքը, և գրեցին Ներսիսին »:...

Բայց կայսրը 1830 ին շնորհեց Ջրպետի 500 ռուբլի թոշակ, որպէս ի վարձատրութիւն։

Իսկ Ջոհրապ ձեռնտու եղաւ Սէն-Մարդէնի ի հրատարակութիւն գաղղիական թարգմանութեան Վարդանայ ընտիր առակաց՝ Ասիական ընկերութեան համար։ Նոյն ընկերութեան առաջարկեց և 1828 ին տպագրեց Ներսիսի Կլայեցւոյ ողբը յառումն Եդեսիա քաղաքի յԱրաբացւոց, որուն տիրեցին Սարակինոսք 1143 թուականին, գտնելով զքերթուածն յարքունի մատենադարանի, 80 թուանիշը ունեցող հայ գրչագրի մը մէջ։

Մեռաւ Ջոհրապ ի Վերսայլ 1829 մայիս 8 ին, կտակելով Ասիական ընկերութեան 500 ֆր. գումար մը։ Ժամանակին նախարարապետը Կիզոյ՝ գերեզմանին վրայ հայերէն ու գաղղիարէն արձանագիր մը դնել հրամայեց։

Հայագէտն Եւգլինէոս Պորէ « Ասիական » օրագրին մէջ (1835, հատ. ԺԵ. էջ 572–76) հետեւեալ գովութեան խօսքերով կը դրուատէ զՋոհրապ. « Երախտապարտ ըլլալու ենք իր յիշատակին՝ որ այնչափ նշանաւոր էր իր ազգային լեզուին և անոր հմտութեան մէջ. և շնորհակալութիւննիս յայտնել յանուն այն երիտասարդ հայագէտների որոնց թիւը օր ըստ օրէ աճելու վրայ է ի

Գաղղիա։ Վասն զի Հայոց գրականութեան նկատմամբ աշխատողաց մէջ ամենէն արդիւնաւորներէն մէն է այս գիտնականը, և իր երկասիրութիւններն կը կրեն զկնիք խղճամիտ և բուն գիտութեան»։



Ասոնք են գաղղիացի Շրումպֆ հայագէտ բանասիրին Չրպետի և իր ժամանակին անցից վրայ հաւաքած և աւանդած տեղեկութիւններն։ Ասոնց ուզելու իր արժանիքէն վեր գիտութիւն և արդիւնք մը ընծայել Չրպետի, մեզի կ'երեւի թէ նոյն ատենուան տիրող բանասիրական կուսակցութեան ոգւոյն հետեւանք մը եղած է գրեթէ բռնադատուիլը թողուլ զուսուցչութիւն հայ լեզուի ի Նորահաստատ դպրոցին արեւելեան լեզուաց Փարիզու. և իրեն դէմ ցուցուած հակառակութեան գլխաւոր պատճառը կամ այն էր որ նոյն պաշտաման հետամուտք պակաս չէին, և կամ գաղղիացւոյ մը կը փափաքէին որ յանձնուի այն, ինչպէս դպրոցին սահմանադրութիւնը կը թուէր պահանջել, նախամեծար սեպելով քան զօտարս։ Սակայն հարկ է խոստովանիլ թէ իր արդիւնքն ունի Չրպետ, հայ լեզուի ուսման ներմուծմանն և յառաջադիմութեանն ի մայրաքաղաքին Գաղղիոյ։

Մեր այս ենթադրութիւնը կ'արդարացընէ իր յաջորդներէն մէկը, Տիւլորիէ, հետեւեալ խօսքերով. «Նշանաւոր էր նա, կ'ըսէ, զարգացեալ և գործունեայ հանճարովը. իր աշխարհին պատմութեան և գրականութեան ոչ անտեղեակ. միայն՝ ինչպէս շատք յարեւելեայց, չունէր այն քննադատական ոգին՝ ինչ մտքով որ մեք եւրոպեանք կը հասկընանք, և աւելի ընտանի ըլլալով հայ արդի լեզուին, քան հնոյն և գիտնականին։ Այս բարեմասնութիւնք և թերութիւնք յայտնի կը նշմարուին 1823 ին հրատարակած մեծահատոր Քերականութեանը մէջ, զոր ոչ այնչափ գիտնական ոճով հաւաքեր է ի համ-

անուն գրութեանց Միքայէլ Չամչեան և Գաբրիէլ Աւետիքեան Մխիթարեան հարց։ Բայց յայնմ ժամանակի այս նկատմամբ տարրական ուրիշ երկասիրութիւն մը չըլլալուն, համեմատական օգտակարութիւն մը ունէր այս գրուածք՝ զոր չճանչնալ՝ անարդարութիւն է։ Յունական հնութեանց յիշատակարաններէն մէկը, զորս Հայք իւրացուցին, Դիոնեսիոսի Թրակացւոյ քերականութիւնն է, հաւանականաբար շարագրուած ի Հռովմ, ուր յաւուրս Պոմպէի և Կեսարու կը վարժապետէր հեղինակն։ Գրքիս Թարգմանութեան ատեն զանազան յաւելուածներ եղած են անդստին ի հինգերորդ դարէ, հայ լեզուի յարմարցընելու նպատակաւ։ Ջրպետ (Փարիզի) արքունի մատենադարանին երկու գրչագրացը մէջ՝ այս Թարգմանութեան մասն մը գտաւ ընդարձակագոյն քան զհատուածս բնագրին զոր Փաբրիկիոս հրատարակած էր յեօթներորդ հատորի յոյն Մատենադարանին, զոր տպագրութեամբ ի լոյս ընծայելով ճոխացոյց Գաղղիոյ հնագիտաց ժողովոյն՝ որոյ անդամ էր, Յիշատակարանաց հաւաքումը»։

Յառաջ բերենք՝ առ բարեկամս իւր ուղղած քանի մը նամակներէն, զոր ունինք, հետեւեալ տեղեկութիւններն, որ չեն պակաս հետաքննականք ըլլալէն՝ հայկական լեզուի աթոռոյ հաստատութեան և գէթ նոյն ժամանակաց համար յառաջ բերած արդեանց վրայ։ Իրեն քիչ պատիւ չէ Սէն-Մարդէնի նման ուսումնական և բազմահմուտ հայագէտ մը նախ իրեն աշակերտ ու ապա աշխատակից ունենալը։

Ց՛ 12 դեկտեմբ. 1812 տարւոյն կը գրէ. «Զհաստատութենէ դպրոցի հայկազեան բարբառոյ՝ դեռ զոչինչ գրեցի. և այս վասն ոչ գիտելոյ իմ և ես զորպիսութիւն ապագայ ելից նորուն. այլ այժմ յօրդորիմ ծանուցանել աստ ստուգութեամբ ինչ. զառաջինն հաստատեալ այս դպրոց յ՛3 հոկտեմբերի 1809 հրամանաւ նախարարին ներքնային իրաց տէրութեանս, բարձեալ ե-

ղեւ ի նմանէ զկնի չորից ամաց, իբր ոչ յոյժ պիտանի, պատճառաւ ոչ ունելոյ Հայոցս զիշխանութիւն թագաւորական. ապա յ'8 դեկտեմբերի 1810 ժամանակեայ հաստատութեամբ՝ որպէս նախկինն, կրկին անգամ վերստին հաստատեցաւ հրամանաւ նոյն նախարարութեան իբր հարկաւոր իմն լեզու յինչ ինչ իրս: Վերջապէս յետ կրելոյ և միանգամայն յաղթելոյ բազում ընդդիմութեանց ցուցակօք գրուածոց՝ հաստատեալ եղեւ սոյն դպրոց ի 27 փետրուարի տարւոյս հրովարտակաւ կայսեր՝ որպէս օրէնք. և այնպէս կարգեցաւ ուսումն լեզուին մերոյ՝ համադաս ընդ լեզուացն տաճկաց, պարսից և արաբացւոց՝ որք բաղկացուցանեն զվարժարանն արեւելեան բարբառոց, կարգեալ ի պէտս քաղաքական և վաճառականական առընչութեանց »:

Ի 4 փետր. (1815). « Դպրութիւն լեզուի մերոյ և դրականութեան՝ վերաճանաչեալ ի տէրութենէ և ի համալսարանէ ազգին՝ ըստ որում լեզու սուրբ, բուն և հնագոյն, սկսեալ եղեւ ի սկսանել դպրական ամի, միշտ ի նոյն դպրոցի, որոյ նպատակն է ուսումն լեզուաց և իրակութեանց դիւանաց արեւելեան ազգաց: Շնորհապարտ մնամք առ ազգս այս արդարեւ, որ յարտաքսելն ի դպրոցէս զդպրութիւն յունական լեզուի և յունազնեայ վարժապետի, զմերայինս պահել յօժարեցաւ ի մասնաւոր իմն շնորհ առ մեզ, և ի պատճառս բարեբարոյութեան ազգին մերոյ, և յառաջադիմութեան հաւատարիմ գրականութեան արեւելեան աշխարհաց »:

Ուրիշ նամակի մը մէջ ալ. (22 դեկտ. 1815). « Յարգութիւն հայկական գրագիտութեան և ծանօթութիւն լեզուի մերոյ յաւելանան աստ հետզհետէ. կարգեալ գոլով ի թէութենէ իմն՝ որ աւելի ի յառաջադիմութիւն հրապուրէ, քան յընդ կրունկն դառնալ. վասն որոյ խնդրեն զինչ և իցէ հայկազեան գրեանս ընտրողաբար, մանաւանդ զայնս որ վերաբերին ի գիտութիւն լեզուի, տաղաչափութեան, պատմութեան, աշխարհագրութեան,

հնախօսութեան և այլ արտաքին բանասիրութեանց, նաեւ ոմանց եկեղեցական գրականութեանց... Ազգս այս բնաւ գործունեայ և յօժարակամ ի փոխել կամ ի յաւելուլ զնպատակս մտաւորական կրից առ ի չերեւիլ ստորին, աւելի աժխոյժութեամբ երկասիրէ զգիտութիւնս: Յայտնի է թէ կաճառք գրագիտացն Եւրոպիոյ՝ իւրեանցն սեպհական արդեամբք զբաղումս արդասաւորութիւնս և զվերականգնումն անուան և գրագիտութեան յունաց համբարեցին, մինչեւ տալ իսկ նոցա զդիւրութիւն և զյօրդոր ի յուսմունս: Ապա քանի՛ հաճոյական լինէր ձեզ և մեզ, եթէ գրականութեան ազգի մերոյ և եւս այսպիսւոյ իմն վիճակի էր հանդիպեալ կամ մերձեցեալ...

« Զդպրոց մեր միշտ հաստատուն ի նոյնութեան՝ բացեալ ի հինգ ամսոյս՝ յետ զրաւելոյ զսովորական արձակուրդ ժամանակս՝ սկսաք զկարգ դասատուութեանց: Յ՚9 ամսոյս ընտրեալ եղէ անդամ գործակալ ճեմարանին Թագաւորական ընկերութեան հնագիտաց Գաղղիոյ (Académie de la Societé royale des Antiquaires de France). ապա յ՚18 ընկալայ զհրովարտակն, ի յ՚19 զընդունումն ըստ սովորութեան: Ճեմարանս ի հնումն կոչէր Կելտեան (Académie Celtique), և ի 1805 ընկալաւ զնոր սահմանադրութիւնս և զբազում ընդարձակութիւնս. և ի 1816 զայլ Թագաւորական արտօնութիւնս: Վարժարանն հնութեան և յիշատակարանաց Գաղղիոյ (Le Musée des Antiquités et des Monuments français) է ընդ պահպանութեամբ նորա, յորում է և դամբարանն երանելի հոգւոյ Թագաւորին մերոյ Լեւոնի Զ. ճեմարանն պարապի հասարակօրէն ի վերայ հնագիտութեանց, պատմութեանց, աշխարհագրութեանց, յիշատակարանաց, ժամանակագրութեանց և այլ բազում բանասիրական հմտութեանց »:



Այս նամակք ուղղեալ են առ մեծարգոյ Աւետիքեան վարդապետն մեր, որ և առ նոյն Զրպետեան ուսուցիչ ուղղեալ թղթով մը (1811, նոյեմբ. 11) կը փափաքէր գիտնալ թէ «Ցակնարկել մեր զԲառարան երեւելի արանց, տեսաք ինչ ինչ պատմական կամ գրաբանական ի յօդուածսն մատակարարեալս ի ձէնջ՝ անծանօթս ի մէնջ մինչեւ ցայժմ, և ոչ հանդիպեալ ի յիշատակարանսն գտեալս առ մեզ. նմին իրի ցանկալի էր մեզ լսել զուստն, կամ զյորմէն: Օրինակի աղագաւ, յիշեացուք զեդեալն ի յօդուածն Արջոն, մի յաշակերտաց թարգմանչացն, զորմէ ասի թարգմանեալ զգործ մեծին Աթանասի, և ճառ մի ընդդէմ կրակապաշտութեան, և մի ի վերայ սրբոյն Պաւղոսի, և մի ի Համբարձումն Քրիստոսի: Այլ և ի յօդուածն Ղուշրէն, ասի սորա թարգմանեալ զժամանակագրութիւն Յուլեայ Ափրիկանոսի, և այլ եւս գործք: Զայսոսիկ և զայսպիսիս, որոց յիշատակ չերեւի ի մերում գրատան, և ոչ այդր ի կայսերականն կամ ի թագաւորականն, ցանկայաք իմանալ յորմ՛ց աղբերաց տեղեկացեալ ձեր, և կամ եթէ կայցէ՞ յիշատակ ի գրատունս ուք այդր, և մոռացումն լեալ իցէ նշանակել ի Բառարանին, խնդրեմք շնորհել մեզ տեղեկութիւն»:

Առ որ կը պատասխանէ Զրպետ նոյն տարւոյն դեկտ. 20 ին գրած նամակաւն. «Վասն տեղեկութեանցն զոր ցանկայք գիտել թէ ուստի՛ կամ յորմէ՛ մատենէ հանեալ իցէ իմ զյիշատակարանս ոմանց գրուածոց և թարգմանութեանց Արձան և Ղազարիկ թարգմանչաց մերոց՝ որպէս և այլոց, պարտիմ ծանուցանել թէ յոչինչ մատենէ կայսերական գրատան ունիմ զայնս, այլ ի հատուկտիր բանից ինչ թողեալ ի վերայ Հայոցս՝ ի Հ. Մկրտչէ ումեմնէ Գաբրիէլեան ի կարգէ գաբուչինաց,

որ երբեք աւելի վարժեալ ի հայկական գրչութիւնս՝ քան զայլ օտարազգեայս. որ արար գրաւարան ինչ ի հայ լեզուէ ի լատին և յիտալական լեզուս, և զայլ իմն բառարան ի լատինականէ ի հայ։ Գրեանք սորա՝ թէ ձեռագիր և թէ տպեալ, անցին նախ ի ձեռս Հ. Գ. Վիլլաֆորայ, ապա գրեան երկոցունց սոցա, զորս Լուատէ տեսեալ է, որպէս և բառգիրք երկրորդ անձինս... միանգամայն և ուրուագիծ ծանօթութիւնք ի վերայ ձեռագիր մատենից Հայոց թողեալ ի Վիլֆուռա հայասիրէն, և այլ ինչ մանրակատար բանք մինչև նամակք եւս անցին ի ձեռս իմ, և Մարգէն անուն աշակերտին իմոյ։ Այլ վերոյիշեալ հատուկտիր գրուածն՝ յինն երեսս պարունակեալ, տայ զանուանս անձանց և գրուածոց հաբիւր տասն հեղինակաց Հայոց »։

Հարցմունք մ'ալ կ'ընէ նոյն իր բազմահմուտ թղթակցին. « Ցանկամ յոյժ, կ'ըսէ, ծանօթ առնել զիս եթէ տեսեա՞լ է ձեր զգոյգն ինչ վկայութիւն ի յոյն կամ յարաբացի հեղինակս՝ արքայ արքայից անուանելոյ ումանց թագաւորաց մերոց Բագրատունեաց. զի որպէս յայտ է ձերումդ իմաստութեան՝ Զմշկիկ հայկազն կայսր ի նամակին որ առ Մատթէի եդեսացւոյ՝ զայս վերտառութիւն տայ թագաւորին մերոյ Աշոտոյ երրորդի. այլ ոմն ի համալսարանէ տեղւոյս՝ ինձ մեծապէս ծանօթ և բարեկամութեամբ լծակցեալ, ընթերցեալ զայս բան ի թարգմանեալն յայն նամակ, գրեաց յանցեալ աւուրս զերկար թուղթ ինչ առ Մարգէն աշակերտն, ցուցանելով անկարելի իմն լինել գոռոզութեան յունաց՝ տալ զայնպիսի իմն վերտառութիւն արքայից Հայոց, մինչև յերկբայս դնել զհարազատութիւն բարեմիտ մատենագրին մերոյ Մատթէոսի երիցու. և հայասէրն Մարգէն բերեալ մատոյց ինձ վաղվաղակի զայն թուղթ. որում փութացայ տալ զպատասխանի... այլ ցանկամ նորոգել զայս բան յայլում տեղւոջ՝ վկայութեամբ օտարասեռից եւս։ Փափաքելի է ինձ դարձեալ գիտել թէ իցէ՞ ի

ձեզ արդեօք ծանօթութիւն ինչ ի վերայ դրամոց տպե-լոց յանուն թագաւորացն մերոց Բագրատունեաց և Ա-ղուանից » ։

Այս հարցափորութեանն ալ հետեւեալ պատասխանը կ'ընդունի (6 մայիս, 1812)· « Ընդ նախընծայ պտուղս հայասէր աշակերտացդ՝ ուրախութիւն յոյժ ընկալաք, իբրեւ ընդ երախայրիս բազմաջան մշակութեան վար-ժապետիդ ։ Հաճութեամբ սրտի տեսանել ախորժեմք զթարգմանութիւն Նամակի Զմշկիկ կայսեր առ մերս Աշոտ թագաւոր · այլ ոչ զարմացաք ընդ դիմադրութիւն իմաստնոյ ուրումն համալսարանի քաղաքիդ՝ յաղագս τῶν ἀρχόντων τῶν ἀρχόντων կոչելոյ հոռոմին զհայն · ոչ անսովոր է առ հնագէտս՝ յուզել խնդիրս և վէճս կամաւորականս յա-ռաւելութիւն բացայայտութեան առաջիկայ իրացն · որ-պէս կարծեմք և իմաստնոյ առնդ յայսմ պատճառէ շարժել զընդդիմաբանութիւնն · ոչ ապացոյցս ինչ պատ-մականս ունելով ի ձեռին, այլ միայն յազգային բա-րուցն յունաց առեալ պատճառաբանութիւն ։ Վայելչա-բար ցուցեալ է ձեր զանկեղծութիւն բանից Նամակին ի հարազատ պատմագրաց մերոց, առաջի արարեալ զընաւորութիւնս ազգիս՝ անպարծ լինել յիւրական պատ-մութիւնսն, գուցէ առաւել փոքրկացուցեալ քան զար-ժանն, ուր ընդ հակառակն յունաց և հռովմայեցւոց սեպ-հական տեսանեմք ի պատմութիւնս ազգաց իւրեանց թռուցանել զգրիչս ի վեր քան զգլուխ պատմելեացն ։

« Իսկ զոր հարցանէք՝ յիշատակս ինչ հաստատու-թեան ունել այսր վերտառութեան, ահա յերկու յոյն մատենագիրս գտանեմք յունական բառիւ զնոյն իմաստս · որոց պատմագրելով զերթն Աշոտոյ Բ ի Կոստանդնու-պոլիս, կոչեն զնա որդի τῶν ἀρχόντων τῶν ἀρχόντων որ է ըստ հայումս իշխանաց իշխանին ։

« Ապա եթէ յազգային բարուց կամիցիմք խորհրդա-բանել, թող անկարելի համարեսցի գոռոզութեան յու-նաց իշխանաց իշխան մակագրել զհայն ։ Սակայն գիտացէ

զի Յովհաննէս Զմշկիկ ոչ էր յոյն արեամբ, այլ հայկազն. և իբրև ազատ ի յունական բարուց՝ ոչ անպատիւ ինքեան համարէր՝ զիւրն համազգի պատուաբանել։ Թողում ասել զի յԱշոտայ երկրորդէ սկսեալ էր ըստ այլազգեաց Շահանշահ անուանել զԲագրատունի թագաւորս մեր, և Զմշկիկ կայսր ըստ ընկալեալ սովորութեանն մականուանէր զԱշոտ Գ։...

« Այլ առ երկրորդ հարցուածդ՝ որ յաղագս դրամոց Բագրատունեացն և Ալուանից, ոչ ունիմք տալ բնաւ ծանօթութիւնս ինչ փափաքելիս. այլ՝ որպէս յուսադրութիւն է՝ թերևս այն որ զիշխանութիւն ժամանակաց ունի ի ձեռին, յերևան ածիցէ յերբեմն ժամանակի ի շտեմարանաց աւերակացն Հայաստանի »։

Այսչափ ինչ, իբր փշուրք 'ի մեր մատենադարանաց, ի հաւաստիս հմտութեան և բանասէր ախորժակաց Չրպետի։

*
* *

Կը մնայ մեզ քանի մը խօսք աւելցընել իր երկասիրած Հայ լեզուի քերականութեան վրայ, զոր չենք համարիր անստգտանելի. միայն անաչառ քննադատից կը յիշեցընենք թէ գրեթէ առաջին փորձ մ'է մեր լեզուն հիմնաբար ծանօթացընելու արեւմտից, և որոյ մէջ է իւր գլխաւոր արժէքը և հեղինակին արդիւնքը։

Գիրքը հրատարակուած է ի Փարիզ, ի 1823, հետեւեալ գաղղիական և հայ խորագրով. Grammaire de la langue Arménienne, où l'on expose les principes et les règles de la langue, d'après les meilleurs grammairiens, et les auteurs originaux, et suivant les usages particuliers de l'idiome Haïkien; rédigée pour les Elèves de l'Ecole Royale et spécial des langues orientales vivantes, près la Bibliothèque du Roi; par J. Ch. Cirbied, Arménien, professeur royal de lan-

gue arménienne en la même Ecole, etc. « Քերականութիւն Արամեան լեզուի, յորում բացատրին սկզբունք և կանոնք Արամեան լեզուին, ըստ հեղինակութեան ընտրելագոյն Քերթողաց, ուղղախօս Մատենագրաց և սեպհական սովորութեանց հայկական բարբառոյ, յօրինեալ ի պէտս ուսման աշակերտացն արքայական և մասնաւոր Դպրոցի արեւելեան լեզուաց Թագաւորական Գրատան, ի Յակոբայ Շահան Ջրպետեան յեգեսացւոյ» և այլն։

Ի սկիզբն գրոցն դրուած յընդարձակ յառաջաբանին կ'ըսէ (յ'էջ 47)․ « Գրեթէ դարէ մը ի վեր հայկական լեզուի օգտակարութիւնը ճանչցուեցաւ ի բազմաց, և մանաւանդ յիմաստնոց Գաղղիոյ, Գերմանիոյ և Անգղիոյ․ սակայն մշակութիւնն խիստ անկատար կերպով եղած է։ Ոմանք յոյժ թեթեւաբար կը դատէին, ինքզինքնին բաւական հմտացած կարծելով, երբ հազիւ ընթերցումը գիտէին և քանի մը բառից նշանակութիւնը։ Այլք իմաստնագոյնք և առաւել լուսամիտք, խելամուտք էին թէ յորում է լեզուի մը ծանօթութիւնը, և թէ ինչ պէտք է զայն ձեռք բերելու համար, սակայն իրենց ալ ամէն հարկաւոր միջոց կը պակսէր, իրենց դէմ ելած արգելից յաղթելով, յաջողութեամբ և օգտիւ մշակելու զհայկականն։ Այդ նպատակին հասնելու համար չունէին ընտիր բառգիրք մը լատին կամ գաղղիական բացատրութեամբ, և ոչ կատարեալ քերականութիւն մը որով կարող ըլլան ծանօթանալ լեզուին սկզբանց, կանոններուն և ոճից։ Գիտնականքն Վիլլոտ, Պրէննէր, Շրօտէր, Վիստոն եղբարք, Վիլֆռուա, Լուռտէ, կը խոստովանին կրած դժուարութիւնն, և այն աշխատանք զոր ունեցեր են՝ հայ մատենագիրներն քիչ շատ հասկընալու համար։ Հայագիտաց մէջ՝ ամենէն աւելի այդ աշխարհին մատենագրաց ընտանեցողը, զանոնք լաւ հասկցողը, ըստ մեզ է առաքինի և համեստ քահանայն Վիլֆռուա․ իմաստուն արեւելագէտն, որ անցեալ դա-

րուն կիսուն մանրամասն ցուցակ մը յօրինեց (Փարիզու) արքունի մատենադարանին մէջ գտնուած հայ ձեռագիր կամ տպագրեալ մատենից։ Այս երկասիրութիւն աչքէ անցուցած ատեն՝ հմուտ ընթերցողը կը հանդիպի յաճախ վրիպակաց կամ բնագրին իմաստէն հակառակ նշանակութեանց. բայց մի և նոյն ժամանակ հաճոյական զարմանք մ'ալ կը զգայ, տեսնելով գաղղիացի մը այնչափ ծանօթացած հայ մատենագրաց ամենազգի լեզուին, երբեմն ամենէն աւելի դժուարին տողերն ալ հասկընալով, և որոյ համար խորունկ ուսումն կը պահանջուի։ Բոլորովին օտար էր իրեն լեզուն՝ որոյ ուսմանն հետամուտ էր. և այսպիսի հետազօտութեանց պարապած ատեն՝ չունէր դեռ եւս հիմա ձեռուընուս տակ գտնուած ընտիր քերականութիւններն ու բառգիրքը։ Իր արդեանց վրայ այս ակնարկութիւնն ընելով՝ պարտք կը սեպենք յայտնել մեր հիացումն և երախտագիտութիւն այս հմուտ հայագէտին անուան և յիշատակին՝ յարժանաւոր մեծարանս և ի պատիւ»....։

## ԼԸՎԱՅԵԱՆ ՏԸ ՖԼՕՐԻՎԱԼ

Զրպետ երեք տարուան արձակուրդի հրամանէն ետքը չդառնալով ի Փարիզ, իր փոխանորդը Պօղոս Էմիլ Լըվայեան տը Ֆլօրիվալ, 1830 սեպտ. 4 հրամանագրով մը հայ լեզուի ուսուցիչ դրուեցաւ։ Հրովարտակաց դպրոցին (Ecole des Chartes) ու յետոյ Արեւելեան կենդանի լեզուաց վարժարանին մէջ իր ուսմանց ընթացքն աւարտած էր (1821–28), ու 1831 ին համառօտ գրուածք մը հրատարակեց հետեւեալ խորագրով. «Ուղղափառ Հայոց դէմ 1828ին ի Կոստանդնուպոլիս տրուած հալածանաց պատմութիւն». (Exposé des persécutions exercées en 1828 à Constantinople contre les catholiques Arméniens.

Հրատարակեց դարձեալ երկոտասաներորդ դարու հեղինակ՝ Մխիթարայ Գօշի առակաց գաղղիական թարգմանութիւնն *, ու Մխիթարեան ուխտին հիմնարկութեանն ու Նպատակին վրայ համառօտ երկասիրութիւն մը։ Փափաքելով ուղեւորութիւն մը ընել ի Հայաստան, 1834ին արձակուրդի հրաման խնդրեց. բայց Վենետկոյ սրբոյն Ղազարու կղզիէն անդին առաջ չերթալով, հոն քիչ մը ատեն դեգերեցաւ հայկական ուսումը կատարելագործելու դիտմամբ. և այն առթիւ՝ Մխիթարայ ուխտին իբր ուսումնական անձ յօդացաւ։ Բացակայութեանն ժամանակ՝ փոխանորդ դրաւ զԵւգինէօս Պորէ, և որոյ վրայ քիչ ետքը առիթ պիտի ունենանք խօսիլ։ 1836ին հրատարակեց ի Փարիզ Մովսիսի Խորենացւոյ պատմութեան գաղղիարէն թարգմանութիւն մը, պակասաւոր ու շատ անհարազատ. այնչափ որ բռնադատուեցաւ անհետ ընել զայն՝ վերցընելով ի վաճառմանէ. ու 1841ին հայերէն բնագրով ու գաղղիարէն ընտրելագոյն թարգմանութեամբ նոր հրատարակութիւն մը ընել ի Ս. Ղազար, իրեն աջակից ունենալով զԳաբրիէլ վարդապետ Այվազովսքի, հետեւեալ խորագրով. Moïse de Khorène, auteur de Ve siècle; texte arménien et traduction française, avec appendice contenant notice geographique precis de toute l'histoire d'Arménie. — Tableau de la littérature arménienne.

*
* *

« Հայկական լեզու, — կ'ըսէ թարգմանիչն ի յառաջաբանին, — մայր ու հնութեան մէջ իր նախանձորդը չունեցող լեզու մը, կրնար յունական մատենագրութեան հաւասարապատիւ հռչակաւոր անձնաւորութիւնք ներ-

* Թէպէտ յիշատակուած կը գտնենք զայս թարգմանութիւն, բայց տեղ մը հանդիպած չենք անոր, որով հաւանական կը թուի մեզ թէ երբէք հրատարակուած չէ։

կայացընել մեզ, եթէ զայն գործածող հեղինակաց ամէն երկասիրութիւնք հասած ըլլային ձեռուընիս։

«Նկատելով զայն իբրու արմատական, հայ լեզուն անթիւ բառեր կը բովանդակէ, յորմէ թուին յառաջագայիլ լատին այլեւայլ բառեր, համազօր նշանակութեամբ։ Օգտակար լեզուագիտական տեսակէտով, պատմական այլեւայլ խնդիրներ ալ իրենց լուծումը կը գտնեն։ Ո՛րչափ յիշատակագիրք յօրինուած են Սալլուստիոսի այն հատուածը մեկնելու՝ յորում կ'ըսէ թէ Մարաց ազգին անուն և տոհմ ի Մեդաց առաջ եկած է, մինչ ի հայ լեզուի Մարք կը կոչուին Մեդք։ Այլեւայլ խնդիրք եղած են նմանապէս Բրետոնաց և Կելտաց վրայ։ Տակիտոս կ'ըսէ թէ լեզունին նման է Կիմբրաց, և ասքս և Կիմմերեանք, ըստ Պոսիդոնիոսի՝ զոր մէջ կը բերէ Ստրաբոն, մի և նոյն ժողովուրդք են։ Ըստ Սիւնկելլոսի՝ Գոմեր է նահապետ կապադովկացւոց. ինքն է դարձեալ Կելտաց նահապետն ըստ Յովսեպոսի։ Եւ ստուգիւ՝ Նոյայ թոռը՝ զոր Գոմեր կ'անուանենք, առ Հայս Գամեր կը կոչուի, և մեր ըստ յունաց կապադովկացիք կոչուածներն՝ Գամիրք կ'ըսուին հայ լեզուի և պատմութեանց մէջ։

«Մեր այս ըսածներէն կը հետեւի որ հայկական լեզուի կարծուածէն աւելի արժանաւոր է ոչ միայն լեզուագիտաց ուշադրութեանն, այլ նաեւ պատմական բանասիրութեան պարապողաց։

«Կրնայ թերեւս ըսուիլ թէ իր ծագումը ինչուան ի Նոյ բարձրացընող ժողովուրդ՝ չորրորդ և հինգերորդ դարերէ շատ յառաջ յիշատակարաններ պէտք էր որ ունենար։ Բայց մէկմէկու ետեւ հասնող աղէտք ի վերայ Հայաստանի, և շարունակեալ արշաւանք և աւարառութիւնք, դիւրաւ կրնան բացատրութիւն մը տալ թէ ինչպէս ամենայն ինչ որ յառաջ քան զհասարակաց թուականութիւն և անոր առաջին դարերուն մէջ, անհետացեր վերցուեր են...

« Անով հանդերձ՝ հայկական մատենագրութիւն ճոխ և գեղեցիկ նուիրական տեսակիտովը, ունի նաև պատմական երկասիրութիւնք՝ զորս արժան է ուսումնասիրել, ոչ միայն յոյն և հռովմայեցի մատենագիրներէ մնացուած կամ արժանապէս չյարգուած ժողովրդեան մը տարեգիրքը ճանչնալու համար, այլ նաև աւելցընելու կամ ուղղելու համար անոնցմէ տրուած տեղեկութիւններն զոր ունինք ասորեստանեայց, մարաց, պարսից, յունաց և հռովմայեցւոց վրայ։

« Խիստ յերկար կ'ըլլայ հայ պատմագրաց բոլորին վրայ նաև համառօտաբար խօսիլը. բաւական համարինք միայն մէկուն արժանիքը յայտնել. — Խորենացւոյ՝ հինգերորդ դարու մատենագրին, Հայոց պատմահօր, զի իրմէն ընդունուած և աւանդուած են մինչև իր ժամանակաց դէպքերու պատմութիւնը։... Բարեկամ և սիրող ճշմարտին, ոչ երբէք կը խարդախէ զայն ի շնորհուկս իր դարուն մեծ անձնաւորութեանց. Սահակ Բագրատունւոյ կ'ընծայէ իւր գիրք, որոյ խնդրանօք յօրինած էր. և հեռի յամենայն մարդահաճոյ և շողոքորթիչ բանից, կ'ըսէ իսկ թէ ոմանք՝ անարժանք անհաւատարմութեան, ուզեր են Հայկայ ցեղէն խլեցընել Բագրատունեաց տոհմին սկզբնաւորութիւնը. բայց ստուգութեան հետքն անգամ չիկայ այդ կարծեաց մէջ։ Անանց ուզելու ձրի կամ շողոքորթութեամբ ժողովրդականութիւն վաստըկիլ, կը մեղադրէ՝ երբ հարկ տեսնէ, զթագաւորս, զազգն՝ ոմանց անախրելութեան համար խըստիւ յանդիմանելով, որ որչափ ալ ջնջուած կրնան կարծուիլ ապագային մէջ արտադրած ընտիր մատենագրաց բազմութեամբ, բայց այդ յանդիմանիչ խիստ խօսքերն ալ՝ նշանակ և հաւաստիք են պատմագրին անկեղծութեանը, և այլ դիպաց մէջ հայ ազգին և ժողովրդեան տուած գովութեանց ստուգութեանը։

« Կը պահէ նա զստուգախօսութիւն ի պատմագրութեան, և իր յատուկ մեծվայելչութիւնը։ Կրնայ երբեմն խա-

բուած ըլլալ, բայց ոչ երբէք խաբող։ Եթէ Սէն-Քրուայի հետ գտնուեցան կարծողք թէ Խորենացի յաճախ Հերոդոտեայ դիւրահաւանութիւնն կը ցուցընէ, և թէ զարմանալեաց պատմութիւններ կը յօդէ, մենք կ՚ըսենք թէ այդ մեղադրութիւն չէ իրաւացի. զի ինչ որ առասպելական երեւոյթ ունի, զայն տարակուսելով մէջ կը բերէ. և եթէ ժողովրդային աւանդութիւններ կ՚աւանդէ, վասն զի գիտէ թէ հաճոյական են անոնք Սահակայ Բագրատունւոյ։ Մեք (գաղղիացիքս) ամենայն խնամօք կը հաւաքենք մերիններն, և գոհութիւն կ՚իմանանք թէ հին ժողովրդեան մը պատկանածներն կարենանք ծանօթացընել. զի ազգի մը ժողովրդական աւանդութիւնք՝ կենդանի պատկերք են իրեն անցելոյն, հոգւոյն և սրտին...

« Բայց գրական դպրոցը՝ եթէ պատմութեանց մէջ միայն ճշմարիտն ու ճշմարտանման կ՚ուզէ փնտռել, և ըստ բնական կարգի իրաց, թող պատռէ, ոչնչացընէ եթէ կը համարձակի՝ մեր միջնադարեան գրչագիրքն, այն գեղեցիկ առհաւատչեայքը մեր նախնի հարց բարեմտութեան, պարզութեան և կրօնից. ոչնչացընէ այն սրտաշարժ և բարեպաշտիկ զրուցաց գրքերն՝ զորոնք ամէն օր մոռացութեան փոշիներէն ի նոր կեանս կը վերածենք. ոչնչացընէ մեր ժամանակագիրքը, մեր հարց և մեր յատուկ պատմութիւններն. և եթէ այս բաւական չըլլայ, բոլորովին նոր ժողովուրդ մը կազմէ, այսօրուան ժողովուրդ մը, որպէս զի երիկեան տարեգրոց մէջ՝ զարմանալւոյ հետք մը չգտնուի։

« Ստոյգ է որ Խորենացի պատմութեան գրոցը մէջ կարգաւորեալ դասաւորութիւն մը չունի, զի մերթ սկըսած պատմութեան թելը կը կտրէ, յետոյ միւսանգամ ձեռք կ՚առնու, ուրիշ տեղ մը աւարտելու համար. յիշատակներով լեցուն ծերունւոյ միտք մ՚է, և կը փութայ գրի վրայ առնուլ՝ այնպէս որ մտքին մէջ կու գան։ Բայց ո՞վ կրնայ ըսել թէ Մովսէս միտք ունեցած չըլլայ ատենին ժամանակակից դիպուածներն կարգադրելով, նոր պատմական երկասիրութիւն մը ձեւացընել...

« Ինչ որ Նինոսի վրայ կը գրէ՝ աւելի ճշմարտանման կը թուի քան որ այլք ի պատմագրաց աւանդեր են նոյն Նինուէի թագաւորին վրայ. և եթէ Խորենացի Արամայ կ'ընծայէ ինչ որ Դիոդոր Սիկիլիացի Նինոսի, դիպաց կապակցութիւնք կրնան արդարացընել այս ետեւառաջութիւնը: — Շամիրամայ նկատմամբ, ինչպէս առ Խորենացւոյ՝ ուրիշ մատենագիրներէն ալ նոյնպէս հեշտասէր մէկը կը նկարագրուի: Հայաստանի մէջ կառուցանել տուած հրաշալի քաղաքին վրայ գործուածներուն մէջ՝ չափազանցութիւն չկայ. ցայսօր կեցած են ճանապարհորդքը հիացընող աւերակք... Շամիրամայ մահն ալ՝ կ'երեւնայ թէ ի Խորենացւոյ աւանդածին պէս եղած ըլլայ. Զրադաշտ ոչ եւս խորհրդական մէկն է. այլ նենգամիտ պաշտօնեայ, որ գիտէ զեղծանիլ Շամիրամայ վստահութեամբ, և ապա անոր վրայ պատերազմի կ'ելլէ: Յաղթուելով ի Շամիրամայ, բայց ամենակարող անոր որդւոյն Նինուասայ վրայ, առանց աշխատանքի կը հաստատէ ու կը տարածէ մոգակրօնութիւնը: Մարաց թագաւոր Աժդահակայ վրայ ալ՝ մինչ Հերոդոտ և Քսենոփոն կը թուին բոլորովին առասպելաբանել, Խորենացի ընդ հակառակն բնական անձնաւորութիւն մը կը ներկայացընէ զինքն: Գալով Կիւրոսի՝ Քսենոփոն իր դիւցազին վրայ ուրիշ դիւցազին ալ փառքը կ'աւելցընէ. այդպիսի յափշտակութիւնք յաճախ կը հանդիպին. և եթէ գիտենք որ Արտաշիսի առաջնոյ մահուընէն վերջը, Հայաստան միշտ նուաճեալ և ազատութիւնը կորուսած՝ չկրցաւ իր յաղթականացմէ կորզել առնուլ անցեալ փառաց անուանքը որ իրմէ կապտուեցան, չենք զարմանար այն ատեն որ ըսուի մեզ թէ Կրեսոսի յաղթողը Կիւրոս չէ, այլ պարթեւն Արտաշէս, Հայոց թագաւորը: Թող որ Խորենացի, որ գիտէր նաեւ միւսն՝ Կիւրոսի ընծայուածին պատմութիւնը, մէջ կը բերէ ի հաւաստիս իւր բանից զՊոլիկրատ, զԵւագարոս, զԿամադրոս, զՓլեգոն, զժբաղդաբար կո-

բուսեալ պատմագիրքը, որք կ'աւանդէին Կրեսոսի գերութիւնը յԱրտաշիսէ: Ցաղթողաց պատմութիւնը բնականաբար յարաբերութիւն ունի յաղթուողաց պատմութեան հետ, ուստի և թագաւորք Պարսից յաճախ կը ներկայանան մեզ ի պատմութեան Խորենացւոյն: Նմանապէս Անտանիոս կը պահէ հոն հռովմէական պատմութեան մէջ իր անձին տրուած նկարագիրը, և յաղթողն թագաւորաց և ժողովրդոց՝ Կլէոպատրա կոչուած կնկանէ մը կը յաղթուի: — Հրէական ժողովրդեան տարեգրութիւններէն ալ մասն մի կը գտնենք ի պատմութեան Խորենացւոյ: Իսկ նկատմամբ արեւելեան կայսրութեան, բազմաթիւ են յիշատակութիւնք. Կոստանդիանոսի դարձին, իր անունը կրող քաղաքին շինութեան, Թէոդոսի՝ հետաքննականք թէ՛ յոյն և թէ հռովմէական պատմութիւններու համար »:

Օտար պատմութեանց նկատմամբ ունեցած շահեկանութեանց վրայ խօսելէն ետքը, կը բացատրէ եռանդուն լեզուով մեր ազգային պատմութեան համար ունեցած ամենամեծ կարեւորութիւնը:

Լովայլեան՝ այս նոր տպագրութիւնը ընծայեց Ռուսաց Նիկողայոս Ա. կայսեր, և ոսկեղէն մեծ մետալ մը ընդունեցաւ:

Քանի մը տարիէն առանձինն հրատարակեց Խորենացւոյ գրոց վրայ պատմական և աշխարհագրական ծանօթութիւնները, որ նշանակուած են վերը յիշուած խորագրին մէջ:

Ասիական օրագրին մէջ քանի մը յօդուածներ տալէն ետքը, 1843ին ի լոյս ընծայեց գաղղիարէն թարգմանութիւն Եզնիկայ Կողբացւոյ « Ընդդէմ աղանդոց » երկասիրութեան, հինգերորդ դարու յայտնի մատենագրին և աշակերտի սրբոյն Սահակայ և Մեսրովպայ: Այդ թարգմանութեան մէջ ալ, որ մանաւանդ օտարազգւոյ մը համար ունի մեծ դժուարութիւններ, կը թերանայ ի ճշգութենէ, ինչպէս յԱրեւելեան հանդէս ուսումնաթերթի

ցոյց տուաւ Արման տը Վիկերինգ (de Wiekering) ի հատորն հինգերորդ յէջ 207–216։ Եւ յիրաւի, Թարգմանիչն շատ տեղ չիմանալով մատենագրին միտքը՝ սխալ իմաստներով խեղաթիւրեր էր անոր խօսքերը։

Տը Ֆլորիվալ Լըվայեան մեռաւ ի 1862. և յաջորդեց զնա ի պաշտամանն Տիւլորիէ, որ քսան տարի անընդհատ գրաւեց հայ լեզուի ուսուցչութեան պաշտօնը։

## ԵԴ. ՏԻՒԼՈՐԻԷ

Գաղղիոյ Դուլուզ քաղաքը ծնած էր նա ի 1807, և առջի բերան ղպտի լեզուի ուսումնասիրութեամբ պարապած. 1838ին Անգղիա ղրկուեցաւ եգիպտական արձանաց ուսումնական հետազօտութեան։ Այդ պարապմանց միջոց բազմաթիւ ձեռագրաց հանդիպելով մալայերէն և յաւայական լեզուներով, փափաք և միտք ունեցաւ այդ լեզուաց ուսմամբ պարապիլ, և 1848ին դառնալով ի Փարիզ, հրաման ընդունեցաւ անոնց դասախօսութիւնն ընել Արեւելեան լեզուաց դպրոցին մէջ (1844)։ Գիտակ էր նա արաբ, հայ և ռուս լեզուաց։ Այդ վերջինին ուսումը անհրաժեշտ էր հայերէնի հետամուտ արեւմտեան բանասիրաց համար, զի հայերէնի նկատմամբ շատ գրուածներ հրատարակուած կան այդ լեզուով։

Տիւլորիէի գրուածներէն զանոնք միայն յիշատակելով գոհ ըլլանք, որոնք Հայաստանի պատմութեան և մատենագրութեան կը վերաբերին. և որ միայն բաւական են յարգարացընել Ռընանի գովեստը՝ զոր տուաւ նմա Ասիական ընկերութեան 1882 տարւոյն յունիս 30 գումարման ատեն. « Արդի արեւելագիտաց մէջ սակաւք միայն կրցեր են Տիւլորիէի նման իրենց բովանդակ կեանքը նուիրել այդ ուսումնասիրութեան »։

***

*Հայերէնի ուսումն օր ըստ օրէ կը նուազէր և անկման վիճակի մէջ էր ի Գաղղիա։ Տիւլորիէ ուզեց ջանալ վերականգնել արեւելեան մատենագրութեան գեղեցկագոյն ճիւղերէն մէկը, և թողլով իր արդէն պատրաստած յաջորդաց մալայ ու յաւայական լեզուաց ուսմանց և մատենագրութեան ընթացքն յառաջեցընել, որոց նախկին կազմակերպողն էր, եռանդեամբ և սիրով ձգեց ինքզինքն բոլորովին նոր ասպարիզի մը մէջ, հայերէն լեզուի ուսման։ Պարագայք ալ յաջողութիւն կը խոստանային։ Մեծ հաստատութիւն մը, Սամուէլի Մուրատայ դպրոցը, այդ անունը կրողին առատաձեռն տուրք և Մխիթարեանց ձեռքով և տեսչութեամբ կը հաստատուէր ի մայրաքաղաքին Գաղղիոյ, որք Տիւլորիէի մեծապէս օժանդակեցին չխնայելով ոչ խորհուրդ և ոչ ուսումնական օգնութիւն։ Հայոց ազգի պատմական հետազօտութեանց համար, որ իրեն գլխաւոր նպատակն էր, կայսերական մատենադարանն և ուրիշ հասարակաց հիմնարկութիւնք, խիստ սահմանաւոր և անբաւական աղբերք կը բովանդակէին. ուստի և իր ջանքն պիտի ըլլար զանոնք լրացընել, մեծ ծախքով գաղափարել տալով ուրիշ մատենադարանաց մէջ պահուած գրչագիրքը, և դժուարին ու ապերախտ աշխատանքն յանձն առնլով անձամբ օրինակելու դեռ անտիպ գրչագիրներն։ Վենետկոյ, Վիէննայի, Պետրպուրգի ու Մոսկուայի ձեռագիրք հաղորդուեցան Տիւլորիէի, որով յաջողեցաւ քիչ տարուան մէջ ամբողջ հայ պատմագրաց երկասիրութիւններն ձեռք ձգել։*

*Այս ջանից և փութոյն առաջին արգասիքն եղաւ հրատարակութիւնն* (1849) *համառօտութեան ժամանակագրի մը որոյ ամենամեծ կարեւորութիւնն յայտներ էին Սէն-Մարդէն և Գաթրըմէր անոր մէջէն քաղուած հա-*

տուածներով, Միքայելի ասորւոյ: Իր գրուածքը՝ ազգային ասորի լեզուաւ, դեռ չգտնուեցաւ. որով երեք տասանեբորդ դարու մէջ եղած հայկական թարգմանութիւն՝ սկզբնագրի տեղ կը բանէ այսօր:

Գրուածքիս խորագիրն էր, զոր ի 1849 հրատարակեց Տիւլորիէ ի Փարիզ, Extrait de la Chronique de Michel le Syrien, comprenant l'histoire des temps écoulés depuis la 8e annee du règne de l'empereur Justin II, jusqu' à la 2e année de Léon III, dit l'Isaurien (523–717), traduite sur un manuscrit de la Bibliothèque imperiale: Տիւլորիէի անկէ հանած հատուածը Յուստինոս Բ կայսեր իշխանութեան ութերորդ տարիէն կը ձգուի մինչեւ յերկրորդ ամ Լեւոնի Գ Իսաւրացւոյ (573–737), եւ հետեւաբար կը բովանդակէ զպատմութիւն Ասիոյ մէջ կատարուած մեծ յեղափոխութեանց միայն. եւ պատերազմաց որովք Արաբացիք տիրեցին Պարսկաստանի, Սիւրիոյ եւ հիւսիսային Ափրիկէի, եւ յունական կայսերութեան արեւելից մէջ ունեցած գեղեցկագոյն գաւառաց: Հեղինակին դիրքը, իբրու հալածեալ դաւանութեան մը պատկանող՝ յակոբիկ քրիստոնէից մարտիկ աղանդոյն, իր պատմութեան բուռն եւ դիւրայոյզ կերպարանք մը կուտայ, որով եւ մեզի համար շահագրգիռ եւ խկաչնորհ տիպ մը կ'ունենայ գործածած զանազան աղբերց նորութեամբ: Թէ որչափ յարգի էր այս գրուած կրօնակցացն առջեւ, որոց եւ պատրիարք էր յԱնտիոք, յայտնի է ի բազմապատիկ փոխառութեանց Գրիգորի Աբուլֆարաճ, որոյ ժամանակագրութիւն հետեւողութիւն մ'է եւ շարայարութիւն իրեն նախորդին:

Տիւլորիէի այս հրատարակութիւն՝ սկզբնաւորութիւն մ'էր աւելի դժուար եւ երկար ժամանակի կարօտ երկասիրութեանց, բաց ի մերթ ընդ մերթ գիտնական եւ ուսումնական հանդիսից մէջ երեւցած յօդուածներէն, ի Հանդէսի Երկուց աշխարհաց, յԱսիական օրագրի, ի Նոր տարեգիրս ծ-

Նուպարեանցներուն, նպատակ ունենալով զՀին և զՆոր Հայաստան, իր նախնի վէպքն և ազգային երգեր, ազգին արդի վիճակին վրայ տեղեկութիւններ ի Թուրքիա, ի Ռուսաստան և յԱւստրիա, Ռուսաց տիրապետելուն ի վերայ միոյ մասին Հայաստանի, Կովկասու պատերազմին՝ և այլն, զորս յետոյ պիտի յիշենք։



Այս ամէն յօդուածներն մեծ երկախրութեան մը պատճառութիւն կրնային սեպուիլ, որոյ 1857 տարւոյն մէջ հրատարակուած յայտարարութիւնն ծանոյց էութիւնն ու վախճանը. և էր ընտրանաւ եղած հայ պատմչաց հրատարակութիւն մը հանդերձ գաղղիական թարգմանութեամբ ու ծանօթութեամբք։ Այսպիսի հրատարակութեան մը գաղափարը նոր չէր, այլ դարուս սկիզբէն այլեւայլ անգամ մտածուած և առաջարկուած։

Սէն-Մարդէնի և Ջրպետի խուզարկութիւններէ և հայ պատմչաց ոմանց քանի մը գրուածոց հրատարակութիւններէ ետքը, այս խորհուրդ և փափաք յայտնուեր էր գաղղիացի և ուրիշ բանասիրաց սրտին մէջ. ու արդէն 1809ին դեկտեմբեր 20ին հետեւեալ աղերսագիր կը ներկայացուէր Իտալիոյ Թագաւորութեան փոխարքայի, Հակէր Ցովսեփայ՝ Փաւիայի համալսարանի տեսչին ձեռքով։

« Մեծափառ Տէր, Իտալիոյ Թագաւորութիւն՝ որ Ձեր արքայական մեծափառութենէ կառավարուելու բարեբաստութիւնն ունի, արեւելեան դպրոց մը կը պարունակէ յինքեան, որ թէպէտ բոլորովին կրօնային հրահանգաց պարապի, բայց կը թուի որ եթէ այս թագաւորութիւն յօժարի՝ նշանաւոր օգտակարութիւն մի կրնայ անով ձեռք ձգել։

« Սրբոյն Ղազարու դպրոցն է այս ի Վենետիկ, որոյ հայ վարդապետք՝ կատարեալ հմուտք Ասիոյ ամենէն աւելի իմաստուն լեզուաց միայն, ու վանական կենաց

ամէն դիւրութիւններն ունենալով, կրնան օգտակար ըլլալ՝ տալով մեզ գրաւացի թարգմանութիւն չարի հայ պատմագրաց հնոց, զոր ազգն ունի․ և որ ի չորրորդ դարէ քրիստոնէութեան շարունակաբար կը հասնի մինչև ցչորեքտասաներորդն, և մ՛լ աւելի անդին․ ըսել է՝ ճիշդ դպրութեանց անկմանէն մինչև ցվերականգնումն։

« Այս պատմիչքն են՝ Ագաթանգեղ, Զենոբ և Փաւստոս ի չորրորդ դարու։

« Վարդապետ (անչուշտ յիշատակագիրն ակնարկել կ'ուզէ զեղիշէ), Փարպեցի, Արծրունի և Մովսէս ի հինգերորդին։

« Մամիկոնեան և Ապլղարիպ? ի վեցերորդին։

« Շիրակացի յեօթներորդին։

« Կաթուղիկոս (= Յովհան), Երէց (= Ղեւոնդ) և Ասողիկ ի տասներորդին։

« Վերջապէս զանազան պատմիչք մետասան, երկոտասան և երեքտասան դարուց․ կամ թէ անանկ միջոցի մը՝ որ պատմական տեսակէտով բոլորովին մութ և ամուլ կրնայ համարուիլ։

« Այս գրուածներէն ոմանք արդէն հրատարակուած են․ բայց միայն հայ լեզուով և կամ ի յոյն, կամ Եւրոպայէ հեռու տեղուանք, և կամ լատինական գէշ թարգմանութեամբք և պակասաւոր։

« Ուրիշներ ալ՝ դեռ ևս ձեռագիրք, որ Գաղղիոյ և Իտալիոյ ամենամեծ մատենադարանաց մէջ ալ չեն գըտնուիր, և կը պահուին ի մատենադարանի Վենետկոյ դպրոցին։

« Ասոնց մէջ կան այնպիսիք որ ծանօթութեանց գանձարան մը կը բովանդակեն, Ասիոյ մեհենական դիւաններու մէջէն հանուած, կամ արեւելից հին յիշատակարաններէ, մոգուց և քրմաց վկայութեանց վրայ հաստատուած, կամ պարսիկ, հերրայական և արաբ գրքերէ քաղուած։

« Եթէ բիւզանդեան պատմչաց հաւաքումը՝ հրատարա-

կեալ լատին թարգմանութեամբ, ունելով ի հանդիպոյ և զլոյն բնագիրն, այնչափ պատուաբեր եղաւ Գաղղիոյ․ եթէ ծառայեց և միշտ պիտի ծառայէ ի լուսաբանել զպատմութիւն միջին դարուց, և անհրաժեշտ սեպուած է Եւրոպայի ամենայն մատենադարանաց համար․ Հայ պատմչաց հաւաքում մ'ալ թարգմանութեամբ ի լատին և կամ յիտալական, իրենց հայ սկզբնագրովն ի հանդիպոյ, պիտի ըլլայ, մեծափառ Տէր, անտարակոյս արժանաւոր յիշատակարան մը Նափոլէոնեան դարու․ Իտալիոյ թագաւորութեան մեծ պատիւ ընող գրուածք մը, և յամենայն ուսումնասիրաց փնտռուած ։

« Ձեմ ուզեր խօսիլ ուրիշ ամէն երկասիրութեանց համար՝ զոր կրնան մեզ ընծայել այդ հայ վանականք․ և վկայ խօքիս՝ Եւսեբեայ ժամանակականքը, որոյ յոյն սկզբնագիրը կորսուած է, և միայն քանի մը հատուածքն ձեռուընիս հասած, և անցեալ դարու մէջ գտնուեցաւ ի Հայաստան, և արդէն ի լատին թարգմանուեցաւ ի Վենետիկ ։ Վկայ Փիլոնի կորուսեալ գրուածներն, և որոց հայ հին թարգմանութիւնք յայտնուեցան ի Հայաստան, և հռչականուն մատենագրին ի Լոնտոն հրատարակուած երկհատոր գործոց՝ երրորդ հատոր մ'ալ կազմելու նիւթ կ'ընծայեն ։

« Սրբոյն Ղազարու դպրոցին հարք՝ գեղեցիկ հայկական տառեր ունին, և տպարան մը․ և ոչ միայն քաջահմուտք են այս հին, քիչ ծանօթ և ամենադժուարին լեզուին, այլ և այնչափ անձինք ունին որ կարողք են քիչ ժամանակի մէջ ի գլուխ հանել թէ զթարգմանութիւն և թէ զհրատարակութիւն Հայաստանի պատմչաց հաւաքման մը ։

« Այսպիսի ձեռնարկ մը մեծապէս օգտակար պիտի ըլլայ աշխարհագրութեան, ժամանակագիտութեան, բնական պատմութեան, արեւելեան հնագիտութեան, Ասիոյ գրականութեան, աշխարհի տարեգրութեանց․ և եթէ մեր օրերը կը նկատենք որ յաճախ անօգուտ կերպով՝

բազմածախ ուղեւորութեանց ձեռք կը զարնուի քանի մի արեւելեան յիշատակարաններ գտնելու նպատակաւ, կամ հնութեանց մնացորդք՝ հեռաստան աշխարհաց մէջ, ո՛րչափ պիտի շահուինք անոնցմէ որ արդէն մէկ տեղ հաւաքուած են. և որոց օգուտն և գերազանցութիւն վկայուած է ամենայն հաւատարմութեան արժանաւոր և այս աշխարհին Նուիրական և հին լեզուին ամենահմուտ իմաստուններէ։

« Եթէ պարագայք չներեն որ այսպիսի հրատարակութեան մը մէկէն ձեռք զարնուի և գործադրուի, փափաքելի է որ Ձեր կայսերական մեծափառութիւն մեղի հրամայէ որ գէթ այժմէն ձեռք զարնուի այս Հայաստանի պատմչաց մէկ քանիի թարգմանութեան, ինչպէս վարդապետի, կաթուղիկոսի և Վարդանայ. թէ անոնց ոճը ծանօթացընելու նպատակաւ, և թէ իբրու ճաշակ մը և նախընթաց կարապետք աւելի ընդարձակ և կատարեալ հաւաքման մը։ Մովսիսի Խորենացւոյ միայնոյ թարգմանութիւն տուաւ մեզ պատուական մանրամասնութիւնք Ասիոյ հին պատմութեան և աշխարհագրութեան վրայ, յորմէ կրնանք ենթադրել թէ ո՛րչափ աւելի ընդարձակ պիտի ըլլայ այն եթէ ուրիշ պատմիչներն ալ ունենանք »։

* * *

Այս առաջարկութիւն անգործադրելի մնաց. քաղաքական յեղափոխութիւնք, պատերազմունք, Նափոլէոնի և իր կազմած հարստութիւնն տկարանալով և իյնալով, ա՛լ կարելի չէր այդպիսի բանասիրական խնդրոյք զբաղիլ։ Մեզի կ'երեւնայ թէ Զրպետեանի խորհուրդ և քաջալերութիւն կար այսպիսի մտածութեան մէջ, և յորմէ շարժած՝ Մխիթարայ ուխտին բազմահմուտ և բազմավաստակ Հ. Մկրտիչ Վ. Աւգերեան սկսեր է ի լատին լեզու թարգմանել զամենայն հայ մատենագիրս, չորս մեծ հա-

տորներ՝ որ դեռ եւս անտիպ են, և Եւրոպացի գիտնոց համար ամենացանկալի երկ մը, Bibliotheca Patrum Armenorum խորագրով։

Նոյնպիսի հրատարակութիւն մը՝ միայն մեր պատմիչաց նկատմամբ, փափաքեցան ընել Վենետկոյ Մխիթարեանք՝ իտալերէն լեզուով և հմուտ ծանօթութեամբք. բայց Խորենացւոյ և Ագաթանգեղոսի հատորներն միայն ի լոյս ընծայուեցան։

***

Տիւլորէի երկասիրելիք մատենադարանին խորագիրն էր. Bibliothèque historique arménienne, ou Choix des principaux historiens arméniens, traduits en français et accompagnés des notes historiques et geographiques: collection destinée à servir de complement aux chroniques byzantins et slaves. Այս մեծ ձեռնարկ՝ մեծ հովանաւորութեան տակ դրուած էր, առհաւատչեայ անոր յաջողութեան, Ռուսիոյ կայսեր Աղեքսանդր Բ ընծայուելով։

Անոր վրայ հետեւեալ ծանօթութիւնը կը հրատարակէր Տիւլորիէ՝ զոր արդէն նոյն ժամանակին հայերէն թարգմանութեամբ հրատարակութենէն յառաջ կը բերենք.

« Հայոց մատենագրութեան մէկ պարծանքը՝ կ'ըսէ, պատմական յիշատակարանաց շատութիւնն ու պատուականութիւնն է։ Այն յիշատակները՝ չորրորդ դարուն սկիզբէն մինչեւ մեր օրերը անընդհատ կերպով մը իրարու յաջորդելով՝ իրաւցընէ ոսկիէ շղթայ մը կը կազմեն որ հին աշխարհքը մերինին հետ կը կապէ։ Հայ պատմագիրները արաբացիներէն հինգ հարիւր տարի առաջ ըլլալով, կրնանք ըսել թէ ոչ միայն անոնք են ամենէն ապահով առաջնորդ, այլ և մէկ հատիկ առաջնորդ են՝ արեւմտեան Ասիոյ Սասանեանց իշխանու-

թեանը տակ եղած ատեն՝ այն երկրին մէջ պատահած դիպուածները հասկընալու համար։ Վասն զի Հայոց ազգն ալ, առջի բերան այն հզօր թագաւորաց կերպով մը հպատակ ըլլալէն, ու ձեռքը մնացած ինքնիշխանութիւնը քանի մը պատերազմներով անոնց դէմ պաշտպանելէն ետեւ, անոնց ընդարձակ տէրութեան մէջ ընկղմեցաւ, զօրքեր ու զօրավարներ տուաւ անոնց բանակներուն, պաշտօնեաներ անոնց տէրութեան, խնամութիւններ ըրաւ Պարսից և նոյն իսկ Սասանեանց երեւելի ազգատոհմներուն հետ. միանգամայն Հայոց իշխանները, հայրապետներն ու եպիսկոպոսները անդադար երթեւեկութիւն կ'ընէին Տիզբոնի արքունիքը։ Այս երկու թագաւորութեանց մէջ եղած ընտանութիւնն աւելի ալ էր անկէց յառաջ, այս ինքն Արշակունեաց ատենը, երբոր ասոնց երկու գլխաւոր ճիւղերը Պարսկաստանն ու Հայաստանը մէջերնին բաժներ էին. որով քաղաքականութիւննին միացեր էր, և երկար ժամանակ կրօննին ալ մէկ եղեր էր, ինչպէս որ Հայոց հին մատենագիրներն շատ տեղ այս բանս կը յիշատակեն։ Երրորդ դարուն երկու ազգաց կրօնքը իրարմէ բաժնուեցան. վասն զի ի Պարսկաստան Սասանեանց թագաւորութեամբը Զրադաշտի հին օրէնքը նորէն հաստատուեցաւ, և Հայաստան ի քրիստոնէութիւն դարձաւ. անով Հայոց երկիրն ալ քաղաքական կերպով միացաւ Պարսկաստանի հետ՝ Սասանեանց միապետութեանը մէջ ընկղմելով Հայաստանի արեւելեան բաժինը։

« Մինչդեռ Հայաստան մէկ կողմանէ արեւելքի հետ միացած էր, մէկալ կողմանէ նոյնպէս կապուած էր արեւմուտքի հետ։ Քրիստոսի թուականէն հարիւր տարիի չափ առաջ մեծին Տիգրանայ թագաւորութեան ժամանակը քիչ մը ատեն յաղթանակեց ու փառաւորուեցաւ. բայց Հռովմայեցւոց զօրքերը անոր արեւմտեան կողմը շուտով խորեցին ու կայսերաց լծոյն տակ ձգեցին. քրիստոնէութիւնն ալ որ Կապադովկիոյ Կեսարիա քաղա-

քին եկեղեցիէն հոն մտաւ, Հայոց սրտին մէջ սաստիկ սէր մը ձգեց՝ Յունաց մատենագրութեան ետեւէ ըլլալու։ Այնուհետեւ Հայաստան անդադար մէյմը մէկդին մէյմը միւս դին կը քաշուէր այն արեւելեան ու արեւմտեան ազդեցութիւններէն, ու երբեմն Պարսից՝ երբեմն ալ Հռոմայ կամ Բիւզանդացւոց տիրապետութեան կողմը կը հակամիտէր։ Հայոց այն ժամանակի մատենագրութեանը վրայ յայտնապէս կ՚երեւնայ այս կրկին շարժմունքը, այս երկու իրարու ներհակ գաղափարաց յորձանքին ազդեցութիւնը. այնպէս որ թէպէտ աշխարհագրական դրից ու ազգային աւանդութեանց կողմանէ արեւելցի էին, բայց մատենագրական ու կրօնական կրթութեամբ այն ժամանակէն սկսան փոխուիլ ու հելլենականութեամբ տոգորուիլ։ Իրենց պատմագրութեանը մէջ՝ Հռովմայեցւոց ու Բիւզանդացւոց պատմութեան հըռչակաւոր անուններուն շատը կը տեսնուին. զոր օրինակ; Լուկուլլոս և Պոմպէոս, Միհրդատ և Տիգրան, Անտոնիոս և Կորբուլոն. ետքերն ալ՝ Հերակլ, մեծն Խոսրով, Յազկերտները և այլք՝ որոնց վրայ շատ պատուական տեղեկութիւններ կուտան։ Հայերը վեց հարիւր տարիի չափ Պարթեւաց իշխանութեան տակն էին, և շատ մը թագաւորներ ալ ունեցան անոնցմէ ետեւէ ետեւ, ինչպէս նաեւ իրենց առաքելաշնորհ լուսաւորիչը սուրբն Գրիգոր և առջին փառաւոր հայրապետները, և շատ մը հոյակապ ազգատոհմներ. և ահա ասով Հայոց մէջ ողջ պահուեցաւ մնաց նաեւ Արշակունեաց տէրութիւնը կործանելէն ետեւ այն գրեթէ անծանօթ ազգին աւանդութիւնը։

***

«Երբոր Արաբացիք իրեն հիւսիսային կողմերն եղած տէրութեանց վրայ վազեցին, և անոնցմէ ետեւ Սելճուգեան Թուրքերն ու Մողոլները, իրենց ահագին դաշ-

տերուն մէկ ծայրէն արեւմտեան Ասիոյ վրայ յարձըկեցան, անոնցմէ տիրապետուած երկիրներուն առաջինը Հայաստանն եղաւ։ Այն ատեններն Հայաստանի մէջ պատահած վրդովմունքը գիր անցընելով՝ Հայոց պատմագիրները շատ մը մանր տեղեկութիւններ կուտան մեզի, որ ուրիշ տեղ գտնելը անկարելի է։ Դարձեալ, մի և նոյն բաները թէ մահմէտական և թէ հայ հեղինակներէ պատմուած ըլլալով, իրարու հետ որ բաղդատուին՝ շատ զարմանալի ու հետաքրքրական կերպ մը կ'առնուն։ Նոյնպէս զարմանալի ոճ մը ունին հայ պատմագիրները՝ երբ ազգասիրութեամբ վառուած կը նկարագրեն Յունաց կայսրութեան յեղափոխութիւնն որ Հայաստանի վիճակին վրայ ամէն ժամանակ ազդեցութիւն ըրած է. կամ թէ երբոր խաչակրաց պատմութիւնները կը պատմեն, Կիլիկիոյ Հայերուն անոնց ըրած օգնութիւնները մէջ կը բերեն, ու ֆրանկաց լեզուին և կալուածական ու ասպետական օրէնքներուն վրայ Հայոց ինչ աստիճանի սէր ձգելը կը նկարագրեն։ Հայոց պէս մէկ ազգ մը չկար որ կարենար աւելի տեղեակ ըլլալ այն գիպուածներուն որ խաչակրաց պատերազմներուն ատենները պատահեցան Կիլիկիոյ մէջ, և Անտիոքայ դքսութեան ու Եդեսիոյ կոմսութեան հիւսիսային կողմերն որ հայաբնակ գաւառներ էին. ասոր և հարկաւ արեւմըտեան ազգաց և արաբացւոց ու ասորւոց պատմիչներուն պակասորդը Հայերը կը լեցընեն։

« Մեզի աւելի մօտ ատեններ, Առաքել Դավրիժեցին գեղեցիկ ոճով մը գիր անցուց Շահաբասայ ըրածները, Հայոց անոր հրամանաւը իրենց տներէն տեղերէն հանուելով Ասպահան տարուիլը, Ջուղայի մէջ իրենց գաղթականներուն յառաջադիմութիւնը, անոնց ձեռքովը Շահաբասին և անոր յաջորդներուն օրերը վաճառականութեան ծաղկիլը։ Վերջի երկու հարիւր տարուան մէջ ալ Տաճկի Թագաւորաց շատին պատմութիւնները գրողներ եղած են Հայերէն, որ մինչեւ հիմա գրեթէ անծանօթ մնացեր են։

*
* *

« Ընդհանրապէս հայ պատմագրութեան մեծ կատարելութիւնն է անկեղծ ու պարզամիտ ճշմարտասիրութիւն, պատմելու ոճին ու թուականներուն մէջ հաւատարմութիւն և ճշդութիւն, շատ անգամ ալ ընդարձակ տեղեկութիւն։ Որովհետեւ Հայոց հեղինակներուն մեծ մասը եկեղեցական են, այսինքն՝ եպիսկոպոսներ, քահանաներ ու աբեղաներ, զարմանք չէ որ կրօնական վէճերու և դիպուածներու, գերբնական պատահմունքներու, սուրբ գրոց յիշատակութիւններու վրայ երկայն երկայն խօսին, և թէ մեծամեծ վրդովմունքները, թէ աննշան դիպուածները՝ Նախախնամութեան և աստուածային արդարութեան անմիջական ազդեցութեամբը միայն մեկնաբանեն։ Երբեմն կը պատմեն թէ ինչպէս իրենց հայրենակիցները ոտք ելեր ու պատերազմեր են Պարսից թագաւորներուն դէմ որ մոգութեան աղանդին կ'ուզեն եղեր դարձընել զիրենք. անկէց ետքն ալ Արաբացւոց բռնակալութեանցն ու հարստահարութեանցը դէմ. երբեմն կը պատմեն թէ ինչպէս Հայերը՝ Թուրքաց ու Մողոլաց անթիւ բազմութեանը դէմ տկարացած ու անհար մնացած՝ անտերունչ ոչխարներու պէս սրոյ ճարակ եղեր են. մէկ կողմէն այն դիւցազնական քաջութիւնը, և քրիստոնեայ ժողովրդեան մը անձնուրաց համբերութիւնը, մէկալ դին իր յաղթական հարստահարիչներուն բարբարոսութիւնն ու անգթութիւնը այնպիսի կենդանի տեսարան մը կը ձեւացընեն ողբերգութեան, որ այն պատմագրաց խիստ հասարակ ոճն ալ՝ կարգէ դուրս աշխոյժ մը ու կենդանութիւն կ'առնու։

⁂

« Հայոց պատմութեան մէկ աղբիւրն ալ՝ Ռուբինեան թագաւորաց հրովարտակներն են որ Կիլիկիոյ մէջ թագաւորեցին միջին դարուն, մինչեւ որ իրենց աթոռն ընկաւ, և Հայոց ինքնիշխանութիւնը Եգիպտոսի Մէմլուք ըսուած սուլդաններուն ձեռքով վերցուեցաւ ։

« Ռուբինեանք շատ յարաբերութիւններ ունեցան այն Եւրոպացւոց հետ որ Ասորւոց երկիրն ու Կիպրոս կղզւոյն մէջ բնակեր էին . և կամ վաճառականութեան համար Կիլիկիա գնացեր էին և անկէ մինչեւ Ասիոյ ներսերը առուտուր կ'ընէին . առով երկու կողմէն ալ իրարու օգտակար եղան ։ Այն յարաբերութիւնները կարգի դնող հրովարտակները հայերէն, գաղղիարէն, շատն ալ լատիներէն գրուած են . և հիմա կը գտնուին Եւրոպայի այլեւայլ դիւաններուն մէջ, ինչպէս Վիէննա, Վենետիկ, Ճենովա, Թուրին, Փլորենտիա, Հռոմ և Նէապոլիս, երբեմն ալ զանազան տպագիր հաւաքմանց մէջ ։ Թէ որ անոնք մէկտեղ ժողվուին, ինչպէս որ արժան է, դիւան մը կը ձեւանայ որ ատենով Ռուբինեանք ունեցած են և հիմա չկայ ։

⁂

« Պատմագրութեանց մէջ կարգ մը դնելու համար բնական կ'երեւնար Հայաստանի տիրող այլեւայլ իշխանութեանց ժամանակներուն նայիլ, որ են նախ՝ Հայկազանց իշխանութիւնը, որ Ասորեստանեայց ինքնակալութեան հետ մէկտեղ կը սկսի, և կը վերջանայ՝ Վանայ որդւոյն Վահէի մահուամբը, որ ժամանակակից էր Աղեքսանդրի Մակեդոնացւոյ . այս իշխանութեան ատենէն մնացածը թագաւորաց ցանկ մըն է միայն և քանի մը մութ և անստոյգ աւանդութիւններ ։ Երկրորդ ,

Արշակունեաց իշխանութիւնը, երկրորդ դարուն կէսէն (նախ քան զՔրիստոս) մինչեւ հինգերորդ դարուն կէսը։ Երրորդ, Բագրատունեաց իշխանութիւնը, իններորդ դարուն վերջերէն մինչեւ մետասաներորդին կէսերը. և չորրորդ՝ Ռուբինեանցը որ մետասաներորդ դարուն վերջի տարիներէն մինչեւ չորեքտասաներորդին վերջերը քշեց։ Բայց այս չորս իշխանութիւններն անընդհատ կերպով չեն յաջորդեր իրարու, այլ քիչ շատ միջոցներ կը ձգեն. թող որ Հայոց մատենագրութեան ծնանելէն շատ առաջ կը սկսին, ու անոր նորէն ծաղկելէն առաջ կը վերջանան։

« Աւստի լաւ թուեցաւ մեզի այնպիսի կարգ մը բռնել որ համեմատ ըլլայ Հայաստանի վրայ ետեւէ ետեւ անուամբ կամ իրօք տիրապետող օտար ազգաց յաջորդութեանը։ Այսու բաժանմամբ կրնանք Եւրոպացւոց մէջ աւելի սովորական եղած ու ծանօթ անուններ գործածել, և հինգ ժամանակի մէջ ամփոփել ըստ կարի բոլոր մեր պատմագիրները։ Առաջինն է Սասանեանց ժամանակը, Հայոց մատենագրութեան սկզբնաւորութենէն, Դ դարու սկիզբը, մինչեւ Սասանեանց տէրութեան անկումը, Է դարուն սկիզբները. երկրորդը՝ Արաբացւոց ժամանակը՝ Է դարուն մէջտեղուանքէն մինչեւ մետասաներորդին կէսերը. երրորդը՝ Սելճուգեանց ժամանակը, ԺԱ դարուն ետքերէն մինչեւ երկոտասաներորդին վերջը. չորրորդը՝ Թաթարաց ժամանակը, ԺԳ դարուն սկիզբներէն մինչեւ հնգետասաներորդին կէսերը. և հինգերորդը՝ Արդի ժամանակ, որ ԺԵ դարուն կէսէն մինչեւ մեր օրերը կը հասնի. և այն միջոցը Հայաստանը բաժնուած կը գտնուի Տաճկաց ու Պարսից մէջ. երեսուն տարիէ մը ի վեր ալ՝ այն երկուքին ու Ռուսաց տէրութեան մէջ։...

Մտքերնիս դրած ենք որ Հայերը, այն փոքրիկ՝ բայց հանճարեղ ազգը, տաք աչքով կը նային մեր ջանքին որով ի լոյս կ'ընծայենք իրենց պատմական յիշատակա-

րանները որ քիչ ճանչցուած են, և յորս ճարտար գրիչներ ի գիր անցուցեր են իրենց ծագումը, իրենց հայրապետաց և քաջաց գործողութիւնները, իրենց նախնեաց ըրած յաղթութիւնները, ունեցած յաջողութիւնները, և գլխերնէն անցած խեղճութիւններն ու դժբաղդութիւնները։

« Արդէն արևելքի քրիստոնեայ ազգերուն մէջ առաջին ըլլալով ուսումնասիրութեան և քաղաքակրթութեան փափաքին կողմանէ, անշուշտ եւրոպացի ազգաց պէս Հայերն ալ պիտի հասկընան թէ առաջին սորվելիքը այս օրուան օրս իրենց սեպհական պատմութիւնն է. և թէ որչափ հարկաւոր է որ փութան իրենց վաղեմի Նախնեաց այս պատուական մնացորդները ժամանակին աւերմունքներէն ազատ պահելու։

« Տպագրութեան կողմանէ մեր գործոյն հրատարակումը անշուք՝ բայց վայելուչ պիտի ըլլայ։ Բոլորը մէկէն քանի մը ութածալ հատոր գրքեր պիտի ձևանան, իւրաքանչիւրին մէջ մէյմէկ գործ կամ աւելի... Առաջին հատորոյն հետ (որ Հայոց ժամանակագրութեան վրայ է), կը հանենք նաև փորձի օրինակ մը և ստորագրութեան յայտարարութիւն »։



Ինչպէս կը կարծէր և իրաւամբ կը յուսար Տիւլօրիէ, իր այս օգտակար՝ և պատմական ուսմանց տեսակէտով մեծաշահ առաջարկութիւնը, ընդունելի և հաճոյ եղաւ Գաղղիոյ և իմաստունն Եւրոպիոյ ընդհանրապէս, և Փարիզու ասիական ընկերութեան ժողովոյն ատենադպիր անուանին Մոհլ՝ իրենց ժողովոյն տարեկան համաբատուութեան մէջ հետևեալ խօսքերով կը ծանուցանէր զայն կաճառակցացը.

« Հայոց մատենագրութեանը պատմիչներու կողմանէ ինչ աստիճանի հարուստ ըլլալը ամենուն յայտնի է,

կ'ըսէր․ մեր Թուականին չորրորդ դարէն ի վեր անընդհատ չարք մը ունի պատմագրաց․ անկէց ի զատ, Հայոց երկրին դրիցը պատճառաւ՝ իրենց մատենագրութիւնն ալ մասնաւոր յատկութիւն մը ունի։ Հայք օտար ազգաց վրայ ոչ երբեք մեծ ազդեցութիւն մը ունեցած են, բայց դժբաղդաբար միշտ վերաբերութիւն մը եղած է անոնց մէջ ու աշխարհակալ ժողովրդոց մէջ։ Ատենով Պարսից հպատակ եղան, Հռովմայեցւոց ու Յունաց ձեռքը անցան, Արաբացւոցմէ նուաճուեցան, իրենց երկրին մէկ մասը խաչակիրներուն տակը ձգեցին, Մողոլներէն ու Թուրքերէն հարստահարուեցան։ Իրենց տարեգրութեանց հին մասին մէջ պահուած են՝ Սասանեանց ժամանակը գրուած ու կորսուած գրքերու կտորներ։ Եւ որովհետեւ Պարսից հպատակ էին, իրենց կառավարութենէն ու Պարսից հետ ունեցած կռիւներէն՝ Պարսկաստանին վրայ այնպիսի թանկագին տեղեկութիւններ կ'առնունք որ ուրիշ տեղ չեն գտնուիր։

« Հետեւեալ տասուերկու դարերուն մէջ, Հայոց պատմագիրներուն խօսքովը կը ստուգուին մահմէտական ազգաց տարեգրութիւնները, վասն զի անոնց հետ ապրելու ստիպուած էին Հայք կա՛մ պատերազմով կամ հպատակութեամբ, եւ այս ժամանակակից անընդհատ պատմութիւնները անթիւ տեղեկութիւններ կու տան մեզի յաղթական ազգաց վրայօք… Հայերը իրենց պատմագիրներէն շատը հրատարակած են, եւ անոնցմէ մէկ քանին Եւրոպայի գիտուններ թարգմաներ են․ բայց հայ պատմչաց ամբողջ հաւաքում մը դեռ տեղ մըն ալ չիկայ․ եւ ահա զայս ընել կը խոստանայ Պ. Տիւլորին այս օրեր ըրած յայտարարութեան մէջ․ միտքը դրեր է որ կարգաւ հրատարակէ այն պատմիչներուն թարգմանութիւնը, կարեւորները ամբողջ՝ մէկալնոնք համառօտելով․ եւ այսպէս ինչ որ խեջք սորվելու բան կայ այս մատենագրութեան մէջ՝ մէկտեղ հաւաքել։

« Առաջ մէկ հատոր մը ժամանակագրութիւն պիտի հա-

*նէ, որ իր Մատենադարանին այլեւայլ մասանց կապը կ'ըլլայ· յետոյ դեռ չելած կամ չթարգմանուած գրքերէն պիտի սկսի հրատարակութիւնն...*

*« Այսպիսի հարկաւոր և տաժանելի ձեռնարկութեան մը յաջողելուն որչափ ալ փափաքինք՝ քիչ է »:*

*Արդարեւ մեծ՝ և պատմական ուսմանց համար բազմաշահ և կարեւոր ձեռնարկ մ'էր այս, զոր ինք Տիւլորիէ չկրցաւ գործադրել: Բայց իրմէ ետքը Լանկլուա և Պրուէ՝ մասամբ յաջողեցան իրականութիւն տալ այդ օգտակար մտածութեան, ինչպէս քիչ ետքը պիտի տեսնենք:*

*
* *

*Քիչ ատենէն Մատենադարանին առաջին հատորը հրատարակուեցաւ, բովանդակելով Մատթէի Ուռհայեցւոյն ու իրեն շարայարութիւննն ընող Գրիգորի երիցու պատմական երկասիրութիւնն:*

*Խորագիրն էր;* Tome Ier. Chronique de Matthieu d'Edesse (952–1136) avec la continuation de Grégoire le Prêtre, jusqu' en 1162, d'après trois manuscrits de la Bibliothèque Impériale. Paris 1858.

*
* *

*Արդէն ի* 1850 *հրատարակեր էր Տիւլորիէ Մատթէի Ուռհայեցւոյ առաջին խաչակրաց արշաւանաց պատմութեան համառօտութիւնը* (Ը + 108 *էջ*)· 1858*ին նոյն հեղինակին ժամանակագրութիւնը* (952–1036) *ամբողջ, որոյ շարունակութիւնն երկասիրած է Գրիգոր Երէց (մինչ ի* 1162 *թիւ փրկչին*):

*Այս հարիւր տասն տարուան շրջան՝ պատմական ամենահետաքննական դէպքեր կը բովանդակէ. և կը ծառայէ իբրու շրջանակ մը նոյն միջոցին յոյն և մահմետական պատկերին, յորում գլխաւոր դերը կը պատկանի Հայաս-*

տան աշխարհի։ Արաբաց արշաւանք ի կղզիս Միջերկրականի, ամենայաղթ մարտք պատերազմաց Նիկեփոր Փոկասայ և Զմշկիկ Յովհաննու յԱսորիս, Սելճուգեան Թուրքաց վերահաս ժամանումն և իրենց աւերիչ ասպատակութիւնք մինչեւ յեզերս Միջերկրականին, ջնջումն վերջին հայկական ինքնօրէն իշխանութեանց հնարագէտ քաղաքականութեամբ կայսերաց Բիւզանդիոյ, առաջին խաչակրութիւն՝ որում մասնակցեցան և Հայք, գաղղիական տիրապետութեան հաստատուիլն ի վերայ ափանց Եփրատայ, քանի մը տարուան մէջ Եդեսիոյ կործանումն ի ձեռն Էմատ–Էտտին Զանգի աթաբէկի և իր Նուրէտտին որդւոյն. հաստատութիւն և առաջին սկզբնաւորութիւն փոքուն Հայոց (Կիլիկիոյ) թագաւորութեան, և անոր գլխաւորաց ձեռքով տրուած պատերազմունք ընդդէմ սուլտանաց Իկոնիոնի, վերաբերութիւնք ընդ լատին իշխանաց Սուրիոյ, – ասոնք են աճաւասիկ գլխաւոր տեսարանք նկարուն զոր Ուռհայեցի և Գրիգոր Երէց կը ներկայացընեն մեզ։

Բայց հայ պատմագրաց և ժամանակագրոց ընթերցման մէջ առաջնորդուելու և անոնցմէ աւանդուած անցից լաւ խելամուտ լինելու համար՝ պէտք է նախնապէս տեղեակ ըլլալ իրենց գործածած ժամանակագրական դրութեանը, որ վեցերորդ դարուն կիսէն ասդին սովորական եղաւ յազգին, և իրեն հիմն ունի զշրջան 1461 անորոշ (vague) տարիներու, իւրաքանչիւրն 345 օրուան, առանց կոտորակի (աւելեաց), հաւասար յուլեան 1460 տարիներու, և որոյ սկզբնաւորութեան կէտ դրուած է 1552 տարւոյն յուլիսի մետասաներորդ օրը։ Դժուարութեան կամ լուծելու խնդիրը կայացած էր ճշդիւ որոշել և սահմանել պատմական հաւաստեաք սկըզբնաւորութեան կէտը, որ մինչեւ նոյն ատեն ընդունայն ըրած էին ամեն այն աշխատանք և ուսումնասիրութիւն ի գիւտ նորին. և այնպիսի կարեւորութիւն ունեցող խնդիր մը, որ օր մը եւեթ աւելի կամ պա-

կամ՝ բաւական կ՚ըլլայ ի չփոթել ժամանակագրութեան ամբողջ աստիճանը բոլոր Թուականներն չփոթելով։ Այս հետազօտութեանց գլխաւոր արգասիքն եղաւ ծանօթութիւնն թէ Հայք իրենց պատմական յիշատակարանաց և գործնական կենաց մէջ անայլայլ պահեր են անորոշ Թուականի մը գործածութիւն, որ ի հին և նախնի ժամանակաց սովորական էր Եգիպտացւոց և Պարսից, և հաւանականաբար նաեւ Ասիոյ հիւսիսակողմանց։ Բայց մինչ Պարսիկք փոփոխութիւններ կը մտցընէին տարւոյ այս եղանակին մէջ, նախ Սասանեանց վերջին Թագաւորաց ատեն, երկրորդ Յազկերտի, և ապա Ջալալեան ուղղութեամբ Մէլիքշահ սուլտանի իշխանութեան ժամանակ․ և երբ եգիպտացիք այն Թուականին տեղ սկսան գործածել աղեքսանդրեան անխախտ Թուականը, Հայք պահեցին զայն առանց ո՛ր և իցէ յաւելման և փոփոխութեան, իրենց յատկանիշն եղող անխախտ հաստատամտութեամբ, և որով սովորեցան պահպանել անփոփոխ սիրով ունեցած և ի նախնեաց աւանդուած աւանդութիւններն և համոզմունք։ Ուստի և հաստատեցին ազգային Թուական մը առ ի կարգաւորել տնօրէնութիւն եկեղեցական տօնից, որոյ համար հարկ էր յուլեան տոմարն ու եկեղեցական տումարի հաշիւն, որ Մետոնի շրջանն է, կարգաւորել և ուղղել ի Կալլիպեայ՝ անորոշ տարւոյ շրջանին համաձայնեցընել, որով միայն դիւրին և կարելի կ՚ըլլար ազգային Թուական մը հաստատել։ Համաձայնութեան այս կերպը անիմանալի կ՚ըլլար առանց նախընթաց տեղեկութեան եկեղեցական տոմարի, որ երբեմն եռանդեամբ և խնամով յուզուած ուսումնասիրութիւն մ՚էր, և ապա երեսէ ձգուած և մոռցուած։ Անոր վարդապետականն բացատրելու համար, ստիպուեցաւ Տիւլորիէ երկար ուսումնասիրութեամբք պարապիլ, և արգասիքն պատմական ուսմանց մատուցուած մեծ ծառայութիւն մը եղաւ․ վասն զի ինչպէս Պետոյ կ՚ակնարկէ, զատկական հաշիւը ուղղիչ մ՚է միջին դարուց

ամենայն ժամանակագրական ծանօթութեանց, թէ արեւմտից և թէ արեւելեան քրիստոնէից մէջ։ Անորոշ տարւոյն գերազանցութիւն ի գիտ պատմական և քաղաքական հաշուոց՝ անտարակուսելի է. և յիրաւի, մինչ ամենայն ազգաց ժամանակագրութիւն յաճախ խռկած և մութ է անանցանելի դժուարութեամբք, Հայոց մէջ գրեթէ ամենեւին չունի անստուգութիւն, և իրեն ոճովը կրնայ տիպար մը կոչուիլ ճշտութեան։ Այս վախճանաւ շարադրած է Տիւլորիէի կարեւոր երկասիրութիւնն՝ որոյ խորագիրն է. Recherches sur la Chronologie arménienne technique et historique, avec de nouvelles considérations sur l'origine et la formation des ères monines, et une table manuelle pour le calcul des dates qui se trouvent dans les chronographes byzantins et slavons. — Chronologie téchnique, 1859։

***

Իսկ 1869ին տպագրութեան լոյս տեսաւ նորա գլխաւոր աշխատասիրութիւնն, որ էր «Հաւաքումն խաչակրաց պատմչաց. Հայկական վաւերականաց հատոր առաջին». (Recueil des historiens des Croisades. Documents arméniens, publié par l'Académie des Inscriptions et Belles – Lettres)։ Այս մեծ աշխատասիրութեան վրայ հետեւեալ կերպով կը խօսի Է. Ռընան ասիական ընկերութեան տարեկան Տեղեկագրին մէջ ի ժողովի գումարելոյ ի 25 յունիս 1870. «Յառաջաբան մը, կ՚ըսէ, գործածած վաւերականաց վրայ. ընդարձակ ներածութիւն Փոքր Հայոց թագաւորութեան և Կիլիկիոյ վիճակին վրայ՝ ի ժամանակի խաչակրաց. ի սկիզբն գրոցն դրուած են ազգագրական և տոհմաբանական ցուցակներ. և յետոյ պատմագիրքն Մատթէոս Ուռհայեցի, Միքայէլ Ասորի, Ներսէս Լամբրոնացի և ուրիշներ, հայերէն բնագրով և գաղղիերէն թարգմանութեամբ։ Յաւելուած մ՚ալ

*Լուսինեանց Թագաւորութեան պատմութեան, այն ժամանակին որոյ նկատմամբ քիչ են հայկական վաւերագիրք։ Կը վերջանայ հատորն չորս հրովարտակաց արեւտիւ նմանահանութեամբ, և գրական՝ պատմական և աշխարհագրական ցուցակներով։ Գրուածքիս (դեռ անտիպ) երկրորդ հատորը պիտի բովանդակէ հրովարտակներ, քահանայապետաց կոնդակներ, դրամներ, նկատողութիւններ, արձանագրութիւնք՝ որ կը պատկանին Հայոց ազգի այն պատմութեան՝ որոյ կեդրոնն էր Սիս քաղաք»։*

*Սելճուգեանք՝ մեծ Հայաստանի վրայ ըրած արշաւանքներով,ստիպեր էին երկրին քրիստոնեայ ժողովուրդքը հեռանալ օտարութեամբ իրենց երկրէն, և յունական կայսրութեան արեւմտեան սահմանածայրքը ապաստանիլ։ Յաջորդաբար ցրուեցան յեզերս Եփրատայ՝ ուր Թըշնամին քիչ առենէն ետեւնէն պիտի հասնէր, և մինչեւ ի հարաւային արեւելեան անկիւն փոքուն Ասիոյ, ուր վերջապէս յաջողեցան գտնել իրենց փնտռած ապահովութիւնը։ Տաւրոսի անհարթ լերանց մէջ՝ ի Կիլիկիա այլեւայլ իշխանութիւնք հաստատուեցան այս գաղթականաց ձեռքով։ Ասոնց մէջ ամենէն նշանաւորն, և որ յետոյ պիտի տարածուէր մինչեւ յեզերս Միջերկրականին և ի ծով Կիպրացւոց, իրեն սկզբնաւորութիւնն պարտի քաջայանդուգն և արիական կուսակցութեան առաջնորդի մը․ Ռուբէնի, որ իրեն անուանը կոչուած Ռուբինեան իշխանաց նահապետն է։ Այս փոքր իշխանութիւնը, զոր արեւմտեայք խաչակրաց առենէն սովոր են Թագաւորութիւն Փոքր Հայոց կոչել, կամաց կամաց ընդարձակելով, յարաբերութիւններ ունեցաւ ասորեստանի լատին գաղթականաց հետ, ու Երուսաղեմի ու ապա Պըտղոմայիդայ անկմանէն ետքը, Կիպրոսի Թագաւորութեանն հետ՝ վերջին պատուար մ՚եղաւ քրիստոնէութեան յարեւելս։ Իր պատմութիւնը անմիջական կերպով կապուած է անդրածովեան նուիրական պատերազմաց ընդ-*

համուր պատերազմաց հետ։ Ոչ միայն հայ մատենագիրք, այլ և յոյն, լատին, գաղղիացի, արաբք և ասորի ժամանակակից գրիչք, կը պատմեն կամ կը յիշատակեն գէթ հարեւանցի կերպով դքաղաքական անցս կամ դէպս Թագաւորութեանն։ Հաւաքել ի մի այս պատմութիւններն իրենց հայկական սկզբնագիրներուն մէջէն, համեմատել և լուսաւորել բաղդատելով օտար հեղինակաց հետ, Տիւլորիէի գործունէութեան օգտակար և բոլորովին նոր ձեռնարկ եղաւ․ և զոր ի գլուխ տանելով՝ ձեւացուց խաչակրաց պատմչաց մեծ հաւաքման նշանաւոր հատոր մը, որոյ մտածութիւնն ունեցեր էին ժամանակաւ Բենեդիկտեանք․ և Արձանագրութեանց և Գեղեցիկ դպրութեանց ակադեմիայն, արժանի ժառանգ այդ իմաստուն կրօնաւորաց, գործունեայ ջանիւք կը յարատեւէ դնել զայն ի գործ։

Փափաքելի ու ցանկալի է որ այս բազմօգուտ հաւաքման հայկական մասին երկրորդ հատորն ալ, որ արդէն գրեթէ պատրաստ և մեծապէս հետաքննական է, շուտով կարենայ հրատարակուիլ, տպագրութիւնն արդէն աւարտուած ըլլալով, ինչպէս կը կարծենք։

*
* *

Ռուս լեզուի գիտութեամբ ու Էմինեան Մկրտչի հետ ունեցած թղթակցութեամբ կրցաւ Տիւլորիէ Լազարեան ուսումնարանի տեսչութեան ու հոգաբարձութեան հետ շարունակեալ յարաբերութեան մէջ ըլլալ։ Նոյն ուսումնարանի վրայ տեղեկութիւն մը հրատարակեց ի 1855 յԱրեւելեան հանդէսէ (Նոր շար, Հատ․ Գ․ 438–350, ու 1858ին յԱրեւելեան օրագրէ (Շար Ե, Հատ․ ԺԱ․ 476–479) մահազդոյժ կենսագրական մը Լազարեան Յովհաննու Բ կոմսին վրայ․ որ նոյն տարւոյն փետրուար 18ին վախճաներ էր ի Փեթրպուրկ։



Ազգային մատենագրութեան նկատմամբ կարեւոր երկասիրութիւն մ'էր զոր Տիւլորիէ հրատարակեց ի 1852 խորագրով. «Ուսումնասիրութիւն հին Հայաստանի պատմական երգոց և ժողովրդական աւանդութեանց», (Etudes sur les chants historiques, et les traditions populaires de l'ancienne Arménie), հետեւողութեամբ Ալիշան և Գաթըրճեան վարդապետաց և Մկրտչի Էմին գիտնական և հմուտ քննութեանց:

Տիւլորիէի կարեւորագոյն թարգմանութիւններէն մէկն է՝ առնէ ի գաղղիականն՝ հետեւեալ խորագիրն ունեցող փոքրիկ բայց հետաքննական գրուածք մը. «Պատմութիւն, վարդապետութիւն, աւանդութիւնք և պատարագամատոյց արեւելեան հայկական եկեղեցւոյ». (Histoire, dogme, traditions, et liturgie de l'egllse arménienne orientale). որոյ այլեւայլ տպագրութիւնք եղան ի Փարիզ: Այս փոքրիկ գրուած, որ Լազարեան ուսումնարանի սեպհականութիւնն է, կը պարունակէ զհամառօտ պատմութիւն եկեղեցւոյն Հայոց, անոր հաւատոյ դաւանութիւնն՝ զոր յօրինած է Շնորհալի հայրապետն Ներսէս, զպատարագամատոյց, և այլ տեղեկութիւններ նկատմամբ սուրբ խորհրդոց, նուիրապետութեան, քահանայական սպասուց և հանդերձից, և այլն:

Հանդէս երկուց աշխարհաց (Revue de deux mondes) ուսումնաթերթին մէջ ալ 1856ին հրատարակեց Տիւլորիէ (ԻԴ տարի, Հատ. Ձ, 209-255) երկար ու հմտական հատուած մը «Հայկական ընկերութիւն յիննեւտասներորդ դարու, և իր քաղաքական, կրօնական ու մատենագրական դիրքը» (Les Arméniens en Autriche, en Russie et en Turquie, ou la Société arménienne au XIX siècle, sa situation politique, religieuse et littéraire).

Թարգմանուած ի հայ և հրատարակեալ յԵւրոպա լրագրի Մխիթարեանց ի Վիեննա, ի Փարիզ՝ յամսաթերթն Մասեաց աղաւնի (1854), և ի ռուս լեզու տպագրեալ ի Թիֆլիզ՝ ի Պերժէէ (1855)։ Այս հատուածին իբրու շարայարութիւն կրնայ համարուիլ նոյն խորագիրը կրող հատուած մը, հրատարակեալ ի 15 յունիսի 1867, ի Մկրտչէ Պ. Տատեան. (Հանդէս Երկուց աշխարհաց, ԼԷ տարի, Հատ. 69, 903–928)։

Գիտնական հայագէտս ուրիշ բազմաթիւ յօդուածներ ալ հրատարակած է նոյն ուսումնաթերթին մէջ իրեն ժամանակակից քաղաքականութեան վրայ, մանաւանդ ռուսականին ի կովկասեան գաւառս, ինչպէս նաեւ ուրիշ նիւթոց։ 1858, 15 ապրիլ թերթին մէջ տեղեկութիւն մը տուաւ Խուտաբաշեանի հայ–ռուս բառգրոց վրայ։ Քանի մը տարի յառաջ ալ նոյն հանդիսին մէջ հատուած մը հրատարակեր էր «Փոքր Ասիա, ըստ ռուս ուրումն ուղեւորի» (L'Asie Mineure d'après un voyageur russe), որ էր Չիհաչեվ։ Ասիական օրագրին մէջ ալ (Շար վեցերորդ, հատոր ԺԳ) թարգմանեց ի հայէ յաշխարհագրութենէ Ալիշան Հ. Ղեւոնդի գլուխն որ յաղագս «Տեղագրութեան Հայոց Մեծաց»։ Իսկ Փոքուն Հայոց վրայ ցուցեր էր նոյն ամսագրին մէջ (Շար վեցերորդ, հատ. Թ) թէ որչափ օգտակար է Սարգիսեան Հ. Ներսէսի տրապիզոնեցւոյ՝ տեղագրական երկասիրութիւնն որ 1843էն ց'1853 ուսումնական ուղեւորութիւն մը ըրաւ ի Հայաստան։ — Ասիական օրագրին՝ չար հինգերորդ, հատոր ԺԷին մէջ (377–437) հրատարակեց Տիւլորիէ, «Ուսումնասիրութիւն ի վերայ քաղաքական, կրօնական և վարչական կարգաւորութեան Թագաւորութեան Փոքուն Հայաստանի (Etude sur l'organisation politique, religieuse, et administration de royaume de la Petite Arménie). որոյ շարունակութիւնն և վերջ՝ ի հատորն ԺԸ 289–357։ Արեւելեան Հանդէս ամսագրին 1858 տարւոյն մէջ հատուած

մը ունի այս խորագրով. «Պատմութիւն խաչակրութեանց ըստ հայ ժամանակագրաց». (Histoire des Croisades d'après les chroniques arméniennes, 169–184)։ Ուրիշ հատուած մ'ալ. «Վաճառականութիւն, սակ մաքսատանց և քաղաքական պայման օտարականաց ի թագաւորութեան Փոքուն Հայաստանի ի միջին դարս». (Commerce, tarif des douanes et condition civile des etrangers dans le royaume de la Petite Arménie au moyen âge) ի հատորն ութերորդ նոյն հանդիսի (277–287, 350–366)։



Պատմական ուսմանց նկատմամբ Տիւլորիէ գոհ չեղաւ միայն խաչակրաց ժամանակին վերաբերութեամբ զբաղելով։ Իր մասնաւոր ուսումնասիրութեանն առարկայ ըրաւ Մողոլաց ժամանակը. ու 1858 ին հրատարակեց Ազիատիք Ժուռնալին՝ հինգերորդ շար, մետասաներորդ հատորին մէջ «Մողոլք՝ ըստ հայ պատմչաց, հատուածք թարգմանեալք ի սկզբնագրոցն». (Les Mongols d'après les historiens arméniens; fragments traduits sur les textes originaux; 192–255, 426–473, 481–508)։ Եւ են քաղուածքս ի պատմագրութենէ Կիրակոսի Գանձակեցւոյ։ Ճառընտրութիւնն, որ հանուած է ի գրոց Վարդանայ պատմչի, հրատարակուեցաւ ի հատորն ԺԶ, հինգերորդ շար (273–322)։

1867ին երբ Եւարիստ Բրիւտոմ ռուսերէնէ թարգմանեց Ք. Պատկանեանի մէկ երկասիրութիւնը, «Քննութիւնք ի վերայ կազմաւորութեան հայ լեզուի» (Recherches sur la formation de la langue arménienne), Տիւլորիէ շատ ընտիր բանասիրական ծանօթութիւններ աւելցուց, ամենապարզ բացատրութեամբ հայկական լծորդութեանց դրութեանը։ Գիտնոց կոչուած (Journal des savants) օրագրին մէջ քննադատեց Վ. Լանկլուայի հրատարակած հայ պատմագրաց հաւաքումը։

Տիւլորիէ մեռաւ ի 21 դեկտ. 1881։ Մահուընէն քիչ յառաջ կը պատրաստուէր ի հրատարակութիւն Ստեփաննոսի Տարօնեցւոյ կամ Ասողկան ընդհանուր պատմութեան գաղղիական թարգմանութեան։ Առջի երկու գրքերը արդէն պատրաստ էին 'ի տպագրութիւն, և հրատարակուեցան առ Լըռուի ի 1883։ Շատ հետաքննական են ծանօթութիւններն որովք զարդարեց և ճոխացոյց Տիւլորիէ այն թարգմանութիւնը, և իր քաջածանօթ խորունկ հմտութիւնը կը ցուցընեն։ Թարգմանութեանն բնագիր ընտրած է Փարիզու ազգային մատենադարանին մէջ գտնուած գրչագիր մը, և ուրիշ մը որ կը պահուի ի Սուրբն Ղազար Մխիթարեանց, բաղդատելով Էջմիածին գտնուածին հետ, զոր ի 1857 հրատարակեց Կարապետ վարդապետ Շահնազարեանց ի Փարիզ, և ռուսերէն թարգմանուեցաւ և հրատարակուեցաւ ի Մկրտչէ Էմինեան (ի Մոսկուա, 1864)։ Տիւլորէի յաջորդն յուսուցչութեան հայերէն լեզուի՝ Աւկիւստ Գարրիէր կը պատրաստէ զթարգմանութիւն երրորդ և վերջին գրոցն։ Այս մասը պիտի բովանդակէ զմանրամասն կենսագրութիւն և զգրաւորական արդիւնս Տիւլորիէի։

## Ա. ԳԱՐՐԻԷՐ

Գարրիէր Աւկիւստ ծնած է ի Լիւնըռէյ (ի Ստորին Սէյն) և (բողոքական) աստուածաբանական ուսմանց ընթացքն կատարած ի Ժընև, և Ստրասպուրկի աստուածաբանական ուսուցչաց կաճառին առջև (faculté) բանամրցութիւն մը ըրած է « Պատմական և քննադատական հետազօտութիւն ի վերայ ժամանակի մարգարէութեան Ամբակումայ » խորագրով (Étude historique et critique sur l'époque de la prophétie d'Habacuc)։ Յետոյ բարձրագոյն ուսմանց դպրոցին մէջ երկրորդա-

կան ուսուցիչ (répétiteur) անուանեցաւ, ու 1873 ին քարտուղար–մատենապետ արեւելեան կենդանի լեզուաց դպրոցին, և որոյ գրատունը ճոխացուց և կարգի դրաւ՝ քան հազարի հասցընելով հոն ամփոփուած մատենից թիւը։ — Հայկական աստուածաշունչ գրոց թարգմանութեան մէջ պահուած Յովսէփայ եւ Ասանեթի պատմութեան, ի կարգէ անհարազատ գրոց, գաղղիական թարգմանութիւնն ըրաւ և հրատարակեց ի 1886 (Une version arménienne de l'histoire d'Asséneth; Nouv. Mél. Orientaux. 477–513)։ Զոհրապեան՝ իր 1805ին հրատարակած հայ աստուածաշունչ գրոց տպագրութեան մէջ իբրեւ յաւելուած դրեր էր նաեւ զ'Եզր չորրորդ, և յառաջաբանին մէջ կը ծանուցանէր որ ուրիշ անվաւեր և ոչ հարազատ գրոց ձեռագիրք ալ կը գտնուէին իր քովը, ինչպէս Մահ երկոտասան մարգարէից, Կտակք երկոտասան նահապետաց, և Պատմութիւն Յովսեփայ Գեղեցկի և Ասանեթի։ Այս գրոց՝ դեռ մէկն ալ հրատարակուած չէր. և սակայն ի ժամանակագրութեան Մխիթարայ Այրիվանեցւոյ, զոր Էմին ի 1870 հրատարակեց ի Մոսկուա և ի 1867 Պատկանեանն ի Փեթրպուրկ, յայտնապէս կը տեսնուի թէ կար անոնց խմբագրութիւնն արդէն յերկոտասան դարու։ Զոհրապ միտքը դրած էր երկոտասան նահապետաց կտակներն ու Յովսեփայ և Ասանեթի պատմութիւնն տպագրել, և օրինակն ալ արդէն պատրաստած տպագրողին յանձնելու։ Գարրիէր այն օրինակը ձեռք ձգելով, գաղղիարէն թարգմանութեամբ հրատարակեց։ Այս մանրամասն տեղեկութիւնները մէջ բերելնուս նպատակն է, որ ինչպէս բանիբուն հրատարակիչն իրաւամբ կ'ենթադրէ, սուրբ գրոց այլ և այլ անյայտ կամ անվաւեր մասունք, որք յառաջագոյն թարգմանուած են ի հայ և հիմայ շատերն կորսուած, կրնան դեռ եւս թաքուն պահուած ըլլալ ի խորշս աստուածաշունչ գրոց և մատենադարանաց, ուստի և հնասէրք պէտք է ետեւէ ըլլան անոնց գիւտին և հրատա-

րակութեանը, յորոց մեծապէս պիտի օգտուի սուրբ գրոց գիտութիւն։

*
* *

Գարրիէր հրատարակեց դարձեալ զբնագիր և զթարգմանութիւն հայկական արձանագրութեանց նշխարատուփի մը որ ի Վասիլեւսքի հաւաքման; Inscription d'un Reliquaire arménien, de la collection Basilewski, avec deux planches. – Paris 1883. (Mél. Or. 1883, և Ազգային տպարանն ի Փարիզ ի 52 էջս)։ Մեծապէս հետաքննական այս արձանագրութիւն, ստանաւոր եղերերգութիւն մ'է ի վերայ առմանն Հռոմկլայի ի Մէլիք-Աշրաֆ սուլդանէն Եգիպտոսի (1293). Սկեւռայի վանաց մէջ յօրինուած կ'երեւնայ, առ թագաւորութեամբ Հեթմոյ (1289–1307)։

« Առիթ ունեցայ, կ'ըսէ ի յառաջաբանին, երեք տարի յառաջ՝ Վասիլեւսքիի հաւաքման մէջ տեսնել այս սրբարանը, որովհետեւ արեւելեան լեզուաց դպրոցի մատենադարանը բերեր էին զայն, որպէս զի քննէ և թարգմանէ հանգուցեալն Տիւլորիէ։ Դժբաղդաբար՝ աւելի ստիպողական պարապմունք, և խանգարեալ առողջութիւնը դարմանելու կարեւոր խնամք՝ արգելք եղան գիտնական ուսուցչին՝ ունեցած մտածութիւնը ի գլուխ հանելու՝ թարգմանելով այն յիշատակարանին վրայի արձանագրութիւններն։ Կը կարծեմ թէ բան մ'ալ ըրած չէր դեռ եւս, երբ սրբարանը Վասիլեւսքիի յանձնուեցաւ։

« Քանի մը ամիս վրան անցեր էր, երբ քննելով հին թղթերու և արեւելեան գրուածոց անուրդէ գնուած կապոց մը, այլեւայլ քառածալ թերթերու հանդիպեցայ՝ որ աւելի կարեւորագոյն գրուածի մը մասունք կ'երեւնային, հայկական ընդարձակ բնագիր մը ամփոփելով, և գլխագիր տառիւք տպագրուած։ Առջի բառերը կար-

գալուս, իմացայ թէ սրբարանին արձանագրութիւնքն են, և հրատարակողը տեսեր է զայն և ուսումնասիրեր։ Բայց որո՞ւ ձեռքով եղած էր այդ, ո՛ր գրուածքի մէջ։ Այս հարցմունք՝ միայն վերջի տարիներ իրենց լուծումը գտան։

«Անցեալ աշնան ուզելով բուն բնագրին վրայէն թարգմանել այս արձանագրութիւններն, որովհետեւ ձեռքս եղածը խիստ սխալական էր, Վասիլեւսքիէ խընդրեցի կրկին տեսնել բուն սկզբնագիր յիշատակարանն. որ և սիրալիր յօժարութեամբ կատարեց առաջարկութիւնս, և որոյ համար արժան է ինձ յայտնել երախտագիտութիւնս։ Բայց յանձնելով ինձ սրբարանն, և թոյլ տալով որ քանի մը եօթնեակ քովս պահեմ, կարող չեղաւ ուրիշ տեղեկութիւն մը տալ ինձ ո՛ւր տեղէն եկած ըլլալուն և անոր նախնական վիճակին վրայ, բայց միայն թէ յիտալիա ձեռք բերած էր զայն։ Չէր գիտեր թէ հայ արձանագրութիւնքն տպագրուած ըլլան, մանաւանդ թէ բոլորովին անտիպ կը համարէր զայն։

«Այս միջոցին՝ առիթ ունեցայ ես գրաւոր վերաբերութիւն և հաղորդակցութիւն ունենալ սրբոյն Ղազարու Մխիթարեանց ուխտէն Հ. Ղեւոնդ Ալիշանի հետ, համբածանօթ անձի հայկական ուսումնասիրութեամբ պարապողաց։ Սրբարանին վրայ տեղեկութիւն հարցընելով, գիտուն միանձնը ամենայն յօժարամիտ փութով հաղորդեց ինձ այն ամէն տեղեկութիւններն զոր ունէր այդ ազգային յիշատակարանին վրայ, որոյ հետքը կորուսեր՝ բայց մեծապէս հետաքննական էր իրեն համար։ Իրմէն իմացայ թէ Ս. Այդ սրբարան 1830ին Փիէմոնթի Աղեքսանդրիոյ փրանկիսկեան (cordelier) կրօնաւորաց վանքին մէջ էր։

Բ. Թէ նոյն տարին ուսումնասիրութիւն մը ըրեր էր անոր վրայ պարոն Աստուածատուր Փափազեանց, Կոստանդնուպոլսի սարդենիական դեսպանին հայազգի թարգմանը, թէ զայն արձանագրութիւններն թէպէտ տպա-

գրել տուած էր՝ բայց ապա այնչափ խստիւ մէջտեղէն վերուցած տպագրեալ թերթերը, որ հազիւ ինքն հայրն Ալիշան ձեռագիր օրինակ մը ունէր անոր։

Գ. Թէ Փափազեանց սրբարանէն քանի մը մանրամասունք փորագրել տուեր էր, և անոնց քանի մը փորձերն Հ. Ալիշանի յանձներ 1850ին, անոր Թուրինէ անցած ատեն։

«Ահաւասիկ ինչ որ կըցեր էր ինձ հաղորդել մեծանուն Թղթակիցս. և չէր գիտեր թէ արդեօք թողուցած է Փափազեանց ձեռագիր բացատրութիւն մը սրբարանին և արձանագրութեանցը։

* * *

Նոյն միջոցին՝ երբ Թարգմանութիւնս աւարտեր, լուսագրել տուեր էի յիշատակարանը, և տպագրութեամբ ի լոյս ընծայելու կը պատրաստուէի գրուածքս, ընդունեցայ ի Վասիլեւաքիէ համառօտութիւն մը Յիշատակարանաց Թուրինի գիտութեանց արքունի ակադիմիայի այս խորագրով. Reliquiario armeno già esistente nel convento di Bosco presso Alessandria in Piemonte. Brevi cenni di Vincenzo Promis. Torino, Ermanno Leoscher; 1883։ Այս յիշատակարանիս ուստի՛ յառաջ եկած ըլլալուն ա՛լ տարակոյս չի մնաց։ Թուրինի արքունական մատենադարանին հմուտ գրապետը՝ Փրոմիս, նոյն գրատան մէջ գտեր էր Փափազեանցի ձեռագիրն և պատրաստած փորագրութեանց պղինձներն, և արդարացի փութով մը ձեռք կը զարնէր հրատարակութեանն, քանի մը համառօտ տեղեկութիւններով և հինգ պատկերներով։ Հայկական բնագրին խօսքն ալ չկար, և կ'երեւնայ թէ հրատարակողն տեղեկութիւն ալ չունէր Փափազեանցի ձեռքով եղածին։

Ինչ ալ ըլլար, իմ երկասիրութիւնս արդէն աւարտած էր. և Փրոմիսի յիշատակարանը կարդացողներն

պիտի տեսնեն թէ ինծի ամենեւին օգտակար չէր կրնար ըլլալ՝ հայկականը մեկնաբանելու։ Բայց նոյնը չեմ կրնար ըսել իր պատմութեանը տեսակիտով, որուն վրայ ունեցած տեղեկութիւններս դեռ խիստ քիչ էին․ այլ իր գրուածքէն դրականաբար իմացայ թէ 1828ին որբաբանն Աղեքսանդրիոյ մօտ Պուքոյ կոչուած գիւղին Դոմինիկեանց վանքին մէջ պահուած էր, թէ այս տարուոյն ուսումնասիրեց զայն պարոն Փափազեանց․ և թէ այս վանքին հիմնադիրն Պիոս Ե քահանայապետ (1566—1572) հարուստ մատենադարանով մը և բազմաթիւ ընտիր առարկայից հաւաքմամբ օժտեց զայն, և դրոց մէջ էր թերեւս, ամենայն հաւանականութեամբ, նաեւ այս նշխարատուփը։

Գարրիէր կը համարի թէ աւարառուաց յափշտակութեամբ մը փոխադրուած ըլլայ յարեւմուտս․ ուր այլք հաւանականագոյն կարծեօք թէ ի Հայոց գաղթականաց փոխադրուած, և կամ ի նոյն իսկ Դոմինիկեան միանձանց՝ որ դարաւոր առաքելութիւն և վերաբերութիւն ունեցած են ընդ մերոն, ինչպէս ուրիշ տեղ յիշեցինք *։

*
* *

Հայ լեզուի ուսման հետամուտ գաղղիացի աշակերտաց համար մեծ ծառայութիւն մատոյց Գարրիէր, Լաուէր գերմանացւոյն հայ–դասական լեզուի քերականութիւնն թարգմանելով ի լեզու գաղղիական, յաւելուածով համառօտ բառգրոց և ծաղկաքաղ հաւաքման մը։ Հրատարակուած ի Փարիզ առ Մէզոննէօվի 1884 (Grammaire arménienne par M. Lauer, traduite, revue et augmentée d'une Chrestomathie et d'un Glossaire)․ Յառաջաբանին մէջ կ'ըսէ․ « Տիւլորէի ցաւալի մահուամբ

* Սրբարանիս լուսանկարք, ստորագրութիւն և պատմութիւն, առանդուած են յԱլիշան վարդապետէ, ի Սիսուան, յ'էջ 107-112։

յանձնառու եղած ըլլալով արեւելեան կենդանի լեզուաց դպրոցին մէջ շարունակել զդասախօսութիւն հայկականին, մէկէն զգալի եղաւ ինձ որ աշակերտաց ձեռք տալու համար դաղղիարէնով բացատրուած գիրք մը չունէինք։ Շահան Ջրպետի մեծահատոր Քերականութիւնն (Փարիզ 1823), և Պատկանեանի աշխատասիրութիւնն, թարգմանեալ ի Բրիւսոմէ, թէպէտ ուրիշ նկատմամբք նշանաւոր, օգտակար չէին կրնար սեպուիլ իբրեւ դասատետր գործածուելու։ Վասն զի մեզի համար պակասածն էր՝ սկսնակաց համար առձեռն գիրք մը, պարզ, դիւրիմաց, և համառօտ. ամփոփելով զկարեւորն եւեթ, յարմար սկզբնական տեղեկութիւնները տալու հայկական լեզուի, անոր որ կ'ուզէ սորվիլ զայն գործնական նպատակաւ մը, իրենց հեղինակներն ընթեռնլու, առանց հետամուտ ըլլալու համեմատական բանասիրութեանց, որ մասնաւոր կերպով կ'ուսումնասիրեն զօրէնս կազմութեան լեզուաց։ Դասական հայրենի քերականութիւն՝ աշխատասիրեալ ի Լաուէրէ, թուեցաւ ինձ թէ ամփոփէ այս ամէն պայմանները, յորոց ոմանք դժուարաւ կրնան միաբանիլ։ Քանի մի տարի յառաջագոյն թարգմաներ էի զայն, առանձինն իմ կրթութեանս համար։ Ինծի կ'երեւնայ թէ էական ծառայութիւն մի կը մատուցանեմ հայկական ուսումնասիրութեան ի մերում երկրի՝ իմ այդ ձեռագիրս տպագրել տալով։ Նախնական սկզբնագրին վրայ եղած քանի մի սրբագրութիւնք՝ հեղինակին հետ համաձայնութեամբ եղած են, որ յանձնառու եղաւ թարգմանչին հետ աչքէ անցընել և սրբագրել տպագրելի թերթերը »։

⁂

Մկրտչի Էմին յոբելինի առթիւ ալ՝ հին բառգիրք մը հրատարակեց Գարրիէր՝ ի լատին և ի հայ, որոյ խորագիրն « Բանք կամ խօսք Հայոց » (Verba seu di-

ctiones Armenorum) *ի Փարիզ*, 1880։ *Այս համառօտ բառգիրք գտնուեցաւ, ինչպէս արդէն ծանօթ է մեր ընթերցողաց* *, *սրբոյն Հերոնիմեայ մէկ քանի գրուածներն ամփոփող գրչագրի մը մէջ. գրուած Քրիստոսի* 900 *թուականին, և Օթէօն քաղքին կղերանոցի մատենադարանին մէջ կը պահուէր, և զոր գտաւ գաղղիացին Օմոն։ Պատուական ու հետաքննութեան արժանաւոր գիւտ մը, որովհետեւ տասներորդ դարէն յառաջ հայկական առոգանութեան վրայ դատաստան ու գաղափար մը կու տայ։ Պաւղոս Տըլակարտ հայերէնագէտն՝ անոր կարեւորութիւնը կը ցուցընէ ի գերման ուսումնաթերթին* Göttingische gelehrte Anzeigen, 1888, *ի թերթն ութերորդ՝ յ'էջ* 297, *ու այլեւայլ հետեւանք կը հանէ, որ կը հաւաստեն արդէն իրմէ յառաջագոյն յայտնած կարծիք* 1853*ին հրատարակած գրութեան մը մէջ* Zur Urgeschichte der Armenier *խորագրով. այսինքն՝ թէ սանսքրիտ հագագայինքն դհ, ջհ, բհ հայերէնին մէջ կը հնչուին տկար դ, ջ, բ տառերով. և որովհետեւ նոյն առենն ալ կային դ, ջ, բ, սանսքրիտի նոյն բաղաձայն տառից տեղ, ջանացին տառից իրարու հետ չփոթութեան վըտանգէն խուսափել՝ դնելով ‡, +, ⸢ ուժոմիներն. բայց այս փոփոխութիւնք մասնականք էին։ Գրութիւնն արդէն իր հաստատութիւնն առած ըլլալով, խօսուած կամ աշխարհիկ լեզուին մէջ միայն մուտ գտին այս փոփոխութիւնք։ Օթէոնի բառարանին մէջ կը գտնենք դ=‡, ջ=+, գրերն՝ որով յայտնի կ'ըլլայ թէ այդ փոփոխմունք յառաջ են քան տասներորդ դար։ Եւ յիրաւի, շատ աւելի հին են անոնք։ Համոզուելու համար բաւական է դիտել թէ ինչ տառադարձութեամբ հայ բառերն կամ անունները կը հնչէին Հրեայք և Յոյնք։ Նոյն իսկ հիմա զանազան գաւառաբարբառներու մէջ՝ անձայն կամ համր տառից հնչմունք շատ փոփոխութիւն կը կրեն. և բա-*

* Տես յ'էջ. 8 այս գրուածքիս,

ւական չէ, օրինակ իմն, ըսելը թէ բէն տառը պէն կը հնչուի ի Տփխիս և բէն ի Պոլիս, այլ պէտք է նկատել թէ ինչպէս կը հնչուին միջին գաւառաբարբառներու մէջ։ Այս դիտողութեան հետեւանքն այն կ'ըլլայ՝ որ գրաբար հայերէնին ենթադրեալ տառադարձութիւնն ոչ երբեք ձայնական կերպով կարող պիտի ըլլայ ներկայացընել մասնաւոր տեղւոյ մը հնչումը․ որով ամենայն ընդօրինակութիւն (transcription) կ'ըլլայ գրականական և ոչ ձայնական։

⁂

1891ին հրատարակեց Գարրիէր համառօտ ուսումնասիրութիւն մը Մովսէս Խորենացի, և Նահապետական ծննդաբանութիւնք (Moïse de Khoren et les généalogies patriarcales) խորագրով․ և կ'ընծայէր զայն Յ․ Տէրէնպուր՝ Գաղղիոյ գիտնոց կաճառին (institut) անդամ, և բարձրագոյն ուսմանց դպրոցի տեսչին։ Այս գրուածք ալ իր հայերէն թարգմանութիւնն ու հրատարակութիւն ունեցաւ, ինչպէս նաեւ հետեւեալքն, Նորագիւտ աղբիւր Մովսէսի Խորենացւոյ (Nouvelles sources de Moïse de Khoren), և անոր Յաւելուած (Supplement), որ հրատարակուեցան նախ յԱմսօրեայ Հանդէսի, և ապա առանձինն ի Վիէննա, ի տպարանի Մխիթարեանց։

Հայոց մատենագրական պատմութեան և պատմահօր նկատմամբ՝ ծանր խնդիր մ'էր զոր կը յուզէր, արդէն ուրիշներէն բազմիցս յուզուածներուն վրայ աւելցընելով նաեւ ժամանակի խնդիրը, և փոխանակ հինգերորդ դարու անձ մը զինք նկատելու, ինչպէս ցարդ, ութերորդին մէջ ապրած համարելով։

Ուսումնասիրելու և լրջաբար քննադատելու նիւթ մը՝ բանասիրաց ամենայն մտադրութեանն արժանի, որով արդէն սկսած են և կը շարունակեն զբաղիլ։

Համառօտ գրուածք մ'ալ ունի Գարրիէր՝ Կորիւնայ

— [illegible] ան-վաւեր թղթոյն վրայ և հրատարակուած է ի Փարիզ։

Հոս կը լմնցընենք արեւելեան կենդանի լեզուաց դպրոցին մէջ հայ լեզուի ուսուցչաց շարը, որ իրարու յաջորդեցին, նախ

| | |
|---|---|
| Ջրպետ Շահան առժամանակեայ | 1798–1801 |
| » » » | 1810–1812 |
| » » ուսուցիչ | 1812–1830 |
| Լըվայեան տը Ֆլորիվալ՝ տեղապահ | 1826–1830 |
| » » ուսուցիչ | 1830–1862 |
| Տիւլորիէ | 1862–1881 |
| Գարրիէր | 1881 |

Կը մնայ մեզ խօսիլ հիմայ Սէն-Մարդէնի, Պրոսէի, Վիկտոր Լանկլուայի, Եւգինէօս Պորէի, Եւարիստ Բրիւտոմի, Գաստերիասի և այլոց վրայ։

## ՍԷՆ-ՄԱՐԴԷՆ

Համառօտիւ ներկայացուցինք մեր ընթերցողաց թէ ինչ կերպով սկզբնաւորութիւն առին հայկական ուսմունք ի Փարիզ ի դպրոցի արեւելեան կենդանի լեզուաց, և ո՛յք հետզհետէ ուսուցիչքն։ Տարակոյս չկայ որ այս ուսումն ունեցաւ իր արդիւնք, որ մեծագոյն պիտի ըլլային անշուշտ եթէ առաւել մտադրութիւն ըլլուէր, մերթ յաջող և ընդունակ աշակերտներ ղրկելով ի Հայաստան՝ բուն երկրին մէջ սորվելու և ուսումնասիրելու զլեզուն։ Այս նկատմամբ հետեւեալ խորհրդածութիւնն կ'ընէր Հանդէս քաղաքական և մատենագրական ուսումնաթերթի վարչութիւնը՝ գրեթէ քսան և աւելի տարի յառաջ (1873 յունուար 11) Տիւլորիէի դասախօսութեան նուակատեաց խօսած ճառը տպագրելուն առթիւ. « Տարօրի-

նակ անկանոնութեամբ մը, կ՚ըսէր, հայ լեզուի ուսուցչական աթոռը, որ գլխաւոր՝ մանաւանդ թէ միակ նպատակ ունի դարերէ ի վեր մեռեալ լեզու մը սորվեցընելը, արեւելեան կենդանի լեզուաց դպրոցին մէջ հաստատուած է։ Դիւրին է ըմբռնել թէ այսպիսի զգալի անկանոնութիւն մը ո՛րչափ մեծ արգելք է ի զարգացումն և ի բարգաւաճանս այս լեզուին ուսման։ Ըստ յիրաւի, պատշաճագոյն տեղի աթոռոյն պէտք էր որ Գաղղիոյ դպրոցն ըլլար »։

Խօսինք միւս գաղղիացի հայագիտաց վրայ որ նոյն դպրոցին մէջ ուսուցչի պաշտօն չվարեցին, զորս վերը արդէն յիշեցինք։



Յովհ. Ա. Սէն–Մարդէն ծնաւ ի Փարիզ ի 1791։ Իր հայրը որ վաճառական մ'էր, որդին ալ նոյն արուեստին սահմանած էր. բայց հարուստ սեղանաւոր մը տղուն հանճարին հաւնելով, հօրմէն հաճութիւն առաւ որ թոյլ տայ որդւոյն յաճախել ի դպրոցն Կենդրոնական յուսումն՝ որ Չորս ազգաց (Quatre nations) կոչուած վարժարանին մէջ հաստատուած էր (1802–1809)։ Մեծ յաջողութիւն ցըցուց հոն՝ հանճար, հմտութիւն, երեւակայութիւն և բանից ճոխութիւն չէր պակսեր իրեն. որով և համարձակեցաւ Տոն Քոլլօ խորագրով ողբերգութիւն մ'ալ յօրինել, և Խորով վիպասանական քերթուածի մը առաջին երգերն Տըլիլ քերթողին տուաւ ընթերցումն։ Տըլիլ ճանչնալով ալ թէ ո՛րչափ գովելի և արդիւնաւոր կրնայ ըլլալ՝ այդպիսի յանդուգն ճիգն և ջանք մը, լաւագոյն և օգտակար եւս համարեցաւ խորհուրդ տալ իրեն բանաստեղծութեան չպարապելու։ Մտադիւր անսաց նա այս թելադրութեան, և արեւելեան կենդանի լեզուաց ուսման եռեւէ եղաւ ամենայն ջան-

քով, և քիչ ատենէն պարագլուխն արեւելագիտաց, — ինչպէս կ'ըսէր իր բարեկամն և ուսումնակից Աբէլ Ռէմիւզա: —



Արեւելեան լեզուաց մէջ արաբականին ուսումը աւելի դիւրամատչելի էր այն ատեն, շնորհիւ Երբենիոսի, Կոլիուսի և ուրիշ զանազան տպագրեալ և թարգմանեալ բնագրաց, զորս Փարիզու մատենադարանք ուսումնասիրողաց կընային ընծայել: Բայց հայկականին համար՝ թէպէտեւ նոյն ատեններն մասնաւոր աթոռ մը հաստատուած էր արեւելեան լեզուաց դպրոցին մէջ և Տերսան քահանայի և Աբէլ Ռէմիւզայի թանգարանք բաց էին իրեն համար, սակայն ուսումնասիրաց և հետամտից քիչ օգտակարութիւն մատուցանելով: Սէն-Մարգէն յաղթանակեց ամէն արգելից և խոչընդակաց. և քսանըմէկ տարուան հասակին՝ բաւական ծանօթութիւն և հմտութիւն ունէր արաբացի հարուստ լեզուին, որ նշանաւոր կընայ համարուիլ բազմաթիւ փոփոխութեամբքը, համաձայնութեանցն և բառակազմութեան ճոխութեամբ: Շարունակելով և յառաջ վարելով ապա իւր հայկական գիտութիւնն, որ հիմն պիտի ըլլար իր համարմանն և մասնագիտութեան, կը պարապէր նաեւ պարսիկ, ասորի և պարսկական լեզուաց. փորձեց նաեւ հարեւանցի կերպով մը վրաց լեզուին ետեւէ ըլլալ: Ոմանք կ'ըսեն թէ զենդի ուսմամբ ալ զբաղած ըլլայ, զոր այլք հաւանական չեն համարիր: Նոյնպէս հաւանելի չերեւնար այլոց ենթադրութիւնը թէ քսանըմէկ տարուան հասակին արդէն շարագրած ըլլայ իւր համբաւաւոր և անուանը մեծ պատիւ բերող երկասիրութիւնը «Պատմական և աշխարհագրական յիշատակագիրք ի վերայ Հայաստանեայց» (Mémoires historiques et géographiques sur l'Arménie): Այս գրուածք հրատարակուեցաւ ի 1819.

*և անոր մէջ երեւցած հասուն դատողութիւն և ոճը նկա-տողը յայտնի կը տեսնէ, որ գէթ մեծագոյն մասամբ՝ մեզ աւանդուած ժամանակէն առջը գրուած պիտի ըլլայ։ Ինչուան նոյն ատեն կարեւոր հրատարակութիւն մը ըրած չէր, բաց ի օրագրաց մէջ դրուած քանի մը աննշան հատուածներէ, եթէ ուզենանք ի բաց առնուլ ուրիշ տեսակէտով կարեւորութիւն ունեցող՝* Պատճառք ժխտա-կան քուէի *(Motifs du vote négatif) խորագիրը կրող գրուածք մը, զոր ելլեց հրատարակութեան տալ, երբ 1815ին Նափոլէոն Գաղղիոյ հաւանութիւնն ուզեց առ-նուլ իր յաւելուածական մէկ կարգադրութեանն* (acte additionnel)*։ Լաւագոյն էր որ այսպիսի խնդրոյ մը մէջ,— գէթ այսպէս կը դատէն իր կենսագիրք, — Սէն–Մար-դէն չխառնուէր՝ զբաղելով միայն Մամիկոնեանց և Օր-բէլեանց պատմութեամբ։ Համարձակ լեզուով ու խիստ ոճով գրուած մ'էր այն։ Արդեօք Նափոլէոնի ձեռքն ան-ցա՞ւ, կամ յետ ընթեռնլոյն ուզե՞ց տեսնել զհեղինակն․ այսչափ միայն յայտնի է որ իր ապագայ ասպարիզին յաջողութեան մեծ խոչընդոտն եղաւ, ինչպէս պիտի տես-նենք։*

***

1818*ին արքունի տպարանէն հրատարակուեցաւ՝ իր քիչ յառաջ յիշատակուած* Յիշատակարանաց *գրքին առա-ջին հատորը, երկրորդն ալ հետեւեալ տարւոյն։ Այս եր-կասիրութեան մէջ Սէն–Մարդէն կ'երեւնայ լեզուագէտ, քննադատ, և որով առաջին լուսաւոր ակօս մը բացող կրնայ համարուիլ ի խաւարի աշխարհի մը՝ որոյ վրայ ինչուան նոյն ատեն ի Գաղղիա տպուած ծանօթու-թիւնք խիստ անկատարք էին և համառօտք, և չէր կար-ծուէր թէ աւելի խորունկ կերպով ուսումնասիրելու ար-ժանաւոր ազգ կամ երկիր մը ըլլայ, ուստի և իմաստնոց մէջ մեծ յուզում պատճառեց Սէն–Մարդէն իր այս*

գրուածքով։ Գէտնոց կոչուած օրագիրն մեծ համակրութեամբ ողջունեց այս հրատարակութիւն, որ կ՚ընդարձակէր գիտութեանց ասպարէզը և տէրութիւն։ Նոյն լեզուն գործածեցին նաև ուրիշ լրագիրք և հանդէսք. և այն ատեն իրականութիւն դարձաւ Ռէմիւզայի գուշակութիւնն թէ Սէն–Մարդէն՝ պարագլուխ պիտի ըլլայ արեւելագիտաց։

Առաջին հատորը կը բովանդակէ ընդհանուր պատմութիւն և աշխարհագրութիւն երկրին. և այս պատմութեան և աշխարհագրութեան գրեթէ ինչուան այն ատեն բոլորովին անծանօթք էին իմաստունք Եւրոպայ. մանաւանդ թէ բոլորովին սխալ գաղափարք և տեղեկութիւններ ունէին. Յովհաննու Սեղբոսեան եռահատոր հմուտ երկասիրութիւնն իտալական լեզուով չէր կրցած գտնել պէտք եղած և արժանաւոր յարգը։

Գրուած է հոն նկարագրութիւն Մեծ Հայոց (45—173), նկարագիր Փոքուն Հայոց (180–204), քննութիւն վիճաբանական Հայաստանի այլեւայլ անուանց ծագման վրայ (205–278). համառօտութիւն մը պատմութեան Հայոց (279–404), և ժամանակագրական տախտակներ (404–446)։ — Երկրորդ հատորին մէջ հետեւեալ գլուխներն ամփոփուած են. Զկենաց և զգրուածոց Ստեփանոսի Ուռպելեան՝ արքեպիսկոպոսի Սիւնեաց (1–15). Քննադատական տեսութիւն ի վերայ Ուռպելեան տոհմին և ուրիշ այլ և այլ հին գաղթականութեանց ի Հայաստան և ի Վիրս հաստատելոց (15–57). Պատմութիւն Ուռպելեանց (57–176). Ծանօթութիւնք (176–301). Տեղեկագիր ի վերայ ժամանակի շարագրութեան աշխարհագրութեան ընծայելոյ Մովսիսի Խորենացւոյ (301—309). Աշխարհագրութիւն ընծայեալ Մովսիսի. (309—178). Ծանօթութիւնք (388–395). Ճանապարհացոյց ի Դուին մայրաքաղաքէ Հայաստանի յայլ և այլ քաղաքս երկրին և այլոց ոմանց աշխարհաց (395–398). Տեղեկութիւն ի վերայ չորից գետոց դրախտին, և այլոց քա-

ռասուն և երկու գլխաւոր և անուանի գետոց (397—408)․ Աշխարհագրութիւն Վարդանայ վարդապետի 407–454)․ Հրովարտակ Միհր Ներսեհի քաղաքապետին Հայոց ի կողմանէ Թագաւորին Պարսից՝ առ նախարարս աշխարհին Հայոց մեծաց (472–476)․ ծանօթութիւնք (476–479)․ Թուղթ իշխանաց արեւելից Հայոց առ պապն (479–486)․ ծանօթութիւնք (486–489)․ այբուբենական ցուցակ աշխարհագրական անուանց որ յերկուսին հատորս գրոցն․ (489–519)․ ցուցակ նիւթոց։ Բովանդակ գրոց մէջ՝ ուր որ հայ բնագիրը կայ՝ դրուած է ի մի էջ, և ի միւսն՝ թարգմանութիւնն ի լեզու գաղղիական։



Գրած է՝ որ Սէն–Մարդէնի գլխաւոր կենսագիրներէն մէկն է, « Երբ, կ'ըսէ, իր երկասիրութեանց առաջին փորձը կը նկատեմ, որ միանգամայն գլուխ գործոցն է, իր բովանդակ փառքը և բովանդակ գրականական զօրութիւնը, չեմ զարմանար այն հիացման վրայ՝ զոր հմուտք իրեն ընծայեցին։ Մեր ուսմանց մէջ, բանաստեղծը՝ փորող մ'է որ խառն հանք մը կը հանէ, կամ առ առաւելն օտար նիւթերէ կը մաքրէ․ մինչ գիտունը՝ զայն ճարտարութեամբ կը գործածէ, ու բանի կը բերէ ացանչելապէս։ Այս է Սէն–Մարդէնի նպատակը։ Անդատին իր ուսմանց ընթացից սկզբնաւորութենէն, առանց դեգեւելու, յառաջ քալեց դէպ իւր նպատակն, որ արդէն իրեն ծանօթ էր, լեզուաց գիտութեամբ օժանդակուելու ի պատմութեան Ասիոյ և յաշխարհագրութեան, իր երխտասարդութեան առենէն կազմած նախագաղափարով, ուստի երբէք չօտարացաւ։ Ուստի ամէն բան պրպըտեց, քննեց ինչ որ կարեւոր էր իրեն այս նպատակաւ գրելու, ի հայ յարար և ի Թուրք բարբառ։

« Ընդարձակ էին իր տեղեկութիւնք նկատմամբ այն աշխարհաց՝ որոց վրայ կեդրոնացած էին տեսութիւնքը։

Իրեն համար՝ հայ լեզուն պէտք էր որ մեծ յարաբերութիւններ ունենայ ընդ արդի՝ և մանաւանդ ընդ հին պարսիկ լեզուի։ Ուստի հետազօտութեանցը նպատակ դրեր էր այդ հին լեզուին ամէն բառբառներն. քննութիւն ըրած էր զենտ լեզուի և իր ճիւղերուն այն պատճառաւ զոր չէր կրցած գտնել հայերէնին մէջ՝ զոր համեմատաբար նորագոյն լեզու մը կը համարէր։ Այն վախճանաւ սկսաւ ուսումնասիրել կովկասեան գաւառաբարբառներն, և հետազօտել ինչ որ ի ժամանակին ծանօթ էր վրաց լեզուին վրայ։ Մաճճի բանասիրին հետ քանի մը հարիւր բառերէ ձեւացած բառարանի մը յօրինման պարապեցաւ, և հարկ չէ ըսել՝ որ շատ անկատար երկ մ'էր։ Ու Հայաստանը իրեն կեդրոն մը առնլով, առաջ կ'երթար ի Պարթեւս, Մարս, լերինս Կորդուաց, յԱսորեստան և ի Բաղդէստան. ու կ'առաջնորդէր մինչ ի Լազիստան, Կողքիս, Իբերիա և յԱղուանս։ Ապա կը սկսէր բացատրել մէկը միւսով, լեզուներն ու պատմութիւնը, ժամանակագրութիւնը և գիտութիւնք, և իր իշխանութեան տակ գտնուող ամէն ժողովրդոց իրարու հետ ունեցած յարաբերութիւնքը։ Իր իշխանութիւնը կոչեցի, վասն զի տէր էր գրականական Ասիոյ այս մեծ մասին։

« Եթէ լոկ թարգմանութիւն ըլլար, դիւրին գործ մ'էր. դժուարագոյն էր համեմատելը, և անոր հետեւանքն ընծայել. և յայտ է գլխաւոր արդիւնք առաջին հատորոյ իւր Ցէչտտկորանոց։

« Ընթերցողը նախ կը գտնէ հոն հայկական լեզուի գիրքին վրայ գրութիւն մը, ու խորունկ՝ և պատմական բանասիրութեան համար բոլորովին նոր խորհրդածութիւններ. յետոյ ուրիշ և նոյնպէս նոր երկասիրութիւն մը աշխարհագրութեան վրայ՝ պատմութեան վրայ հիմնուած, և արգասիք ընդարձակ ընթերցասիրութեան։ Յետոյ կը յաջորդեն Հայաստանի քաղաքային և կրօնական պատմութեան տախտակք. յորս յաճախ չհամաձայնիր ուրիշ

ծանօթ աշխատասիրութեանց, և հեղինակը չի ծանուցաներ մեզ այն մատենագիրներն որոնց հետևեր է։

Իսկ յերկրորդ հատորին՝ բաց ի հետաքննական քննախօսութենէն Մամիկոնեանց և Օրբելեանց ի Հայաստան հաստատուելուն, բնագրին ի մատրասաբնակ հայոց խընամքով յղկուած տպագրին թարգմանութիւնն մեծ աշխատանք մը չէր։ Բայց եթէ ակնարկ մը ձգենք այն բազմաթիւ ծանօթութեանց վրայ որք դրուած են համառօտ բնագիրն ամբողջացընելու նպատակաւ, և ամէն լեզուներէ քաղուածոց հարստութեան, արժանապէս գովելու բաւական խօսք կը պակսի մեզ * »։

***

1814ին՝ Հնասիրաց ընկերութիւնն, որ կը յաջորդէր կելտական ակադեմիային, քարտուղար անուանեց զՍէն-Մարդէն, և իրեն յանձնեց որ նոր ընկերութեան բացման կամ նաւակատեաց ճառախօսութիւնն ընէ։ 1817ին Արձանագրութեանց և Գեղեցիկ դպրութեանց ակադեմիոյ մէջ ալ իր մէկ երկասիրութիւնը հրատարակել տուաւ, « Հետազօտութիւնք ի վերայ պատմութեան և աշխարհագրութեան Մեսենայ և Կոմագենայ » (Recherches sur l'histoire et la géographie de la Mésène et de la Characène). և իր մահուընէն առջը, ի 1838 հրատարակուեցաւ խնամօք Ֆելիքս Լաժառի և Հասարակաց կրթութեան պաշտօնարանին ծախիւք։

Շահագրգիռ և հետաքննական երկ մ'էր այն, գէթ այն ժամանակաց համար, և ապացոյց հեղինակին մեծ հըմտութեան։ Մեսասան թագաւորներէն, որոնց հարեւանցի յիշատակութիւն մը կ'ընեն հինք, Սէն–Մարդէն անոնցմէ ութին գոյութիւնը կը հաստատէ հաւանական ապացուցութեամբք. ու Քրիստոսի թուականէն 129 տա-

* Գրուածքիս վրայ տես ինչ որ ըսինք յ'էջ 30։

րի առաջ երկու փոքրիկ իշխանութեանց հաստատութիւնը. և վերջնոյն շարունակութիւնը կը դնէ մինչ ի 12ն յետ Քրիստոսի։

Ասիական օրագրին մէջ հրատարակուեցան նաեւ հետեւեալքն. Հայկական ողբերգութեան մը վրայ (Sur une tragédie arménienne). – Ի վերայ հայկական առակաց Վարդանայ (Sur les fables arméniennes de Vartan). – Զարեւելեան ձեռագրաց ընծայելոց ի լորդ Գինկսպորօկէ (Sur des manuscrits orientaux offerts par lord Kingsborugh). — Ի վերայ յեղափոխութեանց Հայաստանի առ Արշակաւ Բ. ի չորրորդ դարու (Sur les révolutions de l'Arménie sous Arsace II, au IVe siècle). – Զհայկական արձանագրութեանց ի Պուլկարի (Sur les inscriptions arméniennes de Bolgharie)։ — Առանցմէ զատ յընդարձակ կենսագիր բառարանին Միշոյի հետեւեալքն, — Միհրդատ մեծն և տասնչորս Պտղոմեանք, երեք Միհրդատք թագաւորք Պարթեւաց, Որոնտէսք չորս, երեք Յազկերտք, երկու Խոսրովք, ութ Սաւրոմակք, չորս Փրատք (կամ Հրահատ) թագաւորք Պարթեւաց, երկու Փառնակք Պոնտոսի թագաւորք, եօթն Փարսմանք Իբերացւոց արքայք, վեց Սելեւկոսք թագաւորք Ասորեստանեայց, կրկին Ոսրոէնէ՝ պատերազմող պարսիկք, երկու Հերովդք, վեց Լեւոնք թագաւորք Հայաստանի, հինգ Գրիգորեանք կաթողիկոսունքն. սուրբ Եփրեմ, Դաւիթ Անյաղթ, հայ պատմիչք՝ Մովսէս Խորենացի Մարիբաս Կատինա և Մխիթարեանք եւայլն։

Բաց ի այս գրուածներէն՝ կ'ըսեն թէ մեծ կարեւորութիւն ունեցող ձեռագիր երկասիրութիւններ ալ թողուցած ըլլայ Սէն-Մարդէն, շատերը թարգմանութիւնք. և Պրոսէ՝ առանց հաշուելու հրատարակուածները՝ կը յիշատակէ հինգ թուով. և են համառօտութիւն մը Տիեզերական պատմութեան. Ղազար Փարպեցի, Մովսէս Խորենացի, այլեւայլ հատուածք Հայոց պատմութեան մի՝ որիշ ի գրոց Խորենացւոյն. Եղիշէ՝ Պատմութիւն Վարդանանց, Պատմութիւն Տարօնոյ և մեծին Ներսէսի, Մեծոփեցւոյ Պատ-

մօրնէօն Լէնկլէմօրէ. այլեւայլ գրուածներ Սանքոնիաթոնէ, Մանեթոնէ, Արշակունեաց և Սասանեանց հարստութեան վրայ, որոց համար կ'ըսեն թէ ընդարձակ ծաւալ ունեցող եր-կասիրութիւնք ըլլան, և այլն։ — 1818ին Կառէկքս գօ-րավարին այրւոյն հետ ամուսնացաւ. 1820ին Թօշոն Տաննըսի եգիպտագիտին յաջորդեց յակադեմիայի. ու երկու տարիէն ետքը՝ Ռէմիւզայի ու Շէզիի հետ Ասիա-կան ընկերութիւնը հաստատեց։ Նոյն տարւոյն փոխանորդ պահապան անուանեցաւ Նաւարանի մատենադարանին, ու իրեն յանձնեցին Շարլ Լըպօյի արեւելեան կայսերաց պատմութեան գրոց երկրորդ տպագրութիւն մը ընել. և որոյ տասն առաջին հատորներն հրատարակեց 1824էն մինչեւ ի 1830, յունական աղբերաց վրայ աւելցը-նելով նաեւ արաբ, պարսիկ և հայ հեղինակաց գրուած-ներէն քաղուածներ։ — Շարունակութիւնն ըրաւ իր ա-շակերտն ու բարեկամ Պրօսէ, և աւարտեց ի 1836 ի քսան և մի հատորս. մանաւանդ երրորդ հատորէն անդին մեծապէս ճոխացուցած է նա Լըպօյի գրուածքը։

⁂

Ասիական օրագրին հաստատութենէն ետքը՝ Սէն–Մարդէն այլ և այլ հատուածներ հրատարակեց, յորոց մեզի կա-րեւորագոյն սեպուածներն յիշատակելով գոհ ըլլանք. « Տեղեկութիւնք ի վերայ կենաց և գրուածոց Մովսիսի Խորենացւոյ » (Sur la vie et les écrits de Moïse de Khorène (1823). — « Տեղեկութիւն ուղեւորութեանն զոր արար յԵւրոպա և յԱտլանտեան ովկիանոսի ի վերջ հնգետասաներորդի դարու և առ թագաւորութեամբ Կա-րոլոսի ութերորդի՝ Մարտիրոս եպիսկոպոս Երզնկայ ի մեծ Հայս, գրեալ ի նմանէ ի հայ բարբառ, և թարգ-մանեալ ի գաղղիականն » (Relation d'un voyage fait en Europe et dans l'Océan atlantique à la fin du XVe siècle sous le règne de Charles VIII, par Mar-

tyr, évêque d'Arzendjan dans la Grande Arménie: écrite par lui-même en arménien, traduite en français, 1828)[1] հանդերձ հայ սկզբնագրովը ի հանդիպոյ։

Սէն-Մարդէն աշխատակից եղաւ նաեւ ի խմբագրութիւն Ասիական օրագրին՝ հետեւեալ յօդուածներովը. « Ի վերայ տպագրութեան Ժամանակականացն Եւսեբեայ յԱւգերեանէ » (Sur l'édition de la Chronique d'Eusèbe, par Aucher, 1820). « Ի վերայ ստորագրութեան Հայաստանի ի Հ. Ղուկայ Ինճիճեան » (Sur la description de l'Arménie ancienne par Luc Indjijian).[2] « Զհաւաքմանէ նախնի մատենագրութեան Հայոց հրատարակելոյ ի սուրբ Ղազար » (Sur une collection des auteurs classiques arméniens publiés à S. Lazare, 1828). « Զճանապարհորդութենէ Շուլցի յարեւելս » (Sur le voyage de M. Schulz en Orient, 1828). Սէն-Մարդէնի միջնորդութեամբն էր որ Կէյսէնի գիտնականը ղրկուեցաւ ի Հայաստան՝ Վանայ արձանագրութիւնները գաղափարելու համար։ Իրեն յանձնուած գործը՝ արդէն ի գլուխ հաներ էր երբ սպաննուեցաւ ի Քրդաց ի 1827։ Այն հայագիտին տուած տեղեկութեանց և գրեթէ ճանապարհացոյց ուղեւորութեանց և օրինակաց համեմատ նմանահանութիւնքն հրատարակուեցան յԱսիական օրագրի։

1 Այս գրչագիր որ կը պահուի յազգային մատենադարանին, հետեւեալ յիշատակն ունի. « Ես Մարտիրոս միայն անուամբ եպիսկոպոս Երզնկայի, ի սուրբ Կիրակոսու յանապատէն ի Նորգեղա գեղէն։— Ի վաղուց հետէ փափաքէի ի սուրբ գլխաւոր առաքելոցն գերեզմանին տեսանելոյ. և յորժամ հասեալ ինձ անարժանս արժանաւորել տեսլեան նոցա. և համապատ սիրոս փափաքէր, բայց ումեք ոչ կարէի յայտնել զխորհուրդ սրտի իմում – թվին Ո̃ւէ (1458) հոկտեմբերի իթ ելայ ես ի իմ վանացն և եկի նեղաբար, հասի ի յՍտամպօլ և Աստուծոյ յաջողութեամբ գտեալ նաւ մի »...

2 Մեր ընթերցողք գիտեն թէ Ինճիճեան վարդապետ քննադատած է և հերքեր Սէն-Մարդէնի քանի մը կարծիքները ի Հնախօսութեան Հայաստանի, ի հատորն Գ. յէջ 326։

Արձանագրութեանց ակադիմիային այլ և այլ տեղեկագիրք ներկայացուց Սէն–Մարդէն. բաց յայլոց « Հետազօտութիւնք ի վերայ կենաց և արկածից Լեւոնի՝ վերջին թագաւորի Հայոց, ընթերցեալ ի 1825 » (Recherches sur la vie et les aventures de Léon, dernier roi des Arméniens 1825). Թագաւորական կամ ազգային գրատան մէջ պահուած գրչագրաց քաղուածոց և տեղեկութեանց մետասաներորդ հատորին մէջ ծանօթութիւն մը գրաւ Լեւոն Բ Հայոց թագաւորին մէկ հրամանագրոյն կամ արտօնութեանց թղթոյն զոր տուեր էր ի նպաստ Գենուացւոց ի 1288 (Notice sur le décret ou privilège de Léon II., roi d'Arménie, en faveur des Génois, en 1288).

Յուլիսի խռովութիւնն (1830) պատճառ եղաւ որ Սէն–Մարդէն Նաւարանի մէջ ունեցած պաշտօնը կորսնցընէ: Վասն զի քաղաքական խնդրոց մէջ մտնելով Ընդհանրական (Universel) լրագրին քանի մը յօդուածոց հրատարակութեանց թելադրութիւն ու մասնակցութիւն ունեցեր էր: Գաղղիոյ Դպրոցին մէջ ալ պատմութեան ուսուցչի աթոռ մը ունենալու խնդիրքը մերժուեցաւ, թէպէտ և Արձանագրութեանց և Գեղեցիկ դպրութեանց ակադիմիոյ ուսուցիչք մասնաւոր կերպով յանձնարարած էին զինքը: Մեռաւ ի մաղձախտէ ի 1832 ի վեշտասան յուլիսի:

* * *

Մահուընէն ետքը հրատարակուած գրուածներն են հետեւեալքն. 1°. « Յովհաննու կաթողիկոսի Պատմութիւն Հայոց, թարգմանեալ ի գաղղիական » (Histoire d'Arménie par le catholicos Jean VI (635–925), surnommé l'Historien, traduite en français). տպագրեալ ի Փարիզ ի 1840. Այս թարգմանութեան սկիզբը դրուած է կենսագրական տեղեկութիւն մը Յովհաննու կաթողի-

կոսի վրայ, ի Ֆէյկըս Լաժառէ, թէպէտ չէր նա տեղեակ հայ լեզուի: Նէվ Պեյճիոյ Լուվէն քաղաքի համալսարանին ուսուցիչ և հայագէտ՝ քննադատական մը հրատարակած է այս թարգմանութեան վրայ Ժուռնալ ազիաթիք ամսաթերթին մէջ ի 1843: 2°. « Հատուածք յԱրշակունեաց պատմութենէ », տպագրեալ ի Փարիզ ի 1840. (Fragments d'une histoire des Arsacides). — Մասն Ա. Սկզբնաւորութիւն Արշակունեաց ի Պարս և ի Հայաստան (Origines des Arsacides de Perse et d'Arménie): Մասն երկրորդ՝ « Պատմութիւն Արշակունեաց Պարսից » (Histoire des Arsacides de Perse): Առաջինն հատորի. իսկ յերկրորդն կը գտնենք բազմաթիւ տեղեկագիրք, ճառեր, ծանօթութիւններ, և այլն: Վերը յիշեցինք Կոմագենաց վրայ գրածը, և Վարդանայ առակաց ծաղկաքաղ մը հրատարակեալ ի 1825 աջակցութեամբ Զօհրապի, Ասիական ընկերութեան համար, և որոյ վրայ քննադատութիւն մը հրատարակեց Սիլվէստր Տըասսի Ժուռնալ օրագրին մէջ ի 1826:

Ակադեմիոյ մէջ Սէն-Մարդէնի յաջորդեց անուանի սինէագէտ Ժիւլիէն Ստանիսլաս. և ժողովոյն գումարման մէջ ի 5 օգոստոսի 1836, պարոն Տըասսի իր գովեստն ըրաւ. « Բաւական գործեց, ըսաւ ճարտարախօսն, որպէս զի անունը պատուով անցնի յետագայից, և մեր յաջորդք մասնակից ըլլան այն ցաւոց զոր իր կորուստը կ'ազդէ մեզ այս օր »: Այս ճառէն ետքը Եւգինէոս Պիւռնուֆ՝ յանուն և ի դիմաց Ասիական ընկերութեան հետևեալ խօսքերն արտասանեց. « Բազմազգի տեղեկութեանց՝ որոց զարմանալի յիշողութեամբն շտեմարան մ'էր, կը միացնէր անկողմնասիրութիւն, բարեսրտութիւն մը ի յարգել զերկասիրութիւնս այլոց: Գիտնական մը եղած չէ որ իրեն հաւասար բարեացակամ սիրով ընդունէր այն երիտասարդներն որ իրեն սիրելի ուսմամբք կը փափաքէին պարապիլ. վասն զի ոչ ոք իրեն նման կատարելապէս կը մոռնար որ գիտութեանց շահը զայն կը պահանջէր »:



Այս տողերը գրելու առեննիս ձեռուընիս հասաւ Սէն-Մարդէնի դեռ եւս անտիպ գրուածը զոր կ'ուղղէ առ անուանի աշխարհագիրն Հումպոլտ, և որոյ թարգմանութիւնն կուտայ Թիֆլիզի Արձագանք օրագիրն 1893 թուականի 140 թերթին մէջ: Գաղղիացի հայագէտն իմացեր էր ի Հումպոլտէ թէ կայսրն Ռուսիոյ խորհուրդ և կամք ունենայ երկրագրական ուսումնասիրութիւն մը հրամայել իր նոր ձեռք ձգած հայկական գաւառաց մէջ. Սէն-Մարդէն իր ազգային տէրութեան մէջ պաշտօն և զբաղմունք մը ձեռք ձգելէ յուսահատ՝ ինքզինք կ'առաջարկէ կայսեր խորհուրդը յարդիւնս ածելու համար.

«Ես, կ'ըսէ, գոնէ իմ կարծիքով, միակ ու բաւական կերպով նախապատրաստուած անձնաւորութիւնն եմ, որ զբաղուել է Հայաստանով լայնածաւալ և յարատեւ կերպով. որովհետեւ այս երկրի վերաբերեալ ուսումնասիրութիւններն՝ առանձինն սիրոյ առարկայ մը եղած են ինձ:

«Արդէն տասնըչորս տարի է քանի որ ես հրատարակել եմ Հայաստանի վերաբերեալ պատմական և աշխարհագրական յիշատակարանները: Այս առաջին և միակ աշխատասիրութիւնն է որ բովանդակում է հաւաստի, բազմաթիւ և ընդարձակ տեղեկութիւններ այդ երկրի մասին: Այս ժամանակամիջոցում ես չեմ դադարել նոյն առարկաներով զբաղուելուց: Իմ նոր աշխատութիւններին հասցնելու եկքն է, որոնց ես ընդունակ եմ համարում, նորանց նոյնպէս լրութիւն ու կատարելութիւն տալն է, որ ինձ զսպել են մինչեւ այսօր այդ աշխատութիւններն ի լոյս ընծայելու:

«Ես ժողովել, մանրակրկիտ կերպով քննել և դասաւորել եմ այն ամէնը, ինչ որ կարելի է ժողվել այս

տեղ այն ազգերի և տէրութեանց պատմութիւնից և աշխարհագրութիւնից, որոնք յաջորդաբար տիրել են Ասիային հեռաւոր ժամանակներից սկսած, ընդունելով Հայաստանը իբրեւ կեդրոն և հիմն իմ խուզարկութեանց։

«Այս իմ աշխատութեան գլխակարգութիւնն և ստորաբաժանումը կատարուած են, նիւթերը կազմ և պատրաստ, գլխաւոր յատակագիծը խմբագրուած է և ես կարող եմ տպագրութեան յանձնել։ Սակայն հակառակ իմ ջանից, ես զգում եմ, որ դեռ եւս իմ աշխատութիւնն ընդհատ է, որովհետեւ Փարիզում գտնուած հայ գրականութեան յիշատակները մեծ թիւ չեն կազմում։ Այդ ամէնը լրացընելու համար անհրաժեշտ կը լինի մի գիտնական ճանապարհորդութեան ձեռնարկել Մեծ-Հայաստանում և Ռուսաստանի բազմաթիւ գաւառներում, ուր բնակւում են Հայերը։ Կան աւելի քան քսան պատմագրեր, որոնց հետ ծանօթ եմ միայն հատուկտոր քաղուածներով։ Եւ այդ գրքերը Ռուսաստանում կը գտնեմ, ինչպէս և բազմաթիւ ուրիշ հետաքրքիր երկասիրութիւններ։ Հայկական գրադարանի կազմակերպութիւնը, որը կամենում է կայսրը հիմնել, կարող է սոյնօրինակ ճանապարհորդութեան հետեւանք լինել։

«Այս ամէնը չէ․ Հայերը ամենայն ժամանակ, քարերի վրայ արձանագրած ունին հասարակական գործերը և մեծ դիպուածների յիշատակները։ Նորանց պատմութիւնը, այսպէս ասած, քարերի և իրենց երկրի ժայռերի վրայ գրուած արձանագրութիւն է։ Թագաւորների հին պալատները, ամրոցները, կամուրջները, կրօնական և հասարակական շինութիւնների պատերը — ծածկուած են, — ես այդ գիտեմ, — արձանագրութիւններով, որոնց պատճէնները շատ մեծ նշանակութիւն կ'ունենան։ Ես դորանցից մի քանի հատ ունիմ, նորանք ինձ հասել են Մեծ Հայաստանից, և բաւական են ինձ մի բարձր գաղափար տալու համար այն տեսակ ժողովածուի օգտակարութեան մասին։ Գրականական յիշատա-

*կարանները, որոնք գտնւում են Պետերբուրգում, Մոսկուայում և այլն, թէ դրադարաններում, թէ կառավարութեան դիւաններում և թէ Հայերի մօտ խնամքով խուզարկւելուց յետոյ, կարևոր կը լինէր ուղևոր դէպ ի Կովկաս, շարունակելու նոյն խուզարկութիւնները Վրաստանում և Մեծ Հայաստանում: Պէտք կը լինէր նոյնպէս երկար ժամանակ այդ տեղերում կանգ առնել երկրի վերաբերութեամբ՝ մի կատարեալ աշխարհագիտական քննութիւն անելու և այցելու հնադարեան շինուածքների աւերակները, հին քաղաքները և իրենց բազմաթիւ վանքերը, շատ տեղերում խուզարկութիւններ անելով: Պէտք է կարծել որ այս պեղումները արդիւնաւէտ կը լինին, մանաւանդ Արտաշատում, Արմաւիրում ու Երասխի ափի ուղղութեամբ գետեղուած հին մայրաքաղաքներում, Էջմիածնի ու Արարատ լերան շրջակայքներում:*

*« Այդ խուզարկութիւնները լրացնելու համար պէտք կը լինէր նոյնպէս մի քանի շրջագայութիւններ անել Տաճկա–հայաստանում՝ Վանում, Կարսում և Էրզրումում, մի քանի ամսով կանգ առնել Կոստանդնուպոլիս, մի մի այցելութիւն տալ Տրանսիլվանիայի, Հունգարիայի, Տրիէստի և Վենետկի Հայերուն, և այդ ամէնը մի ճանապարհորդութեամբ դէպ ի Հռոմ, ուր գտնւում են քահանայապետական դիւանները և մատենադարանները, որոնք պարունակում են Հայաստանի վերաբերեալ շատ արձանագրութիւններ ։ . . .*

*« Մի ձեռնարկութիւն, ինչպիսին սա է, որի նախագիծը հէնց նոր համաճեպ կերպով ուրուագրեցի, աշա տասնևհինգ տարի է, որ իմ ցանկութեանց առարկան էր ։ Եւ մինչև այսօր դորան շատ մեծ կարևորութիւն եմ տալիս, և առանց տատանելու ես կը նուիրուէի այդ գործին, եթէ վստահ լինէի, որ ձեռնհաս կը լինիմ կատարել այնպէս, ինչպէս ես ըմբռնում եմ, անշեղ կերպով, այնքան արդիւնաւոր որքան և փառաւոր այն կայ-*

սեր համար որ կը պատուէր ինձ իւր ընտրութեամբ։ Եւ եթէ համոզուած լինէի, որ ոչ մի խոչընդոտ և դրամական ծախսեր ինձ արգելք չեն լինիլ։

« Ես համոզուած եմ, որ ես եմ, ինչպէս ասացի, ամենալաւ պատրաստուած անձնաւորութիւնը, գուցէ միակը, սոյնգունակ ճանապարհորդութեան համար։ Բաց ի հայերէն լեզուի և գրականութեան գիտութիւնից, դուք գիտէք որ ես պարապել եմ և Ասիայի ուրիշ լեզուների ուսումնասիրութեամբ, և որ անտեղեակ չեմ պատմութեան, աշխարհագրութեան և գրականութեան վերաբերեալ և ոչ մի հարցի, և այլն։...

« Ես յուսով եմ որ կայսրը յօժարութեամբ կ'ընդունի և կը հաւանի այդ առաջարկութեանը, որի կարեւորութիւնը քաջ հասկանում է. որ դուք նորին ասէք այն, ինչ որ իմ մասին մտածում էք, և իմ ընդունակութեան մասին այդ գեղեցիկ ձեռնարկութեան կատարման համար։...

« (Կայսրը) բարեհաճէր ապահովել իմ տարեկան ապրուստս, որպէս զի կարողանայի իմ կեանքիս մնացորդը ապահով կերպով պարապել կարգաւորելու և հրատարակելու Փարիզում, կամ այնպիսի մի տեղ որ ես կ'ընտրեմ, նորա հովանաւորութեան ներքոյ և նորա ծախսերով իմ ճանապարհորդութեանց տեղեկութիւնը, և այն աշխատութիւնները, որոնք սորանց հետեւանքները կը լինին, ինչպէս օր. Հայաստանի և հարեւան երկիրների ընդհանուր պատմութիւնը, և մի շատ մանրամասն նկարագիր ռուսական և պարսկական Հայաստանի, Կովկասեան երկիրների, ինչպէս և Պարսկաստանի, Ասորական և Փոքր Ասիոյ հայաբնակ գաւառների »։

1831, դեկտ. 22 թուականն ունի Սէն-Մարդէնի այս առաջարկութեան գիրը. քիչ ետքը հանդիպեցաւ իր ցաւալի մահը։ Բայց յառաջ իմացեր էր Նեսելրոտ կոմսի, արտաքին գործոց նախարարի մէկ թղթովը՝ թէ կայսերական կառավարութիւնը չէր կարծեր որ ժամա-

նակն եկած ըլլայ այդ օգտակար գործոյն իրականութեան։

Թէ Սէն-Մարդէն այդպիսի մեծ գործի մը ուսումնական պաշարը արդէն պատրաստած էր, այդ ամենեւին տարակոյս չիվերցըներ։ Մահուընէն ետքը քովը գտնուած հաւաքմունք՝ անժխտելի ապացոյցք են։ Բաց ի այն հայ պատմագրաց ամբողջ կամ մասնական թարգմանութիւններէն զորս յիշեց, Պրոսէ կը վկայէ ականատես՝ թէ ուրիշ զանազան հաւաքմունք ալ գտնուեցան, ընտիր դասաւորութեամբ կարգաւորուած։

## Փ. Մ. ՊՐՈՍԷ

Յետ Սէն-Մարդէնի՝ հայկական լեզուի ուսմամբ պարապող և շարունակողն եղաւ Պրոսէ, որոյ գլխաւոր մէկ արդիւնքն ալ է Վրաց լեզուի ուսումը մտցընելն ու բարգաւաճեցընել յԵւրոպա։ Իր կենսագրութիւնը գիտութեան յարատեւակ անձնանուիրութիւն մը կրնայ համարուիլ։ — Ծնաւ Պրոսէ յամի 1802 ի Փարիզ ի 5 փետր. ուր հայրը վաճառականութեամբ կը զբաղէր։ Ուսմանց նախնական ընթացքն կատարեց Օռլէանի փոքր կղերանոցին մէջ, իսկ ճարտասանականն ի Փարիզ։ 1818ին մտաւ ի դպրոցն Յիսուսեանց ի Մոնրուժ մերձ ի Սոյ։ Երկու տարիէն Փարիզ դառնալով. կ՚ապրէր մասնաւոր տուներ դաստիարակութիւն ընելով. 1821ին ստացաւ զնախատիճան (bachelier) ուսուցչի։ Արդէն այն ատենէն քաջ հմտացած էր յոյն լեզուի. սորվեր էր նաեւ զեբրայականն, մասամբ նաեւ զարաբ, զչինէական, մանչու և թիպէդ լեզուս։ 1822ին Ասիական ընկերութեան հաստատութեամբ՝ հրաժարելով եկեղեցական վիճակի ուսմունքէ, տուաւ ինքզինքը բոլորովին սինէացի լեզուին։ Բայց իրեք տարի վրան անցնելէն ետքը՝

անկէ ալ ետ կեցաւ, փափաքելով միայն Հայ և վրացի լեզուաց ուսմամբ պարապիլ։ Այս լեզուաց ախորժը ազդեր էր իրեն Սէն-Մարդէն, Եւգինէոս արքիմանդրիտին ռուս լեզուով շարադրած երկասիրութեամբ մը․ «Նըկարագիր Վրաստանի», թարգմանեալ ի գերման ի Փրետ. Շմիթէ, տպ. ի Ոփկա 1814։ 1826ին ամուսնացաւ, բայց պաշտօն կամ գրագմունք մը չկարենալով հայթհայթել, քիչ ատենէն աղքատութեան մէջ ինկաւ։ — 1830ին Գաղղիոյ Կարոլոս Ժ Թագաւորին Փէյրոնէ նախարարի յիշատակագիր մը ներկայացոյց ցուցընելով թէ քանի՛ օգտակար կրնար ըլլալ ուսումնական քննադատական ուղեւորութիւն մը ի Վրաստան, և քիչ մը ատեն կենալը նոյն վախճանաւ ի վանս Հայոց որ յէջմիածին։ Յուլիսի յեղափոխութիւնը իր այս ամէն ակնկալութիւններն ի դերեւ հանեց․ և Վրաց լեզուի ուսուցչի պաշտօնն ալ՝ որուն հետամուտ էր, զլացուեցաւ իրեն։ 1834ին նորէն դառնալով ի պաշտօնն, իր մտածութիւնն միւսանգամ ներկայացոյց Կիզոյի, թէպէտ առաջնոյն հաւասար անյաջողութեամբ։ Կինը մեռնելով՝ կրկին ամուսնացաւ 1836ին, և այն աստիճանի յետին կարօտութեան մէջ ինկաւ, որ ինչուան ստիպուեցաւ թագաւորական տպարանին մէջ գրաշարութիւն ընել։ Սակայն իր անխոնջ աշխատանք և յարատեւ եռանդը՝ հըրաւիրեր էին իր վրայ Պետրպուրկի Գիտութեանց ակադեմիային մտադրութիւնն, որ 1836ին զինքն անդամակից ընտրելով՝ հրաւիրեց որ այնուհետեւ բնակութիւնն հաստատէ Ռուսիոյ մայրաքաղաքին մէջ։ Պրոսէ ընդունեցաւ այս հրաւէրը, և յայնմհետէ իր գործունեայ կենաց արգասիք կը պատկանին այս նոր հայրենեաց։ 1838ին ուղեւորութիւն մը ըրաւ ի Մոսկուա, ուր Լազարեանց ուսումնարանին այցելութիւն ընելով, հինգ տարիէն անոր կաճառակից եղաւ։

*
* *

1845 Հարաւային Եւրոպա համբորդութիւն մը ընելով, քանի մը օր կեցաւ Վենետկոյ Մխիթարեանց վանքն ի Ս. Ղազար, ուր ծանօթացաւ Այվազովքի և Ալիշան վարդապետաց հետ։ Իսկ ի 1847–8 յաջողեցաւ վերջապէս գործադրել իր փափաքը՝ ճանապարհորդելու ի Վիրս և ի Հայաստան. ուստի դառնալով ի Պետրպուրկ, բոլորովին զբաղեցաւ իր սիրելի ուսմամբք։ 1863ին դարձաւ ի Գաղղիա, և ի դարձին ի 1867 փափաքեցաւ կրկին յայց ելլել արդոյն Ղազարու մենաստանին, բայց արգիլուեցաւ մաղձախտին պատճառաւ. 1869ին եկաւ ի Գաղղիա, ինչպէս նաեւ ի 1880, որ կենացը վերջին տարին եղաւ. վասն զի յ՚ 3 սեպտեմբերի կնքեց իր կեանքը Փուաթիէի մօտ ի Շաթըլռօյ։

Լորան Պրոսէ՝ իր որդին, 1887ին կարգաւորեալ մատենագիտական ցուցակ մը հրատարակեց հօրը բազմաթիւ գրաւոր երկասիրութեանց, որոց թիւ գրեթէ երեքհարիւրը կ՚անցնի, և ընդհանրապէս կը վերաբերին Վրաստանի և Հայաստանի։ Ասոնց մէջ նախամեծար կընան սեպուիլ իր Հնախօսական ճանապարհորդութեան մը տեղեկագիրք (Rapports sur un voyage archéologique) զոր Կովկասեան դաւառաց տեղակալ կոմս Վորոնցովի հովանաւորութեամբ ըրած է յամս 1847–8, աշխարհացոյց տախտակաւ մը և քառասուն և հինգ պատկերներով. և հրատարակուած է ի Պետրպուրկ յամի 1851։ Սակէ զատ մեծապէս հետաքննական է իր Աւերակք Անւոյ կոչուած գրուածը (Ruines d'Ani), որ ինչպէս յայտնի է Ժ և ԺԱ դարուց Բագրատունի թագաւորաց ժամանակ Հայոց թագաւորակաց քաղաքն էր։ Այս երկասիրութիւնն ալ հրատարակուած է ի Պետրպուրկ յամս 1858–1861, աշխարհացոյց քարտէսիւ։ Առաջին տետրին մէջ կայ նաեւ տեղեկագիր մը Էջմիածնի մատենադարանին ու հայկական հնութեանց վրայ (էջ 1–130)։



Ինչպէս Տիւլորիէ և Լանկլուա, Պրոսէ ալ ունեցաւ մտածութիւն Հ———ման մը հայկական պատմչաց, որոյ առաջին հատորը հրատարակեց ի 1874, և կ'ամփոփէր զԹարգմանութիւն Թովմայի արծրունւոյ (Ժ դար) Պատմութեան Արծրունի իշխանաց Վասպուրականի.— Առաքելի Դաւրիժեցւոյ (ԺԷ դար) պատմական երկասիրութեան ի 1602–1664.— Յովհաննու Ծարեցւոյ Պատմութեան Աղուանից։ Երկրորդ հատորն հրատարակուեցաւ ի 1876, յորում կան պատմական գրուածք Զաքարիայ Սարկաւագի (ԺԷ դար), և կոնդակ Յովհաննավանաց. Դաւիթ Բէկի պատմութիւն (ԺԷ դար), Աբրահամու Կրետացւոյ (ԺԷ դար) Պատմութիւն Նատիր Շահի. Սամուէլի Անեցւոյ (ԺԲ դար) Տախտակք ժամանակագրականք։ Զաքարիայի, Առաքելի և մանաւանդ Աբրահամու Կրետացւոյ թարգմանութիւնք դժուարին էին յոյժ ի պատճառս բազմաթիւ տաճիկ և արաբ խօսից զորս նոյն պատմագիրք կը գործածեն։

Բայց այս երկասիրութեան վրայ՝ քիչ ետքը աւելի մանրամասնաբար։

1870ին հրատարակեց Պրոսէ ուրիշ երկասիրութիւն մ'ալ հետեւեալ խորագրով. «Երկու հայ պատմչաց՝ Կիրակոսի Գանձակեցւոյ (ԺԳ դար) Պատմութիւն սրբոյն Գրիգորի և յաջորդաց նորա, և Ուխտանեսի Եդեսացւոյ (Ժ դար) պատմութիւն եռամասնեայ». 1864ին ալ ըղ-պատմութիւն Սիւնեաց Ստեփանոսի Օրբելեան։ Սէն-Մարդէնի ձեռքով սկսուած Լըպոյի արեւելեան կայսերաց պատմութեան նոր տպագրութեան շարունակութեանը մէջ զետեղեց (հատոր ԺԲ 449–481) քաղուած մը ի պատմութենէ արշաւանաց Մողոլաց ի հիւսիսային Ասիա յ'ԺԳ դարու։ Պետրպուրկի Գիտութեանց ակադեմիոյ յիշատակարանաց մէջ այլեւայլ հատուածք կան

իրեն գիտութեան, ուսմանց և գրչին արդիւնք, նկատմամբ մեր ազգային պատմութեան և մատենագրութեան, և զորս մէջ պիտի բերենք։ Հետաքննական են իր հետազօտութիւնք Երկաթէ դիմակին վրայ, զոր ոմանք կարծեցին թէ ըլլայ Աւետիք պատրիարք Կոստանդնուպոլսի, որ ինչպէս յայտնի է ի պատմութեանց, թէ՛ նոյն քաղքին և թէ Երուսաղեմի պատրիարքական պաշտամանէն ինկաւ, ու մեռաւ ի Գաղղիա։

Հօրը գրուածոց մատենագիտական ցուցակն յօրինող որդին՝ հետեւեալ խօսքերով կ'աւարտէ զայն, զոր և մեք աւելորդ չենք համարիր մէջ բերել․ « Հարկ սեպուեցաւ յիշեցընել թէ Պրոսէ ոչ պատմիչ մ'էր և ոչ լեզուագէտ։ Բոլորովին հեռի ի տկարութենէ՝ ընծայելոյ իրեն ինչ որ չունէր, Պրոսէ ոչ երբեք պահանջած է ըլլալ՝ ոչ մին և ոչ միւսը, բառին բուն նշանակութեամբ։ Խրթին ու վերացեալ ուսմանց եռանդուն սիրող, անխոնջ ու համբերող հետամուտ, բաւական սեպեց նուիրել իր կեանքը պատմութեան նիւթեր հաւաքելու, ու այդ ուսմանց երկիրը մաքրել պատմական հետախուզութեամբք, անոնց օգտին ու պիտոյից ծառայեցընելով նաև զբանասիրութիւն։ Եւրոպայի հայագէտք գիտեն թէ որչափ օգտակար եղած է իրենց ուսմանց իր ջանքովը պատրաստուած այսպիսի ճոխ ժառանգութիւն մը »։



Պրոսէի մահուընէն ետքը՝ ինչպէս ըսինք, յորդւոյն մանաւոր խմբագրութեամբ հրատարակուած իր հօրը երկասիրութեանց մատենախօսական ցուցակէն, կը քաղենք ինչ որ ուղղակի մեր ազգային ու մատենագրական պատմութեան կը վերաբերի, երախտապարտ մեծարանօք իր բազմարդիւն և վաստակաւէր յիշատակին։

1․ « Տեղեկութիւն հայ գրչագրաց որ կը պատկանին Արտաքին Գործոց Պաշտօնարանին քով եղած Ալիշան

կաճառի մատենադարանին (–Notice des manuscrits arméniens appartenants à la Bibliothèque de l'Institut Asiatique établie près le Ministère des Affaires Etrangères)․ Ընթերցեալ ի 29 սեպտ․ 1840։

2․ « Տեղեկութիւնք ի վերայ վանաց Էջմիածնի․ (–Notice sur Edchmiadzin)․ ընթերցեալ ի 14 փետր․ 1846․ Թարգմ․ ի ռուս և տպագրեալ։

3․ « Թուղթ Կորգանովի՝ գործակատարի Գրիգորեան Հայոց սինհոդոսին, առ կայսերական ակադեմիայն Գիտութեանց․ յ'7 մարտի 1842 ամին, ծանօթութեամբք Բրոսէի․ (–Lettre de M. Korganoff, procureur de Synode arménien grégorien, à l'Académie Impériale des Sciences, du 7 mars 1842; annotée par M. Brosset)․ Ընթերցեալ ի 16 սեպտեմբերի 1842։

4․ « Ի վերայ հայկական մատենագրութեան, ի ռուս լեզու․ (—Sur la littérature arménienne, en russe)․

5․ « Տեղեկութիւն հայ գրչագրի մը վրայ, Թղթոց սրբոյն Պաւղոսի․ (–Notice sur un manuscrit arménien des Epîtres de St․ Paul)․ Ընթերցեալ յ'3 յունիսի 1859։

6․ « Գրականական գործունէութիւն Հայոց և Վրաց ի Ռուսաստան, յայնկոյս Կովկասու և ի Ղրիմ․ Մասն Ա․ ընթերցեալ ի 5 սեպտեմբերի 1862։ — Մասն Բ․ ի 6 նոյեմբերի, 1863։ — Մասն Գ․ յ'8 յունիսի 1865։ – Մասն Դ․ ի 28 յունիսի 1866․

7․ « Ի վերայ կրկին հայկական խմբագրութեանց, յոտանաւոր և յարձակ, վարուց սրբոցն Բարաղամու և Յովասափատայ »․ (–Sur deux rédactions arméniennes, en vers et en prose, de la légénde des saints Baralam = Varlaan et Iosaph = Josaphat). Ընթերցեալ ի 21 փետր․ 1878։

8․ « Կայսերական հասարակաց մատենադարանին համար նոր ստացուած հայ գրչագրի մը վրայ, յորում կան աստեղագիտական և աստեղաբաշխական գրութիւնք »․ (— Notice sur un manuscrit arménien, nouvellement

acquis pour la Bibliothèque Impériale publique, de contenu astrologique et astronomique). *Ընթերցեալ ի* 28 *նոյեմբ.* 1878:

9. « *Տեղեկագիր* 1847 *և* 1848 *թուականներուն Բրոսէի ըրած հնագիտական ուղեւորութեան մը վրայ ի Հայս, աշխարհացոյց քարտիսով մը ու* 45 *վիմագրեալ պատկերներով.* – (Rapport sur un voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie, exécuté en 1847–1848 par M. Brosset. Avec un atlas de 45 pl. lithographiés. S. Pb . 1851).

10. « *Ուսումնասիրութիւն Էջմիածնի մատենադարանին և ուրիշ հայկական հնութեանց վրայ: Ուղեւորութիւն Խանիքոֆի յԱնի* » . –(Études sur la Bibliothèque d'Echmiadzin et sur les antiquités arméniennes. — Excursion à Ani, en 1848, par M. N. Khanykof).

11. « *Տեղեկագիր Ջալալեան Սարգիս վարդապետի ի Մեծն Հայաստան ըրած ուղեւորութեան գրոց երկրորդ մասին վրայ* » . – (Rapport sur la 2me partie du voyage du P. Sargis Dchalatiants daus la Grande Arménie).

12. « *Ծանօթութիւն Ակոռի հայ գիւղին ու Արքոյն Յակովբայ վանից վրայ* » . – (Note sur le village arménien d'Akorhi et sur le couvent de S.t Jacques).

13. « *Պատմական ծանօթութիւն Հաղբատայ ու Սանահնի հայ վանորէից վրայ* » . – (Notice historique sur les couvents arméniens de Haghbat et de Sanahin).

14. « *Տեղեկութիւն Աբիխի՝ զաւերակաց Անւոյ գրած թղթոյն վերայ* » . – (Rapport sur la lettre de M. Abich sur les ruines d'Ani). *Ընթերցեալ ի* 28 *մարտի* 1843 *տարւոյն*:

15. « *Ծանօթութիւն Կեչառուաց հայ վանքին վրայ ի Դարաչիչակ* » . — (Notice sur le couvent arménien de Ketcharhous à Daratchitchag). *Ընթերցեալ ի* 22 *նոյեմբ.* 1852:

16. « Ա-էր-ել+ Ան-ս, *որ* Ժ *և* ԺԱ *դարուց մէջ թա-*

գաւառական ոստանն էր Բագրատունեաց. Պատմութիւն և նկարագիր: — Մասն Ա. Նկարագրութիւն՝ աշխարհացոյց քարտիսիւ և քսանեւչորս պատկերօք. — Մասն Բ. Պատմութիւն աշխարհացոյց քարտիսիւ՝ և վիմագիր նկարներով » . — (Les Ruines d'Ani, capitale de l'Arménie, sous les rois Bagratides, aux X et XI s. Histoire et descriptions, par M. Brosset. I partie; Description, avec un atlas de 24 pl. lith. S. Pb . 1860, 4. V + 1 — 92 pages. — II p. Histoire, avec un atlas de 21 pl. lith. S. Pb . 1861. 4 XVI + 93 — 176 p).

« Ծանօթութիւն զոր կը հաղորդէ Պ. Գիւնիք՝ հանելով միլվով տպագրուած գրքէ մը Wiadomosc o Ormianach w Pòlszeze, Հեղինակութեամբ Զաքարիէվիչի » : (Note communiquée par M. Kunik, et tirée de l'ouvrage Wiadomosc o Ormianach w Pòlszeze. Lwow, 1842, par Zachariasiéwicz).

« Յաւելուած Ա. Տեղեկութիւնք հաղորդեալք ի Հ. Բառնաբայ Իսայեան » . – (Communications du P. Barnabé d'Isaja, pages 144–148):

« Բ. Արձանագիր Մարմաշինոյ » . — (Inscription de Marmachen; — p. 143—151):

« Գ. Նկարագիր Այրի վանաց, և տեղեկութիւն ի վերայ Մխիթարայ Այրիվանեցւոյ, հայ մատենագրի յերեքտասաներորդ դարու » . — (Description du couvent d'Aïrivank et notice sur Mekhitar Aïrivantsi, auteur arménien de XIII s. p. 152—174):

« Ընդհանուր ցուցակ պատկերաց, հանդերձ տեղեկութեամբ ի վերայ երկգլխեան արծուոյն փորագրելոյ ի ստորոտ խաչի միոյ, յԱնի գտնուած յիշատակարանի կամ չէնքի մը վրայ » . — (Index général des planches avec une notice sur l'aigle à deux têtes tracé au bas d'une croix, sur un des monuments de la ville d'Ani. p. 175—176):

17. « Քննադատութիւն քանի մի տեղեաց՝ Ալիշան Հ. Ղ. երկասիրած Հայոց մեծաց Տեղագրին՝ նկատմամբ Անւոյ ». – (Examen critique de quelque passages de la Description de la grande Arménie, du P. L. Alichan, relatif à la topographie d'Ani.) Ընթերցեալ ի 14 յունիսի 1861։

18. « Հաղբատ ու Սանահին հայ վանորէից վերայ », (որիշ ի նախընթացէն զոր յիշեցինք). – (Sur les couvents arméniens de Haghpat et de Sanahin). Ընթերցեալ ի 25 ապրիլի 1862։

19. « Յովհաննու վարդապետի Կրիմեցւոյ՝ Ստորագրութիւն հայ վանորէիցն Հաղբատայ և Սանահնի, ծանօթութեամբք և յաւելուածովք ի Բրոսէէ ». — (Description des monastères arméniens d'Haghpat et de Sanahin, par l'archimandrite Jean de Crimée, avec notes et appendice par M. Brosset. — S. P$^{b}$ . 1863 p. 94)։

20. « Բացատրութիւն այլեւայլ վրացի, հայ և յունական արձանագրութեանց, մետասան վիմագրեալ տախտակօք ». – (Explication de diverses inscriptions géorgiennes et arméniennes et grecques; avec 11 pl. lithograph). Ընթերցեալ ի 11 օգոստ. 1867։

21. « Տեղեկութիւնք Սարգիսեան Հ. Ներսիսի ձեռքով հաւաքուած վրացի արձանագրութեանց վրայ. (Notices concernant les inscriptions géorgiennes, recueillies par le P. Nerses Sargissian). Ընթերցեալ ի 25 սեպտ. 1863։

22. « Ծանօթութիւնք հայ արձանագրութեանց ի Պոլկարի, վիմագիր տախտակաւ մը ». – (Notes sur les inscriptions arméniennes de Bolghari, avec 1 pl. lith). Ընթերցեալ յ'13 հոկտ. 1867։

23. « Տեղեկութիւնք մեզի ծանօթ ամենահին արձանագրին վրայ ի Ս. Յովհաննէս որ առ Մուրատ–չայի ». – (Notice sur la plus ancienne inscription arménienne

connue, à Sourb Ohannès, sur le Murad–thaï). Ընթերցեալ ի 1 օգոստ. 1856։

24. « Ժամանակագրական տեսակիտով նշանաւոր քանի մի հայկական արձանագրութեանց վրայ » .—(De quelques inscriptions arméniennes, remarquables au point de vue chronologique). Ընթերցեալ յ'2 դեկտ. 1859։

25. « Հայաստանի հին պատմութիւն ըստ սրբագիր և բեւեռաքանդակ տառից » . – (Sur l'histoire ancienne de l'Arménie, d'après les textes hieroglyphiques et cunéiformes). Ընթերցեալ յ' 13 ապրիլ 1871։

26. « Երկու բեւեռաձեւ արձանագրութեանց վրայ՝ զոր Ռուս–Հայաստանի մէջ գտաւ Գասթնէր ։ Տեղեկագիր Պրոսէ և Գունիկ պարոնայց, հանդերձ Լէրշի մէկ յիշատակագրովը » .—(Notice sar deux inscriptions cunéiformes, découvertes par M. Kästner dans l'Arménie russe. Rapport de MM. Brosset et Kunik; suivie d'un mémoire de M. Lerche). Ընթերցեալ յ'8 օգոստոսի 1862։

27. « Տեղեկագիր զանազան այբուբենական և բեւեռատառ արձանագրաց հաւաքելոց ի Ժիւլ Գասթնէր և յԱտոլֆ Պէրկէր պարոնայց, տախտակաւ մը » . — (Rapport sur diverses inscriptions (alphabétiques et cunéiformes) recueillies par MM. Jules Kästner et Berger, avec un pl.) Ընթերցեալ ի 29 յունուար 1864։

28. « Ծանօթութիւն ասիական մուզէոնին մէջ գտնուած քանի մի վրական դրամոց վրայ, և Թիպեդեան արձանագրութեան մը որ յ'Էջմիածին» .—(Note sur quelques monnaies géorgiennes, du Musée Asiatique, et sur une inscription thibétaine d'Edchmiadzin). Ընթերցեալ ի 25 օգոստոսի, 1807։

29. « Մենագրութիւն մը հայկական դրամոց վրայ, երկու տախտակով » . (Monographie des monnaies arméniennes; avec 2 pl.) Ընթերցեալ ի 20 հոկտ. 1837։

30. « Արեւելեան դրամական հաւաքմանն վրայ որ ի

*կայսերական մենարանին*» . – (Collection numismatique orientale de l'Ermitage Impérial; 1852–1879). *Ըն-թերցեալ ի* 24 *ապրիլ*, 1879։

31. « *Ուղեգրութիւն մեծարգոյ եղբօր Աւգոստինոսի Բաճենցի, հայ եպիսկոպոսին Նախիջեւանու ի կարգէ Քարոզողաց ընդ Եւրոպա* » . – (Itinéraire du très révérend frère Augustin Bajetsi, evêque arménien de Nakhidchévan, de l'ordre des frères Précheurs, à travers l'Europe... Traduit... par M. Brosset jeune). (Journal Asiatique, 3me Ser. Tome III, 1837. p. 209–245, et 401—421)։

32. « *Վրաց պատմութեան սկզբնագիր աղբերաց վրայ։ Հատուած Ա։ Ժամանակագրութիւն Վախթանկայ։ – Հին հայկական համառօտեալ թարգմանութիւն։ – Հատուած Բ. Համառօտ պատմութիւն Վախուշայ, մինչեւ ի հինգերորդ դար Քրիստոսի* » . – (Des sources originales de l'histoire de Géorgie. 1er. article. Chronique de Wakhtang. Ancienne traduction abregée, en arménien. — 2e. article. Abrégé historique de Wakhoucht, jusqu'au V. s. de nôtre ère). (Journal de S. Pétersbourg, 1841). *Առանձին տպագրութիւն, յ'* 39 *էջս*։

33. « *Տեղեկութիւն հայ գրչագրի մը վրայ, զոր ակադեմիոյ ընծայեց պարոն Տըհահն, ծերակուտի անդամ* » . – (Notice d'un manuscrit arménien offert a l'Académie par S. E. M. le Baron de Hahn, sénateur). *Ընթերցեալ յ'*7 *դեկ.* 1838։

34. « *Առաջարկութիւն կամ մտածութիւն՝ դեռ եւս չհրատարակուած հայ պատմըչաց հաւաքման մը համար*» ։ *Երկու հատուածք*։ (Projet d'une collection d'historiens arméniens inédits. Premier article. *Ըն-թերցեալ յ'*30 *հոկտ.* 1840. — Second article). *Ըն-թերցեալ ի* 29 *հոկտ.* 1841։

35. « *Քննադատական վերլուծութիւն Վարդան վար-*

դապետի Ընդհանուր պատմութեան։ Առաջին տպագրութիւն հայ բնագրին թարգմանութեամբ ի ռուս, ի ձեռն Մ․ Էմին»․ — (Analyse critique de l'*Histoire universelle* de Vardan. Édition princeps du texte arménien, et traduction russe par M. N. Emin)․ Ընթերցեալ յ'7 մարտ 1862։

36․ «Ծանօթութիւն տասներորդ դարու մատենագիր Թովմայի Արծրունւոյ վրայ»․ (— Notice sur l'historien arménien Thoma Ardzrouni, X. s.) Ընթերցեալ յ'12 դեկտ․ 1862։

37․ «Ծանօթութիւն Մխիթարայ Այրիվանեցւոյ հայ պատմչին վրայ»․ (— Notice sur l'historien arménien Mkhithar d'Aïrivank)․ Ընթերցեալ ի 23 յունուարի 1863։

38․ «Սիւնեաց պատմութիւն Ստեփաննոսի Օրբելեան, թարգմանեալ ի հայ բնագրէն ի ձեռն Պրոսէի։— Առաջին մասն․ Պատմութեան Սիւնեաց գաղղիական թարգմանութիւն, ծանօթութեամբք։ — Երկրորդ մասն․ Ներածութիւն։ — Բովանդակութիւն․ 1․ Պատմութիւն Սիւնեաց։ Յօդուած Ա․ Յառաջաբան տեղեկութիւնք։ — Բ․ Նկարագրութիւն (համառօտեալ թարգմանութիւն Ներածութեան Ինճիճեան Հօր ի վերայ աշխարհին Սիւնեաց, ի գիրն Ստորագրութիւն հին Հայաստանի)։— Գ․ Տոհմագրական ցուցակ իշխանացն Սիւնեաց, առաջին ժամանակ։ — Դ․ Սիւնեաց և Սիսական իշխանք, ազգականք կրկին ցեղից, անծանօթ մնացած աստիճաններով։ — Ե․ Ազգագրական տախտակ Սիւնեաց իշխանաց և թագաւորաց, երկրորդ ժամանակ։ — Զ․ Նախընթաց ցուցակաց մէջ յիշուած իշխանաց, և անոնցմէ դուրս ուրիշ այլոց իշխանաց վրայ տեղեկութիւնք, ըստ պատմչաց Հայոց։ — Է․ Կրօնական պատմութիւնն, ըստ Ինճիճեան Հօր։ — Ը․ Կարգ մետրապոլտացն Սիւնեաց (ըստ Ինճիճեան Հօր, Ստեփաննոսի Օրբելեան և Հասանջալալ Սարգիս վարդապետի ի գիրն Ճանապար-

հորդութեանն ի մեծ Հայս)։ — Թ. Տեղագիր Սիւնեաց աշխարհին (քաղեալ ի յառաջաբանութենէն զոր ի գլուխ Պատմութեան գրոց նորա դրաւ Շահնազար Կարապետ վարդապետ ի տպագրին Փարիզու)․ Թարգմանութիւն աշխարհագրական տեղեկութեանց Ալիշան Հ. Ղեւոնդ Վ. յիւրում Տեղագրին Հայոց մեծաց (տպ. ի Վենետիկ. 1855), և ըստ կրկին երկասիրութեանց Ինճիճեան վարդապետի։ — Ժ. Ղարապաղ կամ Շուշի, ի Հ. Ղեւոնդեայ Ալիշան։ — ԺԱ. Վանորայք Հայոց. Վայոց ձոր (հետեւողութեամբ Ջալալեան Սարգիս վարդապետի յ'Բ հատորի ճանապարհորդութեանն ի մեծ Հայս)։ — ԺԲ. Վանորայք Գեղարքունեաց գաւառի. (ըստ Շահխաթունեանի ի գիրսն Ստորագրութեան սրբոյ Էջմիածնի). ԺԳ. Վանորայք Սոթք գաւառի. (ըստ Շահխաթունեանի)։ — ԺԳ. Վանորայք Արցախ գաւառի, Խաչենից և Աղուանից։ — ԺԵ. Համառօտ տեղեկութիւն Ուռպելեան Ստեփաննոսի վրայ։ — ԺԶ. Ազգագրական ցուցակ այն գլխաւոր տոհմից՝ որոց յիշատակութիւնն կ'ըլլայ նախեդեալ արձանագրութեանց մէջ։

« Մ—ն Բ. Պատմութիւն Սիւնեաց. Շարակարգութիւն անցից և դիպուածոց տանն Սիսական, (Թարգմանութիւն Պրոսէի) ». (Ուղղութիւնք և Յաւելուածք)։ Histoire de la Siounie par Stéphannos Orbélian, traduite de l'arménien par M. Brosset. Première livraison. Histoire de la Siounie (traduction et annotations). — Seconde livraison. Introduction par M. Brosset *.

39. « Ուսումնասիրութիւնք ի վերայ Մխիթարայ Այրիվանեցւոյ, հայ պատմչի, յերեքտասաներորդ դարու։

* Տիւլորիէ. C que constitue le principal mérite de l'œuvre du savant prélat arménien, c'est qu' il a pris les éléments dans les archives officielles de la principauté, dans les traditions locales, dans les monuments du pays, encore debout à l'époque où il vivait, enfin dans des sourc s d'informations que personne ne pouvait connaîtremieux que lui.

*Մասն Ա. և Բ. Յարարչութենէ աշխարհի մինչ ի սկզբնաւորութիւն քրիստոսական թուականութեան ։ — Մասն Գ. մինչ ի* 1289 *թուական Քրիստոսի* ». – (Études sur l'historien arménien Mkhithar d'Aïrivank; XIII s; I et II parties, de la création du monde au commencement de l'ère chrétienne; III partie; jusqu' en 1289)․ *Ընթերցեալ ի* 22 *դեկտ.* 1864, *և յ'*13 *ապրիլ* 1865։

40․ « *Քննութիւն Ուխտանէս հայ պատմչին հատուածի մը՝ նկատմամբ ենթադրեալ տիրապետութեան աշխարհին Վրաց ի Նաբուգոդոնոսորայ* » . (–Examen d'un passage de l'historien arménien Oukhtanès, relatif à la prétendue conquête de l'Ibérie, par Nabouchodonosor)․ *Ընթերցեալ ի* 4 *յունիսի*, 1868։

41․ « *Ուսումնասիրութիւն ի վերայ Ուխտանէս հայ պատմչի տասներորդ դարու* » . (– Étude sur l'historien arménien Oukhtanès, X s.) *Ընթերցեալ ի* 5 *նոյեմբ.* 1868։

42․ « *Մխիթարայ Այրիվանեցւոյ՝ ժամանակագրական պատմութիւն. դար ԺԳ. թարգմանութիւն ի հայէ ի վերայ գրչագրի ասիական մուզէօնին, ի ձեռն Պրոսէի.* (— Histoire chronologique par Mkhithar d'Aïrivank, XIII s. traduite de l'arménien, sur le manuscrit de Musée asiatique, par M. Brosset.) *Ընթերցեալ ի* 22 *դեկտ.* 1864։

43․ *Ի վերայ պատմութեան Թովմայի Արծրունւոյ՝ մատենագրի ի տասներորդ դարու, թարգմանեալ ի լեզու գաղղիական ի Պրոսէէ* » . (– Sur l'histoire composée en armenien, par Thoma Ardzrouui, X s. traduite en fraușais par M. Brosset)․ *Ընթերցեալ ի* 28 *հոկտ.* 1869։

44․ « *Երկու հայ պատմիչք. Կիրակոսի Գանձակեցւոյ յ' ԺԳ դարու, պատմութիւն Հայոց, և Ուխտանեսի Եդեսացւոյ ի տասն դարու, պատմութիւն եռամասնեայ,*

*թարգմանեալ ի Պրոսէէ»*. (–Deux historiens arméniens: Kiracos de Gantzac, XIII s. Histoire d'Arménie; Oukthanès d'Ourha. X. s. Histoire en trois parties, traduites par M. Brosset). *Առաջին մասն տպագրեալ ի* 1870, *իսկ երկրորդն ի* 1871։

45. « *Սամուէլ Անեցի և իր ժամանակագրական երկասիրութեան վրայ ընդհանուր տեսութիւն* ». (–Samuel d'Ani; revue général de sa Chronologie). *Ընթերցեալ յ'*12 *հոկտ.* 1871։

46. « *Զհայ պատմըչաց ԺԷ և ԺԸ դարուց. Առաքելի Դաւրիժեցւոյ ժամանակագրական գրութիւնք, թարգմանութեամբ և ծանօթութեամբք Պրոսէի։ — Տեղեկութիւնք զՁաքարիայ սարկաւագէ Կապոնց, որ հեղինակ է Սոֆի իշխանաց վրայ պատմական յիշատակարանի մը* ». (–Des historiens arméniens de XVII et XVIII siècles. — Arakel de Tauriz; Régistre chronologique, annoté par M. Brosset). *Ընթերցեալ յ'*31 *հոկտ.* 1872։ — (— Traduction et annotations. — Notice sur le diacre arménien Zakaria Gabontz, auteur des Mémoires historiques sur les Sofis, XV—XVII siècles). *Ընթերցեալ յ'*12 *նոյեմբ.* 1873։

47. Ա. « *Հաւաքումն պատմագրաց Հայոց Հատոր Ա. Թովմա Արծրունի (Ժ դար). Պատմութիւն Արծրունեաց։ — Առաքել Դաւրիժեցի (ԺԷ դար). Գիրք պատմութեանց։ — Յովհաննէս Ծարեցի (ԺԶ դար). Պատմութիւն Աղուանից. Թարգմանութիւնք Պրոսէի. Պետրպուրկ*, 1874, *ութածալ.* ԼԲ + 618 *երեսք*։

**Բովանդակութիւն**. — « *Ներածութիւն։ — Թովմայի Արծրունւոյ պատմագրի վրայ տեղեկութիւնք. (էջք Ա–ԺԹ)։ — Առաքել Դաւրիժեցւոյ վրայ. (Ի–ԼԳ)։ — Պատմութիւն տանն Արծրունեաց, Թովմա վարդապետի Արծրունւոյ. (Թարգմանութիւն և ծանօթութիւնք. էջ* 1—266)։ — *Գիրք պատմութեանց յօրինեալ յԱռաքել վարդապետէ Դաւրիժեցւոյ. (Թարգմանութիւն և ծանօթու-*

թիւնք. 267–608)։ Յիններորդ չորրորդ գլուխը կը բովանդակէ պատմութիւն աշխարհին Աղուանից (553–562 էջք), որոյ հեղինակ է Յովհաննէս վարդապետ Ծարեցի։ — Յաւելուած Ա. Ծանարաց վրայ (609–613). — Բ. Տարօնոյ և Տարօնացւոց վրայ տեղեկութիւնք» (613–618)։

(Collection d'historiens arméniens. Tome I. Th. Ardzrouni X. s. Histoire des Ardzrouni. — Arakel de Tauriz XVII s. Livre d'histoires. — Johannès de Dzar XVII s. Histoire de l'Aghovanie; traduites par M. Brosset). St. Pb. 1874.

Բ. «Հաւաքումն պատմագրաց Հայոց. թարգմանութիւնք Պրոսէի. Հատոր Բ. Պետրպուրկ, 1876, ութածալ. Դ + 966։

Բովանդակութիւն. «Նախընթաց ծանօթութիւն և ցուցակ նիւթոց. (Ժ–Դ. էջք)։ — Պատմական յիշատակարանք Սոփեաց վրայ, ի գրոց Զաքարիայ սարկաւագի, ԺԷ դար. (1–154)։ — Կոնդակ Յովհաննավանից, ի գրոց Զաքարիայ սարկաւագին (153–190)։ — Եսայի կաթողիկոսի Հասանջալալեանց պատմութիւն Աղուանից. ԺԷ դար. (191–220)։ — Պատմութիւն Դաւիթ Բէկի, և պատերազմացն զոր տուին Հայք Կապանոյ ընդդէմ Թուրքաց, Քրիստոսի 1722 թուականին և Հայոց ՌՃՀԱ. (221–256)։ – Աբրահամ կաթողիկոսի Կրետացւոյ պատմութիւն իւրոյ ժամանակին և Նատրշահի. ԺԸ դար. (257–336)։ — Սամուէլի Անեցւոյ տախտակք ժամանակագրականք. (339–484)։ Զախակողմեան էջք կ'ամփոփեն զծանօթութիւնս և զմեկնութիւնս Պրոսէի, գրուած ի հանդիպոյ բնագրին որ յաջակողմն կիցն։ — Զինուորական սպայի մը յիշատակագիրք որ 1835–38 տարիներուն ծառայած է ի Կովկաս պաշտամամբ. (ռուսերէն գրուածի մը թարգմանութիւն. էջք 485–696)։

Collection d'historiens arméniens. Traduites par M. Brosset. Tome II. St. Pétersbourg 1876, IV +

696: — Mémoires historiques sur les Sofis, par le diacre Zakaria, XVII s. — Cartulaire de l'Asile de Ioannou–vank, par le diacre Zakaria. — Histoire de Aghouanie, par le catholicos Esaï Hasan–Dchalaliantz, XVIII s. – Histoire choisie de Davith–Beg.— Mon histoire et celle de Nadir chah de Perse, par Abraham de Crète, catholicos, XVIII s. — Samuel d'Ani, tables chronologiques. — Souvenir d'un officier, ayant servi dans le Caucase, années 1835–1838.

*Այս մեծ երկասիրութեան գաղափարն ունեցեր էր, ինչպէս քիչ յառաջ յիշեցինք, Եդ. Տիւլօրիէ. և երկու հատոր հրատարակած։ Վ. Լանկլուա և Պրոսէ ուզեցին իրեն անկատար թողածը ի գլուխ հանելով՝ կարեւոր ծառայութիւն մը մատուցանել պատմական գիտութեանց։ Առանց կարող ըլլալու՝ իրենց վերահաս մահուամբը, ամբողջովին ածել յարդիւնս, երախտապարտ է իրաւամբ ուսումնական աշխարհ իրենց յարատեւ ջանիցը, որով յաջողեցան այնչափ ազգային, և եւրոպական ազգաց համար գրեթէ բոլորովին անծանօթ պատմագրաց թարգմանութիւնն ընծայել։*

*Պրոսէի յառաջաբանէն կը քաղենք հետեւեալ տեղեկութիւններն որ մեծապէս հետաքննականք են՝ այդ երկու գիտնոց այդ մեծ ձեռնարկին նկատմամբ, մանաւանդ քանի մը էջ վերջը Լանկլուայի աշխատասիրութեան խօսքն ալ պիտի ընենք։*



*« Բիւզանդարան պատմչաց հրատարակութեան նման՝ Հայոց պատմչաց ալ երկասիրութիւնքը ի մի հաւաքելով տպագրելու խորհուրդը՝ շատ անգամ եւրոպացի հայերէնագիտաց փափաքն ու մտածութիւնն եղած է։*

*« Առանց ուզելու ժամանակաւ աւելի հնագոյնները մէջ բերել, որոց մտքին մէջ յղացած է այս խորհուրդն, հա-*

ւանականաբար Սէն-Մարդէն ալ ունեցած պիտի ըլլայ աստր նման մտածութիւն մը․ վասն զի մահուընէն ետքը ժառանգաց քով գտնուած բանասիրական և մատենագրական երկոց մէջ՝ 1832ին, բազմաթիւ հատուածներ գտայ թարգմանութեանց, որոց թէպէտ ծագումը՝ տարակուսական, իրե՞նն էին արդեօք, թէ այլոց՝ և իր քովը մնացած, և յորոց մին եւեթ մահուընէն ետքը տպագրութեամբ հրատարակեցաւ, իր մէկ ազգականին՝ Լաժառի (Lajard) ջանքով, որ դժբաղդաբար անծանօթ էր հայկական լեզուի, և ոչ ալ այնչափ հմտացեալ՝ թէ բուն պատմական կոչուած ուսմանց և թէ արեւելեան հնագիտութեան։ Եթէ ինք Սէն-Մարդէն այս մտածութիւնն ունեցած ալ չըլլայ, կը թուի թէ ունեցեր է ուրիշ մը՝ աւելի հնագոյն ժամանակաւ *։

« Ես ալ, երեսուն և աւելի տարիներէ յառաջ, բարեբաստիկ գտնուեցայ նմանօրինակ առաջարկութեան մը համար (Պետրպուրկի ) ակադեմիային հաճութիւնը ընդունելու․ բայց իմ այն ժամանակի խորհուրդս էր՝ լոկ բնագրաց հրատարակութիւնը, և տղէկ մը ըմբռնած չէի այդպիսի ձեռնարկի մը դժուարութիւններն, որովք և ոչ իսկ ունեցաւ գործադրութեան սկզբնաւորութիւնն։ Երկու տասնեակ մը հայ պատմագրաց ձեռքէ անցընելէն և ուսումնասիրելէն ետքը, յորոց բազումք դեռ եւս անտիպ էին ի ժամանակին, և որ կարեւոր թուեցան ինձ ի լուսաբանել Վրաց պատմութիւնը, տուի ինք զինքս մեծաջան աշխատութեան յընթեռնուլ և ի հրատարակել զբաղումս ի պատմագրաց Հայոց։ Ծանօթ է թէ ինչպէս քսան տարուընէ ի վեր՝ հայկական տպարանք Կոստանդնուպոլսի, Փարիզու և Էջմիածնի ճոխացուցին զթիւ՝ իրենցմէ տրուած հայ պատմագրաց նախկին տպագրութեամբք։

« 1856 Թուականին Տիւլորիէ Հայկական Մատենագա-

* Տես յ'էջ 139 այս մեր գրուածքին։

րանի մը հրատակութեան յայտարարութիւնը կ'ընէր, որուն ձեռք զարկած էր Ալվազովքի Հ. Գաբրիէլ վարդապետին ու Վիկտոր Լանկլուա գաղղիացւոյն գործակցութեամբ. և ակադիմիոյ միջնորդութեամբ յաջողեցաւ ընդունել շնորհն՝ գնելոյ զայն ընդ հովանաւորութեամբ վեհափառ կայսեր Ռուսիոյ: Նոյն կայսերական պաշտպանութեամբ յաջողեցաւ ալ 1858ին տպագրել առ Ֆիրմէն Տիտոյի զԹարգմանութիւն Մատթէի Ուռհայեցւոյ, որ խաչակրաց ժամանակին համար մեծապէս հետաքննական մատենագիր մ'է, բազմաթիւ տեղեկութիւնք ամփոփելով Զմիկիկ (Յովհաննու) թագաւորութեան, Սելճուգեանց վրայ, և այն յաճախակի յարաբերութեանց զոր Հայաստան ունեցած է Թուրք մեծամեծ իշխանութեանց հետ, որ նոյն միջոցին սկսեր էին ձեւանալ յարեւմտեանն Ասիա: Միայն Ուռհայեցւոյն գրոց տպագրութեան մէջ սահմանուեցաւ գիտուն գաղղիացւոյն ձեռնարկը:

«Անկէ ետքը, կ'երեւնայ թէ մէկդի դնելով ամբողջ հաւաքում մը հրատարակելու խորհուրդն, շատ տարիներ եռեւէ եղաւ ի տպագրութիւն և ի թարգմանութիւն հատուածոց պատմչաց Հայոց՝ որ խաչակրութեանց յարաբերութիւն ունին: Մեծ և գեղեցիկ միածալ հատոր մը, հրատարակեալ ի Փարիզ ի 1869 և առաջին հատորոյ նշանակութիւնը կրելով, կ'ամփոփէ զարգասիս այս ընդարձակ աշխատութեան, ու անկէ տասը տարի յառաջ իրմէ ի լոյս տրուած Հետազօտութեանց առաջին հատորը՝ ի վերայ արուեստական և պատմական ժամանակագրութեան Հայաստանի (Փարիզ, 1859), իրաւամբ նշանաւոր տեղ մը գրաւել կուտան հեղինակին ի շարս հայագիտաց:

⁂

« Սակայն իր եռանդուն գործակիցը, Լանկլուա, օգտուելով քանի մը բարեբաստիկ պարագաներէ, կը յաջողէր ձեռք ձգել ի Նուպար փաշայէ, Եգիպտոսի փախարքային ծառայութեան մէջ գտնուող հարուստ ու մեծ ազդեցութիւն ունեցող հայազգիէ մը, հարկաւոր նիւթական ու դրամական ձեռնտուութիւնը ի հրատարակութիւն պատմագրաց Հայոց, գաղղիական թարգմանութեամբ և հարկաւոր ծանօթութիւններով: Վստահ ի գործակցութիւն այլեւայլ հայազգեաց, որ բաւականապէս հմուտք էին գաղղիականին, ի թարգմանութիւնս, զորս ինք աչքէ պիտի անցընէր, և ի ձեռնտուութիւն Ֆիրմէն Տիտոյի, ինքն Լանկլուա՝ աշխատութեան ծանրագոյն մասը ստանձնած էր, ինչպէս մատենագրական տեղեկութիւնք, ծանօթութիւնք, ամենազգի հետազօտութիւնք, և թարգմանութեանց ալ մէկ մասը:

« Իր նախագիծ յայտարարութեանն համեմատ, գրեթէ երեսունէն աւելի հայ պատմագրաց հաւաքումը պիտի ամփոփուէր ի հինգ մեծ հատորս, որ տարուէ տարի տպագրութեամբ պիտի հրատարակուէին, և յորս մատենագիրք՝ ժամանակագրական կարգով պիտի դասաւորուէին: Ամէն մէկ հեղինակի գրուածոցը ի գլուխ գրուած տեղեկութիւն մը, պիտի տայր հարկաւոր տեղեկութիւնք կենսագրականք, իւրաքանչիւր աղբերաց կարեւորութեան և յարգին, և ի ստորեւ իջիցն ծանօթութիւնք՝ ամենահրաժեշտք ի լուսաբանութիւն հայկական պատմագրութեան մատակարարած նիւթոց:

« Երկար տարիներէ ի վեր պատրաստուած էր Լանկլուա այս մեծ աշխատանքին: Նախկին աշակերտ Յիշատակարանաց և Դիւանագիտութեան վարժարանին (École des Chartes), կենաց պայմանի հանգստութեան և դիւրութեան մէջ, իբրու եռանդուն սիրող մը՝ հետա-

մուտ եղած էր արեւելեան ուսմանց, և կենացը շատ տարիները անցուցեր էր ի հաւաքումն յիշատակագրոց (documents) պատշաճելոց առ Հայս, ի դիւանս Իտալիոյ և Գաղղիոյ՝ 1852–53 թուականին ալ ուղեւորութիւն մը ըրեր էր ի Կիլիկիա, ուր Հայք մերժեալք յԱնւոյ ի Սելճուգեանց՝ ի մետասաներորդ դարու, թագաւորութիւն մը հաստատեցին՝ որ գրեթէ երեք հարիւր տարի տեւեց, և ուր ունեցան հայրապետական աթոռ մը, եպիսկոպոսական աթոռներ, և դեռ եւս ի լերինս Տաւրոսի կը կազմեն պատերազմասէր ժողովրդեան կոյտ մը։

« Լանկլուայի գիտական արշաւանաց արդիւնքն եղաւ գեղեցիկ հատոր մը, յորում ամփոփուած են իր ճանապարհորդութեան պատմական մասը և հնախօսական նիւթեր, և որոց մասնաւորաբար հայկական մասը հաղորդեցին գիտնոց՝ թերթք Ասիական օրագրի, և Հնախօսական հանդիսի (Revue archéologique).

« Սիրող, հետամուտ և ծանօթ դրամագիտականին, յայսմ մասին ուսման օժանդակեց ի նորոգ տպագրութիւն Թղթոց Մարշանի. իր կողմանէ ալ հրատարակեց դրամագիտական երկասիրութիւններ հնոյն Եգիպտոսի, Արարաց՝ յառաջ քան զերեւել իսլամութեան, հնոյն Հայաստանի, կիւլիկեան թագաւորութեանն Հայոց, և ասպետաց կարգի սրբոյն Յովհաննու Երուսաղեմի և Մալթայի, որոնք յաճախ վերաբերութիւն ունեցան Կիլիկիոյ Հայաստանի հետ։

Քրիստոնեայ Ասիոյ միջնադարեան հնութեանց մեծապէս տեղեակ, դիւանաց մէջ ըրած հետազօտութիւններէն ընտիր և օգտակար երկասիրութիւն մը ի լոյս ընծայուեցաւ, Հատուածս հրովարտակաց և յիշատակագրաց Ռուբինեան թագաւորաց մակագրով. և որոյ նախընթաց եղեր էր Յիշատակագիր մը վերջին թագաւորին Հայոց ի ժամանակս խաչակրաց։ Այս համառօտութիւնը՝ որ նախ հրատարակուեր էր Պետրպուրկի կայսերական ակադեմիային հաւաքածոյից մէջ, յետոյ նորոգ երկասիրութեամբ և ի

*գլուխ գրոցն վերը գրուած անունը կրելով, նորագոյն հետազօտութեանց ձամբայ բացաւ...*

*«Այս ամէն երկասիրութիւնքը ի գլուխ հանելէն ետքը՝ 1867ին հրատարակեց Հայ պատմագրաց առաջին հատորը. որ կը բովանդակէ բաց ի ներածութենէ մը, ի յոյն և յասորական աղբերաց հանուած այլեւայլ հատուածներ՝ նկատմամբ հնոյն Հայաստանի. ինչպէս ի Մարիբասայ, ի Բարդածանայ և ի համանուն անվաւեր հեղինակէ. և յետոյ զԹարգմանութիւն գրոցն Ագաթանգեղոսի, Փաւստոսի բիւզանդացւոյ՝ Թարգմանելոց ի յունէ ի հայ: Թէպէտ մեծ աշխատանք ունեցած պիտի ըլլայ հրատարակիչն ի գիւտ և ի տպագրութիւն այս վերը յիշեալ հատուածոց, հարկ է և զայն ըսել որ կրկին կիրառութեամբ գործածուած են. վասն զի Մարիբաս և Բարդածան նորէն պիտի հրատարակուէին յետոյ ի Թարգմանութեան պատմութեան Խորենացւոյ՝ յորմէ հանուած են. բայց յոյն սկզբնագրոց հրատարակութիւնը՝ հայ օրինակաց հետ, աղէկ մտածութիւն մ՚էր:*

*Ագաթանգեղայ գրոց գաղղիական Թարգմանութիւնն ընծայած ատեն, Լանկլուա պատշաճ սեպեր է զեղչել Տրդատայ քարտուղարին երկասիրութեան այն ամէն մասը որ պատմութեան չիվերաբերիր: Քննադատից կ՚իյնայ որոշել թէ այս կերպով վարուելուն գովութեան թէ ոչ՝ գործ մը ըրած ըլլալը:*

*«Հասարակաբար այն սեպուած է ընդունելի կարծիք կամ դրութիւն որ բնագիրք զեղչ չիկրեն. բայց ի գործադրութեան՝ երբ բանաստեղծն մասնաւոր նպատակ մը ունի, օրինակ իմն՝ ժողովրդական ընել պատմական նիւթերը, պարտաւորած չէ աստուածաբանական ճոխաբանութիւններն ալ Թարգմանելով՝ ծանրացընել իր աշխատանքը: Նայման որ փոխադրեց յանգղիական լեզու, և արեւելեան ժողովոյն ծախքովը տպագրեց ի Լոնտոն, Եղիշէի Վարդանանց պատմութիւնը. — Եւարիստ Բրիտոմ՝ Թարգմանիչ Արիստակեայ Լաստիվերտացւոյ, ի-*

րենց եւրոպացի ընթերցողաց համար՝ բոլորովին անշահ համարուած կտորները չկքաշուեցան իրենց թարգմանութենէն դուրս ձգել։ Բարեպարիշտ խորհրդածութիւններ, աղօթք՝ որովք լի է Ագաթանգեղայ ոչ այնչափ ճշմարտայօդ (légendaire) պատմութիւն, և ողբական եղերերգութիւնք առ Լաստիվերտացւոյն, կատարելապէս անհանդուրժելիք պիտի ըլլային ի գաղղիականն։ Եդեսիոյ առման ողբը, Յէ---- -րչէ վիպասանականն Ներսիսի Շնորհալւոյ, կրնան հաճելի ըլլալ բարեպաշտօն ընթերցողին, հայու մը, ի շնորհս լեզուին և հայրենասիրական նիւթոյն, բայց ոչ նոյնպէս կամ հաւասար չափով եւրոպացւոյն, որ ի վեր քան զամենայն օգտակարը կը փնտռէ։ Ուստի անոնք որ արեւելեան քանի մը գրուածներ կարդացած են՝ մէկ ծայրէն միւսը ճամարտակ հաւտորութեամբ յօրինուած, փոխաբերութեամբք և այլաբանութեամբք ծանրաբեռնեալք, լաւ գիտեն թէ ինչպէս կարելի է անոնց երկու երեք էջերը քանի մը բառով ամփոփել։ Ինձ կ'երեւնայ թէ մեղադրութեան արժանի չիկրնար սեպուիլ Լանկլուա այս նիւթին մէջ իր նախորդաց օրինակին հետեւելուն համար, և յորմէ ես ալ պիտի չխորշիմ ի լինել պատեհին։

« Նոյն առաջին հատորոյն մէջ կը գտնենք Փաւստոսի Բիւզանդայ պատմագրութեան մինչեւ առ մեզ հասած չորս դպրութիւնք կամ գիրք, առաջին անգամ թարգմանուած ի լեզու գաղղիացի՝ ամենընդունակ հայու և քաջահմուտ հայագիտի մը ձեռքով, Մկրտչի Էմին, որ Մոսկուայի հինգերորդ վարժանոցին (gymnase) ուղղիչն է։

« Յետոյ Ղերուբնայի պատմութիւնն, նկատմամբ յարաբերութեանց Աբգարու թագաւորին Եդեսիոյ ընդ Յիսուսի Քրիստոսի, հանեալ յանտիպ ձեռագրէ մը որ ի մեծի մատենադարանին Փարիզու։

« Անկէ վերջը եղած նոր հրատարակութիւն մը այս հետաքննական գրութեան, ի ձեռն իմաստուն Հ. Ղեւոն-

դեայ Ալիշան, և ըստ ասորի աղբերաց հրատարակելոց ի Գիւըըդոնէ, այլեւայլ կերպարանափոխութիւններ բե-րաւ նկատմամբ հայ թարգմանութեանն...

« Ջենոբ Գլակ, ասորի մատենագիր, որոյ գրուածքին միայն հայերէնը հասած է առ մեզ, Յովհաննու Մամի-կոնենի երկասիրութիւնն ալ անոր հետ միացուցած, ո-րովհետեւ շարայարութիւն մը կրնայ սեպուիլ առաջնոյն, հասցընելով մինչեւ ի կէս եօթներորդ դարուն։ Յետոյ քանի մը հատուածք, որ չունին մեծ նշանակութիւն, կը լրացընեն այս առաջին հատորը, որ նուիրուած է, ինչպէս կը տեսնուի, հին թարգմանչաց որ ապրեցան յառաջ քան զՄովսէս Խորենացի։

***

« 1869ին հրատարակուեցաւ երկրորդ հատորը, որ բո-վանդակէ զՊատմութիւն վարուց սրբոյն Մեսրովպայ, երկասիրութիւն Կորեան. — զՄեծին Ներսիսի հայրա-պետի՝ չորրորդ դարու, անանուն մէկու մը ձեռքով շա-րագրուած. — զպատմական երկասիրութիւնս Մովսիսի Խորենացւոյ, Եղիշէի և Ղազարայ Փարպեցւոյ. հանդերձ ժամանակակցական ցուցակօք, թէպէտ առանց նորագոյն քննադատութեանց, թագաւորաց՝ իշխանաց և կաթո-ղիկոսաց։ Ապա համառօտ քաղուածք ի մթին գրոց Եզ-նըկայ Կողբացւոյ, ի վերայ Մազդեզանց կամ կրօնին Պարսից, որ իր գրոցը միակ մասն է որ ուղղակի կը վերաբերի Հայաստան աշխարհի և պատմութեան։ Ասոնք ամէնքը չորրորդ և հինգերորդ դարուց պատմագիրք են, և որոց վրայ կենսագրական և մատենագրական գտնուած տեղեկութիւններն հաւաքեր է հրատարակողն։

« Այս երկրորդ հատորոյ տպագրութեան ատեն, ան-խոնջն Լանկլուա ի լոյս կ'ընծայէր նաեւ զթարգմանու-թիւն իւր՝ ճոխացուցեալ բազմաթիւ և բազմաշահ ծա-նօթութեամբք, Միխայէլի ասորւոց հայրապետի ընդհա-

նուր պատմութեան, և որոյ միայն Հայ թարգմանութիւնն կը գտնուի։ Գոհ եմ որ կերպով մը օժանդակեցի այս գործոյն, չառնըլով յանձն կորատել այնպիսի չափազանց երկասիրութիւն մը, և միայն այն հատուածները ու թարգմանել — թէպէտ և բազմաթիւք, — որ խաչակրաց ժամանակին կը վերաբերէին։ Ասով պատճառ եղայ ի թարգմանութիւն և ի հրատարակութիւն ամբողջ գրուածին։

«Բաւական է Միխայելի գրոց քանի մը էջը կարդալ, որոյ բնագիր դեռ անտիպ է*, գաղափար մը առնլոյ համար թէ որչափ և որպիսի աշխատանք կը պահանջէ թարգմանութիւնն։ Բաց ի ընթացիկ ոճով գրուած պատմութենէն, լի է յատուկ անուամբք անձանց և աշխարհաց, որ ասորականէ ի հայ փոխադրութեանց պատճառաւ՝ նշանաւոր այլակերպութիւններ կրած են։ Թուականաց նկատմամբ ալ՝ ասորի և յունական այլեւայլ թուականաց հետ բաղդատելով՝ վերածելու է ի հայկականն և ի քրիստոսական։ Այս աշխատութիւնը յաջողակ կերպով ի գլուխ տարած է Լանկլուա, թէպէտ և առանց մտնելու ի քննադատական վէճս, և չատտնալով նշանակել զտարբերութիւն ամացն որ տեսնուին ի հայ թուաբերութեան։ Բայց կարծես թէ աշխատանաց ծանրութեան չկրցաւ դիմանալ։ Ծնեալ ի 20 մայիսի ի 1829, մեռաւ ի չորեքտասան մայիսի 1869 երբ արդէն լմընցած էր իր հաւաքման երկրորդ հատորը, Միխայելի թարգմանութեան տպագրութիւնն լրացած ի Վենետիկ, թէպէտ առանց կարենալու տեսնալ անոր ամբողջին հրատարակութիւնը։ Սաստիկ դժուարաշնչութիւն մը, հետեւանք բազմաշխատ ուղեւորութեանն ի Կիլիկիա, և անխոնջ աշխատասիրութիւն, հազիւ քառասուն տարուան հասակին՝ վախճան տուին անոր կարճատեւ բայց այնչափ օգտակար կերպով գործածուած կեանքին։

* Հիմայ հրատարակուած յԵրուսաղէմ. յամի 1871։

*« Նիւթական պարագայք խափան եղեն ինձ ի* 1869, *գիտնալու թէ ինչ և որպիսի պատմական երկք պատրաստուած կամ ի պատրաստութեան են, ո՛յք իրեն գործակիցք՝ որոց վրայ վստահացած էր ի շարունակութիւն իւր մեծ ձեռնարկութեան։ Սակայն և այնպէս, հազիւ թէ աչքը գոցած էր, գրեցի առ Տիտոյ տպագրապետ, չթողուլ զայն. ինչուան համարձակեցայ իր մտադրութիւնն հրաւիրել անձի մը վրայ զոր ամենայարմար կը դատէի ի շարունակել զգործ Լանկլուայի։ Այս անձն էր Եւարիստ Բրիւտոմ, արդէն պատուով ծանօթացած Զենոբայ Գլակ և Արիստակեայ պատմութեանց թարգմանութեամբք, և ի ռուս լեզուէ ի գաղղիականն դարձուցած և Ասիական օրագրին մէջ հրատարակուած Քերովբէի Պատկանեանի օգտակար աշխատասիրութեան որ էր համառօտութիւն դասակարգութեան Սասանեան թագաւորաց։ Գործունեայ, աշխատասէր և խղճամիտ անձ մը, ամենայարմար՝ լուրջ վաստակօք ծանօթացընելու հայ պատմագիրքը. և թէպէտ իր պարապմունք թոյլ չըտային բոլորովին ի մշակութիւն գիտութեանց անձնատուր ըլլալու, Բրիւտոմ յօժարամիտ կը ստանձնէր զայն ձեռնարկ. և իմացայ ալ թէ ինչպէս Նուպար փաշայի ալ ընդունելի եղան թէ անձը և թէ առաջարկած պայմանները, որովհետև դրամական նկատմամբ Լանկլուայի դիւրութիւնը չունէր։ Գործը յերկարելով,* 1870 *թուականին՝ որ այնչափ աղէտաբեր եղաւ Գաղղիոյ, մեռաւ Բրիւտոմ։*

***

*« Ո՞ւր կարելի էր գտնել անձ մը՝ բաւական ի բառնալ զայս ծանրութիւն։ Եւրոպացի հայագէտք՝ սակաւաթիւք են. և դարը յորում կ'ապրինք՝ մասնագրական այսպիսի ձեռնարկութեանց օժանդակելէն հեռի է, մանաւանդ այնպիսեաց որ նշանաւոր դրամագլխոյ մը կը կարօտանան։*

« Գործերը երբ այս յուսաբեկ և վհատեցուցիչ հանգամանաց մէջ էին, միտքս դրի կենացս վերջի օրերը նուիրել ի շարունակութիւն Լանկլուայի գեղեցիկ մտածութեանը: Արդէն 1868ին ակադեմիոյ հաւանութիւնն առած էի՝ Հայ պատմագրաց Մատենադարանին մէջ կրկին տպագրել զթարգմանեալս յինէն զպատմութիւնս Ստեփաննոսի Սիւնեաց և Մաղաքիայի, այս վերջինս կրկին աչքէ անցընելով և ուղղելով ըստ հրատարակութեանց Պատկանեանի. յետոյ հրատարակեր էի նաև զթարգմանութիւն Կիրակոս և Ուխտանէս պատմչաց, և որ կրնային տեղաւորիլ նոյն հաւաքման մէջ:

« Չեմ քաշուիր խոստովանելէն՝ թէ ինչպէս մասնաւոր սէր ունիմ հայ վարդապետաց պատմական երկասիրութեանց. իրենց իրական արժէքը, ըստ մեծի մասին ականատես վկայք, ազգերնուն ընդարձակ վերաբերութիւնք Ասիոյ իշխողաց հետ, Սասանեանց, Սելճուգեանց և անոնցմէ ետքը եկողներուն՝ Մողոլաց, Խաչակրաց, Բիւզանդիոնի կայսերաց, և նորագոյն ժամանակաց մէջ Թուրքաց և Պարսից, ժամանակագրական ճշդութիւնք՝ ի բաց առեալ անհրաժեշտ և անխուսափելի վրիպակք գրչաց և ընդօրինակողաց, այս ամէնը՝ արժանաւոր ըրած են զիրենք գիտնոց մտադրութեանը:

« Այսպիսի դիտաւորութեամբ, թերևս առանց յոյժ մտադիր ըլլալու պարագայից և հանգամանաց, և առանց մեծ կարևորութիւն տալու ժամանակագրական դասաւորութեան, պատրաստեցի զթարգմանութիւնս Թովմայի Արծրունւոյ, ժամանակակցական կանոնաց կամ տախտակաց Սամուէլի Անեցւոյ, զորս արդէն գլխաւորած և ակադեմիոյ ներկայացուցած էի յամի 1871. — Առաքել պատմչի, Յովհաննու Ծարեցւոյ, Զաքարիայ Սարկաւագի պատմական յիշատակարանաց և Կոնդակաց Յովհաննավանից յութևտասներորդ դարու, զորս թարգմանելով՝ ներկայացուցի ի 1872 թուականի. — Եսայեայ Հասանջալալեանց, Դաւթի և Աբրահամու Կրետաց-

ւոյ՝ յութեւտասներորդ դարու, և հուսկ յետոյ՝ Աբրահամու Անթապեցւոյ »։

***

Շարունակենք Պրոսէի երկասիրութեանց մատենագրական ցուցակը․

48․ « Պատկեր Հայաստանի պատմական գրականութեան », ընթերցեալ ի 25 մայիսի 1876․ (–Revue de la littérature historique de l'Arménie)․

49․ (Փարիզու) արքունի մատենադարանին 114 թուանշանը կրող հայ գրչագրէ մը քաղուած, նկատմամբ վրական կաղանդացուցի․ Թարգմանութիւն Պրոսէի »․ (Extrait d'un manuscrit arménien, N. 114 de la Bibliothèque royale, relatif au calendrier géorgien, traduit par M. Brosset)․

50․ « Համառօտութիւն պատմութեան արշաւանացն Մողոլաց ի հիւսիսային Ասիա » յերեքտասաներորդ դարու։ Լըպոյ, պատմութիւն արեւելեան կայսրութեան, Հատ․ ԺԷ․ (1834)։ (– Precis de l'histoire l'invasion des Mongols dans l'Asie occidentale, au XIII s. Lebeau, Histoire de Bas Empire, Tome XVII, 1834)․

51․ « Պատմութիւն Բագրատունեացն Վրաց, ըստ հայ և յոյն հեղինակաց, մինչեւ ի սկիզբն մետասան դարուն (ծննդաբանական տախտակներով), ընթերցեալ յ'9 մայիսի 1843։

Բովանդակութիւն․ « Վրացի Բագրատունեաց սկզբնաւորութենէն ց'ամն 786, յետ Քր․։ – Երկրորդ իշխանութիւն հարստութեան Բագրատունեաց ի Վիրս․ (786)։ – Պատմութիւն Բագրատունեաց Հայոց, ըստ յարաբերութեանն ընդ վրական Բագրատունեացն Վրաց ըստ հայկական աղբերաց։ — Հայ հեղինակներէ քաղուած տեղեկութիւնք Տայոց և Ափխազաց Բագրատունեաց վրայ »։

(–Histoire des Bagratides Géorgiens, d'après les au-

teurs arméniens et grecs, jusq'au commencement de XI s).

52. « Պատմութիւն Վրաց, ի հին ժամանակաց մինչեւ յիննեւտասներորդ դար. Թարգմանութիւն ի Վրաց լեզուէ ի Պրոսէէ։ Առաջին մասն, Հին պատմութիւն, ցամ 1469 (յետ. Քր.) Թարգմանութիւն և ծանօթութիւնք։ Պետրպուրկ, 694 էջ։ — Յաւելուածք և լուսաբանութիւնք ի պատմութիւնն Վրաց ի հին ժամանակաց ցամ տեառն 1469, ի Պրոսէէ։ — Պետրպուրկ, 1851, 494 էջք.

**Բովանդակութիւն**. « Ժամանակագրութիւն հայկական, հայ լեզուով գրուած համառօտ տարեգրութիւն մը Վրաց, թարգմանութեամբ Պրոսէի. (1–61)։ — Պատմութիւն կրօնական բաժանման ընդ Վիրս և ընդ Հայս, անդատին ի վերջաւորութենէ վեցերորդ դարու. (107–125)։ — Պատմականք ի հեղինակաց Հայոց ի վերայ թագաւորութեան Գորգի առաջնոյ. (209–218)։ — Տեղեկութիւնք ի վերայ թագաւորութեանց Գորգի Լաշայ և Ռուսուդանայ։ Քաղուածք ի պատմութեան գրոցն Վարդանայ. (298–309)։ — Արշաւանք Ճէլալ-էտ-տինի ի Վիրս (309–317)։ — Քաղուածք ի գրոցն Կիրակոսի, հայ հեղինակի ԺԳ դարու, գլխաւորապէս նկատմամբ Թամարայ և իր յաջորդաց (412–437)։ — Պատմութիւն Մաղաքիայ աբեղայի (438–467)։ – Հատուածք ի պատմութենէ Ազուանից Մովսէսի Կաղանկատուացւոյ ». (468–494)։ (– Histoire de Géorgie, depuis l'antiquité jusqu'au XIX s. traduite du géorgien par M, Brosset. I. Partie. Histoire ancienne jusqu'en 1469 de J. Ch. (traduction et annotations). Additions et eclaircissements à l'Histoire de la Géorgie, depuis l'antiquité jusqu'en 1469 de J. Ch. Par M. Brosset) S. Pb . 1851.

**Մասն Երկրորդ**. « Նոր պատմութիւն Վրաց ի 1469 ամէ ց'1800 ամ տեառն. հրատարակեալ ի վրաց լեզու

ի Զուպինովէ. թարգմանեալ ի Պրոսէէ, ծանօթութեամբ և յաւելուածովք: — Պետրպուրկ, 1856, էջք 660: — Հատուածք ի պատմութենէ Առաքելի Դաւրիժեցւոյ, վերաբերեալք թագաւորութեան Սոլոմոնի Ա. և Գորգիի Ժ. (421–445):

(–II. Partie. Histoire de la Géorgie moderne; depuis 1469, jusqu'en 1800 de J. Ch. publiée en géorgien par M. Tchoubinoff; traduite du géorgien par M. Brosset. Traduction, annotations et additions). S. Pb. 1856.

53. «Հայոց հասարակաց իրաւագիտութեան վրայ մանրամասնութիւնք, քաղեալք ի վրական օրինագրոց Վախթանգայ թագաւորի. թարգմանեալք ի բնագրէն ի ձեռն Պրոսէի: (Ի Նոր Աշխարհ օրագրի, 1832):

(– Détails sur le droit public arménien, extraits du Code géorgien du roi Wakhtang, et traduits du géorgien par M. Brosset.

54. «Տեղեկութիւնք հայ գրչագրի մը վրայ՝ Մխիթարայ Գօշի, Ցաղագս իրաւանց դատաստանաց. ընթերցեալ յ'17 օգոստ. 1849:

(– Rapport sur un manuscrit arménien. Mkhitar Goch, Livre de décisions judiciaires).

55. «Ժամանակագրական ցուցակ իշխանաց և մետրապոլտացն Սիւնեաց, մինչ ի վերջ երեքտասաներորդ դարու: 1861 օգոստոսի 23ին նիստին ներկայացուած յիշատակագրէ մը քաղեալ. ընթերցեալ ի 22 նոյեմբ. 1861:

— (Liste chronologique des princes et métropolites de Siounie, jusqu' à la fin du XIII s. Extrait d'un mémoire présenté à la seance du 23 âout 1861).

56. «Հայաստանի հին պատմութեան վրայ, ըստ սրբագիր և բեւեռատիպ արձանագրութեանց». ընթերցեալ ի 13 ապրիլի 1871:

— (Sur l'histoire ancienne de l'Arménie, d'après les textes hieroglyphiques et cunéiformes).

57 · « *Կոստանդնուպոլսոյ Աւետիք պատրիարքին Հայոց քաղաքագիտական պատմութիւնը · ընթերցեալ յ՚13 ապրիլի* 1858 ։

*ա · Ընթագրեալ հայ Երկաթի դիմակը, կամ ինքնագիր կենսագրութիւն Աւետիք պատրիարքին Կոստանդնուպոլսոյ, վաւերական պաշտօնական դրութեամբք ։ Առաջին յօդուած · Ներածութիւն մը ընդհանուր տեսութեամբ Երկաթի դիմակին խնդրոյն վրայ · ընթերցեալ ի* 21 *օգոստ ·* 1873 ։

*բ · Ընթագրեալ հայ Երկաթի դիմակը, կամ ինքնակենսագրութիւն Աւետիք վարդապետի Թոխաթեցւոյ, ընկեցեալ ի պատրիարքական աթոռոյ Կոստանդնուպոլսի, և Երուսաղեմի առաջնորդ գրուած · թարգմանեալ ի հայէ ի Գրոսէէ ։— Երկրորդ յօդուած · թարգմանութիւն Աւետիք պատրիարքի յիշատակագրին յօրինելոյ ի նմանէ ի* 1710 · *հանդերձ վաւերականօք · ընթերցեալ ի* 21 *օգոստ ·* 1873 ։

— (Histoire diplomatique du patriarche arménien de Constantinople Avedik.

58 · « *Ժամանակագրութիւն Տրապիզոնի, շարագրեալ ի յոյն լեզու ի Միքայելէ Պանարետ, և առաջին անգամ հրատարակուած Վենետկոյ ձեռագրի մը վրայէն, ի Տաֆելէ, իբրու շարայարութիւն մանր գրուածոց Եւստաթիոսի, ի* 1829 · *և թարգմանեալ ի կրսերոյն Պրոսէէ ի գաղղիականն ։* (*Լըպօյ, Պատմութիւն արեւելեան կայսերութեան, ի հատ ·* XX 482–509) ։

— (Chronique de Trébisonde, composée en grec par Michel Panarète, publiée pour la première fois d'après un manuscrit de Venise, par M. Tafel, à la suite des opuscules d'Eustathe, en 1829, et traduit en francais par M. Brosset, jeune.

59 · « *Հատուածք յարեւելեան մատենագրաց՝ նկատմամբ առմանն Կոստանդնուպոլսոյ ։ Եղերերգական քերթուած յառումն Պոլսոյ յԱբրահամէ, որ ի ԺԵ դարու · ի հայկականէն թարգմանեալ ի ձեռն Պրոսէի ։*

— (Fragments d'auteurs orientaux relatifs à la prise de Constantinople. Mélodie élégiaque sur la prise de Stamboul, par Abraham, XV s. traduite de l'arménien par M. Brosset.

60 · « Ցուցակ մատենադարանին Էջմիածնի, զոր յօրինեաց Կորգանով, և թարգմանեց Պրոսէ, արտաքոյ կարգի անդամ ակադեմիոյ: Պետրպուրկ, 1840, էջք 121 · բնագիրն ռուս և ի հանդիպոյ գաղղիարէն թարգմանութիւնն:

— (Catalogue de la Bibliothèque d'Edchmiadzin, composé par M. Korganof, et publié par M. Brosset, académicien extraordinaire. S. P$^{b}$ . 1840 · Texte russe, et français en regard.

61 · Լըպօյ, Պատմութիւն արեւելեան կայսերութեան, նոր տպագրութիւն, ամբողջապէս կրկին աչքէ անցած, ուղղութեամբք և յաւելուածովք ըստ արեւելեան պատմըչաց ի Սէն-Մարդէնէ, Արձանագրութեանց և Գեղեցիկ դպրութեանց ակադեմիոյ անդամ:

Հատորքն Ա–ԺԳ · 1824–1832 հրատարակեալ են ի Սէն-Մարդէնէ. և ԺԴ–ԻԱ. շարայարեալք ի Պրոսէէ կրտսերոյ *:

* Տիւլօրիէ յիւրում Տեղեկագրին. En parcourant la très longue liste des productions que M. Brosset à signées de son nom, il est impossible de ne pas éprouver un sentiment d'etonnement et presque d'admiration pour une aussi féconde activité, et en même temps de regrets pour les defauts qui sont la contre-partie de cette éminente qualité, c'est-à-dire l'absence du sens critique, et de cette perfection relative qui n'est obtenue que par une élaboration patiente et refléchie. Այսպէս կը գրէր ի 1867, և իր անվիճելի հմտութեամբ հայագիտական ուսմանց մէջ, չէր կրնար հանդուրժել ուրիշ եւրոպացւոց ոմանց դիւրութիւնը և արագութիւնը ի գիր և ի վճիռ առանց նախընթաց լուրջ ուսումնասիրութեան:

## Վ. ԼԱՆԿԼՈՒԱ

Լանկլուա Վիկտոր ծնաւ ի Տիէփ Գաղղիոյ ի 20 մայիսի յամի 1829։ Հին Հրովարտակաց (Chartes) դպրոցին և արեւելեան կենդանի լեզուաց ուսումնարանաց մէջ սորվելով, 1852–3ին Նափոլէոն Գ. կայսեր յանձնարարութեամբ ուսումնական–հետազօտական ուղեւորութիւն մը ըրաւ ի Կիլիկիա և ի Փոքրն Հայաստան։ Հետը բերաւ հաւաքումն մը թրծած աղիւսէ շինուած արձաններու՝ զոր Տարսոնի նախնի մեռելատանի մէջ գտեր էր, ինչպէս նաեւ հարիւրի չափ արձանագրութիւնք Կիլիկիոյ՝ յոյն, հռովմայեցի, բիւզանդական և հայ լեզուներով, զորս ապա հրատարակեց ի Փարիզ (Inscriptions grecques, romaines, byzantines et arméniennes de la Cilicie; Paris, 1854)։ Տեղեկագիր մը այս ճանապարհորդութեան տպագրեցաւ ի 1854, բայց ամբողջութիւնը ի 1861 այս խորագրով. « Ուղեւորութիւն ի Կիլիկիա և ի լերինս Տաւրոսի » (Voyage dans la Cilicie et dans les montagnes de Taurus), քանեւութ պատկերներով և մէկ աշխարհագրական քարտիւ։

Յունական և հռովմէական հնութեանց գիւտերն Լանկլուայի ջանքով, քննադատուեցան Արձանագրութեանց և Գեղեցիկ դպրութեանց ակադեմիոյ մէջ՝ ձեռնհաս հնախուզի մը, Ռաուլ Ռոշէդի խօսքերով, ու խիստ դատաստան մը տրուեցաւ երիտասարդ ճանապարհորդին հետազօտութեանց այս մասին վրայ։ Իսկ իր այցելած տեղերուն ստորագրութեանց և կարդացած արձանագրաց նկատմամբ հարկ էր աւելի ներողամիտ աչքով նայիլ։ Հայ արձանագրութիւններն կարդալու և լուսաբանելու համար, որք յաճախ իրարու հետ խառնուած տառերով ձեւացած են, մեծ վարժութիւն, և լեզուին՝ որով գրուած

են, ամենամեծ հմտութիւն պէտք է ունենալ։ Հարկ է ըսել թէ կը պակասէր այս ի հեղինակն ուղեւոր։

Մասնագիտական եռանդով և բաւական յաջողութեամբ զբաղեցաւ Լանկլուա նաեւ դրամագիտութեամբ, ժամանակագրութեամբ և հրովարտակաց գիտութեամբ։

Ուստի երբ Տիւլորիէ՝ հայ պատմչաց հաւաքմանն, ու անոնց գաղղիական թարգմանութեան հրատարակութեանն մտածութիւնն ունեցաւ, ուզեց օգտուիլ Լանկլուայի մասնագիտութեամբն և հմտութեամբ, իրեն յանձնելով հայկական դրամագիտութեան պատկանող մասը, որ մինչեւ այն ատեն գիտնաբար ուսումնասիրուած չէր ի Գաղղիա։ Լանկլուա մտադիւր յանձն առաւ այն ձեռնարկը, խոստանալով կարգի դնել և խօսիլ առանձին գրուածով Ռուբինեան հարստութենէ մինչեւ առ մեզ հասած դրամոց վրայ. և նախկին փորձն ըրաւ թուղթի ձեւով գրուածք մը ուղղելով առ Այվազովքի վարդապետ, որուն խորհրդովը կ'ուզէր առաջնորդուիլ իր այս ուսումնասիրական հետազօտութեանց մէջ (Revue archéologique, էջ 467, Փարիզ, 1853։ Քանի մը տարի վրան անցնելէն ետքը, Լանկլուա մասնաւոր գրութիւն մը հրատարակեց, հետազօտելով այս նկատմամբ իր ըրած կամ իրեն հաղորդուած գիւտերը. բայց որովհետեւ ռուբինեան իշխանաց շատերը համանունք են, և իրենց անուամբը գտնուած դրամոց վրայ թուականք կը պակսին, ըրած դասակարգութիւնք հետեւաբար աւելի մերձաւորականք (approximatifs) կրնան համարուիլ, մերթ եւս ենթադրականք։

Այս առաջին ջանքերը ըստ մասին ուղղուած են՝ Վիէննայի Մխիթարեան ուխտէն Սիպիլեան Հ. Կղեմէս վարդապետին համառօտ՝ գերման լեզուով շարադրեալ տետրակի մէջ, որ շատ տարիներ խորունկ ուսմամբ զբաղեր էր Ռուբինեան դրամոց վրայ (Beschreibung noch unedirten Münzen der Armenisch–rubenischen Dynastie in Kilikien)։ Այս գիտնականն ուրիշ մեծակշիռ

աշխատութիւն մը մի և նոյն նիւթին վրայ՝ արդէն աւարտած և հրատարակելու վրայ էր, երբ զայն աւելի եւս կատարելագործելու փափաքն յորդորամիտ ըրաւ զհեղինակն ճանապարհորդութիւն մը ընելու յարեւելս, ուր և հանդիպեցաւ իր վաղահաս վախճանը. և մահուընէն ետքը միաբանակցացը ջանքով և յաւելուածներով հրատարակուեցաւ ի 1892, ի Վիէննա, ի Մխիթարեան տպարանի ։

***

Լանկլուայի դրամագիտական երկասիրութիւնք հետեւեալքն են. « Դրամագիտութիւն Վրաստանի ի միջին դարու » (Numismatique de la Géorgie au moyen âge; Paris, 1852)։ — « Դրամագիտութիւն եգիպտական անուանց առ հռովմէական վարչութեամբ » (Numismatique des noms d'Egypte sous l'administration romaine; 1852)։ — « Դրամագիտութիւն Հայաստանի միջին դարուց » (Numismatique de l'Arménie au moyen âge; 1855)։ – « Ընդհանուր դրամագիտութիւն Հայաստանի » (Numismatique générale de l'Arménie, 1858)։ — « Հնոյն Հայաստանի դրամագիտութիւնը, Տիւլորիէի հրատարակելիք պատմական մատենադարանին համար շարադրուած » (Numismatique de l'Arménie dans l'antiquité, pour la Bibliothèque historique arménienne de Dulaurier, 1858)։ – « Կիլիկեան չհրատարակուած կամ քիչ ծանօթ դրամոց վրայ, արտատպեալ ի Դրամագիտական հանդէսէ » (Monnaies inedites, ou peu connu, de la Cilicie, extrait de la *Revue numismatique*, 1854)։ – « Ճաշակ մը կամ փորձ դասակարգութեան Վրաստանի դրամական շարի, ի հին ժամանակաց մինչ առ մեզ » (Essai de classification des suites monétaires de la Géorgie, depuis l'antiquité jusqu' à nos jours; 1860)։



Պետական մանաւոր յանձնարարութեամբ 1861ին յիտալիա ղրկուեցաւ Լանկլուա, նոյն երկրին մատենադարանաց և դիւանաց մէջ ամփոփուած գրուածներու քննութեամբ ուսումնասիրելու խաչակրութեանց ժամանակ Գաղղիոյ և Հայոց արքունեաց մէջ վերաբերութիւնները։ Քննեց Գենուայի, Թուրինի և Վենետկոյ դիւանները. և այն առթով հրատարակեց Տեղեկագիր մը այս վերջին քաղաքին մէջ գտնուած հայկական սրբոյն Ղազարու կղզւոյն ու մենաստանին վրայ, հանդերձ համառօտ տեսութեամբ հայ ազգին պատմութեան և մատենագրութեան, որ և հրատարակուեցաւ նոյն կղզւոյն տպարանէն այլեւայլ անգամ, և ունեցաւ նաեւ անգղիական, գերման, լեհ և հունգար թարգմանութիւններն ու տպագրութիւնները։ Բնագրին առաջին տպագրութիւնն եղաւ ի 1863, ու հետեւեալ տարին հրատարակուեցաւ նաեւ յԱսիական օրագրին այս խորագրով. « Յիշատակագիր ի վերայ սկզբնաւորելոյ մատենագրութեան և դպրութեանց ի Հայաստան » (Mémoire sur les origines de la culture des lettres en Arménie, p. 200–223). ու « Մխիթարեան Միաբանութիւն և մենաստան Հայոց ի Ս. Ղազար » (La Congrégation des Mékhitaristes et le couvent arménien de St. Lazare, p. 383–397)։ Նոյն տարին հրատարակեց ի Հանդէս Ասիական « զժամանակագրութիւն Հեթմոյ տեառն Կոռիկոսի, գրուած ի Հեթում կրօնաւորէ, հեղինակէ պատմութեան Թաթարաց » (Chronologie de Héthoum, seigneur de Gôrigos, ouvrage inédit du moine Aïthon, auteur de l'histoire des Tartares). Նոր շար, հատոր ԺԵ. էջք 103–114։ Ի սուրբ Ղազար Վենետկոյ ալ հրատարակեց « զԳանձարան հայկական հրովարտակաց » (Le Trésor des Chartes d'Arménie, ou Cartulaire de la Chancellerie

royale des Roupéniens, comprenant tous les documents relatifs aux établissements fondés en Cilicie par les ordres de chevalerie institués pendant les Croisades et par les Républiques de l'Italie, pp. 242):*

***

*Լանկլուայի գլխաւորագոյն արդիւնք մ՚ալ է որ ձեռք զարկաւ Հայոց հին և Նոր պատմչաց հրատարակութեան ընդ հովանաւոր պաշտպանութեամբ Նուպար փաշայի, և որքոյն Ղազարու միաբանից, և ուրիշ թէ օտար և թէ ազգային հայագիտաց աջակցութեամբ: Միայն երկու հատորք տպագրուեցան այս կարեւոր և մեծապէս հետաքննական հրատարակութեան: Պրոսէի տուած տեղեկութիւններն այս մեծ ձեռնարկին վրայ՝ որ Լանկլուայի մահուամբ անկատար մնաց, նախընթաց էջերու մէջ հրատարակեցինք: Առաջին հատորն ի* 1867, *կ՚ամփոփէ զյոյն և զասորի պատմիչս որ ի հին ժամանակաց թարգմանուեցան ի հայ, և են. Մար Իբաս Կատինա, Բարդածան, Ագաթանգեղոս, Փաւստոս Բիւզանդ, Ղերուբնա Եդեսացի, Զենոբ Գլակ, Յովհաննէս Մամիկոնեան, Սուտ*

* *Տիւլօրիէ որ նախանձորդ մ՚էր Լանկլուայի՝ հետեւեալ քննադատութիւնն կ՚ընէ այս երկասիրութեան վրայ: Յիշելով թէ ի տպարանի Մխիթարեանց և իրենց ծախիւք եղած է հրատարակութիւնն կը յաւելու;* Cette circonstance de lieu est à noter; car elle explique la parfaite correction des textes arméniens que ce livre contient, et sont les Mékhitaristes eux mêmes surveillé l'impression. Mais il serait impossible d'accorder le même eloge à la reproduction des pièces françaises ou latines, dont se compose la presque totalité de ce recueil; car les omissions et les mauvaises leçons abondent à chaque page: il est necessaire d'ajouter que les notes, dans cette compilation, trahissent de continuelles inexactitudes ou des emprunts maladroitement deguisés. *Մենք ըսինք արդէն այսպիսի խստիւ քննադատելուն պատճառը:*

*կալլիսթենէս, Գրիգոր Մագիստրոս՝ որոյ վրայ Լանկլուա յօդուած մ'ալ հրատարակեց յԱ.-Է.-Հ. օրագրի ի 1869, Ս. Եպիփան, և այլն։ Երկրորդ հատորն, հրատարակեալ ի 1869, հինգերորդ դարու պատմչաց այլ և այլ երկասիրութիւններն կը բովանդակէ, ևս են. Կորիւն, Մովսէս Խորենացի, Եղիշէ, Ղազար Փարպեցի, քանի մի հատուածովք ի գրոց Եզնըկայ, և ժամանակագրական տախտակներով։ Նուպար փաշա, այս մեծ ձեռնարկին պաշտպանն, ծնած է ի Զմիւռնիա, դաստիարակուած ի Զուիցերի և ի Թուլուզ Գաղղիոյ։ Եգիպտոսի մէջ արտաքին գործոց նախարարութեան քարտուղարի պաշտօնը վարելէն ետքը, ղրկուեցաւ ի Լոնտոն յամի 1850, և Իսմայիլ փաշայի կառավարութեան ատեն անոր պաշտօնեայ նախարարն եղաւ արտաքին գործոց ի 1866. և թէպէտ տիրոջը հետ քաշուեցաւ պաշտամանէն յամի 1879, բայց յետոյ կոչուեցաւ ի նոյն պաշտօն, զոր ցարդ կը վարէ փառօք։ Իր պաշտպանութեամբ հրատարակուելիք հայ պատմագրաց հաւաքումն հինգ հատոր պիտի ձևացընէր. բայց Լանկլուայի մահուամբ (14 մայիս 1869) խափանուեցաւ. և Եւարիստ Բրիւտոմ՝ որուն յանձնուեցաւ գործոյն շարունակութիւնը, վախճանեցաւ հետևեալ տարւոյն մէջ։ Այն միջոցին և առթով էր որ Պրոսէի՝ մեր արդէն յիշած հաւաքումն սկսաւ տպագրուիլ, Լանկլուայի ձեռնարկին համար սահմանուած հատորներն։*

*Յիշեցինք որ Տիւլորիէ այս հաւաքման վրայ քննադատութիւն մը հրատարակեց։ Տարակոյս չունինք որ իրեն յատուկ բազմակողմանի հմտութեամբն ու լրջաբար ուսումնասիրելով՝ աւելի պատուական ու հետաքննելի պիտի ընծայէր զայն բանասիրութեան, ու պատմական ուսմանց յառաջադիմութեան փափաքողաց։ Բայց լաւագոյնը՝ լաւին թշնամի է, կ'ըսէ առածը. և մեծապէս անիրաւել կը համարինք Լանկլուայի յիշատակին, եթէ միայն այդ պատճառաւ՝ ուղենայ մէկը իրեն արդիւնքը փոքր-*

կացընել ստուգապէս այդ մեծ և օգտակար ձեռնարկութեանը մէջ։ Տեսանք արդէն թէ ինչպէս Պրոսէ աննախանձաբար հռչակեց զայն, որ անձին փորձովը հասկըցեր էր թէ որչափ դժուարին և աշխատալի էր գործը։

Լանկլուա ամենամեծ դիւրութիւն և արագութիւն ունէր ի գրել և ի հաւաքել, ինչպէս կը վկայեն զինք ճանչցողք. և թէպէտ մեծ ձիրք մ'է այդ և յատկութիւն, զոր անկարելի է ժխտել, բայց միանգամայն արգելք երկար և խորունկ հետազօտութեանց և քննութեանց. և երկուքը մէկտեղ՝ քիչ անձանց և գրուածոց վրայ զուգուած կը հանդիպին ու կը տեսնուին։ Լանկլուայի հաւաքման մէջ նկատուած քանի մը թերութիւնք՝ ասոր հետեւանք են։

Բայց նա գիտցաւ այնպիսի հմուտ անձինք իրեն ընկերակից և օժանդակ առնուլ ի մերազգեաց և ի գաղղիացւոց՝ որոց հայագիտութիւն և հմտութիւն հայրենականաց ամենեւին տարակուսի տակ չէր կրնար ձգուիլ. և որոց աշխատանքով Զենոբ Գլակ, Բիւզանդ, Եղնիկ, Փարպեցի, Մեսրովպ Երէց և այլ պատմիչք՝ այդչափ հաւատարիմ ճշդութեամբ և վայելուչ կարգաբանութեամբ փոխադրուեցան ի ֆրանսերէն։ Նշանակութեան արժանաւորք են նաեւ ընդհանուր ներածութիւնքն՝ որ դրուած են ի գլուխ կրկին հատորոցն, հայ մատենագրութեան սկզբնաւորելուն և դարէ դար յառաջատութեան կամ անկման վրայ, ինչպէս և այլեւայլ խնդրական նիւթոց, և իւրաքանչիւր հեղինակի ի գլուխ երկասիրութեանն, իւր կենսագրութիւն և գրական գործունէութիւն։

Չենք կրնար ըսել, որպէս և ոչ իրմէ յառաջ կամ յետոյ երեւցող և այսպիսի նիւթոց վրայ գրողներու համար, թէ վերջին խօսքն ըսած կամ որոշիչ վճիռը տուած ըլլայ. բայց իր և նմանեացն արդիւնքն է՝ եթէ այսօր հայկական մատենագրական պատմութիւն՝ նոր երեւոյթի մէջ մտած է, և այդ տեսակէտով եղած քննադատական տեսութիւնք և տրուած կարծիք, թէպէտ և հեռի

համարուին յամենայնի իրաւացի ճանչցուելէն, բայց ապագային համար արտադրած արդիւնքն անտարակուսելի է, յորում մեծագոյն հմտութիւն և աւելի խոհական ծանրութիւն կը յուսացուի:

*
* *

Բայց ի արդէն յիշատակուած հրատարակութիւններէն, Լանկլուա Հանդէս Հնախօսական կոչուած ամսագրին մէջ հրատարակեց հետեւեալ գրուածը. « Վաւերականք պատկանաւորք պատմութեան Լուսինեանց Փոքուն Հայոց ի 1342 ամէ ց'1394 » (Documents pour servir à l'histoire des Lusignans de la Petite Arménie de 1342 à 1394). — « Յիշատակարան ի վերայ քաղաքական և վաճառականական յարաբերութեանց հասարակապետութեանն Գենուայ ընդ թագաւորութեան Փոքուն Հայոց յ' ԺԳ և ի ԺԴ դարս » զոր տպագրեց ի 1856 յօրագրի Հանդէս ասիականաց. (Mémoire sur les relations politiques et commerciales de la république de Gênes avec le royaume de la Petite Arménie pendant les XIII et XIV siècles): Նոյն հանդիսին մէջ. « Թէ ո՞րն է Հայաստանի տեղը աշխարհի պատմութեան մէջ » (Place de l'Arménie dans l'histoire du monde), Հատ. ԺԲ 235–249: — « Խորհրդածութիւնք ի վերայ յարաբերութեանց Հայաստանի ընդ Գաղղիոյ ի միջին դարս » (Considérations sur les rapports de l'Arménie avec la France au moyen âge) էջ 256–276: — « Օրագիրք առ Հայս » (Les Journaux chez les Arméniens) ի Հանդէս երկուց աշխարհաց (Revue de deux mondes): Ի 1863, « Հայք Տաճկաստանի և կոտորածք Տաւրոսի (Les Arméniens de la Turquie et les massacres de Taurus): — Պետրպուրկի ակադեմիոյ Ասիական մասին յիշատակագրոց ալ մասնակից եղաւ Լանկլուա հետեւեալ գրուածներովը զորս հրատարակեց. « Ճաշակ

պատմական եւ քննադատական քաղաքական եւ ընկերական կազմակերպութեան Հայաստանի՝ առ հարստութեամբ թագաւորացն Ռուբինեանց՝ ըստ վաւերականաց որ պահին ի դիւանս Եւրոպիոյ». (Շար եօթներորդ, հատոր Գ. 1860, էջ 1–85); (Essai historique et critique sur la constitution sociale et politique de l'Arménie sous les rois de la dynastie roupénienne, d'après les documents conservés dans les archives de l'Europe:) – « Ուսումնասիրութիւն ի վերայ աղբերաց պատմութեան Հայոց ի Մովսիսէ Խորենացւոյ » (Հատ. Դ. 1861, էջ 293–368). (Étude sur les sources de l'histoire de l'Arménie de Moïse de Khorène:) — « Թուղթ առ Պրոսէ ի վերայ յաջորդութեան թագաւորաց Հայոց Ռուբինեան հարստութեան, եւ Լուսինեան տոհմին, ըստ արեւելեան եւ արեւմտեան աղբերաց ». (Անդ. 413–428). Lettre à M. Brosset sur la succession des rois d'Arménie. — « Տեղեկութիւն ի վերայ ոսկեգիր հրովարտակին՝ զոր պարգեւեաց Սիկիլիացւոց Լեւոն Ե թագաւոր Հայաստանի յամի 1331 ». (Notice sur le Chrysobulle octroyé par Léon V, roi d'Arménie, aux Siciliens, en 1331). Ի Յիշատակագիրս Պետրպուրկի ակադեմիոյ, հատոր Ե. 375–389: — « Քաղուած ժամանակագրութեան Սմբատայ տեառն Պապառօնի, Հայոց մարաջախտի, հանդերձ շարայարութեամբ յօրինելոյ յայլմէ, եւ պատմութիւն Ռուբինեանց ի հաստատութենէ նոցա ի Կիլիկիա մինչեւ ի բարձումն հարստութեանն, ըստ տպագրաց բնագրին որ ի Մոսկուա եւ ի Փարիզ. » (Extrait de la Chronique de Sempad, seigneur de Babaron, connétable d'Arménie, suivi de celle de son continuateur, comprenant l'histoire des temps écoulés depuis l'établissement des Roupéniens en Cilicie jusqu'à l'extinction de cette dynastie, traduite sur les editions de Moscou et de Paris). Թարգմանութեանս քննադատութիւնն ըրաւ Տիւլորիէ Աչէ–էլ (l'Orient) հանդիսին

մէջ (1867, Décembre 25) հետեւեալ խորագրով. Դիտողութիւնք է վերայ Սմբատայ Գունդստաբլի ժամանակագրութեան թարգմանութեան մը – (Observations sur une traduction d'un extrait de la chronique du connétable Sempad).

Ասիական օրագրին մէջ ալ (Հինգերորդ շար, Հատոր Գ. 257–308) հետեւեալ խորագրով հատուած մը հրատարակեց. «Ուղեւորութիւն ի Սիս, մայրաքաղաք Հայոց ի միջին դարու». (Voyage à Sis, capitale de l'Arménie au moyen-âge): Ի 290–297 յէջսն ցուցակ մը կը դնէ հարիւր քառասուն և հինգ գրչագրաց մենաստանին Սսոյ, զորս յաջողեցաւ տեսնել, և 145 թիւ գրչագիրը առնուլ, որ երեքտասաներորդ դարուն ապրող Սարգիս վարդապետի մը մեկնաբանական գրուածոյ հատուած մ'է, և կը պահուի այժմ յազգային Մատենադարանին որ ի Փարիզ:

Մահուընէն երկու տարի յառաջ ուրիշ ընտիր գրուած մ'ալ հրատարակեց Լանկլուա, և էր. «Աշխարհագրութիւն Պտղոմեայ, լուսանկարատիպ նմանահանութիւն յոյն գրչագրին որ ի վանս Վատոպետի յԱթոս լերին». (Géographie de Ptolémée, reproduction photolithographique du manuscrit grec du monastère de Vatopédi, au mont Athos), տպագրեալ ի Փարիզ ի 1867: Ներածութիւնն՝ որ «Աթոս լեռան և որ ի նմա վանորայք» կը կոչուի, արդէն տարի մը յառաջագոյն առանձինն հրատարակուած էր:

1868ին տպագրեց ի Ս. Ղազար Մխիթարեանց գաղղիական թարգմանութիւն ժամանակագրութեան Միխայելի Ասորւոյ (Chronique de Michel le Grand, auteur de XII siècle, patriarche des Syriens Jacobites, traduite pour la première fois de version arménienne du prêtre Ischok).

## Ե. ՊՈՐԷ

Եւգինէոս Պորէ ծնաւ յԱնժէր Գաղղիոյ ի 1809 (5 օգոստ.)։ Հայրը՝ նախկին գլուխ ջոկատի զօրաց՝ վախճաներ էր ի 1812։ Պորէ՝ հայրենի քաղաքին մէջ իր ուսմանց առաջին ընթացքը կատարելէն ետքը՝ 1826ին մտաւ ի վարժարանն Սթանիսլաւ ի Փարիզ, ուր հետեւեալ տարւոյն մէջ՝ ի մրցանս իմաստասիրականին՝ պատուոյ առաջին յաղթանակը տարաւ։ 1828ին կորսնցուց նաեւ մայրը, որոյ տուած բարեպաշտ դաստիարակութիւնը յորդորմամբ ըրաւ զպատանին ի փնտռել զբարեկամութիւն Լամընէի, և յորմէ խրախուսեցաւ ձեռք զարկած ուսումնական ընթացից մէջ եւս քան զեւս յառաջադիմելու։ 1834ին երբ Լըվայեան տը Ֆլորիվալ Իտալիա ճանապարհորդութիւն մը ըրաւ, Գաղղիոյ հասարակաց կրթութեան Նախարարն Կիզոյ, անուանեց զՊորէ առժամանակեայ ուսուցիչ հայ լեզուի՝ Փարիզու արեւելեան կենդանի լեզուաց մասնաւոր դպրոցին մէջ։ Այս առթով Լամընէ կը գրէր առ Պորէ. «Ուրախակից եմ թէ աշակերտացդ թուոյն համար որ կը յաճախեն ի լուր դասախօսութեանցդ, և թէ Հայկական մատենագրութեան նկատմամբ ըրած նոր գիւտերուդ»։ Նոյն միջոցին Ասիական ընկերութեան ամենէն աւելի գործունեայ անդամակիցներէն մէկն էր Պորէ։ Հայ լեզուի ուսուցչութեան ընթացքը շարունակեց մինչեւ ի 1835, և ի վերջ նոյն տարւոյ գնաց ի վանս Մխիթարեանց որ ի Ս. Ղազար Վենետիկոյ, ուսումնական մասնաւոր պաշտամամբ մը։ Հոն յօրինեց ու տպագրել տուաւ նոյն միաբանութեան վրայ տեղեկութեան գրուածք մը, ու վանաց Հայկական կաճառին անդամ անուանեցաւ։ Զոր Լամընէ լսելով՝ հետեւեալ տողերն կը գրէր առ

*Պորէ․ « Գեղեցիկ հրաշալիք տեսար, և ուժովցար այն աշխարհին լեզուին մէջ, ուր կ՚ըսեն թէ Նոյայ տապանը կանկ առաւ․ և ականխմական ալ եղար … Հաճութեամբ պիտի կարդամ այն տեղեկութեան գիրքը, որոյ լուրը տաս ինձ։ Արբոյն Ղազարու միաբանութեան արդէն նման գրուածք մը հրատարակած են, յորում իրենց հիմնադրին վարքը կայ, և այն անհաւատալի դժուարութիւններն որոց բռնադատուեցաւ յաղթել, որպէս զի կարող ըլլայ հաստատուիլ հոն՝ ուր յետոյ այնչափ յառաջադիմեցին »։*

*Տարի մը ետքը Պորէ տեսնելով զԼամընէ որ կը հակառակի եկեղեցական իշխանութեան, զատուեցաւ իրմէ․ ու* 1836*ին Ուղղափառ տիեզերք կոչուած լրագրին խմբագրաց մէկն եղաւ։ Արդէն* 1833*ին իբր երախայրիք իր հայկական ուսմանց՝ Ասիական օրագրին մէջ* (271–298) *հրատարակեր էր Աբրահամու Ողբ է վերայ առմանն Կոստանդնուպոլսոյ կոչուած քերթուածոյն թարգմանութիւնը, համեմատելով անոր մէկ գրչագրին յԱզգային մատենադարանին* (*թիւ* 80)*, ու* 1835*ին ալ* (293–7) *հատուած մը յողբերգութենէ Շնորհալւոյն որ յառումն Եդեսիոյ։ Երկասիրութիւն մ՚ալ յօրիներ էր ընդհանրապէս ի վերայ Հայաստանի, Պատկերազարդ տիեզերք* (Univers pittoresque) *կոչուած աշխարհապատում խմբագրութեան համար, որ հրատարակեցաւ ի* 1838 *բազմաթիւ պատկերներով և* 144 *երկսիւն սեղմ էջերու մէջ բովանդակուած։ Երկրորդ տարին ալ Ասիական օրագրին մէջ հատուած մը « Ուղղակի և զօրաւոր ազդեցութիւն քրիստոնէութեան ի վերայ հայ ընկերութեան »* (De l'action directe et puissante du Christianisme sur la societé arménienne, par E. Boré. (– Journal Asiatique, Tome I. 1836, *էջ* 214)։

* * *

Հասարակաց կրթութեան նախարարն և Արձանագրութեանց ու Գեղարուեստից ճեմարանին գլխաւորն յանձնեցին իրեն ուսումնական ճանապարհորդութիւն մը ընել յԱրեւելս։ 1837 տարւոյն սկիզբներն այս պատուաւոր յանձնարարութիւնն կատարելու ձեռք զարկաւ. «Կ'երթամ, կ'ըսէր, յայց երկրին՝ որ քրիստոնէութեան օրրանն եղաւ, հոն խօսուող լեզուներն ուսումնասիրելու, և յիշատակարանները քննելու»։ Քիչ ատեն յամելով ի Վիէննա, Թրիեստ, Սիրա, հասաւ ի Կոստանդնուպոլիս, և հայ ընտանեաց մը քով հաստատեց բնակութիւնն։ Բաց ի հայ լեզուէ, տեղեակ էր նաեւ պարսիկ, արաբ, տաճիկ, հեբրայեցի և փիւնիկեցի լեզուաց։ Ի Պոլսոյ գնաց ի Կարին, անտի ի Դաւրէժ, (15 նոյեմբ. 1838) ուր դպրոց մը հաստատելով, տարի մը կառավարեց զայն։ Յետոյ բնակութիւնն հաստատելով ի Ջուղա (29 ապրիլ 1840), մերձ ի Սպահան, բազմաթիւ պարսիկ երիտասարդք՝ հարուստ ընտանեաց զաւակք, աշակերտեցան իրեն, և զանազան ուսումնական տեղեկութիւններ հաղորդեց անտի ի Փարիզ։ Երկու տարիէն դարձաւ ի Գաղղիա, 1842ին, ուր իր հետաքննական երկասիրութիւնն որ կը կոչուի «Թղթակցութիւնք և յիշատակարանք ուղեւորի միոյ յարեւելս» (Correspondances et mémoires d'un voyageur en Orient) արդէն 1840ին հրատարակուած էր ի Փարիզ։ 1843ին ճանապարհորդութիւն մը ընելով ի Հռոմ, սրբազան քահանայապետին ներկայացաւ, ու երկրորդ անգամ դարձաւ ի Պոլիս։

1846ին հրատարակեց Ուղղափառ տիեզերաց (Univers catholique) քսաներորդ երկրորդ հատորին մէջ, Մովսէսի Կաղանկատուացւոյ Աղուանից պատմութեան թարգմանութիւն մը, որ երկու տարիէն ետքը կրկին տպա-

գրուեցաւ, Ճանապարհորդութեանց Տարեգրութեանց (Annales des Voyages) մէջ՝ Վիկիէն տը Սէն-Մարդէն բաղմահմուտ աշխարհագրին ծանօթութեամբք։ 1847ին ուղեւորութիւն մը ըրաւ յԱրշիպեղագոս. ու հետեւեալ տարին՝ Գաղղիոյ կառավարութեան յանձնարարութեամբ Երուսաղէմ գնաց՝ ուսումնասիրելու Սրբազան տեղեաց խնդիրը։ Այն առթով հրատարակեց 75 էջերէ ձեւացած տետրակ մը Խնդէր տուրք դեղէրոց մակագրով, և որով տարիներ անցնելէն ետքը գրաղեցաւ նաեւ Վիկտոր Լանկլուա։

Փախաքեղովինքզինք՝ եկեղեցական վիճակի տալ, Պորէ 1850ին հերակտրութիւնն ընդունելով՝ դարձաւ ի Փարիզ. բայց հետեւեալ տարին բանադատուելով վերադառնալ ի Կոստանդնուպոլիս՝ Վոսփորի Պէպէք կոչուած գիւղին մէջ հաստատուած դպրոցին վերատեսչութիւնը իրեն յանձնուեցաւ։ Իբրեւ այցելու, ամէն տարի կ'երթար ի Զմիւռնիա, Սանդորին, Նաքսոս, Սէլանիկ, Մանաստիր։ Խրիմու պատերազմին ժամանակ կարգի դրաւ զինուորական շարժական հիւանդանոցներն, և մաղձախտէ բռնուածներուն ծառայեց ամենայն անձնանուիրութեամբ ի Վառնա։ 1866ին ընդհանուր քարտուղար եղաւ Արաքելավանից ուխտին՝ որոց կը վերաբերէր, և ապա ընդհանուր առաջնորդ ի 1874։ Նոյն պաշտաման մէջ մեռաւ ի Փարիզ յ'3 մայիսի 1878։

## Ե· ԲՐԻՒՏՈՄ

Այս հայագէտ գաղղիացւոյն աշխատասիրութիւններն ցրուած ըլլալով յայլեւայլ ուսումնական հանդէսս, բանասիրաց հաճոյական կը կարծենք զանոնք ամէնքն ասոէն միացընելը։ Իր առաջին հատուածն հրատարակուեցաւ յամի 1861 ի Հանդէսն Արեւելից (Revue de l'O-

rient, նոր չար, Հատ. ԺԳ.) և խորագիրն է « Ազգային Սահմանադրութիւն Հայոց » (Constitution nationale des Arméniens), թարգմանեալ ի հայէ. (էջ 1–18)։ 1863–4ին նոյն հանդիսին ԺԵ, ԺԶ, ԺԷ հատորներուն մէջ հրատարակեց զթարգմանութիւն պատմական երկասիրութեան Արիստակէսի Լաստիվերտացւոյ, սրբոյն Ղազարու տպագրին վրայ, ծանօթութեամբք։ Մետասաներորդ դարու մէջ, ինչպէս յայտնի է մեր բանասիրաց, ապրեցաւ Լաստիվերտցի, և գրեց զպատմութիւն կործանմանն Անւոյ ի Յունաց, և զսկզբնաւորել արշաւանացն Սելճուկեանց (1000–1071)։ Թարգմանիչը զեղչած է զբազմաթիւ վկայութիւնս ի սուրբ Գրոց, զոր հեղինակը մէջ կը բերէ. « Ուսուցիկ և ողբերգական ոճ մը, կ'ըսէ Մոհլ, կը տիրէ այս հեղինակութեան մէջ, և դժուարին կ'ընէ ընթերցումը. բայց չի ծածկեր Հայոց թերութիւններն ու մասնութիւնները. և կը ցուցընէ զպատճառս և զմիջոցս այն երկարատեւ և աղխալի ողբերգութեան, որով ամբողջ պատմութեան ընթացքը արեան և աւերածոյ հետքը կը կրէ »։

***

Ասիական օրագրին մէջ ի 1863 (Զդ չար, էջ 400–475) Բրիտոմ հրատարակեց Զենոբայ Գլակայ ասորի եպիսկոպոսի Տարօնոյ պատմութիւնը, կամ զդրուագ դարձի Հայոց ի քրիստոնէութիւն. և որոյ բնագիրն հրատարակեալ է ի Պոլիս 1708, և ի Վենետիկ 1832։ Վերոյիշեալ Ժիւլ Մոհլ՝ այս գրքին վրայ տուած տեղեկութեան մէջ կ'ըսէ. « Տարօնոյ գաւառին պատմութիւնն է, ի սահմանագլուխս Ասորւոյ, ուր երրորդ դարուն մէջ՝ Տրդատայ քրիստոնէական հաւատքն ընդունելէն ետքը, ուժով դիմակայութիւն ըրին՝ հոն հաստատուած հնդիկ քրմաց գաղթականութիւն մը. բայց հեթանոսք յաղթուեցան. կործանեցան անոնց մեհեանք, և սուրբն Գրի-

գոր պատուիրեց Զենոբայ՝ որ ականատես վկայ էր՝ ասորի եկեղեցեաց գիտութեանն համար՝ եղած դիպուածոց պատմութիւնը շարագրել իրենց լեզուով»: — Ասիական ընկերութեան 1864 փետրուարի 12ին նիստին՝ Բրիւտոմ քանի մը մասնաւոր տեղեկութիւններ տուաւ Ողոմպիանոս ընծայուած յոյն և լատինական առակաց վրայ, որոց բնագիրը կորսուած ու միայն հայ թարգմանութիւնն հասած է առ մեզ և հրատարակեալ ի Ս. Ղազար վենետկոյ՝ Մխիթարայ Գոշի առակաց հետ ի 1842 և ի 1854: — Ասիական լրագրին վեցերորդ շարին եօթներորդ հատորոյն մէջ՝ (101–238) ի ռուս լեզուէ ի գաղղիականն թարգմանեց և ի լոյս ընծայեց՝ Պատկանեան Քերովբէի, Պետրպուրկի հռչականուն Հայազգի ուսուցչին, ամենէն աւելի գեղեցիկ երկասիրութեանց մէկը. «Ճաշակ պատմութեան Սասանեան հարստութեան՝ ըստ հայ պատմչաց» (Essai d'une histoire de la dynastie des Sassanides d'après les historiens arméniens):

Զենոբայ ժամանակ՝ մեծն Հայաստան դեռ կը կառավարուէր Արշակունեաց՝ իր նախկին տերանց ձեռքով. բայց ի վեցերորդ դարու այս հարստութիւն մարեցաւ, և իր սահմաններն բաժնուեցան Սասանեան թագաւորաց մէջ որ տիրեցին արեւելեան գաւառաց, մինչ Յոյնք դեռ եւս կը շարունակէին պահել իրենց իշխանութիւնն արեւմտեան մասին վրայ:

Հայք հպատակելով այս զօրաւոր թագաւորաց, և անոնց հետ շարունակեալ յարաբերութեան մէջ, անոնց բանակին հետ խառնուած, ու անոնցմէ քաղաքական և զինուորական պաշտամամբք պատուեալ, Կտեսիփոնի արքունեաց մէջ ընդունելութիւն գտած, լաւ դիրք մը գրաւած էին՝ Պարսկաստանի ներքին անցից և կառավարութեան խելամուտ ըլլալու: Իրանի պատմութեան այս միջոցին նկատմամբ՝ հայ պատմագիրք այնպիսի մանրամասնութիւններ կ'աւանդեն՝ զորս անկարելի է գտնել ժամանակակից բիւզանդեան մատենագրաց մէջ, իսկ արե-

ւելեան գրիչք՝ գլխաւորաց հանգիտելէն շատ ետք երեւնալով՝ տկար և յաճախ անհաւատարիմ արձագանգ եւեթ կրնան սեպուիլ անոնց։ Պատկանեան գեղեցիկ մտածութիւն մը ունեցաւ Սասանեանց վրայ հայ պատմագրաց վկայութիւններն ի մի հաւաքել, զոր Բրիւտոմ թարգմանեց ի ռուսաց լեզուէ, որով հեղինակն գրած էր, ի գաղղիական։

***

Նոյն Ասիական լրագրին իններորդ հատորին մէջ (147–204) «Քաղուած յՈսկեփորիկ կոչեցեալ գրոց, լուծմունք ընթերցուածոց ինչ գրոց սրբոց ի խնդրոյ Հեթմոյ առաջնոյ, թագաւորի Հայոց, ի Վարդան վարդապետէ, թարգմանեալ յաշխարհիկ լեզուէ բնագրին ի գաղղիականն՝ յԵւարիստէ Բրիւտոմ» (Extrait du livre intitulé Osképhorik, solutions des passages de l'Écriture sainte, écrites à la demande de Héthoum Ier. roi d'Arménie, par le vardapet Vardan, traduites de l'arménien vulgaire sur le texte original, par Evariste Prud'homme: – Դարձեալ Ասիական լրագրին մէջ, (վեցերորդ շար, հատոր ԺԶ 1–293) ի ռուս լեզուէ թարգմանեց և ընծայեց բանասիրութեան Պատկանեանի կարեւորագոյն երկերէն մէկն ալ, «Հետազօտութիւնք ի վերայ կազմութեան հայ լեզուի, ծանօթութեամբք և յաւելուածովք յԵդուարդայ Տիւլորիէ» (Recherches sur la formation de la langue arménienne, avec notes et additions par E. Dulaurier).

Ասոր վրայ տուած տեղեկագրին մէջ (29 յունիս 1871) այսպէս կ'ըսէր Է․ Ռընան․ «Այս աշխատասիրութիւնը Պօրի դպրոցին ընտիր սկզբամբքը մտածուած և յօրինուած կ'երեւնայ։ Շատ լաւ կերպով ցոյց կուտայ թէ ինչ տեղ կը գրաւէ հայ բարբառ՝ իրանական գերդաստանի լեզուաց մէջ. ինչպէս նաեւ առանձինն խնամու-

թիւնը կամ նմանութիւնքը զենտի հետ, ու անկման կամ խոր ծերութեան վիճակը՝ որուն հասած է քերականական փոփոխմամբք և զարտուղութեամբք. զառամութիւն մը՝ որոյ ուրիշ օրինակ չկայ՝ բայց եթէ պարսիկ արդի լեզուին մէջ»։ Ինքն հեղինակն ալ կ՚ակնարկէ տեղ մը իր գրուածոյն մէջ թէ «Հայք իրենց լեզուին և սերընդեան նմանութեամբ՝ իրանեան մեծ գերդաստանին կը վերաբերին». բայց այս ենթադրութիւնք ապացուցուած չեն, մանաւանդ թէ արդեամբք կը թուին ստել։ — Արեւելից Հանդէսին մէջ (շար չորրորդ, Հատ. Ա) Բրիւտոմ ռուսերէնէ թարգմանեց ի գաղղիական՝ Մկրտչի Էմին մէկ երկասիրութիւնը «Հայկական ալփաբետայ» վրայ, (De l'alphabet arménien, 439–467)։ Նոյն հանդիսին մէջ, որոյ հրատարակութիւնը դադրեցաւ ի 1865, կը թարգմանէր Մկր. Էմինի «Հայկական հեթանոսութեան» (Du paganisme arménien) գրուածը։ — Հոն կը գտնենք նաեւ թարգմանութիւն մը Գալֆայեան Խորէն վարդապետի Արշակ Բ ողբերգութեան։

Վերջացընենք Ռընանի խօսքերով. «Խիստ կանխահաս եղաւ Եւարիստ Բրուտոմի մահը. քառասունուերեք տարուան էր երբ մեռաւ այս հանճարեղ ու գիտնական անձը։ Իր ամենէն աւելի սիրելի խորհուրդն էր հաստատական ուղեւորութիւն մը ի մատենադարանս Հայաստան աշխարհի։ Հայկական լեզուի ունեցած հմտութեամբ նշանաւոր՝ ցաւալի է որ ժամանակը պակսեցաւ իրեն, որով չկրցաւ աւելի օգտակարագոյն ինչ ընծայել ուսումնական աշխարհի»։

# Յ. Ա. ԳԱՏՏԷՐԻԱՍ

*Յովսէփ Անդրէաս Գատտէրիաս ծնաւ ի* 1855 *և մեռաւ ի* 28 *մայիս* 1883։ *Տիւլորէի և ժիւլիէն Վինսոնի աշակերտ, ուսուցիչ հինդուսթանի և թամուլ լեզուաց՝ արեւելեան լեզուաց դպրոցին մէջ, առաջին եղաւ որ հայկական լեզուին մէջ ցուցած յառաջադիմութեան համար նոյն դպրոցէն վկայագիր* (diplôme) *ընդունեցաւ*։ 1870*ին ընտիր թարգմանութիւն մը ընծայեց սրտաշարժ գրուածի մը՝ Հայաստանի աղխոյց ու սրբոյն Վահանայ Գողթնացւոյ մարտիրոսութեան վրայ**. (*Ազգային օրացոյց եօթներորդ շար, հատոր ԺԶ* 177–214)։ *Երբ հրատարակեցաւ այս գրուածք, Ռընան հետեւեալ գեղեցիկ անդրադարձութիւնն կ'ընէր. « Հայաստան՝ քրիստոնեայ արեւելից միակ ազգն է որ կը զգայ իր ընկճումը և հարստահարութիւնը։ Իսկ առ այլս, ոչ մի բողոք, ոչ մի ձայն. գէթ գրաւոր յիշատակարանաց մէջ որ հասեր են մինչեւ առ մեզ։ Ո՞ւր են գանգատք Եգիպտոսի. ո՞ւր Ասորեստանեայց։ Այսպիսի լուռ համակամութիւն անշուշտ անկէ յառաջ կու գայ՝ որ հպատակի վիճակը շատ աւելի տանելի էր այդ առաջին դարերուն մէջ նկատմամբ ազգաց որ միայն կրօնական պէտք ունէին։ Հայաստան որ այդ տիրապետութեան ժամանակ աւելի լուրջ քաղաքական կեանք մը ունէր, ունեցաւ խօսքեր՝ գրուցելու համար թէ իր մահը մերձաւոր կը զգար »*։ — 1882 *Գատտէրիաս փոքրիկ՝ բայց մեծապէս հետաքննական հատոր մը հրատարակեց « Հայաստան և Հայք » խորագրով* (l'Arménie et les Arméniens)։ *Հայ ազգին քաղաքական պատմութեան համառօտութիւն մ'էր այդ երկասիրութիւն։ Յետոյ տուաւ*

* Տես Ազգային Հայկականք, հատոր ԺԳ։

ինք զինքը յուսումն վրայ լեզուին, զոր անհրաժեշտ կը համարէր հայերէնի բանասիրական ուսմանն համար. և այս վախճանաւ գրուածք մ'ալ հրատարակեց Հանդէս լեզուաբանութեան և համեմատական բանասիրութեան (Revue de linguistique et de philologie comparée) ուսումնաթերթի ԺԴ հատորին մէջ (1881, յ'էջ 275–311)։

## Պ. Փ. ՄԱՐԴԷՆ

Գաղղիոյ վերջին պատերազմ ընդ Բրուսիոյ և ձախող ելք և հետեւանք, մեծ ազդեցութիւն ունեցան՝ խաչակրաց ատենէն մինչ այն ժամանակ իր կառավարութեան բռնած ուղղութեան վրայ յարեւելս։ Գործելու այդ մեծ ասպարէզն՝ ուրիշներու թողած ատենին, կարծես կերպով մը մոռնալ ուզեց այդ հեռաւոր երկիրն, որուն դարաւոր պաշտպանն էր, և սուրբ կրօնիցն նեցուկ և ամրութիւն. մոռցաւ նաեւ նոյն նպատակաւ ծախուած գանձը՝ և զանհամեմատ պատուականագոյնն՝ իր որդւոցը հոն թափուած արիւնը. և այն երկրին հետ, որ իր պատմութեան գեղեցկագոյն էջերը կը կազմէին, հոն խօսուած և իրմէ մեծարուած լեզուներու փոյթն և սէր։ Ասոնց մէջ դժբաղդաբար՝ ամենէն յառաջ մեր լեզուն պիտի ըլլար։ Արդէն Տիւլորիէի ատենէն սկսած էր նուազիլ թիւ յաճախողացն ՚ի լուր դասախօսութեանց նորա ի դպրոցի արեւելեան կենդանի լեզուաց, անանկ որ մահուընէն ետքը մտածուեցաւ բոլորովին վերցընել այդ ուսումը։

Հարկ է անկեղծաբար խոստովանիլ թէ այդ անտարբերութեան կար մեծագոյն պատճառ մ'ալ. և էր դպրոցին մէկ կանոնադրութիւնը՝ որ ուսուցչաց ընտրութեան մէջ նախամեծարութիւնը իրենց ազգային ֆրանսիացւոց կու տար, որ կրնային՝ ինչպէս ունեցան ալ բազումք մեծ հմտութիւն, խորունկ տեսութիւն և գիտնական անդրա-

դարձութիւններ, ու լեզուաց համեմատական ուսմանց դիւրութիւն, բայց դժուարին էր իրենց՝ բուն ազգային մը հնչում, արտասանութիւն և վարժութիւն ի բան և ի գիր, որոնք ուսուցչի մը վրայ մեծ ու փնտռուած կարեւոր յատկութիւններ են, և կ'ազդեն եռանդն և սէր՝ ուսումնասէր հետամտից և աշակերտելոց վրայ։ Հանդիպած է ազգայնոցս, հետերնին խօսելու առիթ ունեցած ատեններս, նաեւ հմտագունից հետ, որ երբ ուզեր են հայերէն լեզուով միտք մը բացատրել, աղաչելու բռնադատուեր ենք որ գաղղիարէնով հասկընալի ընեն մեզ խօսածնին։

Աստ բնական հետեւանքը կ'ըլլար ուսումը դժուարացընել, ու եռանդն ու փոյթ մարել հետամտից սրտէն։

Միւս պատճառ մ'ալ, այն եռանդը վառ պահելու համար ուսումնասիրելեաց նիւթական պակասութիւնն էր։

Բացատրենք խօսքերնիս։ Մեր այս գրուածքին առաջին էջերէն ալ ըսինք, թէ եւրոպացի հայագէտք, մանաւանդ ֆրանսիացիք, հայ գրականութեան աւելի պատմագրական մասամբը ուզեր էին զբաղիլ, զի ուրիշ մասերէն աւելի այն էր իրենց համար հետաքննական։ Տեսանք թէ մեր հին ժամանակի պատմագրաց գրեթէ ամէն գրուածք ծանօթացան իրենց, մանաւանդ գաղղիարէն լեզուով. ուստի և կարծեցին թէ այդ նկատմամբ ա՛լ զիրենք հետաքրքրող ճարակ չմնաց։

Գտնուեցան անձինք որ այդ անտարբերութեան հետեւանքներն զգալով, կը ջանային սթափեցընել զիրենք այդ թմրութենէն, ցուցընելով թէ ո՛րչափ վնասակար էր այն նաեւ քաղաքական տեսակէտով։

Այս եռանդուն և աշխոյժ լեզուն գործածողաց մէջ էր նաեւ հմուտ արեւելագէտն՝ Փոլէն Մարդէն քահանայ, որ ի մայրաքաղաքին Գաղղիոյ հաստատուած աստուածաբանական կաճառին (faculté catholique) եկեղեցական պատմութեան և հայրագիտութեան ուսուցիչն էր։ Ինք լաւ ըմբռներ էր թէ հայկական մատենագրութեան մէջ ու-

*ուսումնասիրելի նիւթ, լոկ պատմականը չէր. այլ մթերուած կային ի նմա՝ ընտիր և դասական հին լեզուով, բազմաթիւ թարգմանութիւնք ի յունէ և յասորւոյն, և մանաւանդ աստուածաշունչ գրոց անհամեմատ թարգմանութիւն մը, որով որչափ աւելի պարապէր՝ այնչափ հիանալի կը գտնէր զայն:*

*Փիդրա ծիրանաւորն հաւաքում մը կը հրատարակէր, ի վատիկանեան մատենադարանի՝ որոյ գրադարան էր, գտնուած այլեւայլ երկասիրութեանց եկեղեցւոյ հարց, որք դեռ եւս տպագրութեան լոյս տեսած չէին, կամ որոց հրատարակութիւն՝ արդէն եղածներուն վերայ կըրնար նոր լոյս մը ծագել՝ ընթերցուածոց կամ թարգմանութեանց տարբերութեամբ, և այսպէս կը շարունակէր իր նախորդին՝ ծիրանաւոր Մայի մեծ և բազմահմուտ ձեռնարկը: Նոյնպիսի աշխատութիւն յանձնեց Մարդէն քահանայի՝ փարիզեան ազգային մատենադարանի արեւելեան գրչագրաց մասին համար, որոց լեզուին հմուտ էր նա և տեղեակ:*

*Մարդէն* 1882*ին հրատարակեց մեծ հատոր մը, նախանիկէական հարց գրուածոց, յորում բաց ի յոյն, յասորի և յայլոց արեւելեան լեզուաց, կ'ամփոփուին ի փարիզեան ազգային մատենադարանի պահուած՝ յոյն եկեղեցւոյ հայրապետաց գրուածոց հին թարգմանութիւնք ի հայ, իրենց սկզբնագրաւն, հայ թարգմանութեամբ և բազմահմուտ ծանօթութեամբք: — Այս եղաւ, ինչպէս կը կարծենք, իւր առաջին հրատարակութիւն իբրու հայերէնագէտ:*

*Գրուածքիս խորագիրն էր.* Analecta Sacra, Patrum antenicænorum, ex codicibus orientalis collegit I. P. Paulinus Martinus, Scripturæ sacra lector in superiori Schola Theologica Instituti catholici Parisiensis.

***

Բայց ամէն յառաջ՝ ազգային մատենադարանն Փարիզու՝ այլ կարեւոր աշխատասիրութիւն մ՚ալ յանձներ էր Մարդէնի:

Վիլֆռուայի յօրինած Հայկական գրչագրաց ցուցակը յիշատակեցինք. անոր վրայ գրեթէ երկու դար անցեր էր. եւ այդ միջոցին բազմաթիւ եւ ընտիր յաւելուածք եղեր էին հայ գրչագրաց: Հարկ էր նոր ցուցակ մը յօրինել. մանաւանդ զի գրատան վարչութիւնն գովելի փութով ձեռնամուխ եղած էր ի տպագրութիւն ուրիշ արեւելեան ազգաց գրչագրաց ցանկերուն, եւ կարգը Հայկականաց կու գար. եւ թէպէտ ուրիշ ձեռնհաս եւ հմուտ անձի մը ձեռքով արդէն ցուցակագրուած էին անոնք, բայց դժբաղդաբար հրդեհի (1870) ճարակ ըլլալով, առաջարկուած համառօտութիւնն ալ՝ ոչ թուեցաւ ըստ սահմանեալ ծրագրի մատենադարանին, եւ ուրիշ արեւելեան ազգաց ձեռագրաց արդէն խակ հրատարակուած ցուցակաց. ուստի հարկ էր նորէն խմբագրել զայն, եւ այս գործ Մարդէնի յանձնուեցաւ. որ թէպէտ գլխաւորեց զայն եւ յանձնեց մատենադարանի տեսչութեան, բայց դեռ տպագրութեամբ հրատարակուած չէ:

***

Յուղղափառ կաճառի Փարիզու՝ սուրբ Գրոց քննադատական ուսմանց դասախօսութեամբն զբաղելով, իրեն մասնաւոր ուսումնասիրութեան առարկայ եւ նիւթ ուղեց ընել զհայ թարգմանութիւն աստուածաշունչ գրոց. եւ նախ նոր կտակարանաց գրքովը պարապեցաւ:

Յայտնի է բանասիրաց որ մեր նոր կտակարանի թարգմանութեան մէջ ալ մուտ գտած են այլեւայլ կէտք՝ որ ուրիշ հին թարգմանութեանց եւ գրչագրաց մէջ այ-

լապէս աւանդուած ըլլալով, խնդրականաց կերպարանք կ'առնուն, ուստի և լուսաբանութեան կամ մեկնութեան կարօտք։ Ասանկ՝ օրինակ իմն, մարկոսեան աւետարանի վեշտասաներորդ գլխոյն վերջին 9–20 տունք. Ղուկասու աւետարանին մէջ պատմուած Քրիստոսի տեառն ահաքրտնիլն ի Գողգոթա. Յովհաննու հինգերորդ գլխոյն չորրորդ տունը, և ութերորդին սկիզբէն մինչև մետասաներորդ տունը. Յովհաննու առաջին կաթուղիկէ թղթոյն հինգերորդ գլխոյն եօթներորդ տուները, և ասոնց նման ուրիշ նուազ կարևորութիւն ունեցող մասունք։ Ասոնցմով մասնաւոր ուշադրութիւն դարձնելով հայկական թարգմանութեան վրայ՝ զբաղեցաւ Մարդէն, և հետզհետէ վիմագիր հրատարակութեամբ ի լոյս կ'ընծայէր իր բազմահմուտ դատախօսութիւններն, հինգ վեց հատոր, որ դըժբաղդաբար վաղահաս մահուամբը թերի մնացին։ Գրուածքիս խորագիրն է Introduction à la critique textuelle du Nouveau Testament.

Ասոնցմէ զատ հրատարակած է ուրիշ գրուածներ ալ, զորս յիշատակելը մեր նպատակէն դուրս է, չունենալով այնչափ վերաբերութիւն մեր ազգին պատմութեան և մատենագրութեան նկատմամբ։ Յիշենք միայն մեզի համար աւելի հետաքննականն, « Սկզբնաւորութիւնք եդեսեան եկեղեցւոյ » (Les origines de l'église d'Édesse) կոչուածը, որ պատասխան մ'է մի և նոյն խորագիրը կրող բանամրցական (thèse) երկասիրութեան Դիքսէրան քահանայի՝ իր նախկին աշակերտին, որ Եդեսիոյ եկեղեցւոյն սկզբնաւորութեան ժամանակը՝ մինչև երկրորդ դար, և աւելի անդին ալ կ'ուզէ իջեցընել, ու հերքմնական պատասխանն այս գրուածով կ'ընդունի ի Մարդենէ։

Իրեն աշակերտելով՝ բաւական յառաջադիմութիւն ցուցին հայերէն լեզուի ուսման մէջ Լըրըպուր և Պարթիֆոլ դաղղիացի քահանայք, յորոց վերջինն այլևայլ մանր երկասիրութիւնք ալ հրատարակած է, վատիկանեան մա-

*տենադարանի արեւելեան գրչագիրներէն ուսումնասիրուած։*

*Մարդէնի մահը հանդիպեցաւ ի* 1892։

# ՔԱՆԻ ՄԸ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ

*Գաղղիացի հայագիտաց և իրենց գրուածոց վրայ մեր համառօտ տեղեկութիւններն գրեթէ լմնալու վրայ են։ Կրնայինք սոյնց թուոյն մէջ յիշատակել ուրիշ քանի մը նշանաւոր անձինք ալ՝ որ հայկական մատենագրութեան Եւրոպիոյ ընծայած կարեւոր երկասիրութեանց լուրջ քննադատութեամբք զբաղեցան. օրինակ իմն, իմաստուն հնախօսն Տէզիրէ Ռաուլ Ռոշէդ* (1789–1854), *բազմահռչակ արեւելագէտն Սիլվէստր Տըսասի* (1758–1838), *Յովսէփ Թուսէն Ռէինոյ* (1795–1867) *ուսուցիչ արաբականին ի Դպրոցն Գաղղիոյ, որոյ ջանից և խրախուսանաց կը պարտինք Ղեւոնդեայ երիցու պատմութեան թարգմանութիւնն ի գաղղիական՝ ձեռամբ Շահնազարեան Կարապետ վարդապետի. եգիպտագէտն Է. Մարք Գաթրըմէր* (1782–1857), *որոյ հայկական մէկ բառգիրք կը պահուի յազգային մատենադարանին Փարիզու. Ճ. Պարթէլըմի Սէնդ–Իլէր։*

*Դժբաղդաբար այս իմաստուն հայագիտաց շատերուն գրուածք ցրուած են զանազան ուսումնական թերթից, ու երբեմն նաեւ օրագրաց մէջ, ինչպէս նաեւ այլեւայլ ակադեմիաներու Յիշատակագրոց* (Mémoires), *ու մերթ եւս այնպիսի հրատարակութեանց՝ յորս մէկու մը մաքէն չիկրնար անցնիլ անոնց ի խնդիր ելլել. կամ այնպիսի մակագրով մը՝ որ հայագիտին հետաքննութիւնը չիկրնար շարժել։ Այսպէս հանդիպեցաւ մեզ Փ. Լ. Նիքարի հետաքննական այլեւայլ յօդուածներ գտնել* Տիփէնոս և Սկիւլլիս կրետացի արձանագործք (Dipœnus et Scyllis, sculp-

teurs crétois) խորագրով, հրատարակուած ի Ցիշատակագիրս Գաղղիոյ ազգային հնագիտաց ընկերութեան (Շար չորրորդ, հատոր Ը. Փարիզ 1877, յէջս 131—275,) որք իմաստուն հետազօտութիւնք են Խորենացւոյ Պատմութեան երկրորդ գրքին երկոտասաներորդ գլխոյն, յորում կը պատմուի թէ Արտաշէս փոխադրել հրամայած ըլլայ ի Հայս զօսկեզօծ պղնձի արձանս Անահտայ, Հերակլեսի և Ապոլոնի, ու ազգային աստուածոց նուիրուած կուատան մը մէջ դնել տուած: Չիմոռնանք յիշել առ տեղեաւս թէ Ջրպետեանն արդէն նոյն ընկերութեան Ցիշատակագրաց մէջ (Հատ. Բ. 262) յօդուած մը հրատարակած էր հնոյն Հայաստանի կառավարութեան կերպին ու կրօնից վրայ: Է. Տասթէլի « Պատմութիւն բնաջինջ բարձման հեթանոսութեան ի կայսերութեան արեւելից » գրքին մէջ ալ զանազան հետաքննելի տեղեկութիւնք կրնան գտնուիլ: Այսպէս շատ յօդուածք ի Մատենադարանի Հրովարտակաց Դպրոցին (École des Chartes), զորս մէջ բերելը՝ չափէն աւելի պիտի ընդարձակէր մեր այս գրուածք: Առանձին յօդուածով միտք ունինք խօսիլ գաղղիացի ուղեւորաց և ճանապարհորդաց վրայ որ ի Հայաստան. հիմկուհիմայ յիշենք Է. Ռըկլիւի « Ընդհանուր Աշխարհագրութիւնն » և Վիվիէն Տը Սէն Մարդէնի « Աշխարհագրական նոր բառգիրքը », ուր ի յօդուածն « Հայաստան » (Arménie) ուսումնասէրք յիշատակուած պիտի գտնեն այս ուղեւորաց շատերուն անուանքն և իրենց երկասիրութիւններն նկատմամբ հայ հայրենեաց:

Բայց մեր մէջ բերած անուանքն ալ բաւական են անշուշտ որ Հայք երախտագիտութեան յիշատակ մը պահեն առ Գաղղիա. որոյ գիտնական հայագէտք՝ բաւական չի սեպեցին ուսումնասիրել միայն հայկական լեզուին մեքենական կազմութիւնն, այլ մանաւանդ եւեւէ եղան ծանուցանել և հռչակել Հայոց աշխարհի ու ազգի հնութիւնքը, պատմութիւնն, կրօնն ու մատենագրութիւնը:

Զբաղելով հայ լեզուով որ անհրաժեշտ պայման մ՚էր իրենց հետազօտութեանցը, չի մոռցան զայն խօսող ժողովուրդը, և փափաքեցան մինչև ի խորս իսկ ազգային ոգւոյն մուտ գործել։ Ուստի և կը համարձակինք ըսել, թէ այսպիսի ջանքով և եռանդեամբ զոր ցուցին՝ արժանաւորք երեւցան Հայ ազգին երախտագիտութեան։

* * *

Գաղղիացի հայագիտաց վրայ խօսելնէս ետքը՝ պատշաճ է երկու տող ալ նուիրել այն մէկ քանի հայ ազգայնոց որ իրենց բնակութիւնն հաստատելով ի Գաղղիա՝ այլեւայլ կերպով և իրենց բաւականութեան չափով կրցան սատար ըլլալ նոյն ուսումնասիրութեան յառաջադիմութեանը, ծաւալելով զսէր և զախորժակ առ իւրեանց ազգային մատենագրութիւն։ Արդէն յիշեցինք զՋոհրապեան, աշխատակից Սէն-Մարդէնի։ Ուրիշ անձ մ՚ալ, նոյն ազգէն, գաղղիական հիւրամեծարութիւնը վայելող, Գապարաճեան Կարապետ, բաւական վարժութիւն ստացած ըլլալով գաղղիարէնի, հինգերորդ դարու պատմագիրն, զԵղիշէ՝ վերածեց ի նոյն լեզու. յորում՝ ինչպէս ծանօթ է, հեղինակն ընտիր և վարժ գրչով և լեզուաւ կու տայ զնկարագիր մեծոգի՝ բայց անհաւասար պատերազմին, յորում Վարդան սպարապետ իր ընկերներով ինկան ի դաշտի մարտին, մարտիրոսք սրբազոյն և ազնուագոյն դատի մը, ազատութեան խղճի և անկախութեան հայրենեաց, ընդդէմ Յազկերտի Բ Պարսից արքայի։ Այդ սիրելի գրքին մէջ բովանդակուած տեղեկութիւնք Սասանեանց սովորութեանց, կրօնից և կառավարական դրութեան, այնչափ աւելի հետաքննականք են, որչափ ականատես անձէ մը գրուած, որ ինքն ալ մասն ունեցած է այն նշանաւոր դիպուածոց մէջ *։

* Soulèvement national de l'Arménie chrétienne au Ve

Թարգմանութեանս մէջ Եղիշէի պատմութիւն ամբողջացած է ի Գապարաճեանէ, ուրիշ ժամանակակից պատմըչի մը՝ Ղազարայ Փարպեցւոյ քանի մը էջերով *, որ նոյն պատերազմին շարայարութեան պատմութիւնն ըրաւ մինչեւ ցամն 485, յորում Վահան՝ եղբօրորդին և յաջորդ Վարդանայ, երկար և յարատեւ ջանիւ և բանակցութեամբք յաջողեցաւ վերջապէս իր հայրենեաց խաղաղութիւնն ձեռք բերել պատուաւոր դաշնադրութեամբ մը ընդ Վաղարշակ կամ Վոլոգէս Թագաւորի, որդւոյ Յազկերտի Բ: Այս Թարգմանական աշխատասիրութեան, և մանաւանդ ի վերջ գրոցն դրուած ծանօթութեանց մէջ, այլեւայլ ուսումնական տեսութիւնք կրնան անշուշտ տեսնուիլ, որ թէպէտ արեւմտեան գիտնոյ մը ոչ այնպէս արժանահաւատք և յայտնիք, բայց միանգամայն արգելք մը չեն օգտուելու անոնց մէջ ամփոփուած տեղեկութիւններէն:

***

Սակայն շատ աւելի օգտակար եղաւ հայագիտական ուսմանց բարգաւաճմանն ի Գաղղիա, Էջմիածնի միաբան Կարապետ վարդապետի Շահնազարեան բնակութիւնը ի Փարիզ, ուր յարեւելից փոխադրուած էր արեւմտեան գիտութեանց փափաքով: Կրթութեան այս ծարաւ աւելի կերպով յայտնուեցաւ իր յարատեւ ջանիւքն յուսումն գաղղիարենի՝ որպէս զի կարող ըլլայ այն

siècle, contre la loi de Zoroastre, sous le commandement du prince Vartan le Mamigonien.

* Abrégé de la vie politique et guerrière du prince Vahan le Mamigonien, héros de l'Arménie au Ve siècle, écrit par Lazare Pharbe, son secrétaire, pour completer l'histoire d'Élisée.

լեզուով գրուած գրքերու ընթերցմամբ զբաղիլ և հմտանալ։ Այդ ուսմանց առաջին ճաշակն տուաւ՝ ութերորդ դարու հայ պատմագրի մը, Ղեւոնդեայ երիցու գրոց գաղղիական թարգմանութիւնն հրատարակելով, որ խալամութեան առաջին դարուն Արաբաց ձեռքով ի Հայաստան տրուած պատերազմաց պատմութիւնն է։ Շահնազարեան աւելի լուրջ կ'երեւնայ յայտնած կարծեացը մէջ՝ և անհամեմատ վեր քան զիւր նախորդ, թէպէտեւ ունենալով և պահելով միշտ միամտութիւն մը, որով ընդհանրապէս տոգորուած է արեւելեայց գիտնականութիւն, կ'ըսէ Տիւլորիէ։

Էջմիածնէն հեռացած ատեն՝ Շահնազարեան հետը բերեր էր հաւաքում մը դեռ եւս անտիպ հայ պատմագրաց գործերուն, և որք հազիւ ծանօթ էին ուսումնական արեւմտեայց՝ Չամչեանի պատմութեան մէջ բերուած հատուածներով, և Սոմալեանի Պատկեր հայ գրականութեան գրքին համառօտ տեղեկութիւններէն. և սակայն մեծ էր ամենուն հետաքննութիւնը, առանց ստոյգ տեղեկութիւն մը ունենալու թէ ե՛րբ պիտի յաջողի իրենց ձեռաց մէջ ունենալ այն թաքուն գանձերը։ Հայրենակցաց ընկերագրութեամբ քաջալերուած սկսաւ ընել անոնց հրատարակութիւնն Թանգարան հայ դպրութեանց կոչելով զայն, ու եօթն հատոր տպագրելէն ետքը՝ հմուտ ու ընդարձակ յառաջաբաններով և ծանօթութեամբք, թողուց զԳաղղիա, և անցնելով ի Մանչէսթր Անգղիոյ, և ապա ի Գահիրէ Եգիպտոսի, հոն վախճանեցաւ։ Տարակոյս չիկայ որ նորագիր և միակ օրինակի վրայ եղած բնագրոց տպագրութիւնք՝ չեն կրնար անթերի համարուիլ. ծանօթութիւնքն ալ երկրորդ կամ երրորդ կարգի հմտութեամբք են. բայց անով հանդերձ անտարակուսելի է գիտութեանց մատուցած մեծ ծառայութիւնը՝ մաքուր տպագրութեամբ և դիւրագին մատչելի ընելով ամենուն՝ այդ անգին երկասիրութիւններ։

Աւելորդ կը սեպենք յիշել Մխիթարեան հարքը և

իրենց օժանդակութիւնը Տիւլորիէի, Բրիւտոմի, Լանկլուայի և այլոց ձեռնարկներուն. զոր իրենք ալ երախտագիտութեամբ հռչակած են արդէն։

## Փ. ՆԵՒ

Անցնինք հիմայ ի Բելգիա, ուր հայկական ուսմանց միակ ներկայացուցիչն է Փ. Նեւ։

Փելիքս Յովհաննէս Մկրտիչ Յովսէփ Նեւ, ծնած է ի Հաթ բերդաքաղաքի, մերձ ի Հէնոյ Բելգիոյ յերեքտասան յունիսի 1816 տարւոյն։ Իր ուսմանց ընթացքն կատարելով ի Լուվէն, ի Պոն՝ և ի Միւնխէն Պաւարիոյ, գընաց ի Փարիզ՝ աշակերտիլ Գաթրըմէրի, Ռէյնոյի և Եւգ. Պիւռնիւֆի։ 1838ին փիլիսոփայութեան վարդապետի տիտղոսը ընդունեցաւ. և 1841ին արդէն ուսուցիչ էր յուղղափառ համալսարանին Լուվէնի, և վրան քիչ տարի անցնելէն ետքը նաև անուանական ուսուցիչ հին մատենագրութեան և արեւելեան լեզուաց։ Ի 1844 իր ի Լուվէն հրատարակած մէկ գրուածովը «Ներածութիւն ընդհանուր պատմութեան արեւելեան մատենագրութեանց» (Introduction à l'histoire générale des littératures orientales), ցըցուց յայտնապէս թէ անուանի արեւելագէտ մը ըլլալու սահմանուած էր։ Մասնաւոր կերպով հետամուտ եղաւ սանսքրիտ և հայ լեզուաց, ի նմին ժամանակի չդադրելով ուսումնական հետազօտութիւններ ընել Լուվէնի համալսարանին, ու նոյն քաղաքին «Երից լեզուաց» դպրոցին պատմութեամբ, ու երիտասարդ արեւելագիտի մը՝ Եւգ. Ժաքիէի կենսագրութեամբ։ Մեր նպատակէն դուրս է մեծանուն ուսուցչին՝ Հնդկաց մատենագրութեան վրայ գրուած իմաստուն երկասիրութեամբքն զբաղիլն. իսկ հայկականին նկատմամբ՝ իր առաջին գրութիւնն է 1841ին Տէրտէր+

(Univers) *օրագրին յուլիս 4 թուոյն մէջ հրատարակած՝ ի պատիւ Առաքելոց երգուած ի մեր եկեղեցւոյ շարականին գաղղիարէն թարգմանութիւնը* (Les Hymnes du Charagnots aux saints Apôtres)։ *Ընդհանուր արեւելեան մատենագրութեանց պատմութեան ներածութեան մէջ* (*յ'էջ* 51) « *Քանի մը դրուագք ի պատմութենէ հալածանաց քրիստոնէական կրօնից ի Ե դարու* » (Quelques épisodes de la persécution du christianisme en Arménie au Ve siècle; traduits pour la première fois de l'arménien en français, Louvain)։ – Ի 1862 « *Յաղագս կոչման Հոգւոյն սրբոյ ի հայկական պատարագամատոյցի* » (De l'invocation du Saint-Esprit dans la liturgie arménienne; Louvain)։ – Ի 1863 « *Փրեդերիկ Վինտիշման եւ բարձրագոյն բանասիրութիւնն ի Գերմանիա* » (Frédéric Windischmann et la Haute Philologie en Allemagne; Paris)։ *Այս գրուածն մասնաւորաբար նուիրուած է ի քննադատութիւն գերմանացի գիտնականին հետեւեալ խորագրով մէկ երկասիրութեանը*. Die Grundlage des **A**rmenischen in Arischen Sprachstamme, (Mémoires de l'Académie de Munich, classe philos; – philol; *Հատոր Դ. մասն Բ.*) *եւ խնդրուի թէ արիական լեզուաց ճիւղին մէջ ո՛ր տեղ կը պատկանի հայկականին*։ — 1866 *յունիս ամսոյն մէջ ի Հանդիսարանն ուղղափառ հրատարակեց Նեւ* (*Հատ. ԻԴ յ'էջս* 332–344) *սրբոյ Լուսաւորչին ընծայուած Յաճախապատում գրոց ճառը որ յաղագս զանազանութեան անձանց ի սուրբ Երրորդութեան* (De la distinction des personnes dans la Sainte Trinité)։ — *Տես* G. M. Schmid, Reden und Lehren des heiligen Gregorius des Erleuchters, aus dem Armenischen übersetzt; Regensbourg, 1872, *էջ* 268։

*
* *

*Վերջապէս ի* 1886 *ընտիր երկ մը, կամ մանաւանդ երկասիրութեանց հաւաքմունք մը ընծայեց Նեւ տպագրութեամբ «Քրիստոնեայ Հայաստան և իր մատենագրութիւնն» խորագրով* (L'Arménie Chrétienne et sa littérature), *հրատարակեալ ի Լուվէն*, (*էջք* 400), *ութածալ հատոր մը, յորում հեղինակը իւր ամէն նախընթաց երկասիրութիւններն ի մի հաւաքելով, նոր ծանօթութիւններ ալ անոնց վրան կ'աւելցընէ։*

*
* *

*Դնենք այս հետաքննական երկասիրութեան ամբողջ բովանդակութեան ցուցակը.*

**Նկարագիր հայ մատենագրութեան**. (— *Tableau de la littérature arménienne*)։

I. «*Լեզու և Այբուբենք*». (— Langue et Alphabet).

II. «*Երեք ժամանակք բարգաւաճանաց հայ մատենագրութեան*». (— Trois périodes dans la culture littéraire de l'arménien).

III. «*Առաջին ազգային մատենագիրք և հին թարգմանիչք*». (— Les premiers écrivains nationaux et les anciens traducteurs).

IV. «*Գրական վերածնութիւն առ խաչակրօք*». (— Renaissance littéraire au temps des Croisades).

V. «*Նոր կեդրոնք հայկական ուսմանց ի նոր ժամանակս*». (— Nouveaux centres d'études arméniennes dans les siècles modernes).

VI. «*Հայագէտ Եւրոպացիք*». (— Les Arménistes Européens).

Հայկական երգաբանութիւն. Շարական. (—*Hymnologie arménienne*; (*Le Charaghan*).

I. « Պայծառակերպութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի հայկական ժամակարգութեան ». (— La Transfiguration de notre Seigneur J. Ch. dans l'Office des Arméniens).

II. « Տօն պայծառակերպութեան ». (— La fête de Transfiguration).

III. « Կանոն առաջնոյ աւուր պայծառակերպութեան». (— Canon de la première journée de la Transfiguration).

IV. « Կանոն երկրորդ աւուր ». (— Du deuxième jour).

V. « Կանոն երրորդ աւուր ». (— Du troisième jour).

Յաղագս կոչման Հոգւոյն սրբոյ. (— L'invocation du Saint-Esprit.

Երգք թարգմանեալք և մեկնաբանեալք որ ծառայեն պատմութեան վարդապետականաց յարեւելս. (— *Himnes traduites et commentées pour servir à l'histoire du dogme en Orient*).

I. « Դաւանականք յերգս Պենտակոստէին ». (– De la doctrine professée dans les hymnes de la Pentecôte):

II. « Յաղագս յօրինուածութեան երգոց շարականաց, ոճոյ նոցա և աղբերաց ». (— De la composition des hymnes, de leur style et de leur sources).

III. « Թէ ովք են հեղինակք շարականաց Պենտակոստէին ». (— Des auteurs des hymnes de la Pentecôte).

IV. « Շարական առաջնոյ աւուր Հոգեգալստեան ». (— Hymne du premier jour de la descente du Saint-Esprit).

V. « Շարականք չորից աւուրց որ զկնի կիւրակէի

Պենտակոստէին, շարագրեալք ի Ներսիսէ Հայրապետէ ». (— Hymnes des quatre jours qui suivent le dimanche de Pentecôte, composées par le patriarche Nerses).

VI. « Շարականք վեցերորդ և եօթներորդ աւուրց, շարագրեալք ի Ներսիսէ Լամբրոնեցւոյ ». (– Hymnes de sixième et septième jours, composées par Nerses de Lambron).

« Կանոն տօնից սրբոյն Յովհաննու Մկրտչի ». (— 'anon des fêtes de Saint Jean-Baptiste).

I. « Կանոն ծննդեան Ս. Յովհաննու Մկրտչի. – Ա. Շարական որ պարունակէ զգովութիւն և զվարս սրբոյն Յովհաննու Մկրտչի ». (— Canon de la nativité de S. Jean-Baptiste. Cantique contenant l'éloge et la vie de Saint Jean-Baptiste).

II. « Աղօթանման երգ ուղղեալ առ Աստուած ». (— Cantique adressé à Dieu en forme de prière).

III. « Երգ գովաբանական ». (— Cantique de louange).

IV. « Երգ հայցելով զողորմութիւն աստուածային ». (— Cantique pour implorer la miséricorde de Dieu).

V. « Երգ ի պատիւ եռանձնեայ աստուածութեան ». (— Cantique où l'on glorifie chaque personne de la Trinité).

VI. « Երգ պաղատանաց ». (— Cantique de l'invocation).

VII. « Երգ ի պատիւ եկեղեցւոյ ». (— Cantique en l'honneur de l'Église).

« Երկրորդ կանոն սրբոյն Յովհաննու Մկրտչի ». (— Second canon de St. J. Baptiste).

Կանոն սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի. — (Canon des saintes Apôtres Pierre et Paul).

**Կոստանդիանոս և Թէոդոս յարեւելեան եկեղեցւոջ.** *Constantin et Theodose* devant les églises orientales. «*Ուսումնասիրութիւն քաղեալ ի յոյն և ի հայկական աղբերաց*». (— Étude livrée des sources grecques et arméniennes).

I. «*Յիշատակ մեծին Կոստանդիանոսի յեկեղեցիս Յունաց եւ Հայոց*». (— Mémoire de Constantin le Grand dans l'Église grecque et arménienne).

II. «*Յիշատակ Թէոդոսի մեծի ի հայ եկեղեցւոջ*». (— Mémoire de Theodose le Grand dans l'Église Arménienne).

**Զրոյց սրբուհւոյն Հռիփսիմեայ և ընկերացն վկայուհեաց.** — *La Legende de Sainte Rhipsima et de ses compagnes martyrs.*

«*Շարական սրբոց Հռիփսիմեանց*». (— Hymne à Ste. Rhipsima et à ses compagnes).

«*Շարական ի պատիւ Վարդանանց մարտիրոսաց*». (— Cantique en l'honneur de Vartan et de ses compagnons, guerriers arméniens, martyrs de la foi).

«*Առաջին և երկրորդ շարական սրբոց Վարդանանց*». (— Ier et IIme Charaghan aux saints Vartaniens).

**Հանգստեան շարականք.** *Աղօթք յեկեղեցական պաշտամունս Հայոց վասն ննջեցելոց.* (– *Les Hymnes funèbres*; Prières liturgiques de l'Église arménienne pour les morts).

I. «*Հանգստեան երգք շարականաց, անոնց ժամանակն, հեղինակը. Թարգմանութիւն երգոցն*». (— Chants funèbres du Charagan: de leur âge et de leur auteur; traduction).

II. «*Երգ Ս. Ներսիսի Շնորհալւոյ վասն ննջեցելոց, և լրացուցիչ երգք շարականաց*». (– Hymne de St. Nerses le Gracieux pour les morts, et cantique complémentaire du Charagan).

III. « Կարեւորութիւն հանգստեան շարականաց յեկեղեցական պաշտամունս Հայոց ». (— Importance des chants funèbres dans le culte et la liturgie des Arméniens).

IV. « Աղօթք վասն հանգուցելոց եւ անոնց հետեւանք ի դաւանութեան հայ եկեղեցւոյ ». (— La prière pour les morts, et ses conséquences dans la confession de l'Église arménienne).

Հայրախօսութիւն. — *Patrologie*.

I. « Ս. Գրիգոր Լուսաւորիչ, հիմնադիր Հայաստան եկեղեցւոյ, եւ մի յառաջին մատենագրաց ». (— St . Grégoire l'Illuminateur, fondateur de l'Église d'Arménie, et un de ses plus anciens écrivains).

II. « Ս. Գրիգոր Նարեկացի: Մատենագրական եւ կենսագրական տեղեկութիւնք ». (— St . Grégoire de Naregh. Notice littéraire et biographique).

III. « Ներսէս Դ. կաթուղիկոս Շնորհալի՝ նկատեալ որպէս մատենագիր ». (— Le Patriarche Nerses IV, dit Schnorhali ou le Gracieux, envisagé comme écrivain).

Պատմութիւն. — *Histoire*.

« Գլխաւոր յիշատակարանք պատմական մատենագրութեան Հայաստանի ». (— Des principaux monuments de la littérature historique de l'Arménie

I. « Եղիշէ, պատմագիր Ե դարու ». (— Élisée, historien du Vme. siècle).

Ա. « Կենսագրութիւն Եղիշէի ». (— Biographie d'Élisée).

Բ. « Պատմութիւն պատերազմի Հայոց ընդդէմ Պարսից ». (— Histoire de la guerre des Arméniens contre les Perses, sous Vartan).

Գ. « *Տեսութիւնք Եղիշէի. ընտրութիւն ոճոյ* ». (– Vues d'Élisée; mérite de son style.

Դ. « *Կարեւորութիւն պատմութեան Եղիշէի* ». (— L'intérêt des faits dans l'histoire d'Élisée.

II. *Յովհաննէս Զ կաթողիկոս, և իր Հայոց պատմութիւն* ». (— Jean VI Catholicos, et son histoire d'Arménie).

Ա. « *Ժամանակ Յովհաննու Զ. ոճ գրութեան* ». (–Époque de Jean VI; style de son ouvrage).

Բ. « *Աղբերք Յովհաննու Զ ի վերայ հին պատմութեան Հայաստանի: Մանրամասն պատմութիւն ամբարձման Բագրատունեաց, և իրեն ժամանակակից իշխանաց* ». (— Sources de Jean VI sur l'histoire ancienne de l'Arménie. Histoire détaillée de l'élévation des Pagratides et du règne des princes dont il fut contemporain).

Գ. « *Յովհաննէս Զ. պատմիչ քրիստոնէութեան Հայաստանի* ». (— Jean VI, historien du Christianisme en Arménie).

« *Պատմութիւն Մատթէոսի Ուռհայեցւոյ. Բելգիացի առաջնորդք յառաջին խաչակրութեան* ». (— Chronique de Mathieu d'Édesse. Les Chefs Belges de la première Croisade).

I. « *Մատթէոս Ուռհայեցի, և պատմութիւն առաջին խաչակրութեան շարագրեալ ի նմանէ* ». — (Mathieu d'Édesse, et sa relation de la première Croisade).

II. « *Գործք և արութիւնք Կոփրետոսի Պույեոն և այլոց բելգիացի իշխանաց* ». (— Faits et gestes de Godefroi de Bouillon et d'autres princes Belges).

III. « *Պաուդէն Ա. և յաջորդք նորա ի վերայ աթոռոյն Երուսաղեմի* ». (— Bauduin Ier et ses successeurs sur le trône de Jerusalem).

IV. « *Դատաստանք Մատթէի Ուռհայեցւոյ ի վերայ Փռանկաց* ». (— Des jugements de Mathieu d'Édesse sur les Francs).

V. « *Աղբերք հայկականք վասն պատմութեան Մոնղոլաց յԱսիա, մինչեւ ի ժամանակագրութիւն Թովմայի Մեծոփեցւոյ* ». (— Les sources arméniennes pour l'histoire des Mongols en Asie, jusqu'a la Chronique de Thomas de Medzoph; XIII—XV siècles).

*Յուէլսոծ*. — *Պատմագրութիւն առ Ասորիս և Հայս : Ասորական մեծ ժամանակագրութիւն Գրիգորի Բար-Եբրէոս*. (— La composition historique chez les Syriens et chez les Arméniens. La Grand Chronique Syriaque de Grégoire Bar Hebreus).

*Պարթէլըմի տը Սէնդ-Իլէր՝ Իմաստնոց օրագրին մէջ* (1886. *յ'էջ* 730), *կ'ըսէ*. « .................... *Նւրոպա մեծ համակրութիւն պարտըկան է այս փոքրիկ քրիստոնեայ ժողովրդեան, որ գրեթէ մոլորած՝ Ասիոյ քիչ ծանօթ մասի մը մէջ, գիտցեր է հնդետասան դարերէ ի վեր պահել իր հաւատքը, ի մէջ այնչափ վտանգաց և այնպիսի հարստահարութեանց.... : Իրենց կրած այսչափ աղխոից և ցուցած հաստատամտութեան համար՝ արժանաւորք են ամենայն մտադրութեան : Ուրիշ պատճառաւ մ'ալ՝ մեր մտադրութեանն կ'արժանանան : Կրօնական ու պատմական տեսակէտով մեծ արժէք ունեցող մատենագրութիւն մը ունին, որով կարող են մեզ ուսուցանել շատ բան այն յեղափոխութեանց վրայ որոց ականատես եղաւ Ասիոյ այս մասն և շրջակայ գաւառք. չենք ուզեր խօսիլ հայկական պատարագամատուցին վրայ՝ որ քիչ հետաքննական չէ* » : *Ասոնց վրայ աւելցընենք Նեւի հետեւեալ համակրութեամբ լի խօսքերն՝ իր այս գրուածին յառաջաբան ծանօթութեանց մէջ.* « *Պատմութեանց մէջ դժուարագիւտ կրկնակի երեւոյթիւ, հայկական ժո-*

ղովուրդը, զօրաւոր՝ զարմանալի հաւատարմութեամբն թէ իր բարուցը և թէ հաւատոց, յերկարակեաց եղաւ քան զպատերազմունս և զյեղափոխութիւնս՝ որ կերպով մը զինք տասանորդեցին. և մատենագրական ու եկեղեցական լեզուին մէջ ունի նշանակ մը իր կենդանութեան և առհաւատչեայ մը մշտնջենաւորութեան։ կարծես թէ սահմանուած է մասնակից ըլլալ օր մը Ասիոյ վերածնութեան »։

*
* *

Հայկական ուսմանց նկատմամբ իր այլ և այլ յօդուածներն հրատարակուեցան Մուսէոն ուսումնաթերթին մէջ, որ համազգային հանդէս մ'է, և գիտութեանց ու դպրութեանց հետամուտ ընկերութենէ մը 1882էն ի վեր կը հրատարակուի ի Լուվէն։ Գլխաւոր աշխատակիցներէն մէկն էր Պ. Նեւ, ուր թէ իրեն և թէ այլոց հետեւեալ յօդուածոց կը հանդիպինք. « Քանի մը տեղեկութիւնք վանայ և ուրիշ արձանագրութեանց վրայ ի Ա. Հ. Սէյսէ և ի Քերովբէ Պատկանեան ». (Quelques notices sur les inscriptions vanniques et autres, par M. A. H. Sayce et feu M. Kéropé Patkanian de St . Pétersbourg). — « Ծանօթութիւն յէմիլէ տը Տիյոն՝ Հայաստանի մատենագրական–պատմական մատենախօսութեան վրայ ի Քերովբէ Պատկանեան ». (Comptes rendu par M. Emile de Dillon de l'esquisse bibliographique de la littérature historique de l'Arménie, par M. K. Patkanian; St . Pétersb. 1880) յառաջին հատոր Մուսէոնի 144–145։ — « Ռէսթէյնկ (Ռէստէն Պատկանեան) Քննադատութիւն Աշխարհագրութեան Մովսիսի Խորենացւոյ հրատարակելոյ ի Հ. Արսէնէ Սուքրի, ի Վենետիկ 1881 ». (Critique par M. de Restaing de la Géographie de Moïse de Khorène, editée par le R. P. Arsène Soukry; Venise 1881). —

Երրորդ հատորին մէջ (1886) Կ. տը Հարլէզ կը քննադատէ Տիյանի ռուս լեզուով հրատարակուած հայկական ուսումնասիրութիւնքը (Études), ցուցընելով հայերէնին յարաբերութիւնքը երանեան լեզուաց հետ. (Rapports de l'Arménien avec les langues eraniennes; Karkoff, 1884). — Փ. Նեւ ալ նոյն հատորին մէջ կը հրատարակէ « Տեսութիւն » մը Տիւլորիէի ձեռքով գաղղիարէնի թարգմանուած Ասողկայ պատմութեան վրայ, որոյ առաջին մասը տպագրեր էր Կարրիէր. (Compte–rendu de l'histoire d'Açoghig, traduite par Dulaurier et publiée par M. Carrière). — 1887 տարւոյն մէջ գեղեցիկ քննադատութեան մը կը հանդիպինք. Պատկանեանի հրատարակած Թովմայի Արծրունեաց պատմութեան. (Critique de l'édition de Patkanian de l'Histoire de la maison des Ardzrounis, par le Vartabed Thomas Ardzrouni. St . Pétersbourg. 1887): — Ի հատորն եօթներորդ (յ'էջ 358–364) Նեւի մէկ հատուածը՝ հայերէն լեզուով եղած քանի մը նորագոյն հրատարակութեանց վրայ. (Quelque récentes publications de littérature arménienne): Իսկ ի 1889 տեղեկութիւն մը՝ Վիէննայի Մխիթարեանց Հանդէս ամսօրեայ ուսումնաթերթին վրայ. (Notice sur la Revue mensuelle=Hantess Amsoria=des Mékitaristes de Vienne). Այն առթով կը ծանուցանէր Նեւ թէ 1888 հոկտեմբեր ամսէն ի վեր Նեղոս անունով շաբաթական հայ օրագիր մը կը հրատարակուէր յԱղեքսանդրիա Եգիպտոսի՝ Ուշտունի Անտոնի խմբագրութեամբ: Բայց այս օրագրին հրատարակութիւնն քիչ ատենէ խափանուեցաւ, որովհետեւ տպարանին հայ տառից տէր քահանայն բռնադատուեցաւ երթալ ի Կալաց՝ հոն նոր թերթ մը հաստատելու դիտաւորութեամբ:



Յուղարկաւորութեան օրը՝ վերջին ողջոյն հրաժեշտի տուաւ բազմավաստակ գիտնականիս Կ. Լումաս (Ch. Loomas) Բելգիոյ ակադիմիոյ գրականական բաժնին տեսչի փոխանորդը՝ հետեւեալ խօսքերով. « Փելիքս Նեւ՝ արդէն ծանօթ էր իր մեծակշիռ երկասիրութեամբք ի վերայ սանսքրիտ մատենագրութեան. և որոց մէջ ժամանակաւ երիցագոյն է Ո——ամ——էր——Ըէ——Ն է Վէր—յ Ոէէ—վէ—յէ որ 1842է ի վեր հրատարակուած էր: Իր գիտնական հրատարակութեամբք՝ դեռ յերիտասարդութեան, մասնաւոր տեղի մը գրաւած էր հնդկասիրաց մէջ, որով ակադիմիոյ գրականական բաժնին մտադրութիւնը իւր վրայ դարձուց, ընտրելով զնա նախ ի 1860 իւր թղթակից և ապա ութ տարիէն անդամ:

« Անենը չէ գնահատելու իւր գրեթէ կէս դարու բազմաթիւ երկերը՝ որ յաջորդաբար հրատարակուեցան ակադիմիոյ գործոցը մէջ և այլուր: Այս դագաղին առջեւ՝ ցաւագին համակրութեան զգացմունք մը կը յիշեցընէ ձեզ հանգուցելոյն անձը մանաւանդ՝ քան իր գրուածներն: Կարելի՞ է ինձ չմասնակցիլ այս զգացման, որ իրեն աշակերտակիցն եմ ի համալսարանի, ընկեր ակադիմիոյ և բարեկամը:

« 1837ի թուականն էր: Քսանամեայ էինք այն ատեն: Մի և նոյն գրասեղանին դիմաց նստած, մի և նոյն եռանդեամբ, թէպէտեւ ոչ հաւասար յաջողութեամբ, կը հետեւէինք արեւելեան մատենագրութեանց ներածութեան դասընթացքին: Ուսուցի՞չ մ՚էր այն որ նոր հորիզոններ բացաւ Փելիքս Նեւի, և անոր գիտնական կոչումը յայտնեց: Այնպիսի հասակի մը մէջ՝ յորում շատք դեռ եւս իրենց հետեւելու ճանապարհը կը փնտռեն, գիտցաւ ընտրել զիւրն, և այն ատենէն տուաւ ինքզինք արեւելեան ուսումնասիրութեանց, որ իր հաստատուն պարապմունքն եղան և կենացը պատիւը:...

« Զեմ կրնար չյիշել թէ որպիսի մասն ունեցաւ ա-րեւելեան բանասիրութեան դպրոցի մը հիմնարկութեան, որ իր գիտնական հետազօտութեանց երկերով այնպիսի պայծառ լոյս մը ձգեց Լուվէնի համալսարանի և Բել-գիոյ վրայ։

« Լոկ իմաստուն արեւելագէտ մը չէր Նեւ։ Ընդար-ձակ ու խորին հմտութեան մը հետ միացուց զպաշտօն բարւոյն և գեղեցկի։ Երկու զգացմունք կը խրախուսեն զինք իր կենաց երկար ընթացքին մէջ, և կը փայլին իր բազմաթիւ գրուածոց մէջ. հայրենեաց սէրը և իր հաւա-տոց ջերմ եռանդը։

« Որպիսի բարեպաշտիկ փութով կը ջանար վրէժխնդ-դիր ըլլալ անիրաւ մոռացութեան յիշատակի իր հայ-րենակցացը, որ նախընթաց էին նոյն ասպարիզին մէջ և նշանաւորք իրենց գրաւորական վաստակօք դասական և արեւելեան մատենագրութեան։ Ի նշանակ մեծարանացն առ նախնիս, Երից լեզուաց դպրոցին Յիշատակարանք, պա-կեալ յակադեմիոյ, իրմէ գրուած բազմաթիւ ծանօթու-թիւնք որ Ազգային կենսագրականաց (Biographie nationale) մէջ երեւցան, և իր դեռ նոր հրատարակած գիրք Ի վե-րայ վերածնութեան դպրութեանց, և Նախկին հին հմտութեան ի Բելգիա։

« Հաւատոց եռանդեամբը գրած է իր հմուտ հետա-զօտութիւններն Ի վերայ նորանոր ազգերաց կարեւորաց յա-ռաջնորդել ընդունութեան քրիստոնէութեան յարեւելս, — Համբա-ւեան շարականաց հայկական եկեղեցւոյ, — Կոչման Հոգւոյն սրբոյ ի հայ պատարագամատոյցէ, — Ի վերայ արեւելեան եկեղեց-ւոյ և պատմութեան նորա ըստ աւուրական ազգերաց։

« Այսպիսի մեծ գործոյ մը եռանդեան աշխատակից էին համալսարանական երիտասարդութեան ընտրելա-գոյն մասը՝ որոց հետ համաձայն էր Նեւ։ Իրականցընել, որչափ մարթ է, զմիաբանութիւն գիտութեան ընդ հա-ւատոց, ազատութեան ընդ իշխանութեան, աւանդական հոգւոյ ընդ հոգւոյ յառաջադիմութեան. ասոնք էին լու-

*սամիտ երիտասարդութեան փափաքներն և իր սիրոյն առ գաղափարականն »։*

Վերածնութիւն նախնի մատենագրութեան (Renaissance des lettres anciennes) *երբ հրատարակուեցաւ տպագրութեամբ, եօթանասունըհինգ տարուան էր Նեւ։ Արդէն կ'իմանար թէ ծերութեան հասակն սկսած էր ծանրանալ վրան և ոյժը օրէ օր կը պակսէր։ Քիչ ատենէն աչքի ցաւ և տկարութիւն մը՝ բռնադատ անգործութեան դատապարտեց անխոնջ աշխատաւորը, և դեղեւեալ քայլքոտից վերահաս վախճան մը կը գուժէին։ Այս զգացումը զինք չահաբեկեց։ Քրիստոնէի հաւատքով, ինչպէս խելքով, չէր նկատեր նա զմահ՝ ոչնչութիւն մը, որ կը խառնէ զմարդ ընդ անասուն անբանին, ի մի հող և ի փոշի. այլ բաժանում մը անմահ հոգւոյն ի կորստական պատենէն։ Երբէք համամիտ եղած չէր այն յուսահատական վարդապետութեան, որ գերեզմանէն անդին կեանք չընդունիր. այլ կը հաւատար հանդերձեալ կենաց՝ ուր մարդ կ'ընդունի՝ յաճախ այս երկրիս վրայ ժխտուած վարձքը։*

*Թոքատապ մը՝ որ ի սկզբան թեթեւ կ'երեւնար, մայիսի մէջ (1893) վրան հասաւ, ու քանի մի օրուան մէջ ծանրանալով, մահուան մօտեցուց։ Երբ վտանգն իմացուցին, մեծ բարեպաշտութեամբ ընդունեցաւ ամէն հոգեւոր օժանդակութիւնք՝ զոր այն գերագոյն վայրկենին եկեղեցի կ'ընծայէ հաւատացելոց ի սփոփանս և ի քաջալեր, և հանգեաւ ի քաղցր խաղաղութեան որ իրեն կենաց ոչ պակաս յատկանիշն էր։*

***

*Մեր ինչուան հոս ըսածներէն ալ յայտնի կ'ըլլայ թէ Բելգիոյ ալ՝ ուր այսչափ յառաջադէմ եղան հայկական ուսմունք, մասնաւոր երախտագիտութեան պարտք մը ունին Հայք։ Փափաքելի է որ աւելի բազմանան Փելիքս*

*Նեւի հեռոց եռեւէն գնացող բանաստեղծ և գիտունք, չմոռնալով երբեք այն գեղեցիկ խօսքերն զոր համակրելի հայագէտն 1845էն ի վեր կը գրէր յՈ[illegible] համալսարանէ. «Հարաստան, կ՚ըսէր, մէկ ծայրէն կը մօտենայ յունական հնութեան, յորմէ իր մատենագրութիւն բազմաթիւ փոխառութիւնք ըրաւ թարգմանութեամբք. և միւս ծայրովն ալ՝ արեւելեան խնկաւէտ կենաց: Եթէ դարուց ընթացքին մէջ իր քաղաքական կեանք և վիճակ շատ տարբեր եղաւ, բայց կրօնական պատմութիւնը՝ քրիստոնեայ ազգի մը պատմութիւն է. և այս տեսակէտով՝ ոչ ոք կրնայ անտարբեր մնալ այնպիսի ժամանակի մը մէջ, որպիսի է մերս, որ ժողովրդոց ամրեգրութեանց մէջ իրենց ընկերական գաղափարաց ոյժն ու յաջողութիւնը կը փնտռէ. հոս ալ բռնադատուած է ճանչնալ և ընդունիլ քրիստոնէական սկզբանց պահպանողական ոյժը»:*

* * *

*Կը մնայ մեզ խօսիլ գերման՝ ինչպէս նաեւ զուիցերացի, աւստրիացի հայագիտաց և իրենց երկասիրութեանց վրայ՝ նկատմամբ հայ լեզուին ուսման և մատենագրութեան. ուրիշ առթի թողլով ճանապարհորդներն և հետախոյզ քննիչքն՝ որոց գրուածք աշխարհագրական նկարագրէն կամ տեսութիւններէն անդին չեն անցնիր: — Այս նկատմամբ պէտք եղած տեղեկութիւններն լիուլի կրնան ընծայել Կարլ Ռիտտէրի հսկայ աշխատասիրութիւնն, –* Erdkunde *կոչուած, – ինչպէս պարբերական հետեւեալ ուսումնական և աշխարհագրական թերթերն.* Globus, Ausland, Determann's Mittheilungen, Zeitschrift der Geographie, und Erdkunde, *և այլն: Ասիկայ մասնաւոր ուսումնասիրութիւն մ՚է, որ թէպէտ հետաքննական, բայց մեր գծած սահմանին մէջ չի մտներ: Բո՛ւն հայկական ուսմունք ի Գերմանիա՝ ինն-*

եւտամներորդ դարուս սկզբնաւորութեան կը պատկանին Կ. Փ. Նոյմանի պատմական ու մատենագրական երկասիրութեամբք. յետոյ երեւցաւ Յ. Հ. Պետրմանի հայ լեզուի քերականութիւնն՝ լատին լեզուով բացատրուած, և որ պատճառ եղաւ բանասիրական փորձերու Լ. Տիեֆէնպախի (Diefenbach), Փ. Վինտիշմանի (F. Windischmann), Ռ. Կօշէի (R. Gosche) և Պ. Տըլակարտի (Paul de Lagarde)։ Հռչականուն բանասէրքն Պոփ, Շլէյխէր (Shleicher), Պոտտ (Pott), Սպիեկէլ (Spiegel), Լասսէն (Lassen) անգէտք հայ լեզուի, չկրցան որոշ կարծիք մը յայտնել, մինչ Տըլակարտ և Փր. Միւլլէր երանեան լեզուաց դասակարգին մէջ կը դնեն զայն։ Եւ թէպէտ հիմկուհիմայ հայ գրականութեան ուսումը այնչափ յառաջադէմ չէ առ նոսա, բայց բանասիրական մասին մէջ մեծ յառաջադիմութիւն կայ. և օրինակ, Պուկկէի (Bugge) մէկ գիրքը, որոյ վերայ յետոյ պիտի խօսինք։ Այս յառաջադիմութեան շնորհիւն է որ սկսան առողջ և լուրջ քննադատութեան կանոններով բնագրաց վրայ ուսումնասիրութիւններն ընել։ Առաջինն եղաւ Ալփրետ Ֆոն Գուտշմիդ՝ Խորենացւոյ ու Ագաթանգեղոսի գրոց վրայ ըրած քննադատութեամբք. իրմէ ետքը Ատոլփ Բաումկարթնէր Մովսիսի Խորենացւոյ Պիտոյից գրքին վրայ երկասիրութեամբ։ Հարկ չէ ըսել և պնդել թէ որ և իցէ մատենագրութիւն շահաւէտ կերպով ուսումնասիրելու համար՝ ի վեր քան զամենայն խնդրելի են վաւերական բնագիրք, որ կարելի եղածին չափ զերծ և անարատ ըլլան օրինակողաց վրիպակներէ։ Եթէ այս մեր խօսքերը կը պատշաճի գրաբար կամ հին լեզուին, չիմոռնանք յաւելուլ թէ հիմայ նոր լեզուով ալ կը սկսի զբաղիլ գերման բանասիրութիւն։ Լայպցիկի տպագրապետ մը, Ա. Ֆրիտրիխ, Արգար Յովհաննիսեանի վերատեսչութեամբ՝ տասնի չափ հատորք հրատարակեց Հայկական Մատենադարան խորագրով (ի գերման լեզու), և Արթիւր Լէյսթ (Leist) մերթ ընդ

մերթ օրագրաց մէջ կը հրատարակէ Նորագոյն հայ քերթողաց երկեր թարգմանուած ի գերման։ Այս ամենայն՝ գեղեցիկ ապացոյց մը գուշակել կուտան մշակութեան հայերէն լեզուի յԵւրոպա. և եթէ ստոյգ է որ իննեւտասներորդ դարը միայն պատրաստութիւն մ՚է առ այդ, քսաներորդին պիտի պատշաճի անշուշտ հայկական մատենագրութեան քաղաքակիրթ աշխարհի մէջ վայելուչ դիրքը տալու փառքն։ Բայց լմըննալու վրայ եղող դարուս մէջ ապրողներն ալ դեռ իրենց կատարելիք գործն ունին*։ Մեր յաջորդք՝ Հայոց մատենագրութեան ու պատմութեան աւելի հմուտ և քաջածանօթ ըլլալու համար, պէտք է բուն իրենց երկրին մէջ հետազօտեն զայն և ուսումնասիրեն։ Վասն զի պատմչին, հնախօսին, երկրագիտին, աշխարհագրին համար ի՞նչ աւելի միջոց կայ անցելոյն վերածնութեան աշխատանքին մէջ։ Ի՞նչ աւելի ուրիշ կերպով կրնայ յաջողիլ բանասէրն յուսումնասիրել զգաւառաբարբառս ժողովրդեան, որ այնչափ անհրաժեշտ է իրեն։

## ՓՐ. ՆԱՅՄԱՆ

Գաղղիացի հայագէտք եղան որ յառաջ քան զամենեսին մեր դարուն գերմանացի գիտնոց մտադրութիւնը հրաւիրեցին ի վերայ հայկական մատենագրութեան։ Ասոնց մէջ առաջինն՝ ժամանակի կարգաւ, եղաւ Կարլ–Փրեդերիկ Նայման. ծնեալ ի 1790 ի Հռայքմանստորֆ,

* Երկու տարի յառաջ (1890) կը գրէր այս տողերն գաղղիացի հայագէտս Գ. Ա. Շրումփ, եռանդեամբ և ջանիւ աշխատելով մեր հին և նոր լեզուն ընտանեցնելու և աւելի կերպով ծանօթացընելու եւրոպական բանասիրութեան։ 1892 տարւոյն դեկտեմբերի 16ին իր անակնկալ մահը, իրաւամբ ցաւալի կորուստ մ՚էր ուսումնական աշխարհի և մեր մատենագրութեան։

մօտ ի Պամպէրկ, ուր հայրն հրէայ աղքատ վաճառական մ՚էր։ Երիտասարդութիւնն անցուց պարապելով ի վաճառականութիւն, ու 1817ին գնաց ի Հայտէլպէրկ՝ ուսման ընթացք կատարելու դիտմամբ։ Հոն աշակերտելով Հէկէլի՝ բողոքականութիւնն ընդունեցաւ, և յետոյ Միւնիխի բանասիրական հոգեւոր դպրոց մը մըտաւ։ 1819ին ուսուցչութեան յարմարութեան վկայականը ձեռք ձգելով, գնաց գլխաւորել իր ուսումը ի Կէթթինկէն։ 1821էն մինչեւ ի 1825 Վիւրցպուրկի և Ափիրայի վարժարանաց մէջ ուսուցչութեան պաշտօն վարեց․ բայց բանաւորականաց վարդապետութեանց հետեւող երեւնալով, պաշտօնէն զրկուեցաւ։ Այն ատեն մատենագրական ուսմամբք զբաղելով, արեւելեան լեզուներու ետեւէ ինկաւ։ Բաւական ժամանակ կեցաւ ի Վենետիկ, յաճախելով ի սուրբն Ղազար յուսումն հայերէն լեզուի, ուստի ուղեւորեցաւ յաշխարհն Ճենաց՝ անոնց գրոց հաւաքմունք մը ընելու նպատակաւ։ Ի դարձին՝ հաւաքած գրքերէն երկու հազարը Պերլինի մատենադարանին յանձնեց, ու մնացած տասն հազարն պարգեւեց պաւարական կառավարութեան․ և ի փոխարէն՝ Միւնխէն համալսարանին մէջ հայերէն ու սինէացի լեզուաց և ազգագրութեան ուսուցիչ անուանեցաւ (1833)։ 1852ին պատմական ուսմանց դասախօսութեանցը մէջ յայտնած ազատական գաղափարաց համար պաշտօնէն զրկուեցաւ․ մնաց ի Միւնխէն մինչեւ ի 1863, յետոյ անցաւ ի Պերլին՝ ուր իր բնակութիւնն հաստատելով մեռաւ ի 1870 մարտ 17։

Այլ և այլ գրուածներ հրատարակած է Նայման սինէական, ազգագրական, և պատմական ուսմանց և հետազօտութեանց վրայ․ բայց մեր նպատակն է միայն հայկականաց վրայ խօսիլ։ 1829ին Ասիական Նոր օրագրին մէջ հրատարակեց (Հատ․ Գ․ 46–86, 97–153) Դաւթի Անյաղթ փիլիսոփայի գրուածոց վերայ երկասիրութիւն մը, և ի մասնաւորի անոր Արիստոտելի քանի մի գրուա֊

*ծոց թարգմանութեանց վրայ.* (Mémoire sur la vie et les ouvrages de David; philosophe arménien de V siècle de notre ère, et principalement sur ses traductions de quelques écrits d'Aristôte): – 1830*ին յանգղիական լեզու ի լոյս ընծայեց Եղիշէի Վարդանանց պատմութիւնը.* (The history of Vartan, of the battle of the Armenians; containing the Persians and Armenians, by Elisæus bishop of the Amadunians, translated from the Armenian by C. F. Neumann; London, Oriental Translation fund; 1830): *Տարի մը ետքը հրատարակեց նաեւ զհամառօտ պատմական գրուած Վահրամ րաբունւոյ, ի նոյն անգղիական լեզու.* (Vahram's Cronicle of the Armenian kingdom of Cilicia during the time of the Crusades, translated from the original armenian, with notes and illustrations by C. F. Neumann, London 1831): *Գաղղիական թարգմանութիւն մը այս գրուածին հրատարակեցաւ ի Հ-ն-տէ-ն -րէ-էլ-ց թարգմանութեամբ Ս. Պետրոսեան.* (Chronique du royaume arménien de la Cilicie à l'époque des Croisades; traduite par Sahag Bedrosian (de Constantinople). Paris, Benjamin Duprat, 1864. *յ'էջս* 245–254, 315–325): *Եղիշէի թարգմանութեան վրայ հետեւեալ քննադատութիւնն կ'ընէ Նեւ. « Միւնիխի իմաստուն ակադեմականին թարգմանութիւնը, կ'ըսէ, ազատ թարգմանութիւն մ'է, որ կարծես թէ ոչ այնչափ բանասիրական տեսակէտով՝ որչափ պատմականին համար եղած կ'երեւնայ. ուստի և ի բնագրէն այլ և այլ կտորներ մէկդի ձգեր է, երկրորդումն կամ յերկարաբանութիւն համարելով, մանաւանդ որոնք իրեն համար ճառաբանականք կամ ճամարտականք կարծուեր են: Անճշդութիւններն որոց մէջ ինկած է, կրնան իրենց մեկնութիւնն գտնել յանմ դրութեան՝ զոր կարծեր է գործածել, և նաեւ ի դժուարութեան ճշդելու միշտ դիմաստ բնագրին, որ ոչ միշտ դիւրիմաց է, և ուրիշ Հայ*

մատենագրաց նման՝ ունի իր յատուկ քերականական դարձուածներն »:

***

Գերմանական ուսումնական հանդիսից մէջ ամենէն յառաջ աշխատակից եղաւ Նայման՝ Լայպցիկ հրատարակուած Հէրմէս կամ Քննադատական-մատենագրական տարեգիրք, (Hermes, oder Kritisches Jahrbuch der Literatur) թերթին մէջ. և ի հատորն ԼԳ (էջ 177–204) հատուած մը հրատարակեց. « Հայկական լեզու և նորա մատենագրութեանն առաջին ժամանակ » խորագրով (La langue arménienne et sa littérature, Ire époque)։ Մեծապէս հետաքննական պատմական տեսութիւն մ'է հայկական ուսմանց ի Գերմանիա։ Բաց ի Աւգերեան–Պրանտ հայ–անգղ և անգղ – հայ բառգրոց, կը խօսի հեղինակն ի Մխիթարեանց Վենետկոյ հրատարակուած Մովսէսի Խորենացւոյ (1827) և Եզնըկայ գրոց վրայ (1826). յորմէ կը թարգմանէ Որմզդի և Արհմենի ծննդեան նշանաւոր հատուածը։ 1833ին Վիէննայի Մատենագրական տարեգիրք հանդիսին ԿԲ հատորին մէջ (58–69) յօդուած մը հրատարակեց նոյնպէս ի Ս. Ղազար տպագրուած Փաւստոսի Բիւզանդայ պատմական գրոց վրայ (1832)։ Հայ լեզուին համար կ'ենթադրէ թէ մերձաւոր ազգակից ըլլայ պահլաւին, և ի հաստատութիւն իր դրութեան Գուլիէլմ Հումպոլտ (Abh. der histor. philol. Klasse der Kön. Ak. der Wiss. zu Berlin), 1829 տարւոյն և ի 1832 հրատարակուած մէկ յօդուածը մէջ կը բերէ, յորում կը պնդէ թէ հայկականն՝ հնդկագերման ճիւղին ամենէն աւելի հարուստ լեզուաց մէկն է, և թէ բանասիրական ու պատմական տեսակէտով՝ այս լեզուին ուսումն ուրիշ որ և իցէ լեզուաբանական ասպարիզին մէջ ամենէն աւելի կարեւորներէն և հետաքննելին է։ Այս յօդուածէն վերջը կը խօսի Նայման Մխիթարայ

*Հերացւոյ Ջերմանց գրքին վրայ, որ ի* 1832 *տպագրութեամբ հրատարակուած էր ի Ս. Ղազար:* D. F. Illgen's Zeitschrift fur die historische Theologia *Լայպցիկի ուսումնաթերթին չորրորդ հատորին մէջ* (1834, *Մասն Ա.* 71–78), *Նայման թարգմանութեամբ հրատարակեց Եզնըկայ Ընդդէմ աղանդոց գրոց չորրորդ մասը,* « *ընդդէմ Մարկիոնի* » (Marcions Glaubenssystem) *տեղեկութեամբ մը այն յարաբերութեանց որ ի վարդապետութեան Մարկիոնի և փարսիկանին: Նոյն հատորին մէջ* (*Մասն Բ.* 126–198) *տպագրեց զԹարգմանութիւն հռչակաւոր Ատենաբանութեան Սրբոյն Ներսիսի Լամբրոնացւոյ արքեպիսկոպոսին Տարսոնի որ ի Կիլիկիա յ՚ԺԲ դարու, ներածութեամբ և ծանօթութեամբ. որ արդէն Աւգերեան Հ. Յարութեան իտալական թարգմանութեամբ և տպագրութեամբ* (1812) *ծանօթ էր արեւմտեայ բանասիրաց: Նոյն* 1834 *թուականին հրատարակեց Նայման գերման թարգմանութեամբ Սէրկէյ Կլինքա ռուս բանասիրին մէկ գրուածքը,* « *Պատմութիւն գաղթականութեան ի Ռուսաստան քառասուն հազար հայազգեաց Ատրպատական գաւառի ի* 1828 ». (Geschichte des Uebersiedlung von 40,000 Armenien, welche im Jahre 1828, aus des Persischen Provinz Aderbaidschan nach Russland auswanderten, Lepzig, 1834): *Վերջապէս ի* 1836 *հրատարակեց անուանի արեւելագէտն իր ամենէն աւելի հետաքննական երկասիրութիւնն.* « *Ճաշակ գրականական պատմութեան Հայաստանի, ազատ խմբագրութեամբ, հետեւողութեամբ գրուածոց Մխիթարեանց* ». (Essai d'une histoire de la littérature arménienne, rédigée librement d'après les ouvrages des Mékhitaristes=Versuch zu einer Geschichte den armenischen Literature nach den Werken der Mechitaristen frei bearbiet etc): *Տասնըութ գլուխներու բաժնուած և ըստ դարուց դասաւորուած է այս գիրքը. որոյ վրայ* 1849*ին յաւելուած մ'ալ*

ըրած է հեղինակն, յորում ընդ խորագրով Beyträge zur armenischen Literatur; Munchen, 1849, կը խօսի Մովսիսի Կաղանկատուացւոյ ու Արիստակիսի Լաստիվերտացւոյ գրուածոց վրայ։ Զենք կարծեր թէ մեր այս յիշատակածներէն զատ ուրիշ գրուածք մը հրատարակած ըլլայ Նոյման՝ նկատմամբ հայ լեզուի, մատենագրութեան և ուսմանց։

## Խ. ԱԲՈՎԵԱՆ

Պետերմանի վրայ չխօսած, կարեւոր կը համարինք համառօտ յիշատակութիւն մը ընել իր յարաբերութեանց ընդ բազմաթիւ գիտնականաց արեւմտից և ընդ հեղինակի Վէրք Հայաստանի կոչուած գրքին։ Ծանօթ է բանասիրաց հմտից որ Խաչատուր Աբովեան ծնած է ի 1806 Երեւանի մերձակայ Քանաքեռ գիւղը։ Տասը տարուան հասակին հօրը առաջնորդութեամբ տարուեցաւ ի վանս Էջմիածնի ի դաստիարակութիւն, եկեղեցական վիճակի զինք ընծայելու դիտմամբ։ Անկէ անցաւ ի դըպրոցն Ներսիսեան որ ի Տփխիս, ուր և մնաց ցամն 1828։ Սարկաւագութեան աստիճանն ընդունած էր արդէն՝ երբ Տորբատի բնաբանական ուսմանց հռչակաւոր ուսուցիչն Փրեդերիկ Պարրոտ (1791–1841) բազմաթիւ աշակերտներով եկաւ յԷջմիածին, Արարատ լեռը ելլելու մտքով (Reise zum Ararat, Berlin, 1834)։ Երիտասարդն Աբովեան փափաք և յօժարութիւն ցըցուց անոնց թարգմանն ըլլալ. և այդ պաշտօնը այնպիսի յաջողութեամբ ի գլուխ տարաւ որ զարմացուց զհռչականուն ուղեւորն. և սիրով յանձնառու եղաւ իր աղաչանաց Եւրոպայի մէջ օրինաւոր ուսում մը ընելու միջոցներն դիւրացընելու։ Ընտանիքն հակառակեցան իր այս մտածութեանն ու փափաքին. բայց Եփրեմ կաթողիկոս՝ որ

*ինքն ալ երկար ուղեւորութիւններ ըրած էր, չկրցաւ դէմ կենալ պատանւոյն թախանձագին աղերսանաց, և արտաշարժ խօսքերով օրհնեց զինքն յաջողութիւն մաղթելով նմա։ Պարրոտ դառնալով ի Տորբատ յայտնեց իր կարծիքը, թէ Էջմիածնի մատենադարանին գրչագրաց մէջ պէտք է որ գտնուին հայկական թարգմանութիւնք յոյն դասական մատենագրութեան և հին հեղինակաց, որոց երկասիրութեանց սկզբնագիրք հիմա կորսուած են։ Մէկէն Ֆէտոր Կլօսիոս՝ վարդապետ և ուսուցիչ իրաւագիտականին,* 1833 *փետրուարի* 4*ին գրեց առ կաթողիկոսն՝ փափաքելով գիտնալ այս ենթադրութեան ստուգութիւնը։ Եփրեմի յաջորդն Յովհաննէս Ը պատասխանեց թէ չկան ի գրատանն այդպիսիք. որովհետեւ երկիրը տակնուվրայ ընող պատերազմաց պատճառաւ բոլոր գրքերն ցիրուցան եղած էին։ Ծանոյց ի նմին ժամանակի, թէ ի Հայաստան հարիւրի չափ կանգուն մնացող վանքերէն՝ տասն եւեթ իրենց միաբանքն ունէին, բայց անոնք ալ գրատուն չունէին։ Այն ատեններն էր որ Պրոսէ իր յաշխարհին Վրաց և ի Հայաստան ըրած հնախօսական ուղեւորութեան երրորդ Տեղեկագրով ստորագրեց և զվանս Էջմիածնի և անոր մատենադարանը, և թէ ինչպէս* 1828*էն ի վեր ձեռք դարնուած էր հոն եղող գրչագրաց ցուցակի մը խմբագրութեան։ Կաթուղիկոսին պատասխանը՝ Աբովեան թարգմանեց ի գերման լեզու, որ և հրատարակեցաւ ի* Dorpater Jahrbücher fur Literatur, Statistik, und Kunst, besonders Russlands, *ի Ռիկա և ի Տորբատ, Հատ. Ա.* 1833, *յէջս* 90–92։ *Այս առթով յիշեցնել կարեւոր կը համարինք որ նոյն չորրորդ հատորին մէջ ամփոփուած է* (385–420 *և* 502–520) *Ինճիճեան վարդապետի երկասիրութիւն մը Ռուսաց իշխանութեան տակ գտնուող Հայաստանի մասին վրայ, զոր Ե. Ա. Հերմանն թարգմաներ էր ի ռուս բարբառ։*



Աբովեան դառնալով ի Տորբատ, Տփխիսի դպրոցին ուսուցչի պաշտամամբ կը պարապէր, երբ տեղւոյն այցելութիւն մը ընելով, ազգիս արդէն ծանօթ իր ուղեւորութեան գրուածքովը՝ Մորից Վակնէր անուանի ճանապարհորդն պաւարացի (1813–1887), զարմացաւ ընդ յառաջադիմութիւն աշակերտելոցն ի վարժս գերմաներէն լեզուի, և այն սիրոյն և համակրութեան վրայ զոր իրենց փութաջան և եռանդուն ուսուցչին կը ցուցընէին: Կովկասի քաղաքապետ Նէյդհարդ զօրավարին խնդրանօքը՝ ընկերեց նմա Աբովեան, երբ 1843ին երկրին հիւսիսային կողմերը քննեց, և հետեւեալ տարւոյն զհարաւակողմ Արարատայ (Reise nach dem Ararat und dem Hochlande Armeniens, ի Reisen und Länderbeschreibungen der älteren und neuren Zeit, herausgegeben von Dr . Hermann Hauff, 35 livr. 1848, p. X. 332): Աբովեան ծանօթ էր նաեւ Հերման Աբիխի, որ 1845 տարւոյն յուլիսի 29ին Արարատայ վերեքն ըրաւ: Նշանակենք առ տեղեաւս որ երկրագիտին օգնեցին Նայման և Գաբրիէլ Խատիսեան, որ նոյն միջոցին ի Տորբատ կը գտնուէր, ի պատմական մասին իր ուսումնասիրութեանց ի վերայ երկրաշարժից ի Հայաստան. (Geologische Forschungen, 3ter Teil, Wien, 1887, յ'էջ 433–447): Նոյն ատեններն Փրեդերիկ Մարտին Բոդէնշտէտ քերթող, մատենագիր և ուղեւոր, ճանապարհորդութիւն մը ըրաւ ի Հայաստան, Ռոզէն Գէորգ անուանի արեւելագիտին հետ. ծանօթացաւ ընդ Աբովեանի. և որոյ խօսքը կ'ընէ յաճախ « Հազար և մի աւուրք յարեւելս » կոչուած բանաստեղծական երկասիրութեան մէջ. (Tausend und ein Tag im Orient, հրատարակեալ ի Պերլին ի 1850): Բոդէնշտէտ՝ ի Տփխիս մանկավարժական հաստատութեան մը ուղղիչ եղաւ քա-

նի մի ժամանակ, այցելութիւն մ'ալ ընելով յԷջմիածին՝ (1844 ի մարտի) սիրալիր ընդունելութիւն գտաւ Ներսէս կաթողիկոսէն որ զինքը ճանչցած էր ի Մոսկուա։ Աբովեան ձեռագիր տետրակ մը նուիրեց հայկական ազգային երգերու յաշխարհիկ բարբառ, անոնց թարգմանութեամբն ի գերմանական լեզու. և խոստացաւ երկրորդ տետրակ մ'ալ նման երգոց ղրկել քիչ ատենէն։ Պետերմանն կարդաց ու մեկնեց այս բանաստեղծութիւններն. և յորոց քանի մը ընտրելագոյնքը գերմանական ոտանաւորի վրայ առնելով հրատարակեց Բոդէնշտէտ, ինչպէս գերեզմանական երգ մը, և « Հոռոսխան և Հռիփսիմէ » կոչուած ազգային երգը։

⁂

Բարեկամացաւ Աբովեան նաև Հաքսթաուզէն մարգիզին հետ (1792–1867), որ Transkaukasia խորագրով ի Լայպցիկ հրատարակուած (1856) գրքին հեղինակն է. և որոյ առաջին մասը նուիրուած է մասնաւոր կերպով մը Հայոց ընկերական կեանքին։ Հեղինակն հայերէն լեզուի տեղեկութիւն չունէր. բայց Աբովեան իր քովն եղած բոլոր ձեռագիր տեղեկութիւններն հաղորդեց, և զորս հաւաքեր էր իր հայրենակցացը սովորութեանց վրայ գրուածք մը հրատարակելու դիտաւորութեամբ։ Հաքսթաուզէնի երկասիրութիւնն մեծապէս հետաքննական է անով մանաւանդ՝ որ մէջ կը բերէ այն մանրամասնութիւններն զորս հաղորդեր էր իրեն կաթուղիկոսն Ներսէս, Տփխիսի համանուն դպրոցին հիմնադիրն, և ուր ուսուցիչ կարգեր էր Փարիզէն կոչելով՝ զհայազգին Ջրպետեան։ Կ'աւանդէ թէ Ներսէս՝ հայ գրաւոր և խօսուած լեզուներն կը համեմատէր ռոման և լատին լեզուաց հետ, աւելցընելով թէ աշխարհիկ լեզուի վերլուծական կազմութիւնը կը յառաջագայէր թաթար լեզուին ազդեցութենէն։ Իսկ Աբովեան՝ որ վեց լեզու գի-

տէր, կը պնդէր թէ գրաբար լեզուն այնչափ դժուարին է՝ որ կարող չէր դիւրութեամբ խօսել զայն, թէպէտ և սորված էր զքերականութիւն, ու քանի մը մատենագրաց ամբողջ գրքերն ի բերան սերտած։ Հակսթաւսէն չմոռցաւ նաև զհայկական folk–lore, ի վերջ առաջնոյ հատորոյն դնելով (318–335) այլ և այլ ժողովրդական զրոյցներ (légendes) Աբովեանի թարգմանութեամբ։ Ծանօթ է արդէն թէ ինչպէս այս համակրելի անձն անհետացաւ ի 1848, և ոչ ոք կրցաւ իմանալ թէ ինչ եղաւ իրեն. սակայն իր յիշատակը միշտ սիրելի եղած է և պիտի ըլլայ թէ ազգայնոց և թէ եւրոպացի հայագիտաց, և որոյ համար այս տարի (1893) Ռուսահայք կ'աշխատին յիշատակարան մի կանգնել։

Այս ճանապարհորդաց, մեզի տուած և գրով աւանդած տեղեկութիւնք պէտք է ուսումնասիրուին անոնցմէ՝ որ կը փափաքին տեղեկութիւն ունենալ Հայոց քաղաքական վիճակին վրայ, և որոյ ծանօթութիւնն անհրաժեշտ հարկաւոր է յուսումն ազգային պատմութեան և մատենագրութեան։ Անոնցմով լիուլի կ'արդարանայ իրաւացի զարմանքն այն ժողովրդեան վրայ, որ « յանյիշատակ ժամանակաց բնակութիւն հաստատեր է ի մերձակայս Նուիրական լերինն Նոյի, և քրիստոսական կրօնից յայտնուելէն ետքը՝ օտար և թշնամի ժողովրդոց մէջ հաստատուն մնացեր է Արարատայ չորս կողմը, իբրև ի վերայ անտեղիտալի վիմի հաւատոց Քրիստոսի, յորմէ օտարացած չէ » (Պարրոտ, Ա. 102)։

# ՀԱՅ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

*Մեր գրուածքին ամբողջութեանն համար՝ կարեւոր կը համարինք տեղեկութիւն մը ընծայել ընթերցողաց Հայմատենադարանին* (Armenische Bibliothek), *զոր Յովհաննիսեան Արգարու տեսչութեամբ՝ Սաքսոնիոյ արքունեաց տպագրապետն, Վիլհէլմ Ֆրիտրիխ, կը հրատարակէ ի Լայպցիկ: Մատենադարանս ձեւացած է հայ աշխարհիկ լեզուով գրուած և շատ յաջողակ կերպով ի գերման թարգմանեալ այլ և այլ երկասիրութիւններէ: Ինչուան հիմայ լոյս տեսած են հետեւեալ հատորները. Ա. Երեք վէպք Ռափայէլի Պատկանեան, թարգմանուած յԱրթուրայ Լայստ. Դրոշ. — Քանդուած օճախ. — Նշանած: — Բ. Մատենագրական նախագիծք* (esquisses) *Ա. Լայստի: — Գ. Պարոնեանէ և Թէրզեանցէ կեանքէն տեսարաններ. երկասիրութիւն Րաֆֆիի, և թարգմանութիւն Լեւոնի Ռուբէնլի (կեղծանուն Արգար Յովհաննիսեանի՝ իր երկու որդւոց անուամբ): — Դ. Վէպք և Զրոյցք, երեսունեւօթն էջ նախադրութեամբ, ի Գրիգորէ Խալաթեանց ուսուցչէ Լազարեան ուսումնարանի, հանդերձ յաւելուածով ժողովրդական առածից Հայոց յԱրգարէ Յովհաննիսեան: Այս հատորին քննադատութիւնն ըրաւ Հ. Կախտող ի Մեղուին օրագրի: — Ե. և Զ. Պերճ Պռօշեանցի Սոսայ վիպասանութիւնն. թարգմանութեամբ Յովհաննու Լալայեան: — Է. Քանդուած օճախ, Գաբրիէլի Սունդուկեանց, կատակերգութիւն յերիս արարուածս, թարգմանութիւն Լեւոնի Ռուբէնլի: — Ը. և Թ. Եռամեայ պանդխտութիւն ի Հաբէշստան ի Տիմոթեայ վարդապետէ, պատգամաւորէ պատրիարքին Երուսաղեմի առ Թէոդորոս թագաւոր Հաբէշից: — Վախճանեալ Քերովբէ Պատկանեան խոստացեր էր օժանդակել հրատա-*

րակութեանս՝ հատոր մը գրելով Հայաստանի պատմական մատենագրութեան վրայ։ Արդէն հրատարակուած հատորոց վրայ քիչ առենէն պիտի աւելնայ ծաղկաքաղ մը, Քաջբերունեայ Ճանապարհորդական նկարագրութիւն ի Հայաստան, և Շէչմանեանէ (Ծերենց) վիպասանականքն։

Մասնաւոր մտադրութեան արժանաւոր կրնանք համարիլ այս Մատենադարանին երկրորդ հատորը, Ա. Լայաթի երկասիրած Մատենագրական Նախագիծն զոր յիշեցինք։ Տասն յօդուած ունի, և են խորագիրքն, 1. Ժողովրդական քերթող մը՝ Սայաթնովայ, կամ Ոստայնագործ բանաստեղծն Տփխիսի, մեռեալ ի 1795, որոյ քերթուածք հրատարակուեցան Հախվէրդեանի ձեռքով ի 1852։ Հաւաքում մը՝ որոյ ուսումնասիրութեամբ, ինչպէս քիչ ետքը պիտի տեսնենք, յօրինեց Պետերմանն իր գրուածքը Տփխիսի գուսանարարբաւին վրայ։ — 2. Ռափայէլ Պատկանեան, և իր այլ և այլ քերթուածոց ի գերման լեզու չափական թարգմանութիւնը. ինչպէս՝ Հաշարէն Ձէ-նը, Սէրէլէ՛ օգնութեան հասէ, Մայր Արաքսի արտասուքը, Հայ-աղջկը։ — 3. Հ. Ալիշան, և թարգմանութիւն Պլպուլն Աւարայրէ կոչուած իր մէկ քերթուածոյն։ — 4. Մկրտիչ Պէշիկթաշլեան, Միւսէ հայկական գրականութեան, համդերձ քանի մի նմոյշներով իր քերթուածոց։ — 5. Աբովեան, որոյ վրայ խօսեցանք նախընթաց հատուածին մէջ։ — 6. Ուխտ Մխիթարեանց սրբոյն Ղազարու։ — 7. Գաբրիէլ արքեպիսկոպոս Այվազովսքի, եղբայր հռչակաւոր նկարչին Թէոդոսիոյ Ղրիմու, որոյ հրաշակերտ նկարք քիչ յառաջ ի տես դրուեցան ի Լոնտրա։ — 8. Գաբրիէլ Սունդուկեանց՝ հեղինակ ճարտարաշխուս և երգիծախօս կատակերգութեանց։ — 9. Հայկական լրագրական մամուլը։ — 10. Գեր. Խրիմեան Հայրիկ։ Ի Magasin für die Litteratur des Ind–und Auslands լրագրի, ի 22 մարտ 1890 (Տրեզտ, Թիւ 12 յէջ 183–86) Լայաթ յօդուած մը հրատարակեց հայ քնարերգակ քերթութեան վրայ, չափական թարգմանութեամբ

ի լեզու գերմանական ազգային այլ և այլ քերթուածներու. ինչպէս [illegible], [illegible], [illegible] ի [illegible] [illegible] [illegible]՝ վաղամեռիկ Պետրոսի Դուրեան։

***

Լայսթ՝ որ այսքան համակրութեամբ և յաջողութեամբ կը պարապի հայ հեղինակաց գրաւորական արտադրութեանց ուսումնասիրութեամբ, ծնած է ի Պրէսլաւ ի 1852։ Ուսմանց ընթացքն աւարտելէն ետքը՝ երկար ատեն կեցաւ ի Լեհաստան իբրու ուսուցիչ դաստիարակ. նախ սլաւ մատենագրութեամբք զբաղելով, յետոյ տասներկու տարի իր պարապոյ ժամերը նուիրեց յուսումն հայ և վրացի լեզուաց։ Անդրկովկաս ուղևորութիւն մը ըրաւ ի 1884, ուր հետևեալ տարին վերադարձաւ և մնաց մինչև ի 1889։ Միտք ունէր երրորդ ճանապարհորդութիւն մ՚ալ ընել այն կողմերը։ Բայց ի յօդուածոց և ի վիպասանականաց զոր հրատարակեց Լայսթ արևելեան կենաց վրայ, հեղինակած է գիրք մը Վրաստանի և Վրաց վրայ, և որոյ խորագիրն է Georgien, Natur, Sitten, und Bewohner. Գրուածքիս մէջ յերկար կը խօսի հեղինակն հայկական մատենագրութեան վրայ։ [illegible] [illegible] (Georgische Dichter) խորագիրն ունեցող գլխոյն տակ հաւաքած է զանազան վրական քերթուածներ՝ գերման չափաւ թարգմանութեամբ։ Հրատարակեց ապա զթարգմանութիւն ի նոյն գերմանական լեզու՝ երեքտասաներորդ դարու վրացի վիպասանականի մը, որ ցարդ անծանօթ էր եւրոպական բանասիրութեան, և կը կոչուի [illegible] [illegible] [illegible] [illegible] (Der Mann in Tigerfelle), և հեղինակն է Շուէսթա Ռուսթավէլի (1890, ի Տրեզտա)։ Քիչ ատենէն պիտի հրատարակէ Լայսթ հաւաքում մը հայկական արդի մատենագրութեան քերթուածոց՝ թարգմանեալք գերմանական չափաւ, զոր պիտի կոչէ Armenische Dichterstimmen. Միտք ունի

*դարձեալ իր բոլոր երկասիրութիւնքը ի մի ժողվելով,* Vom Lebensborn des Morgenländes *խորագրով հրատարակել յերիս հատորս։ Այս գրուածքին նպատակն պիտի ըլլայ հաւատարմութեամբ ստորագրել զոգի, ըզբարս, զմատենագրութիւն և զարուեստս նախնական Ասիոյ ժողովրդոց։ Առաջին հատորը, որ տարւոյս ընթացքին մէջ կը հրատարակուի, պիտի ամփոփէ՝ բաց յայլոց՝ նաև հետեւեալ գլուխները. Թուրք և ընկերական կեանք Հայոց. — Հայ բանաստեղծութիւն. — Հայ կանայք. — Թուրք ու Հայ։ Պէտք չունինք աւելցընել թէ այս ամենայն հետաքննական տեղեկութիւններն նոյն իսկ իրմէ ընդունած ենք, և հրապարակաւ կը յայտնենք մեր երախտագիտութիւնն։*

* * *

*Հիմայ առաջ տանինք պշարայարութիւն մեր բուն Ուսումնասիրութեանց, զոր ի կախ ձգեցինք Նայմանի վրայ տուած մեր տեղեկութիւններէն ետքը։ Այս յօդուածին վրայ պէտք է յաւելունք՝ ի Մանչեսթրէ Պարոնեան Սուքիաս վարդապետին մեզի հաղորդած տեղեկութեանց համեմատ, որ Նայման բաց ի արդէն ի մէնջ յիշատակուած երկոց՝ գրած է տեսութիւն մ'ալ սրբոյն Ներսիսի Շնորհալւոյ ամենայն մատենագրութեանց, որոց լատինական թարգմանութիւնն ըրած է Գաբրէլլէդդի Ցոլսէփ քահանայն և հրատարակած ի Ս. Ղազար Վենետկոյ ի 1833. ինչպէս դարձեալ նոյն Շնորհալւոյ Ընդհանրականին հայ բնագրին և քերթուածոց վրայ՝ հրատարակելոց ի 1830 ի Ս. Ղազար։ Այս տեսութիւն հրատարակեցաւ նախ ի Մատենագրական տարեգիրք (Jahrbücher der Literatur) ամսաթերթին Վիէննայ, ի հատորն Կէ. 1834։ Նոյն հատորին մէջ (յէջ 32–36) կը գտնենք Նայմանի ձեռքով գերմանական թարգմանութիւն մը Շնորհալւոյ առ Արեւորդիս կամ Պաւլիկեանս*

Սամոսատայ գրած թղթոյն յ'ԺԲ դարու, ըստ լատինական Թարգմանութեան Գարբէլլէդդեայ (յ'էջ 269) առաջնոյ հատորի վէննետկոյ տպագրին։ Նոյն Պարոնեան վարդապետ կը ծանուցանէ մեզ թէ Ինճիճեան Հ. Ղուկայ «Հնախօսութիւն Հայաստանեայց» գրքին՝ տպագրելոյ ի Վէննետիկ յերիս հատորս ի 1832, որոյ իտալական Թարգմանութիւնն ըրաւ Գարբէլլէդդի և տպագրեց ի Թուրին ի 1841, քննադատական տեսութիւն մը հրատարակած է Նոյման ի Zeitschrift für die Kunde des Morgenländes ուսումնաթերթի Կէթթինկի, ի 1837 (յ'էջս 240–254 և 378–397)։ 1837ին յ'Օքսֆորտ հրատարակուած Արիստոտելի գործոց տասներորդ հատորին մէջ (յէջս 232–241) Նոյման տպագրելով Հասարակապետութեան գրքին Յունացորդը՝ նոյն առթիւ կը խօսի նաև հայ Թարգմանչաց վրայ։ Կը նշանակէ դարձեալ Պարոնեան՝ Նոյմանի մէկ յօդուածը ի Gelehrte Anzeigen Միւնիխի (1844, հատ. ԺԹ, թիւ 250–252) 1842ին ի Ս. Ղազար տպագրուած, և Սուտն-Կալլիսթենեայ ընծայուած Պատմութեանն Աղեքսանդրի վրայ տեսութիւն մը։ Քիչ ետքը պիտի յիշենք նոյն նիւթին վրայ աւելի նորագոյն ուսումնասիրութիւն մը ի Կիլտէմայսթերէ, ի քսաներորդ հատոր Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft, յէջս 88–92, յամի 1886, այս խորագրով. «Սուտ-Կալլիսթենէս առ Մովսիսի Խորենացւոյ» (Pseudo Kallisthenes bei Moses von Khoren). Շնորհակալութիւննիս կը յայտնենք այս տեղեկութիւններն մեզի հաղորդող վարդապետին, ինչպէս նաև սիրալիր և համակրական նամակին՝ զոր մեր այս երկասիրութեան առթիւ կը գրէ։

# Յ. Հ. ՊԵՏԵՐՄԱՆ

Յուլիոս Հենրիկ Պետերման ծնած է ի Կլախաւ յամի 1801 յ'12 օգոստոսի: Նախ սեմական լեզուաց ուսումը պարապեցաւ, և 1829էն ի վեր հրատարակած էր գրուածք մը քաղդէական Հնգամատենին կրկին թարգմանութեանց վրայ: 1832ին Բրուսիոյ կառավարութիւնը ղրկեց զինքն ի Ս. Ղազար՝ Թուրք և հայ լեզուները սորվելու. և դաս կ'առնուր ի Հ. Եդուարդ վարդապետէ Հիւրմիւզ, զոր կը կոչէ mein innigst verehrter Lehrer, և իրմէ յօրինուած Գործնական համառօտ քերականութեան վրայ կը խօսի յուսումնաթերթին Jahrbücher für Wissenschaftliche Kritik 1836 տարւոյն ('ի համարն Ա. թիւ 13, յ'էջս 97–111): 1837ին Պերլինի համալսարանին ուսուցիչ անուանեցաւ, և ի նմին ամի հրատարակեց իր « Հայերէն լեզուի քերականութիւնն » լատինական բացատրութեամբ (Grammatica linguæ Armeniacæ, (Պերլին, էջք ԺԲ. 264): Գրուածքը երկու մասանց բաժնուած է. որոց առաջնոյն մէջ կը խօսի այբուբենի, (արեւմտեան) հնչման և տառից փոփոխութեանց վրայ: Ընթերցման դաս մեր առջեւը կը դնէ հեղինակն քաղուած մը ի գրոց Եզնըկայ՝ Որմզդի և Արհմենի ծննդեան, ի հանդիպոյ հայ բնագրին կարգելով նաեւ զլատին թարգմանութիւն: Երկրորդ մասն է՝ բառագիտականն, ըստ սովորական ոճոյ և գրութեան: Նախադիտելեաց հատորն՝ զոր ի յառաջաբանի կը ծանուցանէր, երբեք լոյս չտեսաւ: — 1840ին Պետերման տպագրեց պատմական տեսութիւն մը արաբացի ոստիկանաց յաշխարհին Հայոց, այսպիսի վերնագրով. De Ostikanis, arabicis gubernatoribus, commentatio (ի Պերլին): Հետեւեալ տարին ընծայեց համառօտութիւն

մը իւր քերականութեան Brevis linguæ Armenicæ grammatica, litteratura, chrestomathia, cum glossario. Այս քերականութիւն՝ վեցերորդ հատոր է շարք մը երկասիրութեանց որ «Դուռն արեւելեան լեզուաց» (Porta linguarum orientalium) կը կոչուէին, և որոց հրատարակողն էր Պետերման։ 1872ին երկրորդ տպագրութիւն մ'ալ ըրաւ այս գրքին, աւելցընելով նաեւ արեւելեան հնչումը։ Բուն քերականութեան ետեւը դրուած է մատենագիտական տեսութիւն կամ ցուցակ մը օգտակարագոյն և աւելի դիւրաւ ստանալի գրոց, ծաղկաքաղ ու բառարան մը. տէրունական աղօթքն ալ՝ իբրու ընթերցման դաս, լատին տառիւք ընդօրինակութեամբ և վերլուծմամբ։ Ընտիր հատուածքն առնուած են ի Ծննդոց գրոց, ի Խորենացւոյն, ի Զամչեանէ, յԵզնկայ, յԵղիշէէ, ի Փաւստոսէ Բիւզանդ, ի Յովհաննու Մանդակունւոյ և ի Նարեկացւոյն։ Պետերմանի շարագրած քերականութիւններն արհամարհելը՝ նորելուկ սովորութիւն մ'է. բայց եթէ ուղենանք արդարախոհ ըլլալ ի դատել, պէտք է խոստովանիլ թէ կարեւոր ծառայութիւնք մատուցած են հայկական ուսմանց՝ այնպիսի ժամանակաց մէջ յորում Շրօտէրի Գանձարանը հազիւ կարելի էր գտնել նաեւ ամենէն աւելի գլխաւոր մատենադարանաց մէջ։ Տարակոյս չկայ որ Պետերման լեզուագէտ (linguiste) չէր, և յաճախ յարահետ ուղղոյ կը խոտորէր երբ կը ջանար բառերը յստակել կամ մանր քննել. բայց 1872ին հրատարակութիւնը մեծապէս օգտակար է նոր սկսանողաց համար. լողալ սորվելու համար՝ պէտք է նախ մտնել ի ջուր։ Աւելցընենք թէ Պետերմանի այս քերականութիւնք՝ իրենց նպատակ ունին միայն գրաբար լեզուի ուսումը. կենդանի կամ խօսուած լեզուն՝ կարօտ պիտի ըլլար նոր գիտութեանց ընծայած միջոցներուն։

1844ին Պետերման ձեռնտու եղաւ ի հրատարակութիւն երկասիրութեան մը որոյ նպատակն էր ցուցընել

թէ որպիսի՛ բարեկարգութիւնք մուտ գտան օսմանեան պետութեան գաւառաց մէջ 1839ին դրուած կիւլհանէի սահմանադրութեամբ․ (Beitrage zu einer Geschichte der neuesten Reformen des osmanischen Reiches in Verbindung mit Ramis Effendi, Berlin).

*
* *

1849ին հրատարակեց զհայկական հին թարգմանութիւն Ս․ Աստուածազգեցին ընծայուած թղթոց, լատինական թարգմանութեամբ ի հանդիպոյ, բաղդատութեամբ ընդ յունին, ասորականին և լատին փոխադրութեամբ և հմուտ ծանօթութեամբ։ (S. Ignatii Patris Apostolici quæ feruntur epistolæ una cum ejusdem martyrio, collatis editionibus græcis, versionibusque syriaca, armeniaca, latinis, denuo recensuit notasque criticas adjecit Jul. Henr. Petermann, Lipsiæ 1849․ էջք Ւ․Ձ․ 565)։ Յետագայ տարւոյն՝ Պերլինի Գիտութեանց ակադեմիայի անդամակից եղաւ, և այն առթիւ սկսաւ բազմաթիւ հատուածներ հրատարակել նոյն ճեմարանին ամսօրեայ տետրակաց (bulletin) մէջ, (ի Monetsberichte), ինչպէս նաև ի Յիշատակագիրս (Abhandlungen)։ Այսպէս 1852 փետրուար 2ին հրատարակուած թերթին մէջ (յէջս 87–104) հատուած մը կայ Մովսէսի Խորենացւոյ գրաւոր աղբերաց վրայ, յորում Զամչեանի հետեւողութեամբ կ'ակնարկէ, որ եթէ Մովսէս ծնած ըլլար ի Խորնի, պէտք էր որ Խորնեցի կոչուէր և ոչ Խորենացի, որ Խորեն (Խորեան) անունէն կը յառաջադայի։ Բաւմ կարդնէր այս խնդրոյն վրայ երկար խօսեցաւ յուսումնաթերթին Zetschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft, հատոր Ժ․ յ'էջ 457։ 1860ին Յիշատակարանաց (Mémoires) մէջ կը գտնենք Պետերմանի միւս այլ ընտիր երկասիրութիւն մը Խաչակրաց պատմութեան վրայ ըստ հայկական աղբերաց։ — 1865ին օգոստոս 17

Թերթին մէջ (457–462) յօդուած մը դրաւ Եւսեբեայ ժամանակագրութեան հայ թարգմանութեան հիմա գըտնուած բնագրաց և նորագոյն թարգմանութեանց վրայ, և որոյ շարունակութիւնն և ամբողջութիւնն երեւցաւ ՚ի Թերթն 26 ապրիլ 1866 տարւոյն (311–317)։ Յիշենք այս առթով որ 1819ին Հռովմ ղրկեր էր Նիէպուհր բանասէրն, իրմէ յօրինուած քննադատական մը Միլանու թարգմանութեան, այսպիսի վերնագրով; Ueber den historischen Gewinn aus der arm:nischen Uebersetzung der Chronik des Eusebius — « Թէ ինչ օգուտ կրնանք քաղել պատմութեան համար Եւսեբեայ ժամանակագրութեան հայկական թարգմանութենէն » ։ — Այս հատուածս հրատարակեցաւ ի 1822։ — 1866 տարւոյն նոյեմբերի 26 թուոյն մէջ (707–741) ուսումնասիրութիւն մը հրատարակեց Պետերման Ագուլիսի գաւառաբարբառին վրայ՝ ի Պատկանեան Քերովբէէ մատակարարուած տեղեկութեանց համեմատ ։— Ագուլիս, ինչպէս յայտնի է, հին Վասպուրական գաւառին Գողթնեաց բաժնին մէջ կ՚իյնայ, և բնակութիւն է Եկեղացիք կամ Զօկ կոչուած վաճառականաց, որոնց գաւառաբարբառը անիմանալի է նոյն իսկ իրենց ամենէն աւելի մերձաւոր ազգակցաց։ Պետերման նմոյշ մը կ՚ընծայէ այս բարբառոյն՝ ժողովըրդական վէպի մը ձեւով՝ Մ–րջ ե ծ–յլ կոչուած. 1866ին Յիշատակարանաց մէջ հրատարակեց ուրիշ ուսումնասիրութիւն մը հայ գաւառաբարբառաց վրայ, և այս անգամ Թիֆլիզի ազգայնոց, հիմն դնելով ինչպէս յառաջ բսինք, Սայաթ — Նովայի քերթուածոց վրայ։ 1867ին քննադատական տեսութիւն մը ընծայեց Այտընեան Հ. Արսէն վարդապետի (այժմ արքեպիսկոպոս աբբահայր) արդի հայ լեզուի քերականութեան վրայ։

***

Գերման արեւելեան ընկերութեան օրագրին (Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft) մէջ ալ յօդուածներ ունի Պետերման. ինչպէս հինգերորդ հատորին մէջ (1856 յ'էջ 365–372) տեղեկութիւն մը հայ երաժշտութեան վրայ՝ վեց վիմագրեալ պատկերներով. հնգետասաներորդ հատորին մէջ ալ (յէջ 397) տեսութիւն մը հայկական լեզուով եղած քանի մը հրատարակութեանց։ Զեռնտու եղաւ նաեւ արքունի Համայնագիտակ բառարանին (Real–Encyklopädie für protestantische Theologie und Kirche, երկրորդ տպագրութիւն 1877–1888, յութեւտասն հատոր). յորում նշանաւորք են Պետերմանի հատուածքն՝ Հայաստանի վրայ ընդհանրապէս. Մխիթար և Մխիթարեանք, Մովսէս Խորենացի, Ներսէս, Նեստորականք, Սահակ, Դաւիթ։ Յիշեցինք յառաջագոյն Եւսեբեայ ժամանակագրականին գրչագրաց հաւաքումը, զոր և թարգմանեց ի լատին՝ Շէօնէի (Shœne) տպագրին համար, և յերկու հատորս հրատարակեցաւ ի Պերլին ի 1875–6։ Թարգմանեց նաեւ ի լատին՝ այլ և այլ հատուածք Կիրակոսի Գանձակեցւոյ պատմագրութենէն, « Երկու հայ պատմչաց » Պրոսէի թարգմանութեան վրայ։

***

Ինչպէս հայ՝ նոյնպէս ալ սեմական լեզուաց մեծ հմտութիւն ունէր Պետերման. բայց մեր նպատակէն դուրս ըլլալով, աւելորդ կը սեպենք յերկարել խօսքերնիս՝ յիշելով միայն Մանդէացւոց Ադամայ գրքին տպագրութիւնն, սամարացի Հնգամատեանն, սեմական լեզուաց քերականութիւններն, և այլն։ Խօսինք միայն իր Ուղեւորութիւն յԱրեւելս (Reisen im Orient) գրքին վրայ,

որոյ առաջին տպագրութիւնն լոյս տեսաւ ի Լայպցիկ ի 1860, և երկրորդն ի 1865։ Իր ուղեւորութիւնքն տեւեցին 1852էն մինչեւ ի 1855. գնաց ի Դամասկոս, յԵրուսաղէմ, ի Կիլիկիա, ի Մուսուլ և ի Պաղտատ։ Երկրորդ հատորին մէջ (221–235) շատ տեղեկութիւններ կու տայ Ջուղայի Հայոց վրայ, ուր երկար ատեն կեցաւ։ Մէջ կը բերէ նաեւ հետաքննական պատմութիւնն Լէնկթիմուրի գրատան՝ զոր ի Սմըրղանդ բերդի մը մէջ փակել ու պահել տուաւ. զոր կը յիշէ Գապարաճեան Գրիգոր վարդապետ՝ ի ծանօթութիւնս գաղղիական թարգմանութեան պատմութեան գրոցն Եղիշէի, և իրմէ առնելով՝ նաեւ Նեւ ի հատորն քաններորդ «Ուղղափառ համալսարանի» (Université catholique) յ'էջ 491։ 1865ին Վամպէրի, հռչականուն աշխարհաշրջիկն, այցելեց ի Սմըրղանդ, բայց այդպիսի գրատան մը չհանդիպեցաւ։ Լանստէլ անգղիացի (Heuri Lansdell) յիւր գիրսն Ռուսական Կեդրոնական Ասիա (Russian Central Asia) տպագրեալ ի Լոնտրա ի 1885, ի հատորն առաջին՝ յ'էջ 583 կ'ըսէ; Nothing that I saw and heard led me to think that anything of this kind existed. Իր մէկ քանի ուղեւորութեանց ատեն՝ Պետերմանի կ'ընկերանային Վէթցստէյին՝ Դամասկոսի Բրուսաց հիւպատոսը, և Պրուհլ՝ երէց ի Պաղտատ. մինչ իր ծառայութեան՝ Հայերը կը գործածէր, որպէս զի լաւագոյն վարժիմ, կ'ըսէ, անոնց լեզուին և խօսակցութեան։

1867–8ին այցելութիւն ըրաւ Պետերման իբրու հիւպատոս հիւսիսային Գերմանիոյ՝ ի Պաղեստին, յԱսորիս և յ'Երուսաղէմ. մեռաւ 1876ին ի Պատ Նաուհայմ։ Մահուընէն ետքը Փերդինանդ Իուսթի տպագրեց ի Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft (1881 յ'էջ 327–414) Պետերմանի մէկ ընտիր ուսումնասիրութիւնը Պարսից Եզիտի գաւառաբարբառին վերայ։

Որովհետեւ յաճախ առիթ ունեցանք յիշատակել Պերլինի ակադեմիոյ ամսօրեայ տեղեկագիրքը (Monatsbe-

richte), յաւելունք թէ 1869 մարտ 11 ամսաթերթին մէջ (յ'էջս 216-248) անուանի աշխարհագիրն Հ. Քիբերդ յօդուած մը հրատարակեց խորագրով. «Նախնական պատմութիւն Հայաստանի և Հայոց» (Ueber älteste Landes–und Volksgeschichte des Armenien,) հանդերձ քարտիսիւ։

## ԳԵՐՄԱՆ ՀԱՅԱԳԷՏՔ

Պետերմանի ընդարձակ Քերականութիւնը քննադատեց անուանի բանասէրն և ազգագրախօսն Լօրէնց Տիֆէնպախ (1806–1883) յամսաթերթին Պերլինի Jahrbücher wissenschaftliche Kritik, ի թիւն սեպտ. 1843 տարւոյն (Հատ. Բ. 441–455)։ Բազմաթիւ էին այն ատեն հայերէն լեզուի ուսման պարապող գերմանացի գիտունք, որոց մէջ յիշատակութեան արժանաւորք են Տիէդրիխ Քրիսթոֆ վօն Ռիմմէլ (1781–1859), ուսուցիչ պատմութեան ի Մարպուրկ, որ ի Համայնագիտակ բառարանին Էրշի և Կրուպէրի, Հայաստան յօդուածին տակ 1820ին հրատարակեց յօդուած մը Հայաստանի վրայ ընդհանրապէս։ Նոյն երկասիրութեան մէջ իրենց այբուբենական շարակարգին տակ կը գտնենք զանազան յօդուածներ այլ և այլ հայ մատենագրաց վրայ։ – 1841ին Բենեդիկտ Ուէլդէ առաջին թարգմանութիւնն ըրաւ Կորեան սրբոյն Մեսրովպայ վարուց՝ համեմատ բնագրին ընծայելոյ ի լոյս ի Ս. Ղազար յամի 1833, խորագրով. Goriun's Lebensbeschreibung des heiligen Mesrop. տպագրեալ ի Թուպինկէն, ի 52 էջս, և հրատարակեալ ի քաներորդ հինգերորդ տարեդարձի ամբառնալոյ ի գահ Վիւրթէմպէրկի Գուլիէլմոս Ա. Թագաւորի։ – Եկեղեցական Բառարանին (Kirchenlexicon) Վէցէրի և Ուէլդէի, հրատարակելոյ ի Ֆրիպուրկ, որ և գաղղիական

թարգմանութիւն մ'ալ ունի և կրկին տպագրութիւնք (Dictionnaire encyclopédique de théologie catholique) ի 25 հատորս, 1858–1865։ Ֆրիպուրկի արեւելեան բանասիրութեան իմաստուն ուսուցիչն այլ և այլ յօդուածներ զետեղեց Հայ մատենագրաց վրայ, զոր օրինակ Եզնիկ, Աստուածաշունչ Գիրք (թարգմանութիւն ի Հայ), ընտիր յօդուած մը Հայաստան անուան տակ. Եղիշէ և այլն։ 1856ին օժանդակեց Ուէլդէ աստուածաբանական ուսումնաթերթի մը (Theologische Quartalshrift, հրատարակելոյ ի Թիւպինկէն, ԼԸ տարի, յէջս 446–454)· քննադատութիւն մը Փ. Նեւի ուսումնասիրութեանն ի վերայ Թովմայի Մեծոփեցւոյ, ինչպէս նաեւ Հանգուցեան շարականաց Հայ եկեղեցւոյ՝ զոր նոյն հայագէտն՝ գաղղիական թարգմանութեամբ հրատարակեր էր։

1846 հրատարակեցաւ Ֆրիտրիխ Վինտիշմանի մէկ երկասիրութիւն՝ այս խորագրով. Die Grundlage des Armenischen im arischen Sprachstamme «Տեղի հայկականին ի դասակարգի արիական լեզուաց»։ Այս գրութիւն նախ քան զառանձին հրատարակութիւն, տպագրեցաւ յուսումնաթերթին Abhandlungen der ersten Classe der bayerischen Akademie der Wissenschaften, ի հատորն Դ, ի թիւն 2. բայց հեղինակը կը յայտարարէր թէ յօրինած է զայն ի 1836 ամի, այսինքն յառաջ քան զտպագրութիւն քերականութեան Պետերմանի։ Կը յիշուի դարձեալ Վինտիշմանի թարգմանութեան մասն մը յԵզնըկայ գրոց, որ ի 1834 հրատարակուած է ի Պաւէրական տարեգիրս (Bayerische Annalen). և ինքն՝ որ քաջածանօթ է Վետայի և Զօրոաստրի վրայ գրական երկօքը, չէր կրնար անշուշտ չհետաքրքրուիլ այն բազմապատիկ մերձաւորութեամբք որ կան ի մէջ Հայ, Հնդկային և Իրանական լեզուաց։

***

Հետեւեալ 1847 տարւոյն Հերմանն Ռիխարտ Ատոլֆ Կոշ (ծն. 4 յուլիս 1824 ի Նէուեդորֆ, վախճանեալ ի 29 հոկտ. 1889 ի Հալլ), ուր 1863 տարիէն ի վեր ուսուցչապետ էր արեւելեան գրականութեան պատմութեան և բանասիրութեան, լատին լեզուաւ գրուածք մը հրատարակեց, համանման Վինտիշմանի գրութեան, հետեւեալ խորագրով. «Նախարան տեղեկութիւնք զարիական լեզուէ և զբարուց հայկականին» (Ariana linguæ gentisque Armeniace indole prologomena, scripsit Richardus Goche Ph. D. Dissertatio inauguralis,) ի Պերլին, ամփոփեալ յ' 77 էջս։ Վարդապետական աստիճանն ընդունելու համար այս բանամրցութեան (thèse) պաշտպանողաց թուոյն մէջ կը գտնենք Պէօդդիքէրի անունը, և կամ որ նոյն է ըսել՝ զՊաւղ Ա. Տըլակարտ, իբրու թեկնածու (candidat) աստուածաբանութեան. և որոյ վրայ քիչ ետքը պիտի խօսիմք։ Գրուածքիս 58–76 էջերը միայն աչքէ անցընելը բաւական է հասկընելու համար թէ ո՛րչափ անհամաձայն էին կարծիք հայկական ուսմանց նկատմամբ։ Կոշ՝ որ ծանօթագոյն է ուսումնական աշխարհի արաբ հրատարակութեամբքը, Հերցոկի Համայնագիտակին մասնակցեցաւ Եզնըկայ վըրայ գրած հատուածով մը, և իբրու քարտուղար գերման–արեւելեան ընկերութեան՝ իր տարեւոր համարատուութեանց մէջ շատ անգամ խօսած է նաեւ հայկական ուսմանց յառաջադիմութեան վրայ։

Ինչուան այս ատեն՝ անուանի բանասէրքն գերմանացիք Պոբբ, Շլէյխէր, Բոտտ, Լասսէն և այլք՝ հայկականին ուսումնասիրութեամբ պարապած չէին. Շլէյխէր ամենեւին չուսաւ զայն, զոհ ըլլալով ուրիշի բերնով խօսիլ. Պոբբ՝ իր Համեմատական Քերականութեան երկրորդ տպագրին ի գլուխ դրուած յառաջաբանին մէջ կ'ըսէ.

« Այն լեզուաց՝ որոց վրայ խօսուեցաւ առաջին տպա-
գրութեան մէջ (1833), կու գայ միանալ նաեւ Հայկա-
կանն » ։ Խնդիրը եղակի բացառականին համար էր, զոր
առաջին տպագրին մէջ զենտի մերձաւոր կը գտնէր, և
որ յորդորամիտ ըրաւ զինքն խորամուխ ըլլալ ի քննու-
թիւն բովանդակ կազմութեան լեզուին, և յայտնել այն
վերաբերութիւններն՝ որ դեռ թաքուն՝ և երբեմն ալ բո-
լորովին անծանօթ են, և կը միացընեն զայն սանսքրիտ,
զենտ և Եւրոպայի ուրիշ համացեղ լեզուաց հետ ։ Եւ
որովհետեւ, — կը յաւելու նա, — Հայկականն մասն
է մեր լեզուաց իրանեան ճիւղին, ինծի համար կարեւոր
դիտողութիւն մը եղաւ ապացուցանելը, որ ինչպէս ռու-
սեռն՝ սանկ ալ Հայկականն ձայնական կամ քերակա-
նական մասնաւորութեամբ՝ աքեմենեան ու զենտէն ա-
ւելի հին լեզուի մը վիճակին կը պատկանի ։

***

Մենք այս հատուածին մէջ՝ հայ լեզուի գիտական կամ
պատմական ուսումնասիրութիւնն պիտի ընենք, որոյ ներ-
կայացուցիչք կը սեպուին Պաւղ Տըլակարտ, Ֆրիտրիխ
Միւլլէր և Հիւպշման ։ Դժբաղդաբար այս հետազօտու-
թիւնք՝ դեռ եւս գրեթէ անյաղթելի դժուարութիւննե-
րէ շրջապատած են ։ Հայ լեզուն՝ առջի նայուածքով ոչ
միայն ըստ ամենայնի կատարելագործուած լեզու մը կը
ներկայանայ մեզ, այլ նաեւ մեծ արդիւնք ունեցող մա-
տենագրաց ձեռքով մշակուած․ վասն զի ձեռուընիս ե-
ղած ամենահին յիշատակարաններն՝ դասական օրինակք
են ոճոյ, և դէթ մինչեւ յերեքտասաներորդ դար՝ ջանք
կ'ըլլուի նմանիլ անոնց ի մատենագրութեան ։ Զորրորդ
դարու մէջ կը տեսնենք քահանայից խմբակ մը որ կը
գումարուին սրբոյն Մեսրովպայ քով, նպատակ ունենա-
լով օժտել իրենց հայրենակիցքը՝ ազգային գրականա-
կան լեզուով մը ։ Ինչուան նոյն ատեն բաւական հա-

մարած էին յոյն, պարսիկ ու ասորի լեզուով գրելը. բայց հասարակաց լեզուի մը պէտքը՝ որ ըստ օրէ աւելի զգալի կ'ըլլար, քանի որ ստորին դասակարգին մէջ ալ կը ծաւալէր կրթութիւնն և ուսում: Եւ բաց աստի, Մեսրովպ և իր ընկերքը վառուած էին՝ քրիստոնեայ կրօնքը Հայաստանի մէջ աւելի հաստատուն հիման վրայ դնելու փափաքանօք, հեթանոսական դպրոցաց մէջ սովորական լեզուին տեղ նոր լեզու մը հնարելու, որ թէպէտ գրականական՝ սակայն ամենուն հասկանալի էր: Աւելի դիւրըմբռնելի կ'ըլլայ այս մեզ՝ եթէ համեմատենք հանգամանքը՝ որովք տեղի ունեցաւ նաեւ ուրիշ աշխարհաց մէջ: Այսպէս մտադրութեան արժանաւոր հատուածի մը մէջ՝ զոր Կասթոն Պուասիէ հրատարակեց ի [illegible] (28 փետր. 1891), որոյ խորագիրն է՝ [illegible], հետեւեալ խօսքերը կը կարդանք. «Կարելի՞ էր, կ'ըսէ, բարեպաշտ քրիստոնէի մը հաշտ աչքով նայիլ այն դաստիարակութեան վրայ, որ հռոմէական դպրոցաց մէջ կը տրուէր կայսերութեան ժամանակ, ուր բոլորովին հեթանոսական էին վարժարանքն... Քրիստոնէի տղան ստիպուած էր ծանօթանալ Ոլիմպոսի աստուածոց հետ, ու ընտանեացը մէջ ընդունուածներուն բոլորովին հակառակ տպաւորութիւններ ընդունիլ:... Քրիստոնէութիւնն երբ մուտ գտաւ դիւրակեցիկ դասուն մէջ, դիմացն ունէր դաստիարակութեան այնպիսի դրութիւն մը՝ որ հաճելի էր ընդհանրութեան... հարկ էր քրիստոնէական դաստիարակութիւն մը»: Եւ այն որ քրիստոնեայ եկեղեցին շատ դարերէ ետքը յաջողեցաւ ձեռք բերել յարեւմուտս, չորրորդ և հինգերորդ դարուց մէջ՝ հնարաւոր եղաւ Հայաստանի համար աւելի կատարեալ և տեւական կերպով մը. և որ միւս այլ ապացոյց մ'է նոյն ժողովրդեան բնաւորութեան զարմանալի հաստատամտութեան:

***

Բայց այս արագութեամբ ձեւացած հայ գրաւորական լեզուին ծագումը կամ յառաջագայութիւնը ուստի՞ է, և ո՛ր հիման վրայ։ — Անտարակոյս ժողովրդական գաւառաբարբառներէ, և մանաւանդ՝ ինչպէս ուրիշ շատ լեզուաց ալ հանդիպած է, կեդրոնական գաւառաբարբառէ մը, որ իւր աշխարհագրական դիրքովը ուրիշ մերձաւոր բարբառներէն այնչափ չէր զանազանուեր։ Գրեթէ նոյնը հանդիպած է, օրինակ իմն, ռոման աշխարհաց մէջ։ Քրիստոնէական հաւատքը ժողովրդոց մէջ ծաւալելու պարտքը՝ բռնադատած է զհոգեւորականութիւնն՝ ընտանենալ ժողովրդեան լեզուին, և անով քարոզել հաւատքը։ Այս կերպով լատին ժողովրդական գաւառաբարբառք կրցեր են գրաւորական լեզուաց կարգն անցնիլ. միայն այս զանազանութեամբ՝ որ իրենց մէջ հռոմէական արշաւանքէ առաջ եղող լեզուք՝ ա՛լ չեն մնար, ի բաց առեալ պրետոն և պասք լեզուները, զորս լատինականն կը փոխանակէ։ Նո՞յնն արդեօք պատահած է ի Հայս։ Գիտենք թէ իրանեան արշաւանք տեղի ունեցած են հոն. կան նաեւ հետք նախնական լեզուաց, օրինակ իմն՝ յարձանագրութիւնս Վանայ։ Արդեօք այս արձանագրութիւնք՝ ժողովրդեան լեզո՞ւն կը ներկայացընեն մեզ, թէ օտար արձանագրութիւնք են։ Եթէ ժողովրդական լեզուին կը պատկանին, ի՞նչ եղած է հիմայ այդ լեզուն. միթէ կելտականին վիճակն ունեցած է՝ նկատմամբ լատին լեզուի, և այս դէպքին մէջ՝ արդեօք երանական գաւառաբարբառ մը փոխանակած է զնա։ Ահաւասիկ իրենց լուծմանն սպասող զանազան առաջարկութիւնք։ Մինչեւ հիմայ հայկականն ենթադրուած է նոյն աշխարհին նախնական լեզուն. բայց ամենեւին հաւանական չերեւնար այդ լեզուին ամենահին գոյութիւնը, ինչպէս մեծապէս տարակուսական է՝ որ հեթանոսութիւնն միաձեւ կրօնք մը եղած ըլլայ հոն։

Խնդրական է դարձեալ հայ այբուբենին սկզբնաւորութիւնը։ Մեսրովպայ ընծայուած գիւտէն յառա՞ջ գրաւո՞ր էր արդեօք հայկական լեզուն։ Եթէ ընդունելի սեպուի այդ կարծիքը՝ անշուշտ այդ գաւառաց մէջ միայն հնարաւոր պիտի ըլլար, որ սահմանակից էին պարսից և ասորւոց, զի յունական ազդեցութեան տակ գտնուածներուն մէջ՝ անշուշտ շատ աւելի զօրաւոր էր հելլենականն։ Անոր հետեւանք պիտի ըլլայ ձայնաւոր նշանաց կամ տառից բացակայութիւնը, որոց կիրառութիւնը չի տեսնուիր արեւելեան շատ լեզուաց մէջ. և այս պարագայով կը մեկնուի աւանդութիւնն սրբոյն Մեսրովպայ հնարած յաւելուածական (additionnelle) տառից նկատմամբ։

Մենք կ'ուզենք միայն նշանակել քանի մը դժուարութիւնք, որ հայ լեզուի պատմական ուսումնասիրութեան դէմ կ'ելլեն։ Անոնց լուծումը արժան է փնտռել բնագրաց քննադատութեան և գաւառաբարբառներու ուսման մէջ։ Արդեօք գրչագիրք և տպեալ բնագիրք ճշգրիտ ներկայացուցի՞չք են մեսրովպեան լեզուի։ Նորայր հակառակը կ'ապացուցանէ. բայց իր բացատրութեամբը՝ յանապատի կը քարոզէ. որով փորձ կը փորձուի չէնք մը կառուցանել, առանց աշխատ լինելոյ ձգել նախ ըգկարեւոր հիմունսն։ Իսկ գաւառական բարբառոց ուսումնասիրութիւն՝ դժբաղդաբար դեռ փափաքելի յառաջադիմութիւնն չունի։ Սակայն պէտք է երախտագէտ ըլլանք այն խմաստնոց, որք գրեթէ անյաղթելի դիմակալութիւններէ չվախնալով, հայկական բանասիրութեան մեծապէս օգտակար եղան։ Յօդուածիս սկիզբը անոնց գլխաւորներուն անուանքը յիշատակեցինք. խօսինք հիմայ գրուածոց վրայ, իրենց գիւտից ժամանակագրական կարգը պահելով։

## Գ· ՏԸԼԱԿԱՐՏ

*Պօղ Տըլակարտ, իմաստասիրութեան և աստուածաբանութեան վարդապետ և պետական առանձին խորհրդական, ծնած է ի Պերլին (2 Նոյեմբ. 1827), ու 1869էն մինչեւ մահը՝ որ անցեալ տարի հանդիպեցաւ, Կէթթինկի համալսարանին մէջ ուսուցիչ էր արեւելեան լեզուաց՝ յաջորդելով Էվալտի: Իմաստուն բանասիրիս բովանդակ կեանքը նշանաւոր է այնու՝ որ երբեք ուսումնասիրութեան մը ձեռք չէր զարներ՝ առանց նախապէս նոյն նիւթին խորունկ կերպով հմտանալու: Միշտ անպարապ յուսուցանելոյ, ու Եւրոպիոյ գլխաւոր մատենադարանները հետազօտելէ, բաղդատելով և տպագրութեամբ հրատարակելով յոյն, հեբրայական, ասորի, ղըպտի, արաբ, քաղդէացի հին բնագիրներ, հայկական և երանեան լեզուաց բառերու ստուգաբանութիւններ, դեռ ժամանակը չէր պակսեր իրեն մշակել գրանաստեղծութիւն և հետեւիլ քաղաքագիտութեան: Անգղիացի հմուտ բառագիրող մը մօտերս կ'ըսէր ինձ՝ թէ զարմանալի է արդարեւ որ Տըլակարտ այնչափ բազմապատիկ նիւթոց հետամուտ եղած է. բայց աւելի հիանալին՝ անոնց ամենուն մէջ ունեցած կատարեալ հմտութիւնն է: Այս դիտողութիւնս իրաւամբ կը պատշաճի հայ լեզուի մէջ ունեցած գիտութեանն: 1844ին ձեռք զարկաւ անոր ուսմանը՝ իբրեւ (Նորաղանդ) աստուածաբան քան լեզուագէտ մը, բայց միշտ հաւատարիմ իր սկզբանը՝ գոհ չըլլալով երբեք վեր ի վերոյ տեղեկութեամբք, յաջողեցաւ այնպիսի արդիւնք ձեռք բերել՝ որ դարագլուխ մը կրնան կազմել լեզուաբանական գիտութեան մէջ, և որոց համար ամէն անկեղծ բանասէր՝ պէտք է իրեն երախտապարտ ըլլայ: Գլխաւորն իր գիւտից մէջ այն է՝ որ կրցաւ հաս-*

տատուն ապացուցիւք որոշել հայկական լեզուին տեղ մը՝ արիական գերդաստանին (հնդեւրոպական) համազգի լեզուաց մէջ, աւելի մօտեցընելով զայն Իրանեան ճիւղին: Գիտական ընդարձակ հմտութեամբ օժանդակուած, կրցաւ ապուցուցանել ինչ որ այլք իրմէ առաջ ընդ աղօտ յաջողեր էին նշմարել: Զուր տեղ պարսաւադէտք կ'ուզեն վերցընել իրմէ նախնականութեան պատիւը. իր գրուածոց պատմական շարքը, զոր պիտի դնենք ընթերցողին առջեւ, ամէն տարակոյս և վէճ կը վերցընէ, յայտնի ընելով՝ թէ Տըլակարտի կը պատկանի հայ լեզուի ուսման հաստատուն և գիտնական խարիսխ մը ընծայելու առաջին պատիւը:

1850էն ի վեր հմուտ հայագէտս այս հրատարակեց (ի Zeitschrift der deutschen morgenländischen Gesellschaft, հատոր Դ, 347–369), յիշատակագիր մը բաղդատութեանց հայ և սանսքրիտ բաղաձայնից: Նոյն ատեն դեռ իրեն անծանօթ էր Վինտիշմանի գրուածն, որոյ վրայ խօսեցանք մեր այս յօդուածին մէջ, բայց ուզեր էր ցուցընել թէ հայկականն աղէկ հասկընալու համար, լաւագոյն միջոց էր համեմատել զայն հնդկային համազգի լեզուաց հետ: 1851ին հրատարակեց բանամրցութիւնն (thèse) համալսարանական ուսուցչութեանն, զոր նոյն տարւոյն մայիսի 20ին ըրեր էր ի Հալ քաղաքի: Գրուածքիս նպատակն էր միացընել զենտ, աւղան, պարսիկ, հայ, օսեթ, փախլեւան, լիւդեան, թրակեան և սկիւթ լեզուաց բառեր, և անով խումբ մը կազմել՝ հնդիկ–կելտական բարբառոց. և այս վախճանաւ՝ չորս հարիւր յիսունէն աւելի հայ բառեր մէջ կը բերէ և կը խօսի անոնց վրայ:

1854ին անանուն գրուած մը հրատարակեց Zur Urgeschichte der Armenier մակագրով, բանասիրական ճաշակ մը Հայոց նախնական պատմութեան վրայ. յորում հազարի չափ բառից քննութիւնն ընելով, կը հետեւցընէ՝ որ հնդկագերմանական լեզուաց արմատական

բառից գէթ երրորդ մասը կը գտնուին Հայուն մէջ. բայց կը համարի թէ լեզուին ձայնականն (phonétique) դեռ երկար ժամանակ անկարելի պիտի մնայ ստուգել, որովհետեւ հին ուղղագրութեան տեղեկութիւն չունինք։ Սանսքրիտ հագագայինքն բհ, գհ, դհ՝ հայերէնի մէջ եղեր են, գ, ջ, դ, և լեզուն՝ զանոնք որոշելու համար գ, ջ, դ արդէն ունեցած տառերէն, սկսած է փոխել ի բ, ւ, ր, բայց գծբաղդաբար՝ առանց հաստատուն սկզբան մը հետեւելու։ Այս արդիւնք ըստ մեծի մասին ամփոփուած են Gesammelte Abhandlungen կոչուած իր միւս երկասիրութեան մէջ, զոր հրատարակեց 1866ին, ուր հինգ հարիւր հայկական բառից քննութիւնն կ՚ընէ. կը խօսի նաեւ Հայոց, Թրակեանց և Փռիւգաց ծագման վրայ, և շատ օրինակներով կը ցուցընէ՝ թէ ինչ կերպով հայ լեզուի տարերքը բաժնելու է իրարմէ։ Կը հաստատէ նաև այն գրութիւնն, թէ հայկեան՝ այսինքն հիմնական հայերէնն՝ անցման (transition) լեզու մ՚է մէկ կողմանէ Երանեան, յոյն և կիմրիք լեզուաց, և լիթուանականին և սլաւին ի միւսմէն։ Կը խօսի նաև քանի մի ասորի բառից վրայ, որ կը գտնուին ի հայ լեզուի։

1877ին Տըլակարտ հրատարակեց Հայկական ուսումնասիրութիւններ (Armenische Studien) կոչուած ընդարձակ աշխատասիրութեան առաջին մասն. իսկ երկրորդը Կէթթինկի Գիտութեան արքունի ակադեմիային յիշատակագրութեանց հետ՝ նոյն տարւոյն մայիս և յուլիս ամսաթերթից մէջ. և որ յետոյ առանձինն ալ հրատարակուեցաւ։ Գրուածքիս մէջ հեղինակը 2413 հայ բառից ստուգաբանութիւնն ընելով, 1726ը նոյն լեզուին յատուկ կը համարի. կ՚ամփոփէ իւր կարծիք և գրութիւն լեզուին տարերաց վրայ. հաւաքում մ՚ալ կը դնէ հայկեան կամ իրեն համար սկզբնատիպ բառից. ինչպէս նաեւ արշակունեաց (պահլաւ) և սասանեանց։ Այլ և

այլ հատուածներ ալ հրատարակած ունի ի Mitheilungen ուսումնաթերթս 1884, 87 և 91 տարիներու։

(Աւելորդ է ըսել՝ թէ հայ բանասիրութիւնն յամենայնի համակարծիք և համամիտ չէ արեւմտեան հայագիտաց ամէն դրութեանց և կարծեաց)։

## Փ. ՄԻՒԼԼԵՐ

Փրեդերիկ Միւլլեր ծնած է յԵմնիկ Պոհեմիոյ (5 մարտ 1834)։ Ուսմանց սկզբնական ընթացքն ըրաւ նախ ի Ձնայիմ Մորաւիոյ, ապա ի Վիէննա և ի Կէթթինկէն, ցամ 1857։ Հետեւեալ տարին Վիէննայի Համալսարանին մատենադարանին մէջ պաշտօն վարելով, ապա արքունեաց մատենադարանին վերատեսուչն անուանեցաւ. յետոյ վարդապետ և ուսուցիչ ի Համալսարանի։ 1869ին իրեն յանձնուեցաւ համեմատական բանասիրութեան և սանսքրիտ լեզուի ուսուցչի աթոռը. ու կայսերական գիտութեանց ակադեմիայի անդամ եղաւ։ 1884ին աչքի հիւանդութեան պատճառաւ հրաժարեցաւ մատենադարանապետի պաշտամանէն։ Կենսագրական այս մանրամասնութիւնները քաղած ենք Պրոքհաուսի և Մէյէրի բառարաններէն, ինչպէս ինք Միւլլեր մեզի յանձնեց։

Բոլորովին բանասիրական և ազգախօսական ուսմանց տուաւ ինքզինքը Միւլլեր. և իր գլխաւոր գրուածքն է Ակնարկ գիտութեան լեզուի (Grundriss des Sprachwissenschaft) խորագիրը կրող երկասիրութիւնն. հսկայ երկ մը, յորում հեղինակն կու տայ մեզ քերականական համառօտութիւն և ընթերցման հատուածներ, ամէն ծանօթ լեզուաց։ Այս գրուածքը կ'ամբողջացընէ ուրիշ երկասիրութեամբ մը, զոր կը կոչէ Ընդհանուր ազգագրութիւն (Allgemeine Ethnographie), որոյ առաջին տպագրութիւնն եղած է ի 1873 և երկրորդն ի 1879 ի

*Վիեննա, հանդերձ ազգախօսական ատլասով մը* (Ethnologischer Atlas, *Վիեննա* 1884)։ Ինքը Միւլլէր *յօրինեց աւստրիական* Նովարա *կոչուած մարտանաւուն ճանապարհորդութեան առթիւ տրուած տեղեկութեանց լեզուագիտական և ազգագրական բաժինը* (1867–8)։

Մեր *ինչուան հիմայ ըսածներէն քիչ շատ կրնայ հակըցուիլ՝ որ մասնագէտ մը չէ* Միւլլէր. *սակայն առանձին պարապմունք ըրած է իրանեան լեզուաց ուսումնասիրութիւնն, որոյ թուոյն մէջ կը դասէ նաև զհայերէնն, քան ուրիշ լեզուաց*։ Իր *երկասիրութիւնք լեզուի նկատմամբ՝ հրատարակուած են առաւելապէս ի խմբագրութիւնս* (bulletins) Վիեննայի Գիտութեանց *կայսերական ակադեմիային՝ փիլիսոփայական–պատմական բաժնին մէջ, և որոց ժամանակագրական ցուցակը կը դնենք*։ Ի *հատորն* ԼԵ, 1860 *յ'էջ* 191–199, 1) — Բայական յետադաս հայ լեզուէ։ — 2) Անուանք հայ Բնոյ։ Ի *հատ.* ԼԸ. 1861, 570–595 *հատուած մը հայ լեզուի ձայնախօսութեան նկատմամբ, զոր քննադատեց* Էվալտ (*ի* Gottingische Gelehrte Anzeigen, 1862 *յէջ* 961), *և որոյ շարայարութիւնն երևցաւ ի հատորն* ԽԱ, 1863 *յէջ* 3–14, *և ի հատորն* ԽԲ, 1863 *յէջ* 249–253։ Արդէն *յութերորդ հատորն նոյն խմբագրութեանց* (283) Սպիլեան *վարդապետն հրատարակած էր տեղեկութիւններ* Ռուսիոյ, Պարսկաստանի *և* Հնդկաստանի *մէջ սովորական եղած հնչմանց վրայ*։ Ի *հատորն* ԽԳ (1863, *յէջ* 551–567) Տեղեկութիւն *մը անուանց հոլովման վրայ ի հայ լեզուի. և յէջս* 576–580 *յօդուած մը դիմաւոր դերանուանց վրայ իրանեան ու նաև հայ լեզուի մ ջ*։ Ի *հատ.* ԽԸ (1864 *յէջս* 227–242) Զոյգ *քիւրդ գաւառաբարբառին վրայ*։ Յէջ 424–430 Հայկականք *կոչուած վերնագրին տակ հինգ հատուածք* [illegible] *յետադաս վանկին վրայ և* [illegible], [illegible], [illegible] *բառերուն*. Իսկ *յէջն* 431–438 *հայկական գրութեան սկզբնաւորութեան վրայ, վիմագրեալ համեմատական ցուցակով մը հայ և վրացի այբուբենից*։

Միւլլեր կը կարծէ՝ թէ անոնց ծագումը փնտռելու է արամէականին քանի մի ձեւերու մէջ, յորոց յառաջ եկած է նաեւ պաշլաւիկը։ Ի Հատ. ԿԴ (1870 յէջս 47–56) հայ բայից անկատար դէմքին վրայ, ինչպէս նաեւ դիտողութիւնք քանի մը հայկական բառից, որպէս [illegible], [illegible], [illegible], [illegible], և այլն, և իգական ոհի վերջաւորութեան։ Հատ. ԿԵ. (1870, յէջս 261–278) դիտողութիւնք երկու հայ սեպագիր արձանագրութեանց վրայ։ Հատոր ԿԶ (1870, յէ՛ 261–278) հայ լեզուի բառից վերջաւորութեանց և շեշտի կանոնին վրայ, յանուանս և ի գերանուանս և ի բայս. և դարձեալ ստուգաբանութիւնք քանի մի հայ բառից. իսկ յէջս 277–8 կը խօսի այն օտար (արամէական) բառից, որ փոխ առնուած են ի հայերէնէ և հայերէնով։ Նոյնպիսի տեղեկութիւնք և տեսութիւնք մեր լեզուի նկատմամբ յաջորդ տարիներու թերթից մէջ ալ, զորս աւելորդ կը համարինք մի առ մի յիշատակել ընթերցողաց չծանրանալու համար։ Քիչ եւքը պիտի դառնանք խօսիլ իր մէկ կարեւոր յօդուածին վրայ, թէ « ինչ տեղ կը գրաւէ հայ լեզուն հնդիկ–գերմանական լեզուաց շրջանակին մէջ », հանդերձ յաւելուածով մը։

* * *

Աշխատակից եղաւ Միւլլեր հայ լեզուին վրայ գրած յօդուածներով՝ Orient und Occident կոչուած եռամսեայ հանդէսին, զոր Ջանֆէյ կը հրատարակէր ի Կէթթինկ (1860–66), որոց մէջ նշանակութեան արժանաւոր է [illegible] կոչուած վիպասանութեան հայ թարգմանութեան վրայ (Հատ. Բ. 369–374), և որոյ ռուս թարգմանութեան մը ակնարկութիւնն ըրած էր Լէրխ։ Ուրիշ մանր մունր ստուգաբանական հատուածներու ալ հեղինակ է՝ գերմանական հանդիսից մէջ։

Գլխաւոր աշխատակից եղած է Միւլլեր՝ Վիէննայի

Համալսարանին Արեւելեան կաճառին ձեռքով հրատարակուած Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes կոչուած ուսումնաթերթին (1887), որոյ երկրորդ տարուան հատորին մէջ կը խօսի Ղեւոնդեայ երիցու և Ասողկան պատմական երկասիրութեանց հրատարակութեանց վրայ, որոնք առատամիտ նպաստիւք ազգային Մեկենասի, Յովսեփայ Իզմիրեան Ղզլարեցւոյ, տպագրուած են ի Պետրպուրկ (1885 և 1887)։ Մանրամասն և չահագրգիռ են նոյն գրոց վրայ տեղեկութիւնք, ինչպէս իր ամէն ուրիշ հատուածք նոյն հանդիսին մէջ։ Ց'էջս 245/8 կը քննադատէ Ասողկան մէկ պարբերութիւնը Հայ այբուբենի գիւտին նկատմամբ. և իր կարծիքն է թէ Մեսրովպ միայն ձայնաւոր տառից գիւտն ըրած ըլլայ։ Դիտել կու տայ մանաւորապէս՝ թէ նախընթաց պակասութիւն ձայնաւորաց ի հայ լեզուի, պատճառ եղած ըլլայ նուազութեան կամ աղքատութեան նորա։ — Նոյն հատորին մէջ (258–262) տեղեկութիւն մը կու տայ 1884ին Էջմիածին տպագրուած Առաքել Դաւրիժեցւոյ պատմագրութեան վրայ։ Չորրորդ հատորին մէջ Եօթն Իմաստնոց վիպասանութեան վրայ տեղեկութիւն մը։ Երեք անգամ տպագրութեամբ հրատարակուած է այս թարգմանութիւն ի 1696, 1720 և 1740. վերջին տպագրէս օրինակ մը ձեռք ձգելով, շնորհիւ Պատմաճեանի ի Սկիւտարէ Կոստանդնուպոլսի, անոր քննադատութիւնը կ'ընծայէ Միւլլէր։ Յէջն 284–288 կը մեկնաբանէ Վարդանայ Բարձրբերդցւոյ մէկ հատուածը (տպ. ի Մոսկուա 1861 և յաջորդ տարին ի Վենետիկ), նկատմամբ հայ տառից, որ կ'ըսէ թէ Մեսրովպ ընդունած ըլլայ ի Դանիելէ ասորւոյ քսանուերկու տառք, և միւս տասներչորսն աստուածային յայտնութեամբ, մինչ Խորենացի և Ասողիկ կ'աւանդեն՝ թէ նախամեսրոպեան այբուբենն ի քսան և ինն տառից կազմուած էին։ Ի հինգերորդ հատորի (1891, 52–58) կը ստորագրէ և կը քննադատէ Մխիթարայ Գոշի իրաւանց գիրքը, զոր վախ-

ձանեալ Բաստամեանց Վահան վարդապետ հրատարակած է յէջմիածին ի 1880, և է Դատաստանագիրք կոչուածն։

Կը թողունք յիշել ուրիշ հատուածներն, յորս կը խօսի ոտքին բառին ստուգաբանութեան, Հայոց ծիածան՝ Արամազդայ գօտի կոչելուն, և Լազարեան ճեմարանի տեսչին կողմանէ 500 ռուբլիի մրցանակ մը սահմանելուն՝ ընտրելագոյն գրութեան մը Հայոց ընկերական և քաղաքական վիճակին վրայ՝ յիններորդ դարէ ցմեթասաներորդն. որ կրնար գրուիլ ի հայ, ռուս և գաղղիարէն, և պիտի յանձնուէր յառաջ քան զսեպտեմբեր 1892 տարւոյն։

***

Հրատարակած է դարձեալ Միւլլէր ի Vienna–Oriental Journal զվերջին մասն հանգուցեալ Յոհան Հանուշի ընտիր երկասիրութեան՝ Լեհաստանի մէջ խօսուած հայ գաւառաբարբառին վրայ։ Այս գիտնական երիտասարդ ուսուցիչ էր համեմատական բանասիրութեան և սանսքրիտի ի Համալսարանին Վիեննայ, և կանխահաս մահուամբ վախճանեցաւ ի Փարիզ, ուր ուսումնական ուղեւորութեան մը առթիւ կը գտնուէր, ի 1887։

« Յ. Հանուշ՝ Քրաքաւի համալսարանը լեզուագիտական ուսմունքն աւարտելէն եաքը՝ Գերմանիոյ լեզուագիտութեան անուանի ուսուցչաց քով կը դեգերի, ի մէջ այլոց՝ Լայպցիկ Պրուկման ուսուցչի դասախօսութեանց ներկայ կը գտնուի, նոյնպէս Պերլին և Գերմանիոյ անուանի ուսուցչաց հետ շարունակեալ թղթակցութեամբ իւր ուսումը կը կատարելագործէ։ Քանի մը տարուան մէջ լեզուաց անգին գանձ մը կը մթերէ. տեղեակ սանսքրիտ և հին իրանեան լեզուաց, յունարէնի, լատիներէնի գոթացերէնի, անգղիարէնի, լիթուաներէնի և բոլոր սլաւեան լեզուաց, իտալերէնի, գաղղիարէնի և ալպաներէնի։ Այս լեզուաց գանձուքն և անխոնջ աշխատութեամբ հա-

մեմատական լեզուագիտութեան մէջ ի սակաւ ժամանակի այնպիսի համբաւ կը ստանայ, մինչեւ երիտասարդ հասակին մէջ Վիէննական համալսարանին առանձնական ուսուցչաց կարգը կը դասուի. եւ իւր համեմատական լեզուագիտութեան եւ սանսքրիտ եւ լիթուեան լեզուաց դասախօսութիւնները բազմաթիւ աշակերտներէ կ՚այցելուին...

« Ցերիտասարդութեան մեր լեհացի ազգայնոց հետ կենցաղավարելով՝ ասոնց բարբառոյն հնչիւնները միտքը կը տպաւորուին. կարդալով նաեւ Փրեդ. Միւլլէրի, Հիւպշմանի, Լակարտի, Ք. Պատկանեանի եւ այլոց Հայկական (Armeniaca) գրուածները՝ հայերէնի փափաքն կը վառի սրտին մէջ. եւ նոյն տարուան հանգստեան ամիսներուն մէջ կ՚երթայ Գուզի՝ Լեհաստանի հայ գաղթականութեան ամենաբազմաթիւ աւանն՝ ուր ամիս մը դադարելով՝ կը սորվի անոնց բարբառը, ժողովրդեան բերնէն եւ գրաւոր մատեաններէն ու արձանագրութիւններէն նոյն բարբառոյն գրեթէ բովանդակ բառից մթերքը կը ժողվէ, ասոնցմէ կը հանէ լեզուին բառակազմութիւնը, հոլովմանց ու խոնարհմանց պատկերը. ի մի բան առել՝ բարբառոյն կերպագիտութիւնը հանդերձ տառագիտութեամբ, եւ յատուկ ասութիւնները գրաբարի եւ այլ գաւառալեզուաց հետ բաղդատելով։ Այս բարբառոյն մըթերքն է՝ ի վերոյ յիշատակուած (Հանուշի) գրքին բովանդակութիւնը։

« Կը սկսի՝ հայերէն լեզուն հնդեւրոպական նախալեզուի գլխաւոր բարբառներէն մին դնելով։ Հնդեւրոպական նախալեզուն՝ ըստ այժմեան նոր քննութեանց, որոց գլխաւոր գործիչներն են Հիւպշման, Պրուկման եւ այլն՝ ուսուցիչները, կը բաժնեն ութ գլխաւոր բարբառոց՝ որոնցմէ յետոյ բազմաթիւ գաւառականներ յառաջ եկած են։ Ասոնք են՝ 1) հնդիկ-իրանեան կամ արիական. 2) հայկական. 3) լիթուեան-սլաւեան. 4) գերմանական. 5) կելտական. 6) իտալական-ռոմանական. 7) յունական. 8) լիւրիկեան (ալպանական) լեզուք։

« Ասոնց վրայ ըստ կարծեաց նորագոյն լեզուաքննչաց խօսելէն ետեւ՝ յառաջ կը բերէ գերմանացի անուանի հեղինակներն՝ որոնք ուղղակի կամ անուղղակի՝ հայերէնի վրայ ըստ բաւականի հիմնաբար ճառած են. որոնցմէ երեւելիններն են Փեթերմանն, Վինտիշման, Փ. Պոթթ, Փ. Միւլլէր, Հ. Հիւպշման. Պ. Տըլակարտ, Քր. Բարթոլմէ:

« Այնուհետեւ կը խօսի հայերէնի տառադարձութեան վրայ. սկսեալ ձայնաւոր տառերէ մինչեւ բաղաձայնները՝ կը բաղդատէ միւս հնդեւրոպական լեզուաց տառից փոփոխման կանոնաց հետ, և բաւական հիմնական կանոնաց կը վերածէ:

Արդ ընդհանուր՝ նա մանաւանդ դասական հին հայերէն լեզուի վրայ այս նախաշաւիղը գրելէն ետքը, կը մերձենայ իր գլխաւոր նիւթոյն՝ հայերէնի գաւառալեզուաց, որոնց մէջ իրեն առաջնորդ ունենալով Այտընեան Հօր արդի Հայերէն լեզուի Քննական քերականութիւնն և Ք. Պատկանեանի գրուածներն, յառաջ կը բերէ արդի հայերէն լեզուաց գրաբարէ ծագումն: Հեղինակն արդի հայերէն գրական լեզուն կը բաժնէ երկու գլխաւոր մասի. արեւելեան՝ կամ Ռուսահայոց, և արեւմտեան՝ կամ Տաճկահայոց (Կ. Պոլսի), որոնց էական տարբերութիւնն կը դնէ ինչ ինչ տառից արտասանութեան զանազանութեան, ներգոյական հոլովոյ և բայից ներկային ու անկատարին, և այլն, այլակերպ կազմակերպութեան վրայ:

« Յետոյ ի մասնաւորի լեհահայոց գաւառալեզուին կ'իջնայ, և ասոնց գաղթականութեան վրայ համառօտիւ ակնարկ մը կ'ընէ Սադովկ Պարոնչ հայազգւոյն գրուածներէն հանելով. և տեղեկութիւն կուտայ այն գլխաւոր աղբերաց վրայ՝ յորոց՝ Լեհահայոց գաւառալեզուին գիտնական ծանօթութիւնները քաղած է: Քրաքաուի Եակելոնեանց ակադեմային բանասիրական Յիշատակագրոց մետասաներորդ հատորին մէջ հրատարակուած է այս

ընտիր երկասիրութիւն ի լեհ լեզու, բայց բառից նշանակութիւնն աւելցըներով նաեւ ի գաղղիական, «Լեհացի Հայոց լեզուին վրայ» վերնագրով, որոյ առանձին հրատարակութիւն եղաւ ի Քրաքաւ ի 1886 (Ojezku Ormian polskich). Բառարան մ'է այս, երիտասարդ լեզուագիտին ջանիւք հաւաքուած։ Վիէննայի արեւելեան օրագրին մէջ Գութիի գաւառաբարբառին ձայնախօսութեան վրայ ուսումնասիրութիւն մը կը փափաքէր ընել՝ բառագրական նիւթերով. և կրցաւ բանասիրաց մեծապէս օգտակար ճաշակ մը ընծայել, և որոյ առանձին տպագրութենէն օրինակ մը ազնուաբար յղեց առ մեզ Միւլլէր, (Lautlehre der polnisch–armenischen Mundart von Kuty in Galizien): Արդէն նոյն օրագրին առաջին հատորոյն մէջ (791) հատուած մը ընծայեր էր հայ երկու օրագրաց՝ Վիէննայի Մխիթարեան Հարց Ամսօրեայ Հանդիսին, և ի Սամոշույվար (Հայաքաղաք) հունգար լեզուով Armenia լրագրին խմբագրութեամբ Գրիգորի Գովրիկ և Խաչատրոյ (Քրիստոֆ) Սոնկոտ։ Ց'էջ 81, ի Քրաքաւ տպուած (1887) Յարթորիսքի իշխանին մատենադարանին ցուցակին վրայ կը խօսի, յորում յիշատակութիւն կ'ըլլայ նաեւ բազմաթիւ հայ գրչագրաց։

* * *

Կը վերջացընենք մեր այս հատուածը այն տեղեկութեամբ, զոր կու տայ Լեհահայոց վրայ, որոյ բնագիրն ալ կը յաւելու Գուդիի գաւառաբարբառով. «Լեհահայք ըստ մեծի մասին կը բնակին, կ'ըսէ, ի Կալիցիա, Պուքովինա և Պեսարաբիա։ Մետասաներորդ դարէ ի վեր եկած են այս կողմերը յաշխարհէն Հայոց, իրենց Անի մայրաքաղաքին կործանմամբ աւերելէն ետքը։ Հարուստներն իրենց ստացուածքը երկիրներու վրայ դրած են մշտնջենաւորապէս. կը զբաղին ի մշակութիւն ցորենոյ, և ի խաշնադարմանութիւն. իսկ միջին դասակար-

գի մարդիկ՝ առեւտրոյ եռեւէ են։ Հայ վաճառականաց գլխաւոր քաղաքն է Գուդի, որ Կերէմոս գետին ափանց վրայ շինուած է. և բնակիչք բաց ի Հայոց, են նաեւ Լեհք և Ռութենք, և արուեստներով և երկրի մշակութեամբ կը պարապին. իսկ Հրէայք խաշնադարմանութեամբ և ուրիշ մանր մունր գործերով։ Ի Գուդի բնակող Հայոց թիւը 1400 հոգւոյ չափ է, որոնցմէ հինգ հարիւրը իրենց լեզուն կը խօսին. և զոր աւելի վաճառականութեան մէջ կը գործածեն, այնպիսի լեզուով մը խօսելով մէջերնին, որ այլոց անիմանալի է. իսկ ուրիշ առիթներու մէջ ընդհանրապէս լեհերէն և ռութեններէն կը խօսին։ Հաւատքով ուղղափառք են, և եկեղեցական լեզունին հայերէն գրաբար, որ խօսուածէն շատ կը տարբերի, և մէջերնէն ոչ ոք կը հասկնայ։ Ցաճախ եկեղեցական հանդիսից մէջ հայերէն երգեր կ'եղանակեն, բայց քարոզը, խոստովանութիւնը լեհերէն կը կատարուին։ Խօսուած լեզուին մէջ շատ խառնուրդ կայ լեհ և ռութեն բառերու, շատ անգամ՝ ալ թուրք և ռումեն բացատրութիւնք։ Արդի քերականութիւննին շատ կը տարբերի բուն հայկական լեզուի քերականութենէն. անանկ որ թուրքահայոց և պարսկահայոց լեզուն չեն հասկընար։ Կը ճանապարհորդեն յաճախ ի Պեսարաբիա և ի Ռումանիա, և կենդանի գնելով, կը գիրացընեն ու ի Վիէննա և ի Բրուսիա կը տանին ի վաճառ. յորմէ բազումք կը շահին, և այլք ալ կը կորսնցընեն։ Կանայք ատնին տնտեսութեամբ կը զբաղին. կը դաստիարակեն և կը հրահանգեն իրենց զաւկըները, խնամօք պահպանելով նաեւ իրենց հին սովորութիւնները. Նոյն իսկ իրենց արտաքին կերպարանօքն ալ զանազանուելով ուրիշ ազգերէն՝ որոց հետ խառն կը բնակին. պատուաւոր անձինք են, բարեպաշտօն, աշխատասէրք և արդարք իրենց վաճառականական գործոց մէջ»։

Արդէն Ջրպետ իր Քերականութեան մէջ դիտողութիւն ըրած է (740) թէ հայ գաւառալեզուաց բառա-

րան մը մեծապէս օգտակար կրնայ ըլլալ բանասիրաց
և բառագիտաց։ Զի պիտի դադրինք այս գաւառալեզուաց
ուսումնասիրութիւնը յանձնարարելէն, որ օր մը անտա-
րակոյս պիտի յայտնեն մեզ զպատմութիւն լեզուին։ Դիտ-
մամբ մէջ բերինք Հանուշի հաւաքմունքը, որպէս զի ցու-
ցընենք թէ բանասէրք արժան է՝ որ յարատեւութեամբ
զբաղին այս ուսման, և եթէ ամենայն ժողովուրդ ունի
այսօր իւր գաւառալեզուաց ընկերութիւնը, ինչո՞ւ Հայք
ալ չկազմեն նոյնպիսի ընկերութիւն մը։

*
* *

Մասնաւոր յօդուած մ'ալ գրեր է Միւլլէր, ի Պեր-
լին հրատարակուած ուսումնաթերթի մը մէջ (Beiträge
zur vergleichen Sprachforschung auf dem Gebiete
der arischen, celtischen und slavischen Sprachen).
հայ լեզուի առանձնայատկութեանց վրայ, Zur charak-
teristik des Armenischen. « Հայկականն, կ'ըսէ, ամէն
բանէ յառաջ իրանեան լեզուաց մասն կը կազմէ անով՝
որ մասնակից է այն ձայնական փոփոխմանց, զոր կը նկա-
տենք անոնց մէջ, մանաւանդ թէ անոնց մէջ ծանօթա-
գոյն պարսկականին. օրինակ իմն, իր առանձին միտումը
առ հագագայինն, յաճախ անցքը սանսքրիտ -վ հնչմանէն
ի խ (հվ) և սկզբնական վ էն ի կ. (օր. խոյր = —վոյր
ծոյն = ովաբէն—)։ Բայց նոյն հատորին մէջ (Դ. 457–464)
հմուտ իրանագէտն Փրեդր. Սպիեկէլ, կը քննադատէ
իւր իմաստուն ուսումնակցին կարծիքը. և յ'էջն 461,
կ'ըսէ թէ վ,անայ արձանագրութիւնք հաւանականաբար
կը ներկայացընեն մեզ զհին հայկական լեզու. նոյն կար-
ծիքն ունեցած է նաեւ Մորթմանն. բայց Սէյսի և Կու-
յարի հետագայ ուսումնասիրութիւնք՝ հակառակը կ'ա-
պացուցանեն։

Լեզուագիտական մանրամասնութիւնք ընդհանրապէս
ցամաք են, և կարելի չէ ոգեւորուիլ ձայնից քննութեամբ

կամ անոնց յարատեւ փոփոխութեանց ուսմամբ. սակայն այնպիսի մանր քննութեանց վրայ հաստատուած են հիմունք գիտութեան։ Զանոնք անտես ընելէն կը հետեւի պարզապէս երեւակայական ստուգաբանութեանց մէջ մոլորիլ, որոնցմով մեծ կերպարանափոխութիւն կը կրէ լեզուին պատմութիւնը, յաճախ նաեւ զայն խօսող ժողովրդեան... Տարակոյս չիկայ որ լեզուաքննական ուսումը, բոլորովին չիպիտի խեղդուի, — սաստիկ ըսենք, — ձայնախօսական մասովը. վասն զի ձայնէն զատ՝ կան նաեւ բան կամ իմաստք՝ որոց ներկայն և անցեալը արժան է ուսումնասիրել։ Դժբաղդաբար՝ ձայնից ուսումը այնքան դժուարին գործ է լեզուաքննի համար, որ ժամանակը իրեն կը պակսի խորը թափանցելու ի պատմութիւն պաշտաման բառից և կազմութեան իմաստից. և հարկ է որ բարեբաստիկ սեպէ ինք զինքն՝ եթէ կարող ըլլայ ժամանել յուսումն կազմութեան բառից և քերականական փոփոխութեանց։ Պէտք է նկատել և զայն՝ որ արդի լեզուաքննութիւն, Պոպպի ընտիր երկասիրութեանց երեւնալէն ի վեր, կանկ չառնուր մասնաւոր լեզուի մը, եւս առաւել գաւառաբարբառի մը վրայ, ըլլայ գրական կամ ոչ. այլ հարկ է, որ իր քննութեանց հիմն դնէ լեզուի մը ամէն կենդանի կամ անհետացած գաւառաբարբառներու վրայ, և այս կերպով, ձեռք բերուած արդիւնքը բաղդատէ այն երեւոյթներով որ կըրնան նկատուիլ ուրիշ ամէն համազգի լեզուաց և գաւառաբարբառներու հետ։ Ասով կը յայտնուի, որ լեզուաքնին հայագէտ մ. ըլլալու համար այս օրուան օրս՝ բաւական չեն կրնան սեպուիլ միայն համեմատական բանասիրութեամբ ստացուած գիտնական տեղեկութիւնք և հմտութիւնք։

# Հ. ՀԻՒՊՇՄԱՆ

*Լեզուաքննական ուսմանց համար անհրաժեշտ սեպուած էական հանգամանք՝ զարմանալի կերպով միացած կը տեսնուին իմաստուն հայագիտին, Հենրիկ Հիւպըշմանի վրայ, ի Համալսարանէն Ստրասպուրկի։ Ծնեալ յէրֆուրդ Տուրինկիոյ (Բրուսիա) ի* 1 *յուլիսի* 1848, *վարդապետի աստիճան առացաւ ի Միւնխէն* (1872), *իր մէկ քննամրցութեամբն, որոյ խորագիրն էր* Երգ Զրադաշտէ (Ein zoorastrisches Lied)․ *ու երեք տարի յետոյ ուսուցչաց կարգն ընդունեցաւ ներկայացնելով Լայպցիկի Համալսարանին* Յիշատակագիր (Mémoire) *մը Արաբացւոց ժամանակի Հայոց պատմութեան վրայ՝ Սեբէոսի պատմական գրուածէն քաղելով* (Zur Geschichte Armeniens und der ersten Kriege der Araber aus dem armenischen des Sebeos)։ *Սեբէոսի բնագրին տպագրութիւնն եղած էր նախ ի Կոստանդնուպոլիս* (1851), *և Պատկանեանի ձեռքով ալ ի Պետրպուրկ* (1862)։ *Եւ որովհետեւ Պատկանեանի ռուսական թարգմանութիւնն* 1879*ին հրատարակուած է, նախ քան զայն երեւցաւ Հիւպշմանի երկը, որ նոյն պատմական գործոյն վերջին մասին թարգմանութիւնն էր ծանօթութեամբք։* 1873*ին Միւնխէնի ակադեմիոյ յիշատակարանաց իմաստասիրական պատմական շարակարգին մէջ հրատարակեց Հիւպշման իր քանի մը ուսումնասիրութիւնքը* Աւեստայի *վրայ* (Avestastudien), *ու* Գերման-արեւելեան *ընկերութեան օրագրին քսանեւվեցերորդ և քսանութերորդ հատորաց մէջ նոյն գրքին մեկնաբանութիւններ։* 1872*ին հրատարակեցաւ իր ընտիր երկասիրութիւնը* Վարդապետութիւն հոլովմանց (Zur Casus lehre, *ի Միւնխէն*)․ *որոյ առաջին մասին մէջ հոլովմանց նկատմամբ վարդապետականին*

պատմութիւնն կ՚ընէ. և յերկրորդին՝ թէ որպիսի էր հոլովն հին պարսկերէնի և Աւեստայի լեզուին մէջ: Նախադրութեանց վրայ խօսելով (302–328), առաջ կը բերէ (332–338) հայկական հոլովմանց դրութիւնը, աւելի հետեւելով Լաւէրի քերականութեան: Տիւլորիէ ալ այս գրութեամբ վարուեցաւ ի ծանօթութիւնս Պատկանեանի, Հետազօտութիւնք ի վերայ կազմութեան հայերէն լեզուի, ուսւ լեզուով գրութեան, Եւարիստ Բրիւտոմի գաղղիական թարգմանութեան հրատարակելոյ յ՚Ասիական օրագրի (1868):

⁂

Հիւպշման 1875ին շարադրեց իր գրուածը թէ՝ «Ո՛ր տեղին կը գրաւէ հայկականն ի շրջանս հնդիկգերմանական լեզուաց» (Ueber die Stellung des Armenischen in Kreise den indogermanischen Sprachen), և որ հրատարակուեցաւ յ՚Ի. Գ. հատորի Kuhn's Zeitschrift für vergleichende Sprach forschung, 5–49: Այս գրուած դարագլուխ կը կազմէ ի պատմութեան հայ լեզուի ուսումնասիրութեան յԵւրոպա, յորում հեղինակը կ՚երեւնայ ստուգապէս գիտուն անձ մը, որ չի դեղեւիր իրաց վկայութիւնն ընդունել, թէպէտեւ բանադատուի անոնցմով իր նախընթաց կարծիքն փոխել: Գիտութեանց մէջ նախընկալ կարծեաց վրայ հաստատուն մնալը յաճախ խոչընդոտն և արգելք եղած է անոնց յառաջադիմութեան և մարդկային մտաց զարգացման: Լեզուաքննութիւնը՝ հազիւ կէս դարու գոյութիւն ունեցող արդի գիտութիւն մ՚է, զարմանք չէ որ օր ըստ օրէ նոր դիւտեր արտադրելով, կը բանադատուինք տարբեր արդիւնք յառաջածել: Գիտութիւնը Հիւպշմանի երախտապարտ է, որովհետեւ այս ճշմարտութեանց անծանօթ անձ չէ, և ոչ իր կարծեաց հակառակորդները արհամարհող: Իր Հոլովմանց վարդապետականին մէջ Միւլլէրի համակար-

ծիք կը թուի՝ թէ հայկական լեզուն երանեան գերդաստանին կը վերաբերի, և կը հերքէ այն տարակոյսները որ կրնան յառաջագայիլ եզական երկրորդ դէմքին ու քանի մը բառից - վերջաւորութենէն։ Եթէ այս - տառ, կ՚ըսէ, կը համապատասխանէ նախնական ատամնային - գրոյն, այս պատճառին համար միայն, հարկ է զատել հայկականն յերանականէն, վասն զի վերջնոյս մէջ - կը փոխուի ի հ․ օրինակ իմն ի բառն —մի—=դենտ մանտա, եթէ համեմատենք այս բառ յունին կամ լատինին հետ, կը հանինք անոր մա՛նս (—) նախնական ձեւոյն, ուր - տառին պահպանութիւնն կը բացատրուի անով՝ որ կը հետեւի (անհետացած) ռնգային հնչման մը։ Միւլլէր համանուն երկասիրութեան մը մէջ հակառակեցաւ Հիւպշմանի կարծեաց, յորում թէպէտ իրեն կը համաձայնի թէ հայերէնը երանեան լեզու մ՚է, այլ կը ծագի գաւառաբարբառէ մը՝ որ բաժնուած է նախնական երանականէն, այնպէս՝ ինչպէս բեւեռաքանդակ արձանագրութեանց պարսկերէնը Աւեստայի լեզուէն․ որով հայերէնը դուստր չէ ոչ պարսկականին և ոչ Աւեստային, այլ համաժամանակ քոյր մը երկու երանեան գաւառաբարբառներու։

*
* *

Քուհնի հանդէսին քաներորդ չորրորդ հատորին մէջ՝ աւելի ընդարձակ կերպով և ոճով ուսումնասիրեց Հիւպշման իրանական լեզուն այլեւայլ հետաքննական հատուածներով, որոց խորագիրքը մեր ընթերցողաց համար աւելորդ կը սեպենք մէջ բերել․ ու ձայնական տառից մէկ տախտակը ներկայացընելով, հետեւցուց թէ անով կարելի է որոշել Միւլլէրի՞ թէ իւրն է իրաւունք, նկատմամբ տեղւոյն զոր արժան է տալ հայ լեզուի։ 1876ին Գերման-արեւելեան ընկերութեան օրագրին մէջ (Հատ․ Լ․ 53–73) նշանակութեան արժանաւոր յօդուած մը հրա-

տարակեց Հիւպշման հին հայերէն լեզուի արտաբերութեան և տառադարձութեան վրայ. յորում կը խօսի նախ արդի հայերէնի արտաբերութեան կամ հնչման վրայ, և Լեբսիուսի գործածած տառադարձութիւնն կը քննադատէ, զոր նոյն ուսումնականն գործածեր էր իւր Standard Alphabet գրոց երկրորդ տպագրութեան մէջ։ Հիւպշման կարեւոր տեղեկութիւններ կ՚ընդունէր յԵդուարդայ Սիեվերս, ի հռչականուն ձայնագիտէն (phonitist) ի Հենացւոյ, որ նոյն խնդրոց նկատմամբ խորհրդակցեր էր չորս հայազգի ուսանողաց հետ, որ ի ժամանակին՝ քաղաքին համալսարանին մէջ կը սորվէին, Սարգսի Սողիկեան խարբերդցւոյ, Թիֆլիզեցի Արութեան Գէորգայ և Յովսեփայ Մատաթեան, երեքն ալ այս օր ուղղիչք Սանասարեան դպրոցի ի Կարին, և Պօղոսի Գեւլիեան վախճանելոյ։ Յիշատակագրին երկրորդ մասին մէջ, հեղինակը կը ջանայ որոշել հին հայերէնին հնչումը ըստ տեղեկութեանց մատակարարելոց ի հայկական թարգմանութեան քերականութեան Դիոնեսիոսի Թրակացւոյ, և նոյն իսկ այբուբենի հիմանց, և ըստ փոխադրութեան յատուկ անուանց և ուրիշ բառերու և յունէ ի պարսկականն։ Եւ իբրու շարունակութիւն այս աշխատասիրութեան (74–80) ճարտար հնագիրն Վիկտոր Գարթհաուզէն, որ մեծ արժանիք և յարգ ունեցող յունական հնագրականի մը հեղինակ է, կը հրատարակէ զհետեւանս իւր համեմատութեանց հայ այբուբենի ընդ տառից յունաց (Ueber den griechischen Ursprung des armenischen Schrift). Եւ կը հետեւցնէ թէ հայ տառից մեծագոյն մասը կը յառաջագային յունական շըղագրէ մը՝ որ Մեսրոպայ ժամանակ ի գործածութեան էր, և թէ Վրաց այբուբենն ալ ուղղակի յունականէն յառաջ եկած է։ Հանդիսին նոյն հատորին մէջ քանի մի տեղեկութիւնք կուտայ երանեան–հայ անուանց վրայ, որ ջարդ, կերտ և գերտ վերջաւորութիւնն ունին. (օր. Տիգրանակերտ, շինեալ է Տիգրանայ և ոչ քաղաք Տիգրանայ), և յէջս

774–779 քննադատութիւն մը կ՚ընէ վիեննական Հ. Սերովբէ վարդապետ Տէվրիշեանի Բ. տարի ուսումնասիրութեան, և ցուցակի մը զենտ ստուգաբանութեանց (Վիեննա, 1877)։ Հեղինակին վրայ մեծ հանճար կը նըկատէ, և կը համարի թէ արդի բանասիրութեան ոճոյն և ընթացքին հետեւողութեամբ կրնայ ընտիր բառարան մը յօրինել հայ լեզուի ստուգաբանութեանց։ ԼԵ հատորին մէջ (1881) կը սկսի իր Հայկականք կոչուած ուսումնասիրութեանց առաջին մասը, յորում այլեւայլ հայ բառերու ստուգաբանութենէն ետքը, կը խօսի Պարսկերէն–Հայերէն բառարանին վրայ, յօրինեալ ի Գէորգայ դպրէ պալատեցւոյ և տպագրեալ համառօտ քերականութեան հետ ի Յակոբայ Տիւղեան (Պոլիս, 710 էջք), յորում կայ և ցուցակ մը 430 պարսիկ–հայ համանշանակ բառից։ Հայկականաց երկրորդ մասին մէջ (654–664) կը խօսի զանազան սկզբնագրոշմ և օտար բառից վրայ։ Երրորդ մասը հրատարակուեցաւ ի 1882 (հատոր ԼԶ, 115–134)․ որոյ հետաքննական յօդուածքն են՝ յորս կը խօսի թէ ինչպէս հնդկայերմանականն - նոյն է արեւելեան հայ գաւառաբարբառոց -ջ և -մ վերջաւորութեանց հետ, որոնք արեւմտեանին մէջ յետադրութիւնք են։ Հնգետասաներորդ հատուածին մէջ կ՚ապացուցանէ՝ թէ քերականական և ոճոյ խորհրդածութիւնք կը բանադատեն զմեզ նկատել զհայ թարգմանութիւն Յայտնութեան գրոց, ժամանակաւ կրտսեր քան զայլ գիրս նորոց կտակարանաց։ Յաւելունք դարձեալ, յամբողջութիւն մեր խօսից, որ Լոնտրայի բանասիրական ընկերութեան 1877 մայիսի 18 գումարման մէջ (Transaction of the Philological society for 1877, էջք 64–71) Հիւպշման ի ձեռն տարեւոր նախագահին, Հենրիկոսի Սուիթ, ներկայացուց մեծապէս հետաքննական տեղեկութիւն մը ի վերայ յառաջադիմութեան հայկական ուսմանց. « Հայ մատենագրութեան, կ՚ըսէ, բազմաթիւ պատմական յիշատակարանք՝ ամէն լուրջ իմաստնոց պատուական կ՚ընծայեն

*ցայն լեզու։ Իր պատմիչք՝ Եկեղեցական պատմութեան նկատմամբ շատ տեղեկութիւն կուտան, և բազմապատիկ աստուածաբանական գրութիւնք՝ Եկեղեցւոյ պատմըչի ու աստուածաբանի մտադրութեան արժանաւորք են. բաց աստի, Հայ մատենագրութիւնն կու տայ մեզ յոյն և ասորի գրուածոց թարգմանութիւնք. յորոց ոմանք կորուսեալ բնագրաց պակասութիւնը կը լեցընեն, և ուրիշներ՝ որ կը ծառայեն անոնց նախկին բնագրին շատ տեղուանքը վերստուգելու »։*

*Հիւպշման* 1877*ին Ստրասպուրկի համալսարանին համեմատական բանասիրութեան ուսուցչապետ անուանեցաւ։ Այն միջոցին կը դասախօսէր յոյն, լատին, գոթական և սանսքրիտ լեզուաց համեմատական քերականութեան վրայ, ու երբեմն ալ եկեղեցական սլաւ լեզուին. կը մեկնէր հնդիկ հեղինակքը, զԱւեստա, պարսիկ նոր լեզուի քերականութիւնը, զքերթողն Ֆիրդուսի, հայ քերականութիւնն ու հեղինակներն, ու լեզուի գիտական ուսման բարգաւաճանաց վրայ կը խօսէր. այս ճառուած նիւթոց համեմատ ունկնդրաց թիւը փոփոխութիւն կը կրէր։*

* * *

*Ցուցընելով Հիւպշմանի տեսութեանց և գիտութեանց ընդարձակութիւնն ու խորութիւնը, որով մարթ է նմա յուսուցչական աթոռոյ վճիռ տալ հայ լեզուի յատկութեանց, ու մանաւանդ ուրիշ իրանեան լեզուաց հետ ունեցած յարաբերութեանց, խօսինք արդ իր մէկ ուրիշ գրուածին վերայ փոխագրութեան հայկականաց ընդ հըռոմէական տառս, որուն մէջ կը ստուգաբանէ աւելի քան զերեք հարիւր արմատական բառս։ Այս տեսակէտով եղած հրատարակութեանց առաջինն է Յաղագս փոխադրութեան իրանեան լեզուաց և հայկականին,* (Die Umschreibung der iranischen Sprachen und des arme-

nischen. Լայպցիկ, 1882)· Պօղ Տըլակարտ սաստկաբար հարուածեց այս գրուածք ի Göttingische Gelehrte Anzaigen 1883, յէջս 257–294, այս առթիւ յիշելով իմաստնոյն Հիւմբոլդի մէկ խօսքը, որ եթէ աշխարհիս վրայ իրեք միայն գիտունք գտնուէին յունական լեզուով զբաղողք, անոնց երկուքը երրորդին համար պիտի հաստատէին թէ բանէ մը տեղեկութիւն չունի։ Արդեօք այս սուր դիտողութիւնը չի՞ կրնար պատշաճիլ հայկականին վրայ եղած ուսումնասիրութեանց ցաւալի վէճերուն։ Եմիլ Տըրայեօն, որ նոյն ժամանակին ի Պետրպուրկ կը գտնուէր, այս առթիւ գրուած մը հրատարակեց (Die Umschreibung der eranischen Sprachen, Լայպցիկ 1883), որով կը գրուատէ Հիւպշմանի կարծեաց հակառակ Պիշէլի առաջարկած փոխագրութիւնը (Bezzenbergers Beitrage, 272··), մինչդեռ հմուտ իրանագէտն Բարթոլոմէի գոհ եղաւ ցուցընելով (ի Literarischen Centralblatt), որ փոխագրութեան գաղափարականն կը կայանայ առանց ամենևին փոխագրելուն վրայ։ Նոյն է նաև մեր կարծիքն, կ՚ըսէ Շրումփֆ. վասն զի գերագոյն միջոց մ՚է խուսելու ամէն դժուարութիւններէ, թէպէտ և համոզուած ենք՝ թէ փոխագրութիւնն միշտ հարկաւոր պիտի ըլլայ ցորչափ տպագրողք իրենց գործածութեանն համար չունենան հայկական տառեր։ Բաց աստի, խիստ պահանջ մ՚է փոխագրութիւնն համեմատական բանասիրութեան հաստատութիւնն կամ սահմանները ճշդելու և ստուգելու։ Փափաքելի է, որ նոյն իսկ հայ ազգայինք գոհ չըլլա՛ն միայն լեզուին ուսմամբ. այլ ջանան աւելի լաւ հասկըցընել օտարաց, և օգտակարագոյն կերպով մտցընել զայն յուսման գիտութեան լեզուաց։ Սակայն հայկական ուսմանց յառաջադիմութեան համար էականն է, որ փոխագրութեան հաստատուն կանոն մը ունենայ. հոգ չէ եթէ քիչ շատ անկատար ևս ըլլայ այն։ Հիւպշմանի գրութիւնը, հիմայ ամենէն աւելի ընդունելին է բազմաթիւ (եւրոպացի) բանասիրաց,

և փափաքելի է որ ընդհանրանայ. վասն զի անով միայն կարելի է վախճան տալ այն խառնաշփոթութեան որ տիրապետած է այս օրս: Ցաւալ քան զամենայն՝ պէտք է այբուբեն մը, որ նշան առ նշան ներկայացնէ զհայկականն, և ոչ այնչափ կնճռեալ, այնպէս որ սովորական տպարանական տառք կարող ըլլան բացատրել: Իսկ հնչման խնդիրը այլ է. բաւական է այնպիսի նշանակներ սահմանել՝ որ ամենուն իմանալի ըլլան, և այս փոխագրութեանց համար գործածուին և հնչման համապատասխանող, թէպէտ և Թիֆլիզի կամ Պոլսոյ յատուկ ու սովորական ըլլան, կամ քիչ շատ կարգաւորուած հնչմունք մը, բայց ըստ մեծի մասին տեսական (théorique) հին հայերէնին կամ գրաբարին համար: Եթէ կարելի ըլլայ որ և իցէ գաւառաբարբառ ներկայացնէ մասնաւոր ձայներ կամ հնչում, բնականաբար հարկ է այն առեն մասնաւոր ձայնական նշանակք գործածել: Հիւպշման՝ ըստ դասաւորութեան կամ կարգի մեսրոպեան այբուբենի՝ հետեւեալ տառերը կ'առաջարկէ և կը գործածէ. ա. գ. կ. տ. ե. զ. ը. թ. ժ. է. լ. խ. ա. և այլն:

Բայց արժան է գիտել միշտ, որ ամէն տառ բացարձակապէս անփոփոխ համազօր արժէք ունենայ հայ այբուբենին մէջ: Հիւպշմանի առաջարկածին մէջ՝ թէպէտ յունական տառ մը և քանի մի չեշտաւորք գտնուին, պարզ տառերը ամփոփելու օգուտն ունի. ուստի և շատ բանասիրաց համար հաճոյանալով, գործածել սկսան. ինչպէս Պրուկմանն ի գիրսն Տարերք համեմատական քերականութեան հնդկագերման լեզուաց (Grundriss der verlgeichenden Grammatik des indogermanischen Sprachen, Ստրասպուրկ, 1886): Համեմատական բանասիրութեան այս ընտիր, բայց դեռ եւս աւարտը չհասած գրուածին հեղինակ՝ առաջին հատորոյ յառաջաբանին մէջ կը յայտարարէ՝ թէ ինքն տակաւին ոչ այնչափ հմտացեալ իրանական և հայ լեզուաց ուսմանց մէջ, հետեւող եղեր է Բարթոլոմէի և Հիւպշմանի կարծեաց: Իրեն արդիւնքն

է կարգաւորեալ դասաւորութիւնն նիւթոց, զոր այս երկու հմուտ գրուածներէն կը հաւաքէ։ Գրուկմանի այս երկասիրութիւնն ուսումնասիրելով, հարկաւոր ծանօթութիւնն կ'ունենանք այն ջանից նկատմամբ, որ չահաւորք են հայ լեզուի բանասիրական ուսման լաւ գլխաւորութիւն մը տալու։

## Հ. Ա. ԳՈՒՏՇՄԻԴ

Հերմանն Ալֆրեդ մարգիզ (Freiherr) Գուտշմիդ, 1831ին ծնած է ի Լոքվից, Տրեստայի մօտ, ուր ըրած է իր նախնական ուսման ընթացքը։ 1848ին Լայպցիկի համալսարանն մտաւ, և ապա ի Պօնն, ուր մասնաւոր ջանքով հետեւեցաւ պատմական և բանասիրական ուսմանց. 1854ին վարդապետական աստիճանն (doctorat) ընդունեցաւ բանամրցութեամբն՝ որոյ խորագիրն էր, Յոյն մատենագիրներն՝ որ յառաջ քան զմեծն Աղեքսանդր Եգիպտոսի վերայ խօսեցան (De rerum Aegyptiacarum scriptoribus Graecis ante Alexandrum Magnum)։ Դասախօսութեամբ պարապեցաւ ապա ի Տրեստ, և ի Լայպցիկ, ուր և մեծագոյն եռանդեամբ ուսումնասիրեց արեւելեան հին պատմութիւնը, և գրեց նոյն նիւթին վրայ հմտաբար Beiträge zur Geschichte des alten Orients. և Neu Beiträge (1876) Գերման-արեւելեան ընկերութեան ամսաթերթին մէջ հրատարակեց (հատոր ԺԵ) Նաբաթեանց վրայ ուսումնասիրութիւն մը, (Die nabatäische Landwirtschaft und ihre Geschwister). 1861ին իբրեւ հմուտ արեւելագէտ մը անդամակից ընտրուեցաւ Սաքսոնիոյ Գիտութեանց ակադեմիոյ. 1863ին օգնական ուսուցիչ պատմութեան ի համալսարանին Կիէլի, և ապա երեք տարիէն բուն անուանակիր ուսուցիչ։ Այն առթով յայտարար (programme) գրուած մը հրատարակեց, Վան ծա-

Նշան ժամանակաց՝ որովք վարի Եւսեբիոս ի ժամանակաց կանոնսն (De temporibus notis quibus Eusebius utitur in chronicis canouibus), հրատարակեալ ի Կիէլ։ Կատարեալ գիտութեամբ նիւթոյն՝ կրցաւ քննադատել Շէօննի երկասիրութիւնքը Եւսեբեայ, և իր մատենին վրայ հետեւեալ գրքերը հրատարակելով. Ա. Հերոնեայ ընծայեալ լատին թարգմանութեան Եւսեբեայ տպագրեալ ի Պոնտակոսէ յամին 1604, և ի Սկալիճերէ ի 1606. որոյ վրայ քննադատական տեսութիւն մը ըրաւ Գուտշմիդ ի Literarisches Centralblatt ուսումնաթերթի, ի 1865 (530–533)։ Բ. Եւսեբեայ ժամանակականաց գիրք երկու, շարք հրատարակեաց Ալֆրեդ Շէօնէ, հատոր Ա, Պերլին 1866, ի Տարեգիրք դասական բանասիրութեան (Jahrbücher für klassische philologie, 1867, էջ 677–688), ուր և կը խօսի Պետերմանի լատին թարգմանութեան վրայ։ Գ. Եւսեբեայ ժամանակականաց գիրք երկու, հրատարակեալ յԱլֆրեդէ Շէօնէ, հատոր Բ, Պերլին 1875, յամսաթերթին Literarisches Centralblatt, 1876, էջ 885–8։ Այս յօդուածներէն զատ 1886 թուին յօրինեց քննութիւն մը ի վերայ ասորական համառօտութեան Եւսեբեան կանոնաց (Untersuchungen über die syrische Epitome der Eusebischen Canones) տպագրեալ ի Շթութգարդ, 1886։ Այս ամէն երկասիրութիւնք Գուտշմիդի հրատարակեալ են նաև ի Kleine Schrifteu, որ Փրանց Ռուհլ բանասիրի ջանիւք կը տպագրուի, և չորս հատորի մէջ պիտի բովանդակուի։ Առաջինն կը պարունակէ զպատմութիւն հնոյն Եգիպտոսի և զժամանակագրութիւն Յունաց, և հրատարակեցաւ ի Լայպցիկ (առ Տօյպների) ի 1889։ Երրորդին մէջ պիտի ամփոփուին Ասիոյ ոչ–սեմական ժողովրդոց պատմութեան վրայ գրութիւնք։ Գուտշմիդ շատ աշխատած է արեւելեան հին ազգաց և Հայաստանի պատմութեամբ։ Իրենն է և այն ընդարձակ յօդուած՝ յորում կը խօսի Իրանեան ազգաց վրայ, և Պարսկաստան անուան խորագրով տպագրեցաւ ի Բրիտանական Հա-

Խոսրով Անուշիրուանէն, ի հատորն ԺԸ յէջ 561–607, մինչեւ Սասանեանց ժամանակ։ Անոր հետեւեալ յօդուածը, որ այս հարստութեան կամ իշխանութեան վրայ կը խօսի, շարագրուած է ի բանիբուն Թէոդորէ Նօլտէկէ, որ Գուտշմիդի երկասիրութեան մը գերման թարգմանութեան յառաջաբանն ալ յօրինեց, որ այս խորագիրն ունէր, Geschichte Irans und seiner Nachbarländer, von Alexander dem Grossen bis zum Untergang der Arsaciden, հրատարակեալ ի Տիւպինկէն, 1888։ Գուտշմիդ Բրիտանական համայնագիտակին մէջ հատուած մը գրած Մովսէսի Խորենացւոյ վրայ (հատ. ԺԶ), յորում այն հետեւութիւնը կը հանէ, թէ իր անուամբ մեր ձեռքն եղած Հայոց պատմութեան հեղինակն, հինգերորդ դարու նոյնանուն թարգմանիչն չէ, այլ ուրիշ հայ մը՝ որ նոյն անուան տակ գրեց ի մէջ 634 և 642 թուոց։ Այս կարծիքն կ'ուզէ ապացուցանել ժամանակագրական անտեղութեամբք ու աշխարհագրական մանրամասնութեամբք, որոնք չեն կրնար համաձայնիլ հինգերորդ դարու։ Պէտսէց գրոց, որ Մովսէսի կ'ընծայուի, ո՛ր շատ տարբեր կը գտնէ պատմութենէն, մինչ Բաւմգարդնէր՝ իր աշակերտը հակառակ կարծիք ունի. և որովհետեւ անհամեմատ կերպով լաւ ուսումնասիրած է զհայ լեզու քան իւր ուսուցիչը, նախամեծար կը սեպուի յոմանց՝ իւր ենթադրութիւնը՝ որ Գուտշմիդի հակառակ է։ Բայց առաջին անգամը չէ սորա Մովսէսի Խորենացւոյ գրքով զբաղելըն. 1876էն ի վեր նոյն նկատմամբ գրուած մը հրատարակեր էր այսպիսի խորագրով. Uber die Glaubwürdigkeit der armenischen Geschichte des Moses von Khoren, որ առանձին ալ տպուած է (43 էջք)։ Մովսէսի ընծայուած Աշխարհագրութեան գրոց համար ալ, անցողաբար ըսենք՝ թէ այս նկատմամբ անուանի աշխարհագէտն Կիպերտ յիշատակագիր մը տուած է Պերլինի Գիտութեանց Ակադեմիոյ. (տես ի Monatsberichte), 1873, էջ 599։

Պետերբուրգի կայսերական ակադեմիոյ յիշատակագրոց մէջ (Շար Է, հատ. ԼԵ, 1887), Գուտշմիդ հետաքննական երկասիրութիւն մի հրատարակած է Օսրոյենաց պատմութեան վրայ, և որ շատ օգտակար կրնայ ըլլալ Եդեսիոյ եկեղեցւոյն պատմութեամբ զբաղողի. (Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroëne, von Alexander dem Grossen).

Յիշատակենք ի վերջոյ Ագաթանգեղոսի վրայ գրուածը, հրատարակեալ գերմ–արեւելեան ընկերութեան օրագրին մէջ (Agathangelos) Հատ. ԼԱ. 1877, էջք 1–60: Տըլակարտ սոյն յունական հեղինակին բնագիրն հրատարակեց ներածութեամբ և ծանօթութիւններով՝ ըստ օրինակին, որ կը պահուի ի Լաուրենտեան մատենադարանի Փլորենտիոյ (Է. 25). Abhandlungen der historisch–philologischen Klasse der Kön. Gesellschaft der Vissenschaften zu Göttingen, հատ. ԼԵ. 1888, էջք 1–88, 121–149). Էջքն 89–120 կ'ամփոփեն զվարս Գրիգորի Հայաստանեայց հայրապետի, ըստ երից յոյն գրչագրաց որ ի Վատիկանեան մատենադարանի (794, 5, 6)*:

* * *

Գուտշմիդի կենսագրութիւնը գլխաւորելու համար, կը մնայ մեզ ըսել թէ 1873 ի Կիէլէ անցաւ ի Քէօնիկսպէրկ, և անտի ի 1876 յԻենա, ուր տարի մը մնաց իբրու ուսուցիչ դասական բանասիրութեան: Ուսումնա-

* Ազգային եկեղեցւոյ պատմութեան մէջ նոր կերպարանափոխութիւն մուծանելու սահմանուած այս գրուածք, պիտի ունենար անշուշտ իր հետաքրքրողքը, քննադատողք և ընդդիմախօսք: Գուտշմիդ՝ ինչպէս Խորենացւոյ, ատանկ ալ, Ագաթանգեղոսի անձին և գրուածոց վրայ յայտնած ենթադրութեանց և կարծեաց հակառակողքն ունեցաւ: Յարգելով իր մեծ հմտութիւն իբրու գիտնական, չկրցան և չուզեցին ընդունելի համարել իր կարծիքն իրենց ամբողջութեամբը: Այս վախճանաւ հրատարակուեցան այլեւայլ հետաքննական երկասիրութիւնք:

կան տարւոյն նաւակատեաց օրը խօսած ճառը՝ հին պատմութեան աղբերաց վրայ, տպագրեցաւ ի Kleine Schriften (1–34), որ պատմական ուսմամբք պարապողաց մըտադրութեանն արժանաւոր բանախօսութիւն մ'է։ Իենայէ կոչեցաւ ի Թիւպինկէն՝ իբրու ուսուցիչ պատմութեան. և հոն հանդիպեցաւ մահը, յ'2 մարտ 1887, ի հասակի 56 ամաց։

## ԱԴՈԼՖ ԲԱՒՄԿԱՐԴՆԷՐ

Ադոլֆ Բաւմկարդնէր, ուսուցիչ հին պատմութեան ի համալսարանին Պալ քաղաքի, ծնած է 1855ին ի Լէրրաք, Պատենի մեծ դքսութեան քաղաքին մէջ, ալսացիացի ընտանեաց զաւակ։ Ծննդավայրին դպրոցաց մէջ նախնական ուսմունքն ընելէն ետքը, ի համալսարանի քաղաքին պարապեցաւ պատմական և դասական բանասիրութեան ուսմամբք, զորս և շարունակեց ի Պոնն, Իենայ և Թիւպինկէն քաղաքաց համալսարանաց մէջ։ Այս վերջին քաղաքին մէջ, յամի 1879, սկսաւ հետամուտ ըլլալ հայերէն լեզուի. առ որ յօժարամիտ ըրին զինք Լըպոյի Կայսերաց պատմութեան մէջ ի Սէն-Մարդէնէ գրուած ծանօթութիւնք, զորս արդէն յիշատակեցինք մեր այս գրուածին մէջ, և իր վարպետին՝ Գուտշմիդ ուսուցչապետի հրատարակած Մովսիսի Խորենացւոյ և Ագաթանգեղոսի գրուածոց քննադատութիւնք։ Իր ուսմանց մէջ օգտուեցաւ երեք հայ ուսանող պատանիներէ, որոնց հետ գրեթէ տարի մը սեղանակից ալ էր, զորս վերագոյն յիշատակելու առիթ ունեցանք։ Յետոյ ի Թիւպինկէն՝ հայերենի ուսուցիչ ունեցաւ զվախճանեալ Հիմպէլ, որ չունենալով Գուտշմիդի սուր և խորունկ քննադատական ոգին, հայկական ուսմանց բանասիրական մասամբ միայն կը զբաղէր, որուն ոչ երբեք հետա-

*մուտ եղած է Գուտշմիդ։ Այսպէս Բաումկարդնէր հայագէտ մը եղաւ, կամ ինչպէս ինքն կը գրուցէ, պատուաստ մը դասական բնախիրի մը վրայ, աշակերտ Ռոհդի և Մորից Շմիդի, և պատմըչի մը՝ աշակերտ Գուտշմիդի։*

*Իր ընտիր ուսումնասիրութիւնն Պիտոյից գրքին վրայ* (Ueber das Buch « die Chrie » ), *այսինքն Մովսիսի Խորենացւոյ ընծայուած ճարտասանութեան մը, որ լոյս տեսաւ ի քառասներորդ հատորի Գերման-արեւելեան ընկերութեան ուսումնաթերթին մէջ* (*էջ* 475–515), *ընդունած այս երբեակ դասախարակութեան չէնքին հիման վրայ կառուցուած է։ Իրեն բնագիր առած է Բաումկարդնէր* 1796*ին ի Ս. Ղազար Վենետկոյ եղած հրատարակութիւնն, ծանօթութեամբք Հ. Յովհաննու Զօհրապ, հետեւեալ խորագրով. « Նախակրթութիւն հռետորական՝ ասացեալ Գիրք Պիտոյից սրբոյ հօրն մերոյ Մովսիսի քերթողահօր »։ Այսպէս ամենէն վերջ գրուած է ի տպագրին՝ Մովսիսի անունը։ Իսկ յունական բնէն հայերէնի մէջ Պիտ. թարգմանուած՝ և առաջին* (*երրորդ*) *գրքին առաջին բառը, ամբողջ գրուածին պատշաճեցուցուած է։ Հեղինակն հետեւող է յոյն հռետորաց, և ի մասնաւորի Ափթոնիոսի անտիոքացւոյ, որ Լիբանիոսի նախամեծար աշակերտն էր, և կամ Թէօնի աղեքսանդրացւոյ իրեն նմանողի։ Այսպէս կը սահմանէ զՊիտոյն՝ գրեթէ բառ առ բառ նման Ափթոնիոսի. « Պէտք են բացայիշատակք համառօտ քաջադիպութեամբ ի դէմս ինչ վերաբերեալ... Եւ պիտոյիցս ոմանք են բանականք. և ոմանք գործականք, և ոմանք խառնք... Զառաքինութեանն զօսա՝ քրտամբք և աշխատութեամբ Պղատոն ասաց բուսանիլ.* (*Պիտ. Բանական*)։ *Պիւթագորաս, ո՞րչափ իցէ կենցաղոյս չափ՝ հարցեալ յումեմնէ, սուղ ինչ երեւեալ ծածկեցաւ,* (*յոյն բնագիրն՝ պատմուճանաւն ծածկեալ, զփոքր ինչ ման երեւացն ցուցանէր*)*.* — (*Պիտ. Գործնական*)*. այնքան գոլ զժամանակն ընձեռեաց՝ որքան է տեսութեան չափ...*

և Դիոգինէս համբակ տեսանելով ստահակեալ, զմանկածուն տանջեաց ասելով, ընդէ՞ր այսպէս դաստիարակես»․ (պէտ․ խօսն)։ Բաումկարդնէր կը դնէ ցուցակ բնաբաններու նիւթոց երկասիրութեանն, և անոնցմէ մէկուն ամբողջ թարգմանութիւնն ալ կ'ընծայէ իբրև նմոյշ կամ օրինակ մը գրուածոյն։ Եւ այս նկատմամբ դիտել կուտայ՝ որ սահմանքն և կանոնք գրուած են թարգմանչաց խառնակ լեզուովը, որոյ յայտնի օրինակ մ'է Դիոնեսիոսի Թրակացւոյ թարգմանութիւնը, բայց պարզաբանութիւնք ընտիր և մաքուր լեզու ունին։

Սակայն մեծ խնդիրն, զոր լուծել հարկ է, սահմանելն է թէ արդեօք ճարտասանութեան հեղինակն է նոյն ինքն պատմիչն Մովսէս։ Ուստի Բաումկարդնէր կը քննէ զպատմութիւնն Մովսիսի Խորենացւոյ, որուն նպատակն՝ ըստ իւր կարծեաց, է եւ առնուլ կամ պահանջել Բագրատունի իշխանաց համար մասնաւոր գիրք մը ի մէջ նախարարութեան Հայոց։ Ամենակարևոր մերձաւորութիւնք կամ նմանութիւնք կը գտնէ Պիտոյից գրոց և Պատմութեան մէջ․ օրինակ իմն, Հռետորականին հեղինակը փոխ կ'առնու ի Թէոնէայ՝ լակեդեմոնացւոյն խօսքը, որուն երբ կը հարցուի թէ ո՞րք են Սպարտայի սահմանները, իր նիզակը կը ցուցնէ (Թէոն․ տպ․ ի Ստուտգարդ, 1834․ գլ․ 6 էջ 25)։ Յայտնի է որ պատմիչն Խորենացի՝ նման խօսք մը կը դնէ Արշակայ բերանը, որ իւր եղբօր Վաղարշակայ յանձնելով Հայոց թագաւորութիւն, կ'ըսէ՝ որ այդ իրեն տրուած աշխարհաց սահմանքն այնչափ ընդարձակութիւն ունին, որչափ որ կըրնան մուտ գործել իր կամքն ու զէնքը․ զի «սահման քաջաց՝ զէնք իւրեանց»։ Ուստի կը հետևցընէ Բաումկարդնէր՝ թէ այս նմանութիւնք Պիտոյից ու Պատմութեան գրոց կը ցուցնեն թէ մի և նոյն հեղինակի արտադրութիւնք են։ Երկու քննադատական երկար ծանօթարանութիւնք ալ կը յաւելու այս աշխատասիրութեան․ մէկը Խորենացւոյ հեթանոս ազգաբանութեանց ուղղագրու-

*թեան վրայ, և միւսը՝ յունական լեզուի սեռական հոլովին վրայ, զոր հայ թարգմանիչք ուղղական համարած են, օրինակ Ապողոնիոս։*

*Բաւմկարդնէր շարունակեց իր հայկականին ուսումը ի Ս. Ղազար, ուր մասնաւոր մտադրութեամբ պարապեցաւ (1885ին յունուար ու փետրուար, ու յետագայ տարւոյն մարտ ամիսներուն), ի համեմատութիւն գրչագրաց խորենացւոյ, տեսակէտ ունելով իր երկասիրութեանց նոր տպագրութիւն մը ընել ի լատին, մեկնողական ու պատմական ծանօթութեամբք։ Նոյն դիտմամբ երկիցս գնաց ի Փարիզ (ի 1886 ի 1890), բայց դեռ սպասել պէտք է ինչուան որ այդ երկասիրութիւն հրատարակուի։ Մերթ ընդ մերթ գիտնականաց ոմանց ի Հայոց այցելութիւնն ունեցաւ, ինչպէս Ն. Քարամեանց Շամախեցւոյ, որոյ հետ ծանօթացաւ ի Թիւպինկէն 1885ին աշնան, Գուտշմիդի և Ալբերտ Սոկինի ընկերակցութեամբ։ Ծանօթ է որ Քարամեանց հեղինակ է ընտիր ցուցակի մը Պերլինի համալսարանին հայ գրչագրաց։ Կրկին անգամ գնաց անոր տեսութեան Պալ (1887 մարտի 24) յառաջ քան զերթն ի Ս. Ղազար և անտի յէջմիածին։ Տեսաւորեցաւ Բաւմկարդնէր ընդ Կանայեանցի Խգդիրեցւոյ, որ Ստրասպուրկ ի համալսարանին ուսանող էր, և կ'ուզէր հմուտ հայագիտին կարծիքն առնուլ իրմէ շարադրուելիք ուսումնասիրութեան մը վերայ, որոյ նիւթն էր Սոյն-կալլիսթենեայ հայկական թարգմանութիւն։*

## ՍՈՓՈԽՍ ՊՈԽԿԿԷ

*Արդէն յիշեցինք թէ երբ Պոբբ իր Համեմատական քերականութեան առաջին տպագրութիւնն ըրաւ (1833), հայկական լեզուի ուսմամբ դեռ եւս պարապած չըլլալով, չէր կարծեր թէ հնդկա-եւրոպական գերդաստանին պատկա-*

նի ։ Իսկ երկրորդ տպագրին (1857) յառաջաբանն այս խօսքերով կը սկսէր. « Այն լեզուաց վրայ՝ որոց նկատմամբ խօսքն ըրի գրոյս առաջին տպագրութեան մէջ, աւելցաւ նաեւ հայերէնն. որոյ երբ բացառական հոլովման վրայ կ'ուսումնասիրէի... մինչ դրի թափանցել ի քննութիւն կազմութեան այս լեզուի » ։ Դժբաղդաբար ոչ Պոբբ՝ և ոչ իր իմաստուն թարգմանիչը, Միքայէլ Պրէալ, հարկաւոր տեղեկութիւններն չունէին առ ի խոյս տալ այն բազմաթիւ վրիպակներէն՝ որոնց մէկ քանին յայտնեց Տիւլորիէ ։

Բուն հայկական բանասիրութիւն, որոյ հիմունքը կամ սկզբնաւորութիւնն ըրին իրենց երկասիրութեամբք՝ Պետերմանն, Տիֆէնպախ, Վինտիշման և Կօշէ, Պօղ Լակարտի ուսումնասիրութեամբք կը սկսի, բաղմահմուտ ուսուցչի Կէթինկի համալսարանին. և ապացոյց մեր խօսքին ստուգութեան բաց ի գերման-արեւելեան ընկերութեան օրագրին մէջ գրած մէկ հատուածէն (1850), ուր հայ բաղաձայնները սանսքրիտին հետ կը բաղդատէ, իւր Arica (Հալլէ 1851), և Zur Urgeschichte der Armenier, (Պերլին 1854), խորագիրը կրող գրուածները ։ 1860ին ատենները Փրեդրիկ Միւլլէր, ի համալսարանին Վիէննայի, իւր մեծայարգ ձեռնտուութիւնը կ'ընծայէր հայագիտաց հետազօտութեանց ։ Այսպէս յաջողեցաւ Տըլակարտ իւր Հայկական ուսումնասիրութեանց մէջ (1877) ինչուան 2413 բառից ստուգաբանութիւնը տալ ։ Թէպէտ գրեթէ 300 արմատական բառք կը հաշուին, սակայն խոստովանել արժան է թէ այս տեսակ հաշիւք յաճախ կանխահաս են ։

Սթրասպուրկի համալսարանին ուսուցիչն Հիւպշմանն դէմ ելաւ այն ընդունուած կարծեաց թէ հայերէնն՝ գաւառաբարբառ մը եղած ըլլայ իրանեան լեզուաց. ու Քուհնի ուսումնաթերթին մէջ յօդուած մը հրատարակելէն ետքը (1875) թէ՝ որ տեղը կը պատկանի հայկականին հնդկա-եւրոպական լեզուաց գերդաստանին մէջ,

*գերման-արեւելեան ընկերութեան օրագրին մէջ ցոյց տուաւ ի* 1877 *թէ ինչպէս արժան է հնչել հին լեզուն: Այդ յօդուածին երեւնալէն ետքը գիտուն հնագիրն, Վ. Կարդհաւզէն ցըցուց մեսրոպեան տառից շատին յունական սկզբնաւորութիւնը: Վերջապէս* 1883*ին Հիւպըշման լատին տառիւք փոխագրութեան դրութիւն մի հնարելով, իւր Հայկական ստուգաբանութեանց առաջին մասը հրատարակեց, յորում* 299 *բառից ստուգաբանութիւնը կու տայ և համառօտութիւն մ'ալ ձայնագրականի: Դուրս կը ձգէ իւր նախորդաց ենթադրեալ արգասիքէն շատ բառեր, որ իրանեան լեզուներէ փոխ առնուած են, հետեւաբար ոչ համազգի: Այս կերպով այն հետեւանքը կը հանէ՝ թէ հայերէնն մասնաւոր ու զատ ճիւղ մ'է հընդիկ-եւրոպական գերդաստանին, և թէ պէտք է դնել զայն ի միջոցի՝ մէկ կողմանէ իրանեան սանսքրիտի, և ի միւսմէն՝ սլաւ-լիթուանեանի:*

***

1889*ին Քրիստիանայի համալսարանին ուսուցիչը Ելսէոս Սոփուս Պուկկէ՝ արեւելագիտաց ժողովոյն գումարման առթիւ* 114 *յօդուածներէ բաղկացեալ ստուգաբանական իմաստուն աշխատութիւն մի ներկայացոյց իր քաղաքին Գիտութեանց ժողովոյն: Բաց ի այս երկասիրութենէն՝ շատ տարիներէ ի վեր ուրիշ աշխատութեամբ մ'ալ կը պարապի Պուկկէ, հին իտալական լեզուաց ուսումնասիրութեամբ, և առանձինն օսկ և էտրուսկեան բարբառոց: Մասնակից ըլլալէն զատ Տիքի* (Deek) *Հետազօտութիւնք և էտրուսկեան ստուգաբանութիւնք կոչուած գրքին,* 1886*ին երկասիրութիւն մ'ալ հրատարակեց Ծագումն էտրուսկեանց՝ բացատրեալ երկու արձանագրութեամբք Լէմնոսի* (Origine des Etrusques, expliquée par deux inscriptions de Lemnos)*. Ինչուան հիմա, չնորհիւ գիտնական աշխատութեանց Գորսէնի, Քարլ Փօլի, Կարթհաւզենի, Տիքի*

և այլոց կը համարուէր՝ եթէ ետրուսկեանց լեզուն մասն ըլլայ հին իտալիկ լեզուին։ Հորեբրտ Էլլիս, Քէյմպրիճի Ս. Յովհան դպրոցէն (1820–1885) աշխատեր էր փորձել ետրուսկ լեզուն հայերէնի մօտեցընելու և այս վախճանաւ այլ և այլ գրքեր և յօդուածներ շարադրած. ինչպէս Հայ ծագումն էտրուսկեաններու (The Armenian origin of the Etruscans) տպ. ի 1861 ի Լոնտոն, և թուոց անուանց վրայ մանր գրուածներ, և մահուընէն ետքը հրատարակուածը Աղբիւրք Էտրուսկ և Բասկ լեզուաց (Sources of the Etruscan and Basque Languages) ի 1886 տպ. Լոնտոն. բայց որովհետեւ լեզուական համեմատութեանց մէջ ինչուան Ափրիկէի ու Փերուի լեզուներէ վկայութիւններ կը բերէր, բնականաբար իւր ենթադրութիւնք և հանած հետեւանք լուրջ չի սեպուեցան։ Պուկկէ հիմայ հետամուտ է նորէն ապացուցանելու ձեռք զարնել զազգակցութիւն ետրուսկ լեզուի ընդ հայկականի, բայց ուսումնական այնպիսի պաշարաւ եւ պատրաստութեամբ, որով յիրաւի կը գրաւէ զընթերցողն՝ ոչ օտար ի ճշմարտանմանութենէ ենթադրութեանց։ Սակայն հեղինակն՝ այն համեստութեամբ, որ ճշմարիտ գիտութեան յայտարար նշան է, առաջին փորձոյ մը յաջողութեան հետեւանքը կ'ընծայէ, սպասելով և յուսալով մերձաւոր ապագայի մէջ կատարելագործել։ Իր գրուածք՝ առաջին շարք մ'է (Erste Reihe) նախապատրաստական նիւթոց։ Կ'ընդունի հին նախնեաց աւանդութիւնը թէ ետրուսկեանք ի Լիւդիոյ եկած ըլլան, և իր կարծիքը կը հիմնէ այն աչքի զարնող լեզուական մերձաւորութեանց վրայ՝ զոր կը գտնէ ետրուսկերէնի և հայերէնի մէջ, ոչ այնչափ գրաբարի՝ որչափ աշխարհիկ գաւառաբարբառոց։ Այս վախճանաւ օգտուեր է ի հետազօտութեանց Պատկանեանի, Պետերմանի, Սարգսեանցի, Տոմսընի, Հանուշի. որոց վրայ կրնար յաւելուլ նաեւ Ջէյթունի գաւառաբարբառը՝ գրուած յԱլլահվերտեանէ։ Հետեւող է Պուկկէ՝ փոխագրութեան Հիւպշմանի, ինչպէս նաեւ

*Պրիւկման Համեմատական Քոնվերսաթիոն կոչուած ընտիր գրքին մէջ։*

*Աւելի երկարել չենք ուզեր այս բազմահմուտ երկասիրութեան վրայ, ընթերցումը յանձնարարելով. շատանանք միայն ըսելով՝ թէ հեղինակը ոչ միայն անջատ բառերը կը բաղդատէ, օրինակ իմն եռր. էրոս. հայ. սէր, ըսունկի=ըսունկայ, թուրկ=թուրք, թուր, թալլէ, (ներկայացընելի=թալ), այլ նաեւ ղքերականական վերջաւորութիւնս անուանց և բայից, զկազմաւորութիւն բառից, զյետադաս մասնկս և զտառս, և այլն։*

# ՅՈՎՍԷՓ ՍՏՐԶԻԳՈՎՍՔԻ

*Գերման լեզուով գրող հայագիտաց վրայ մեր ուսումնասիրութիւն ամբողջացընելու համար կ'արժէ խօսիլ աշխատասիրութեան մը վրայ, որ մօտերս գերմաներէն լեզուով հրատարակուեցաւ ի Մխիթարեանց որ ի Վիեննա**։ *Այս գրուածք կը կոչուի Բիւզանդական պատկերագրութեան արձան. — Ա. Աւետարան Էջմիածնի, է Յովսեփայ Ստրզիգովսկիէ* ։ (Byzantinische Denkmäler, I. Das Etschmiadzin — Evangeliart von Dr. Joseph Strzygowski Wien, 1891). (*Ը. և* 128 *էջ ի* 4, *ութուտասն փարագրութեամբք և ութ լուսատպագրօք*)։ *Այս ընտիր ուսումնասիրութեան հեղինակը ծնած է* 1862*ին Կալիցիա (Աւստրիոյ). դաստիարակութիւնն ընդունեցաւ ի Գերմանիա, և* 1882*էն ց'*85 *ուսաւ ի համալսարանս Վիեննայ, Պերլինի և Միւնիխէնի։ Իմաստասիրական և բանասիրական ուսմանց հետ մասնաւոր կերպով հետեւեցաւ նաեւ ա-*

* *Գերմանականէն ետքը նոյն մեծարգոյ հարք հրատարակեցին նաեւ հայ թարգմանութիւնը, աշխատասիրութեամբ Պիլէզիկճեան Հ. Բառնաբայ ի Վիեննա, ի* 1893։

րուեստից պատմութեան։ 1883ին ճանապարհորդեց ի Լոնտրա և ի Սկովտիա, 1885ին ի Բելճիա, Հոլանդա և Փարիզ, ուստի անցնելով յԻտալիա, անդամակցեցաւ Հռովմայ գերմանական հնախօսական կաճառին։ Մինչեւ այն ատեն միջին դարուց արուեստի ուսմամբ զբաղեր էր, և նոյն նիւթին վրայ գրուած մը հրատարակած էր ի Միւնխէն 1885ին Պատկերագրութիւն Մկրտութեան Քրիստոսի խորագրով (Iconographie du baptême du Christ). Իսկ յԻտալիա գտնուած ժամանակ իւր մտադրութիւնը դարձուց արուեստից այն երկրին մէջ բարգաւաճանաց դարուն։ Ի Հռովմ և յԱսիզի իր ըրած քանի մը գիւտեր նոր դրութեան մը հիմունք ընծայեցին՝ իտալական արուեստից Նեստորին՝ Չիմապուէի ստեղծագործութեանց և անոնց յառաջադիմութեան վրայ, և այդ ազդեցութեամբ շարադրեց Չիմապուէ և Հռոմ (Cimabue und Rom) գրուածք, զոր 1888ին հրատարակեց ի Վիէննա։ Երկու տարի (1888–90) երկար ճանապարհորդութիւններ ըրաւ. բիւզանդական արուեստի յիշատակարանները ուսումնասիրելով գնաց ի Թեսաղոնիկէ, յԱթոս լեառն, յԱթէնս և ի Յունաստան, ի Կոստանդնուպոլիս և ի շրջակայս, յարեւմտակողմն փոքուն Ասիոյ և ի մերձակայ կղզիս, ի Տրապիզոն և ի Կովկաս, ի Մոսկուա և ի Պետերպուրկ։ Այս ուղեւորութեանց ատեն եօթն հարիւրէն աւելի լուսանկար հաւաքեց, և այլ և այլ հանդէսներու մէջ զանազան ուսումնասիրութիւնք հրատարակեց, գլխաւորապէս նպատակ ունենալով անոնցմով ընդհանուր պատմութիւն մը ընծայել բիւզանդեան արուեստի. 1892 տարւոյն ալ Վիէննայի համալսարանին մէջ դասախօսութիւն ըրաւ ութեւտասն և իննեւտասն դարուց արուեստից պատմութեան և Լէոնարդ Տա-Վինչիի, Աւստրիոյ ոստանին թանգարանաց մէջ անձամբ առաջնորդեալ աշակերտաց հմտանալու գործնականին հրահանգութեան։

Հաւատարիմ մեր սկզբան՝ դատաստան չընելու գործոյն վրայ, առանց նախ ճանչնալու հեղինակն և այն մի-

ջոցներն որոնց մէջ ըրած է իր ուսմունք, կը համարինք թէ ըստ բաւականի ցուցինք՝ թէ Ստրզիգովսքի արուեստի նկատմամբ լիուլի իրաւունք ունի հմտաբար խօսելու, և ամենայն վստահութեան արժանի են իր կարծիք։ 1889 օգոստոս ամսոյն վերջերը իր ուղեւորութիւնք առաջնորդեցին նմա յէջմիածին։ Դժբաղդաբար սրբազան կաթուղիկոսն բացակայ էր նոյն ատեն ի վանաց. և մատենադարանապետն Ներսէս եպիսկոպոս չէր ուզեր թոյլ տալ նմա՝ ակնարկ մը ձգել մանրանկարուք զարդարուած գրչագրաց վրայ։ Պրոսէէ տրուած տեղեկութեանց համեմատ՝ չէր կարծեր երկոտասաներորդ դարէ առաջ գըրուած ձեռագրաց հանդիպիլ։ Քանի մեծ եղաւ զարմանքն երբ անոնց մէջ գտաւ հոյակապ աւետարան մը 28 հարիւրամետր լայնութիւն ու 34 հմ. երկայնութիւն ունեցող մագաղաթի վրայ՝ միջին մեսրոպեան տառերով, կազմուած հին քրիստոնէական փղոսկրեայ կազմով, և տասնուհինգ ի սկզբան և չորս ի վերջոյ մանրանկար պատկերներով, բաց ուրիշ խոշոր և անարուեստ մանրանկարուց ի լուսանցս։ Հետամտութեամբ պնդելով յաջողեցաւ Ստրզիգովսքի ձեռք ձգել զհրաման լուսագրելու այս մանրանկարքը, բայց բացարձակաբար թոյլ չէր տրուեր՝ որ նոյնը կարող ըլլայ ընել ձեռագրին վերջին երեսին համար։ Վրան ժամանակ անցնելէն ետքը՝ Կոստանդնուպոլսոյ դեսպանատան առաջին խորհրդականին Վոն-Աքիեսլի միջնորդութեամբ և աղերսանօք առ կաթուղիկոսն՝ ղրկուեցաւ բնագրին այս մասին օրինակ մը, որ գրուած է յ՚էջ 18 տպագրին, և որ ընդօրինակողին կողմանէ գրուած յիշատակարանն է՝ տեղեկութիւններով գրչագրին վրայ, և թուականի գրութեանն՝ զոր կրնանք համարիլ, թէպէտ մեծ զգուշութեամբ, Քրիստոսի 989 թուականին գրուած։ Ընդօրինակողն է՝ Յովհաննէս անունով ոմն, վասն Ստեփանոս քահանայի, որ եղբօրորդի և աշակերտ է ուրիշ Ստեփանոս քահանայի մը՝ հիմնադրի Նորավանից, որոյ հիմնարկութիւնն՝ ըստ Ստեփա-

նոսի Սիւնեցւոյ (Պատմ. տանն Սիսական, տպ. Էմին, Մոսկուա 1861) Քրիստոսի 936 թուականին կ՚իյնայ։ Այս վանք շինուած է ի գաւառին Վայոց ձոր, և աւետարանը սահմանուած էր եկեղեցւոյն գործածութեան համար։ Զի գիտցուիր թէ ինչպէս յԷջմիածին փոխադրուեր է՝ նզովիւքն թէ ով որ համարձակի սուրբ աւետարանն նոյն տեղէն վերցընել, սատանայի նման մերժուի ի փառաց որդւոյն Աստուծոյ, անիծեալ հոգւով և մարմնով և դատապարտեալ յՈրդւոյն Աստուծոյ ընդ սեղանադերծ անօրէնս։ Այս ձեռագրին ծանօթ էր արդէն կոմսն Սերգէյ Ուվարով*։

⁂

Մեծ խնամքով կը ստորագրէ Սորգիգովսքի Էջմիածնի աւետարանը (17–75), և կ՚ապացուցանէ թէ փղոսկրեայ կազմն վեցերորդ դարուն առաջին կիսուն փորագրութիւնն է, և Իտալիոյ Հաւեննա քաղաքէն եկած, որ այս տեսակ գործուածոց մէջ հռչակաւոր էր ի ժամանակին, մինչդեռ ի սկիզբն գրոցն և ի վերջն դրուած մանրանկարք՝ ասորականք են, և փորագրութեանց հաւասար հնութիւն ունին։

Սորգիգովսքիի երկասիրութեան առաջին էջք (1–17) Էջմիածնի վանքին և եկեղեցւոյն նուիրուած են, և կ՚ամփոփեն զնմանահանութիւնս յատակագծից վանացն՝ զորս արդէն հրատարակած է Պրոսէ իր ի Հայաստան և ի Վիրս ըրած հնախօսական ճանապարհորդութեան տեղեկագրին մէջ ի 1847 և ի 1848. և որոնք դարձեալ մէջ բերուած են ի Դ. Ի. Գրիմէ յիւրում գրուածին Ցէշ–

* Տես ի Յիշատակագիրս Ե. Ժողովոյ Հնախօսից ի Թիֆլիզ, 1872, և թարգմանութիւնն ի գաղղիական՝ ի Մուրիէր. Թիֆլիզ, 1883. Նոյնպէս և զթարգմանութիւն ի ռուս ի Սոասովէ, որ հայերէն հրատարակեցաւ յԱրձագանք օրագրի ի 1886 ի թիւս 26–29։

տակարանք ճարտարապետութեան ի Հայաստան եւ ի Վիր (Ս. Պետերբուրգ, 1859), ինչպէս և յերկասիրութեան Ալիշան վարդապետի։ Հեղինակն այնպէս կը կարծէ (յ'էջ 14) որ Հայք յառաջ քան զքրիստոնէութիւն իրենց յատուկ արուեստ ունեցած չեն, և թէ առաւել քան զասսանեան համմէական արուեստին ազդեցութիւնն ընդունած են։ Քրիստոնէութիւնն ընդունելնէն ետքը սկսաւ երեւիլ ի նոսա յատուկ ոճ կամ եղանակ մը՝ որոյ առաջին երեւումը կը դնէ Աքնաս (Պատմութիւն der bildenden Künste, Գ. յէջ 520) ի սկզնաւորութեան եօթներորդ դարու, բայց հարկ է թերեւս իջնել մինչեւ ի դարն իններորդ։ Ստրզիգովսքի կը յանձնարարէ տակաւին հետամուտ ըլլալ ամենէն վաղեմի կարծուած եկեղեցեաց, և անդրադարձութիւն ընել կու տայ Գէորգեան ճեմարանին գաւթին մէջ դրուած չորս բիւզանդեան սիւնագլխոց նկատմամբ, որոց խօսքը չըներ Ալիշան վարդապետ, և որոց վրայ կը տեսնուին մենագրութիւնք Ներսիսի Գ Տինող կաթուղիկոսի (648 ց669), և սահմանուած են եկեղեցւոյ մը գմբէթը վեր վերցընելու համար։

Իր երկասիրութեան 75–97 էջից մէջ՝ Ստրզիգովսքի կը խօսի հայկական դրուագագործութեան (plastique) և մանրանկարուց վրայ յառաջ և յետոյ քան զերեքտասան դար. ինչպէս նաեւ զարդագործութեան (ornementation). Իր քննութիւններէն կը հետեւի՝ որ հին ատեններ յԱսորւոց կ'ըլլային ներածութիւնք մանրանկարուց, բայց արդէն ի հինգերորդ դարու բիւզանդական ազդեցութիւն զգալի կ'ըլլար, և Ասորեստանի տիրապետութենէն ետքը, ամենակարող յեօթներորդ դարու։ Սակայն կամաց կամաց բիւզանդեան ձեւք կը կարգաւորուին, և ի չորեքտասաներորդ դարու հայկական մասնաւոր ոճը կը ձեւանայ, որ ցայսօր կը պահուի։ Կոմսն Ուվարով Էջմիածնի աւետարանին ասորական մանրանկարներն՝ հայկական արուեստի արտադրութիւնք համարեր էր։ Զկներու, թռչնոց, կենդանեաց կերպարանքով ձեւացած այբուբենի

տառերուն նկատմամբ՝ Սորգիզովքի անդրադարձընել կուտայ՝ թէ նոյնպիսի ճաշակ կ'երեւնայ նաեւ մերովինկեան արուեստին մէջ։ Բաւական է աչքէ անցընել Պերլինի համալսարանի մատենադարանին հայ գրչագրաց ցուցակը, զոր յօրինեց Ն. Քարամեան (Die Handschriften-verzeichnisse der K. K. Bipliotek zu Berlin, 18ter Band: Verzeichniss der armenischen Handschsiften, Berlin 1888), իմանալու համար թէ որպիսի՛ արագութեամբ մանրանկարի արուեստ յառաջադիմեր է Հայոց մէջ, եւ որ արդիւնք է անշուշտ Կիլիկիոյ թագաւորութեան կենսական ուժոյն եւ Լեւոն Գ. թագաւորին նախաձեռնութեան, մինչդեռ միւս կողմանէ ճարտարապետութիւն իրեն ամենաբարգաւաճ վիճակին հասած է Բագրատունեաց ժամանակ, ինչպէս քաջայայտ կը տեսնուի Պրօսէի եւ այլոց հրատարակած Անւոյ աւերակաց տեսարաններէն։

***

Բայց հարկ է նկատել տանք, որ եթէ կարծուիլ ուզուի որ Էջմիածնի աւետարան գրեալ յ'989՝ ազգային ստեղծականութիւն կամ նկարչութիւն կը ներկայացընէ, Սորգիզովքի հետազօտութիւնք բոլորովին ժխտականն կ'ապացուցանեն։ Քանդակքն, ինչպէս քիչ յառաջ ըսինք, յիտալիոյ եկած են եւ մանրանկարք յԱսորեստանէ, իսկ ընդօրինակողին կողմանէ աւելցուած քանի մը աննշան ճաշակք նկարուց՝ ուրիշ բան չեն բայց եթէ անվարժ եւ հետեւակ բաներ։ Ազգային արուեստի տեսակէտով բոլորովին ժխտական այս արդիւնք՝ չեն դադրիր մեզ համար մեծ կարեւորութիւն մը ունենալէն, որովհետեւ անով կրնանք դատել բիւզանդական արուեստին ընդարձակութիւնն եւ ճշդել զթուականս բարգաւաճանաց ազգային արուեստի Հայոց մէջ։ Սակայն յամենայն դէպս պէտք է ընդունիլ նոր արտադրիչ մը (facteur) ի պատ-

մութեան Հայոց՝ նկատմամբ իր արուեստական մշակութեան։ Արդէն Տիւպուա Մոնփէրոյի ու Շարլ Դէքսիէի նման ճանապարհորդք, ինչպէս նաեւ հնախօսք ալ ընտիր նիւթեր մատուցած են մեզ, որովք մարթ է մեզ այս նոր ուսման՝ չահեկանութեամբ մօտենալ։ Շատ անգամ յիշատակեցինք Պրասէի գրուածներն, յիշենք նաեւ Դաւթի Խւանովիչ Գրիմ, որ մանրամասն կ՚ընծայէ մեզ ամէն հին եկեղեցեաց յատակագիծքն՝ որ ճարտարապետական մասամբ նշանաւորք են. ինչպէս Սանահին, Հաղբատ, Օշգունլար, Անւոյ մայր եկեղեցին, Սրբուհի Հռիփսիմէ ի Վաղարշապատ և Էջմիածին. ուրիշ գրուածոց մէջ ալ, ինչպէս Փրանց Վոն Ռեբէրի Մէջին դարու արուեստից պատմութեան մէջ զանց չըլլուիր նաեւ հայկական արուեստին վրայ տեղեկութիւն, ինչպէս Անւոյ մայր եկեղեցւոյն պատկերը մէջ բերելով դիտել կու տայ՝ թէ այդ շինութիւն ապացոյց մ՚է հայ ժողովրդեան մեծ հանճարոյն առ ճարտարապետութիւն։ Յիշեցինք յառաջ Պօղ Նիկարդի մէկ յիշատակագիրը, յորում հեղինակը ետեւէ կ՚ըլլայ յուզել փնտռել Հայաստանի արուեստական պայմանները շատ աւելի հին ժամանակաց մէջ։ Պր. Յ. Մորկան՝ իր հոյակապ տեղեկագրին մէջ առ Նախարարն Հասարակաց կրթութեան ի Գաղղիա՝ իր ուսումնական հետազօտութեանց ի Կովկաս, (Les premiers âges des métaux dans l'Arménie russe, Paris, Leroux, ի հատորն առաջին), շատ աւելի հին ժամանակներն կ՚ելլէ. « Աւելի նախնական ժամանակաց մէջ, կ՚ըսէ Ճէյմս Տարմէստէտէր իր տեղեկագրին մէջ առ Ասիական ընկերութիւն (1890 յունիս 26), Հայաստան ասորական ազդեցութեան տակ էր։ Այս բան կը գիտցուէր արդէն Ասորի արձանագրութիւններէն և հին Հայոց գրերու ձեւէն. Տը-Մորկան՝ ուրիշ բոլորովին նոր ապացոյց մ՚ալ կը գտնէ՝ ռուսական Հայաստանի մէջ գտնուած նախապատմական գերեզմանաց մէջ. վասն զի գտեր է հոն պղնձէ ապարանջաններ հաւասարաչափ ծանրութեամբ որ

ատորական արեւու կամ լուսնի շրջանին բաղմապատկութիւնքը կը ցուցընեն․ ուստի և կը հետեւցընէ՝ թէ անդրկովկասեան բնակիչք յարատեւակ վերաբերութեան մէջ էին ընդ Ասորեստանեայս, և թէ լիւղական դրամոց եւբեւմանէն շատ յառաջ փաճառականական գործադրութիւնք կամ իրաւախոհութիւնք կ՚ըլլային՝ հաստատուն ու միակերպ ծանրութիւն ունեցող օղակներով, և ոչ թէ ակւոյ կամ արծաթի ձուլիւք։ Տը–Մորկանի այս հատուածը գրուած է ի Հնախօսական հանդէսի (Revue archéologique, շար Գ․, հատոր ԺԴ 1889 յէջ․ 177–188) և խորագիրն է Ի վերայ գործածութեան կշռական դրութեան ի Հայաստան Ու-ւէյ՝ Նախապատմական ժամանակաց մէջ։ Իր տուած տեղեկագիրը շատ ընդարձակ է, և մանր կը քննէ հայ ժողովրդեան ծագումը և հին պատմութիւնը․ և արուեստէն սկսելով՝ Հայաստանի քաղաքականութեան ամէն դարու կամ պարագայի վրայ կը խօսի։

*
* *

Նկատմամբ մանրանկարուց, որոց հետաքննական ուսմամբ կարելի է մեզ դատաստան ընել երկրի մը՝ կամ և ուրիշ նիւթերէ չինուած դրուագագործական արուեստին վրայ, հմուտ պաւիերացի մը՝ իր երկրին Գիտութեանց ճեմարանին յիշատակագիր մը ներկայացոյց՝ Միւնխենի արքունական մատենադարանին երեք հայերէն ձեռագրաց մէջ գտնուած քանի մը մանրանկարներու վրայ (Sitzungsberichte der bayerischen Akademie der Wissenschaften, Jahrgang 1866 II, յէջ 555–561)։ Այս յիշատակագրին հեղինակն էր Յովակիմ քահանայ Սիկարտ (1823–1867) Միւնխենի կանոնիկոսաց ժողովոյն անդամ, որ Պաւիերայի դրուագագործական պատմութիւնը գրած է հմուտ և ընտիր ոճով (2 հատոր, 1862)։ Երեք հայկական ձեռագիրքը որոց վրայ կը խօսի, և որ մեծապէս հետաքննական մանրանկարք ունին, են․ Ա․ Ժամագիրք մը՝

Գաթրըմէրի մատենադարանէն ստացուած, Քրիստոսի 1222 թուականին գրչութիւն. մանրանկարուց մէջ կը տեսնուին երկու վարդապետաց դէմքեր, կրելով զանուանս Ներսիսի կաթուղիկոսի և Գրիգորի Լուսաւորչի։ Բ. Աւետարան, հանդերձ աղօթից յաւելուածներով. գըրչութեամբ Յովհաննու եպիսկոպոսի՝ եղբօր Կիլիկիոյ Լեւոն Գ թագաւորի ի 1278։ Հարկ չէ ըսել թէ ճոխ է զարդերով, և աւետարանիչքը ներկայացնող պատկերներն ամենէն աւելի ընտիրքն են։ Գ. 1427 թուին գրուած ձեռագիր մը, յորում պատարագամատոյց, Հռովմայ Ալբերտ Վիգմէրստադի հռչակաւոր գրատունէն առնուած և Պաւիերայի թագաւորին ընծայուած. և մանրանկարքն են, Քրիստոսի վերջին ընթրիք և պատարագի գլխաւոր արարողութիւնք։ Այս երեք ձեռագրաց զարդագրութեան ոճ՝ խառն է բիւզանդական ու արաբացի արուեստի տարերաց հետ. ուստի Միկարտ այս հետեւութիւն կը հանէ՝ թէ Հայք նկարչութեան արուեստի մէջ գրեթէ յամենայի հետեւող եղած են արաբական արուեստի՝ յորմէ (իրենց երկրին բնական դիրքովը) շրջապատուած էին. բայց որովհետեւ մարդկային կերպարանք նկարելը արգիլուած էր Արաբաց, ուստի ասոր մէջ նմանեցան իրենց դրացի բիւզանդեան արուեստին։ Տեղ տեղ կ'երեւնան նաեւ արեւմտականք, որոնք անշուշտ խաչակրաց ազդեցութեան հետեւանք են։ Հեղինակը կը համարի՝ թէ հայ արուեստի բարգաւաճանքը երեքտասան դարուն երկրորդ կիսուն մէջ եղած ըլլայ, և քաղաքական ազատութեան կորստեամբ ինկած, և որովհետեւ քաղաքական ազատութիւն երբեք յերկարատեւ չեղաւ, ուստի և արուեստն միշտ օտար ազդեցութեան տակ, չկրցաւ բաւական զօրաւոր ըլլալ, և անկէ ազատ մնալով բո՛ւն խկատիպ յիշատակարաններ արտադրել։

Տարակոյս չիկայ՝ թէ Միկարտէն ի վեր շատ յառաջադիմութիւն եղած է, բայց մենք լաւ սեպեցինք յիշատակել իր գրուած որ քիչ ծանօթ է. Մ. Կ. Պայետ՝

ուսուցիչ ի Լիոն, իր Ձեռնարկ Բիւզանդեան Արուեստի (Manuel de l'art byzantin) Փարիզ, 1883, գրուածին մէջ, յէջն 284, հետեւեալ դիտողութիւնն կ'ընէ. «Հայկական եկեղեցեաց ձեւ բիւզանդական է, բայց զանոնք կառուցող ճարտարապետք, զատուած ի կայսերութենէ, հարկ չեն սեպած իրենց մէջ սովորական եղող ձեւերուն ճիշդ հետեւիլ: Այդ անկախութիւն կը տեսնուի մանաւանդ զարդագործութեան մէջ, և երկրաչափական եղանակք՝ զորս յաճախ կը կրկնեն՝ աւելի պարսիկ և արաբական ոճերը կը յիշեցընեն»: Ռեպէր ալ (Kunstgeschichte des mittelalters, Լայպցիկ 1886) կ'ըսէ. «Բիւզանդեան արուեստ կը բաղկանայ յարեւմտեց և յարեւելից եկած տարերքէ, որք Վոսփորի ափանց վրայ իրարու հետ խառնուած են, ուր իրենց գլխաւոր կնիք ընդունելով, նորէն կը սփռին յայլեւայլ կողմանս, և մինչեւ ի հեռաւոր սահմանս կայսերութեան: Իսկ Հայաստան՝ կրօնական բաժանմամբ մը անկէ զատուելով՝ արուեստական շատ տարերք կ'ընդունի, մինչ Վրաստան՝ հաւատարիմ Յունաց յունական եկեղեցւոյն, կը պահէ զոճ բիւզանդական: Լսենք ի վերջոյ ինչ որ Ստրզիգովսքի կ'ըսէ իր Պատկերագրութեան Մկրտութեան Քրիստոսի գրքին մէջ (յէջ 9 և 15). «Հռովմայեցի ժողովրդեան վատթարանալովը հին արուեստն ալ կ'իյնայ, և անոր աւերակաց վրայ նոր ոճ մը կը բարձրանայ, քրիստոնեայ արուեստ, որոյ առաջին սկզբնաւորութիւն ի հալածանաց խեղդուեր, և արեւելեան ազդեցութեամբ տեղափոխուեր է ի Բիւզանդիոն. մինչ յարեւմուտս ատեն անցնելէն ետքը կը տիրապետէ գերմանական արուեստ, անանկ որ այս երկու արուեստք, գերմանականն և բիւզանդեան, իրենց մէջ կը բաժնեն հին հռովմէական կայսերութիւնը, Հըռաւեննա քաղաք կ'ըլլայ այն ատեն գլխաւոր յառաջապահ բիւզանդեան արուեստի յարեւմուտս: Այս արուեստ իր կատարեալ և բնորոշ ձեւը կ'առնու Յուստինիանոսի Թագաւորութեան ժամանակ՝ ոչ միայն այն ա-

տեննուան արուեստական շարժման շնորհիւ, այլ նաեւ կայսեր անձնական գործունէութեամբ: Կոստանդնուպոլսոյ մէջ մեծամեծ եկեղեցեաց կառուցումն՝ կ'որոշէ ճարտարապետութեան կնիքն և շինուածոց զարդարանք կը ճոխանան մուսիոն նկարուք՝ որ կը փայլեցընեն արեւելեան նկարչութեան գեղն ու պայծառութիւն: Անտարակոյս այս յառաջդիմութիւն մեծապէս օգտակար կրնար ըլլալ և արգասաբեր՝ եթէ այլ և այլ եկեղեցական և քաղաքային արգելքներով խափանուած չըլլար, զորս հոս մէջ բերելն աւելորդ է »:

***

Հայկական արուեստի նկատմամբ կը մնայ մեզ ուրիշ հարկաւոր կէտ մ'ալ նշանակել՝ թէ արդեօք բաւական ապացոյց, կամ մանաւանդ բաւական հաստատուն պատճառաբանութիւնք կա՞ն հիմակուընէ վրան դատաստան մը ընելու: Արդեօք լաւագոյն չէ՞ դեռ եւս սպասելը՝ մինչեւ որ ճոխագոյն նիւթեր հաւաքուին: Օրինակ իմն, դըժուարին է հաւատալ՝ թէ ճարտարապետութիւն կարող եղած ըլլայ բարգաւաճիլ առանց ուրիշ արուեստներու. բայց այս երկրորդական կամ յարակից արուեստից ո՛րչափ յիշատակարանք կորած են ի պատերազմաց և ի քաղաքական յուզմանց, և շատերն եւս անխորհուրդ անհոգութեան զոհ եղած: Ասանկ կը պատմուի՝ թէ մենաստանի մը մէջ գտնուող կրօնաւորք անհոգ ու անխնամ կերպով կը պահպանէին իրենց մատենադարանը, և երբ կաթուղիկոսի այցելութեան լուրն առին, չփոթած փութացին բոլոր գրքերն ջուրը ձգել որպէս զի յանդիմանութեան արժանի չըլլան: Քանի՛ գանձք անհետացած են այն ողբալի սովորութեամբ՝ չհասկացած կամ անընթեռնլի համարուած գրքերն հողի տակ թաղելու կամ հըրաշակաւոր անձանց գերեզմանին մէջ դետեղելու: Թող որ շատ անգամ հետաքննինք չեն յաջողիր՝ որ եղածը ցոյց

տրուի իրենց, կամ ցուցուածէն օգուտ քաղելու հրամանը կը զլացուի։ Այս ամէն բաժններուս հետեւանքն այն կ'ըլլայ, որ արուեստականաց կամ բանասիրական նիւթոց մէջ շատ անգամ կը փութացուին վարդապետութիւնք կամ կարծիք ընդհանրացընել։ Ստրզիգովսքիի երկասիրութիւն մինչեւ հոն կը հասնի, որ կարող ըլլայ առաջնորդուելու համար՝ ցոյց տալ լաւ ճանապարհը եւ մեզ կ'երեւնայ՝ թէ մեծապէս օգտակար է այս՝ քան թէ հըմուտ ուսուցչապետը ընծայէր մեզ ընդհանուր գրուածք մը՝ զոր բնականաբար շատ աւելի դիւրին էր կազմել, եւ որ ճարտարութեան գործ մը կրնար ըլլալ, բայց ոչ արդիւնք լուրջ ուսումնասիրութեան։

## ՖԷՏՏԷՐ

Ժամանակակից հայագէտ մ'է Ֆէտտէր, աշակերտ Թիւպինկէնի համալսարանի, ուսուցիչ Հիմեպլի։ Շատ տարիներ յառաջ իր հայկական ուսմանց երախայրիք մի ընծայեց նա՝ ուսումնական աշխարհի, Ներսիսի Լամբրոնացւոյ գրութեան մը թարգմանութեամբ, որուն հանդիպեր է Միւնխէնի արքունի մատենադարանին երեսուն թիւ ունեցող ձեռագրոյն մէջ, որ խաչակրաց պատմութեան նկատմամբ հետաքրքրական էր, եւ 1881ին հրատարակեց զայն ի Պատմական Տարեգիրք (Historisches Jahrbuch)։

Ներշլի Հայրաբանութեան (Patrologia) մէջ ալ զետեղեց՝ Հայ եկեղեցւոյ հարց եւ անոնց գրուածոց վրայ հմուտ ծանօթութեամբ տեղեկութիւններ։ Ասանկ սրբոյն Մեսրովպայ վրայ, զոր Հայոց առաքեալ կը կոչէր (Der Heilige Mesrop, Apostel Armeniens, 215–227), քաղելով՝ ինչպէս կ'ակնարկէ ի խորագրին, ի մատենից Կորեան, Խորենացւոյ եւ Փարպեցւոյ։ Իր արդէն ծանօթ վարքը պատ-

մելէն ետքը, մէջ կը բերէ իրեն ընծայուած երկասիրութիւնքը, զԹարգմանութիւն սուրբ Գրոց, զԵկեղեցական պատմութիւն Եւսեբի կեսարացւոյ, զժամանակագրութեան կամ զպատարագամատուցի (Die Ueberlieferung der Armenischen Kirche nennt ihn insbesondere als Verfasser de Busslieder für die heilige Fanstenzeit)։ Մեսրովպայ կուտայ նաեւ զԹարգմանութիւն ճառից սրբոյն Գրիգորի Լուսաւորչի, Յաճախապատում անուամբ ծանօթ գրքին՝ զոր կը համարի ի յունէ փոխաբերեալ ի հայ. և Նայման գերման հայագիտին՝ Հայկական մատենագրութեան պատմութեան մէջ յիշատակած կեղակարծ և անստոյգ մէկ վկայութիւնը յառաջ կը բերէ, իբր թէ Յաճախապատում գրոց յոյն գրով բնագիրը դեռ եւս կը պահուի ի Փարիզ Գաղղիոյ՝ ազգային մատենադարանին ձեռագրաց մէջ։

Կը խօսի ապա Ֆէտտէր սրբոյն Մեսրովպայ վարդապետականին վրայ, ըստ այլեւայլ մասանց հաւատոյ, առանձինն եօթն գլուխներով և ստորաբաժանումներով։ Կը յիշատակէ զտպագրութիւնս Յաճախապատում գրոց ի Կոստանդնուպոլիս ի 1737, և դար մը ետքը ի Վենետիկ, 1838։ Թարգմանութիւնն ի գերման լեզու, հրատարակեալ ի Թէկէնապուրկ ի 1872։

Կը խօսի Կորեան (228–31) վրայ, և իր գրոց տպագրութեանց ի Վենետիկ, ի շարս մատենագրութեանց նախնեաց ի 1833, և ապա ի 1854 ի կարգի Սոփերաց, աւելի համառօտ ոճով։

Կը յիշէ զեպիսկոպոսն բագրեւանդայ զԵզնիկ, քաղելով ի գրոց Կորեան և Խորենացւոյ՝ իր վարուց նկատմամբ եղած յիշատակութիւնքը։ Նոյնպէս մէջ կը բերէ իր երկասիրութիւնքը, արդէն մեզի յայտնի աղբերաց հետեւողութեամբ։ Ասոնց մէջ նշանաւորք և հարազատք են՝ Եզնիկայ մասնակցութիւնը ի Թարգմանութեան սուրբ Գրոց, մեծ օժանդակ և ձեռնտու երեւնալով իր վարդապետաց, և ընդդէմ աղանդոց ընտիր գրուածքն,

լեզուովն, ոճով և իմաստասիրութեամբ ամէն մեծարանաց արժանաւոր։ Բնագրին տպագրութեանց հետ կը յիշէ նաև զամբողջ թարգմանութիւն Լըվայեանի, և զմասնականն ի նոյն լեզու առ Լանգլուայի, Տիւլորէի, և այլն. նոյնպէս մասնական թարգմանութիւնը ի գերման լեզու՝ Նայմանի և Վինտիշմանի երկասիրութեամբ։ Նոյնպէս քննադատական հատուածներ Վիգերինի, Տիւլորէի, Եղեանցի, և այլն։

Կ'անցնի Խորենացւոյ, զոր Geschichschreiber Armeniens կը կոչէ, համառօտելով կենսագրութիւնը։ Կը խօսի գրուածոցը վրայ, իրեն տալով և զթարգմանութիւն Քրոնիկոնին Եւսեբեայ։ Այս նիւթին վրայ աւելի ընդարձակ ուսումնասիրութիւն մը հրատարակեց ի 1892 Moses von Choren (Մովսէս Խորենացի) վերագրով։

Անկէ քիչ յառաջ տպագրեր էր ի պատիւ յոբելինի Թիւպինկէնի սանսկրիտ լեզուի ուսուցիչ Ռութի Մար Իբաս Մծբնացւոյ գիրքը (Das Buch des Mar Aba von Nisibis) խորագիրը կրող ուսումնասիրութիւնը։

Մօտերս ալ ի լոյս ընծայեց հայկական հին գրականութեան նկատմամբ մեծապէս հետաքննական երկ մը Հին Հայոց ազգային երգերը (Die Nationalen Gesange der alten Armenier) կոչուած։

Մեր ուսումնական թերթք, և մանաւանդ Ամսօրեայ Հանդէս, յաջորդաբար թարգմանութեամբ կը ծանօթացնէ գերմանական լեզուի անտեղեակ ազգայնոց, իր երկասիրութիւնները։

Մեր ժամանակաց հայագէտ մ'է նաև Փրանկիսկոս (Կարոլոս Յովսէփ) Սաասէ, (Ծն. 1855) Հռենացի։ Ծնընդեան քաղաքին դպրոցաց մէջ նախնական ուսումնական ընթացքն կատարելով, 1874ին Պաւարիոյ Միւնիխէն քաղաքը՝ իմաստասիրական վարժից պարապեցաւ արքունի ակադեմիոյ մէջ. ուր երեք վեցամսեայ ժամանակ գովութեամբ յաճախելէն ետքը (1875–1876), Պոննի համալսարանին սեմական լեզուաց մասնագիտութեամբ զբա-

ղելով, սորվեցաւ նաեւ զհայ լեզուն։ Այդ դասընթացքին իրեն առաջնորդ և ուսուցիչ եղան՝ անուանի արեւելագէտքն Փրանկ. և Փրեդրիկ Տելիթիչ, Ֆլայշէր, Կիլտէմայստէր, Քրեհէ, Լոթ, Փրիմ։

Հայկական լեզուի նկատմամբ՝ իր մէկ գրուածքը ձեռուընիս անցեր է, լատին լեզուով, Ափրաատայ պարսիկ իմաստնոյ, որ մեր մատենագրութեան մէջ Յակոբայ Զգօն Հայրապետի կ'ընծայուի, ճառիցը վրայ ուսումնասիրութիւն մը, յորում յայտնի կ'երեւնայ իր հմտութիւն ոչ միայն հայ, այլ նաեւ սաորի լեզուաց, տպագրեալ ի 1878։

Գրուածքին խորագիրն է. Prologomena in Aphraatis Sapientis Persœ Sermones homileticos. Dissertatio inauguralis quam ad summos in Philosaphia honores ab amplissimo ordine Philosophorum Lipsiensi rite impetrandos scripsit C. J. Franciscus Sasse Rheineutis.

## ԼՈՐՏ ՊԱՅՐՆ

Անգղիական ազգի և մատենագրութեան մէջ մեծահամբաւ անձ և քերթող մը՝ անուանին Լորտ Պայրըն, առաջին կ'ըլլայ նոյն ազգին մէջ որ Վիաթոնեան եղբարցմէ ետքը կը պարապի հայկական լեզուի ուսումնասիրութեամբ։

1816ին ի Վենետիկ է նա։ Զմայլելով անոր արուեստական հրաշալեացը վրայ ու սիրահար մեծ հասարակապետութեան անցելոյն պատմութեան, հոն կը շարադրէ իր Հարոլտի պանդխտութիւնները, Երկու Ֆոսքարի երկասիրութիւնն և ուրիշ գրուածներ։ Այցելութիւն մը կ'ընէ նաեւ Ս. Ղազարու հայկական մենաստանին, ուր տեսնելով իրեն անծանօթ արեւելեան ազգի մը փոքրիկ գաղթա-

*կանութիւն, կը մտերմանայ անոնց, կը սիրէ գործերնին և նպատակը. կը սիրէ միանգամայն հին լեզունին և մատենագրութիւն, և կը փափաքի անոնց ուսմամբ պարապիլ։ Իրեն ուսուցիչ կ'ընտրէ զԱւգերեան Հ. Յարութիւն վարդապետ։*

*Հետաքրքրական պիտի ըլլան հետեւեալ քաղուածները Թոմաս Մուրի հրատարակած* Լորտ Պայրընի յիշատակարաններէն, *որոց գաղղիարէն թարգմանութիւնքն ալ տպագրուած են ի Փարիզ ի* 1831–2։

Վէնետիկ, 4 Դեկտ. 1816 (*առ Մ. Մըրրէյ*).

*« Սկսայ և կը շարունակեմ ուսումն հայ լեզուի. զոր կրցածիս չափ կը սորվիմ հայ վանքի մը մէջ, ուր ամէն օր կ'երթամ մեծապէս գիտուն կրօնաւորէ մը դաս առնըլու։ Շատ հետաքննական տեղեկութեանց խելամուտ եղայ, և որք անօգուտ չեն այս արեւելեան ժողովրդեան մատենագրութեան և բարուց նկատմամբ։ Շէնք մը կայ հոս, եկեղեցեաւ ու մենաստանաւ, ուր իննըսուն կրօնաւորք կը բնակին, և յորոց ոմանք գիտութեամբ ու տաղանդով լի անձինք են։ Տպարան մ'ալ ունին, ու մեծ փոյթ ու ջանք ազգերնին լուսաւորելու։ Ինձ անանկ կ'երեւայ թէ լեզունին՝ որ կրկին է,* Գրաբար *և* Աշխարհիկ, *շատ դժուարութիւնք ունի, բայց անյաղթելիք չեն, գէթ այնպէս կը յուսամ, և պիտի շարունակեմ։ Պէտք մը կը զգայի միտքս դժուարին ուսմամբ մը զբաղեցընելու, այս ինձ դժուարագոյնն երեւցաւ, զոր կրնայի գտնել, ու խարտոցի տեղ պիտի ծառայէ օձին կրծելուն »։*

## Վէնետիկ, 5 դեկտ. 1816 (առ Մ. Մըրրէյ).

*« Զբօսնըլու համար՝ ամէն օր Հայոց մենաստանը կ'երթամ հայ լեզուն ուսանելու։ Տեսայ որ միտքս սրուելու պէտք ունէր կարծր նիւթի մը վրայ, և ընտրեցի զայս՝ ամենէն աւելի դժուարինը զոր կարացի գտնել իբրև զուարթութիւն մը՝ չարչարանաց ենթարկելով մտադրութիւնս։ Սակայն ճոխ լեզու մ'է, և առատապէս կը վարձատրէ ով որ զայն սորվելու աշխատանքէն չհրաժարի։ Ես փորձ մը կ'ընեմ և պիտի շարունակեմ, բայց հիմկուհիմա բան մը չեմ կրնար գրուցել ոչ դիտաւորութեանս և ոչ մանաւանդ յաջողութեանս նկատմամբ։ Շատ հետաքրքրական ձեռագիրք կան ի մենաստանիս, ինչպէս նաև գրքեր. նմանապէս կան յոյն, պարսիկ և ասորի հեղինակաց գրուածոց հին թարգմանութիւնք՝ որոց բնագիրք կորսուած են, առանց խօսքն ընելու միւսանից երկասիրութեանց։ Չորս տարի յառաջ Գաղղիացիք հայերէն լեզուի աթոռ* (chaire) *մը հաստատեցին. երկուշաբթի առաւօտ քսան աշակերտք ներկայացան, լցուած երիտասարդական հասակի վստահութեամբ և աննկուն եռանդեամբ։ Իրենց ազգին արժանաւոր հաստատամտութեամբ և ընդհանուր աշխարհակալութեան հոգւով մինչև հինգշաբթի շարունակեցին, յորում այբուբենին քըսանըվեցերորդ տառովը՝ քսանէն հնգետասանը յաղթուեցան։ Ստոյգ է որ ալփաբետաց Վաթէրլոյ մ'է. զայս ըսենք՝ զիրենք արդարացընելու համար։ Բայց Գաղղիացւոց բնաւորութեանը յատուկ է շուտով ձանձրանալը, և յամենայնի անանկ վարուիլ ինչպէս կ'ընեն իրենց թագաւորին հետ » ....։*

### Վէնետիկ, 24 Դեկտ. 1816 (առ Մ. Մուր).

« Առաւօտուն կոնտոլայով ծովը կը կտրեմ, ու կ'երթամ հայերէն խօսելու սրբոյն Ղազարու մենաստանին կրօնաւորաց հետ, ու անոնցմէ միոյն օգնելու ի սրբագրել զանգղիարէն լեզու՝ անգղ–հայ քերականութեան մը զոր տպագրելու հետ են »։

### Վէնետիկ, 27 Դեկտ. 1816 (առ Մ. Մըրրէյ).

« Առտուները իմ հայկականի ուսումս կը շարունակեմ, ու կը հսկեմ գործակից ըլլալով ի շարագրութիւն անգղիական մասի՝ անգղ. հայ քերականութեան մը՝ որ այժմ կը տպագրուի ի սուրբ Ղազար։ Մեծաւորը եպիսկոպոս մ'է ու ամենափառաւոր ծերունի մը.... Հայրն Յարութիւն ալ գիտուն ու բարեպաշտ անձ մ'է։ Երկու տարի կեցած է յԱնգղիա »։

### Վէնետիկ, 2 յունուար 1871 (առ Մ. Մըրրէյ).

« Կը յղեմ առ քեզ, ուրիշ ծրարով մը, քանի մի թերթ անգղիարէն–հայերէն քերականութենէ ի պէտս Հայոց, զոր քաջալերեցի և տպագրել տուի. ինձ համար հազար ֆրանքէ աւելի չեղաւ ծախքս։ Կը շարունակեմ ուսումս նոյն լեզուին, առանց արագ յառաջադիմութեան, բայց ամէն օր քիչ քիչ յառաջելով։ Հայրն Յարութիւն իմ քիչ մը օգնելովս իր իտալական թարգմանութեանն

յանգղիական, տեւէ է ձեռագրելու քերականութիւն մը առ ի դիւրել Անգղիացւոց զուսումն հայերէնի. և երբ ձեռագիրն աւարտի՝ պիտի տպագրուի։

Կը փափաքէինք գիտնալ թէ արդեօք կը գտնուի՞ն յԱնգղիա, յ'Օքսֆըրտ կամ ի Քէյմպրիճ և կամ ուրիշ տեղուանք տպագրական հայ նշանագիրք. կ'ենթադրեմ որ գիտես թէ շատ տարիներ յառաջ՝ երկու Վիստոն եղբարք հրատարակեցին յԱնգղիա Հայոց պատմութեան սկզբնագիր մը՝ լատին թարգմանութիւնն ալ իրենց կողմանէ աւելցընելով. միթէ կա՞ն դեռ եւս այդ տպագիր տառք և ո՞ւր կը գտնուին։ Կ'աղաչեմ տեղեկացիր այս նիւթոյն՝ քու իմաստուն ծանօթներէդ։

« Երբ այս քերականութիւն (այսինքն հիմա տպագրուելու վրայ եղածը) հրատարակի, արդեօք յանձնառու կ'ըլլա՞ս քառասուն յիսուն օրինակ ստանալ, որ հընգետասնի չափ ուսւոյ կ'ըլլայ քեզի, որպէս զի վաճառքի հանելով՝ ուսումնականաց հետաքննութիւնը փորձես։ Այո՛ կամ ոչ ըսէ ինձ, որպէս և հաճոյ երեւնայ քեզ։ Կրնամ զքեզ վստահացընել որ այլ և այլ գրքեր կան հոս, և մանաւանդ ամենահետաքննական գրչագիրք և գլխաւորաբար հիմա կորսուած յոյն սկզբնագրոց հին թարգմանութիւնք. իմաստուն և արգոյ միաբանութիւն մ'է, և իրենց լեզուին ուսման մեծ եռանդեամբ տեւէ եղած են՝ Պոնափարթի ժամանակէն քանի մի գաղղիացի գրագէտք »։

Հետեւեալ հատուածն գտնուած է Լորտ Պայրընի թղթոց մէջ, և կ'երեւնայ թէ մեր հիմայ յիշատակած հայ–անգղ. քերականութեան յառաջաբանի տեղ գրուելու համար գրուած է։

« Անգղիացի ընթերցողը անշուշտ պիտի զարմանայ՝ այսպիսի գրուածքի մը ի գլուխ տեսնելով զիս ընկերացած, և թերեւս ուզենայ զիս լեզուագէտ մը կարծել, մինչ այդպիսի համարման մը արժանանալէն շատ հեռու եմ։ Եւ որովհետեւ չեմ ուզեր կամօքս զինքս սխալի մէջ

ձգել, համառօտիւ՝ որչափ կարելի է ցուցընեմ թէ ինչ կերպով մասնակից եղայ գրքիս շարագրութեան, և ինչ պատճառներով համոզուեցայ առ այն։ Երբ 1816 ին հասայ ի Վենետիկ, տեսայ որ միտքիս վիճակը ուսման մը հետեւելու կարեւոր պէտք կը զգար, և այնպիսի ուսման մը որ երեւակայութեան քիչ տեղ ձգէ, ու դժուարութիւններ հանէ դիմացս։ Նոյն միջոցին՝ տպաւորութիւն մը ըրաւ վրաս, ինչպէս անշուշտ ուրիշ ամէն ճանապարհորդաց, որքան Ղազարու մենաստանին միաբանութիւնը, և ինծի երեւցաւ թէ միաբանական հիմնարկութեան մը ամէն օգտակարութիւններն ունենան, առանց թերութեանց հաղորդ ըլլալու։ Կարգաւորութիւն, մաքրութիւն, քաղցրութիւն բարուց, ճշմարիտ ջերմեռանդութիւն, հանճար և առաքինութիւն որ այս ուխտին միաբանելոց վրայ կը տեսնուին, շատ յարմարականք են աշխարհի մարդու մը սրտին մէջ տպաւորութիւն ընելու թէ ուրիշ և լաւագոյն աշխարհք մը կայ։ Ազնիւ ու հարըստահարեալ ազգի մը քահանայք են, որ հաղորդ եղած է տարագրութեան և գերութեան Հրէից և Յունաց։ Առանց միոյն պէս դաժան և միւսին նման գերի ըլլալու, այս ժողովուրդ գիզած է հարստութիւն առանց վաշխի, և ձեռք ձգեր այն ամէն պատիւ՝ որ գերութեան մը մէջ կրնան ստացուիլ, առանց խարդախութեան։ Բայց ինչ ալ ըլլայ իրենց վիճակը ապագային մէջ, իրենց երկիրը միշտ պիտի մնայ տիեզերաց վրայի ամենէն աւելի հետաքննականներէն մէկը, և լեզունին աւելի հրապուրիչ լինելու համար՝ թերեւս ուրիշ պէտք չունի բայց եթէ աւելի ծանօթանալու։ Եթէ սուրբ գրոց խօսքին տըրուած մեկնութիւնն ուղիղ է, Հայաստանի մէջ է դրախտը, որ այնչափ ծանրագին եղաւ Ադամայ սերնդեան երջանկութեան։ Ի Հայաստան նախ ցածեան ջուրք ջրհեղեղի և աղաւնին վհատեցաւ։ Բայց դրախտին անհետանալէն կրնանք թուել զսկզբնաւորութիւն աղետից աշխարհիս »։

Վենետիկ, 3 Մարտ 1817 (*առ* Մ. Մըրրէյ).

*« Հայ քերականութիւնն հրատարակուեցաւ. բայց իմ հայկական ուսումնասիրութիւնք առ այժմ ի կախ մնացած են ինչուան գլխոյ ցաւերս քիչ մը մեղմանան »։*

Վենետիկ, 25 Մարտ, 1817 (*առ* Մ. Մըրրէյ).

*« Հայ քերականութիւնն հրատարակուեցաւ. այսինքն մին յերկուց, միւսն դեռ եւս ձեռագիր է։ Հիւանդութիւնս ամիս մը ամբողջ տան մէջ արգիլեց զիս. ուստի և չկրցայ հայերենին ետեւէ ըլլալ »։*

Վենետիկ, 31 Մարտ 1817 (*առ* Մ. Մուր).

*« Չեմ գիտեր գրեցի առ քեզ թէ երկու թուղթ թարգմանեցի, որոնք մասն են թղթակցութեան մը սրբոյն Պօղոսի ընդ Կորնթացիս, և մեր թարգմանութեան մէջ չըկան, այլ ի հայկականին միայն. և շատ ուղղափառականք կը թուին ինձ։ Մաքուր և Աստուածաշնչի ոճով թարգմանեցի զանոնք յանգլիական »։*

Վենետիկ, 8 Յունիս 1817 (*առ* Մըրրէյ).

*« Թուղթս քեզ կը յանձնեն երկու հայ կրօնաւորք որ գնան յԱնգղիա, անտի ի Մադրաս նաւարկելու համար։ Բերեն առ քեզ օրինակս ինչ ի Քերականութենէն զորս յանձն առիր ստանալ՝ եթէ յիշողութիւնս զիս չի խա-*

*բեր։ Եթէ կրնաս իրենց օգտակար ըլլալ ծովային նաւարկութեանց կամ Հնդկային ընկերութեան մէջ ծանօթիցդ ձեռքով, կը յուսամ որ չես մերժեր ատ նկատմամբ զիս պարտկան ընելու. որովհետեւ իրենք, ինչպէս նաեւ բոլոր միաբանութիւննին, մեծ մտադրութիւն և բարեհաճութիւն ցուցին առ իս Վենետիկ հասնելէս ի վեր։ Մին կոչուի Հ. Սուքիաս Սոմալեան, և միւսն Հ. Սարգիս Թէոդորոսեան. կը խօսին իտալերէն, ու հաւանօրէն նաեւ գաղղիարէն և քիչ մը անգղիարէն։ Ջերմագին կը կրկնեմ յանձնարարութիւններս. թերեւս կարենաս դիւրել իրենց ճանապարհորդութիւնը, և տալ կամ ստանալ Հնդկաստանի համար յանձնարարական գրեր »։*

ՎԵՆԵՏԻԿ, 27 ՅՈՒՆՈՒԱՐ 1818 (*առ Մըրրէյ*).

*« Հայրս — այս ինքն հայ հայրս, — հայրն Յարութիւն՝ ի դիմաց մենաստանիս մեր ուրիշ հարց, կը ղրկէ ծրարեալքս՝ հանդերձ բարեւներով։ Եւսեբեայ բնագրին ի վաղուց կորսուած և վերջի ատեններս յայտնուած հատուածոց թարգմանիչք, պատշաճ սեպելով յայտագիր մը հրատարակել, յորոց վեց օրինակ թղթիս հետ կ'ընդունիս, կը խնդրուի իրենց ընկերագիրք գտնել երկու համալսարաններէն, յիմաստնոց և ի տգիտաց որ տգիտութիւննին կ'ուզեն մէկդի նետել։ Զայս կը խնդրէ վանքս, զոր կը խնդրեմ և ես, և զոր դու խնդրես ուրիշներէն »։*

*Իւր Հայ ու Անգղ. բառարանի յառաջաբանին մէջ հեղինակն Հ. Յարութիւն Աւգերեան հետեւեալ խօսքերով կը բացատրէ իւր երախտագիտութիւնն առ Լորտ Պայրըն՝ Մխիթարեանց վաստակոց ցուցած խնամոցն։ Յետ յիշատակելոյ զքաջալերիչ օգնականութիւն զոր կ'ըն-*

դունէր յայլեւայլ Անգղիացւոց, կը յաւելու. « ասոնց մէջ պարծանօք կը յիշենք զԼորտ Պայրըն, զհռչականուն ի քերթողս Անգղիոյ՝ իրենց քերթութեան ասենապայծառ դարուն: Հայերէն լեզուն մեր քով սորվելէն ետքը, ստիպեց զմեզ հրատարակել փոքր քերականութիւն մը անգղիարէն լեզուի ի հայ՝ Հայոցս համար, որ ձեռնտու եղաւ ի յօրինումն հայ քերականութեան անգղիական լեզուով իր ազգակցաց համար: Եդուարդ Լոմկ ասպետ, մեծ հանճարոյ տէր երիտասարդ մը՝ ատեն անցնելէն ետքը հրատարակել տուաւ զայն տպագրութեամբ: Վերջապէս ասպետն Յոհան Պրէնտ Վ. Ա. համալսարանին Քէյմպրիճի, տեսնելով որ այս երկու քերականութիւնք բաւական չեն ի լնուլ զպէտս ուսումնասիրաց, և իմանալով որ մենք հետամուտ ենք ի յօրինումն բառգրոց ի փոխադարձ գործածութիւն անգղիացւոց և հայոց, իր օգնութիւնը խոստացաւ մեր այս ձեռնարկին »:

Ի վախճանի, ի Յիշատակարանս Թոմաս Մուրի, հրատարակեալս ի Լորտ Ռըսըլէ (1853) այս ծանօթութիւնը կը գտնենք յիշատակագրին ի 10 հոկտ. 1819. « Սրբոյն Մարկոսի եկեղեցին գնացի՝ պատարագի մը ներկայ գտնուելու. բայց շատ ուշ էր: Անտի գնացի ի կղզին հայ կրօնաւորաց. վայելուչ տեղի մը, և դիրքն ալ աննման. ընտիր տպարան մը ունին, ուր հայերէն լեզուով գրքեր կը հրատարակեն »: Կը տեսնուի ուրեմն որ նաեւ ինքն Մուր յայց ելած էր սրբոյն Ղազարու կղզեկին:

## Ս. ՄԱԼԱՆ

Պայրընէն ետքը Անգղիացւոց մէջ հայկական լեզուի ուսմամբ զբաղողն եղած է Սողոմոն Կեսար Մալան երէցն, վարդապետ (Նորաղանդ) աստուածաբանութեան և որդի Կեսար Հենրիկ Աբրահամ երիցու, որ անուանի

*աստուածաբանի և քարոզչի անուն ունէր ի Գենուա իր կրօնակցաց մէջ։ Մալան որդի՝ որոյ վերայ է մեր խօսքը, ծնած է ի 22 ապրիլ, 1812, սորված է յ'Օքսֆըրտ, ի վարժոցն* Edmund stall, *որ և մրցանակի կամ դպրոցական օգնութեան արժանաւոր սեպուած սանսքրիտ ու հեբրայական լեզուաց մէջ յառաջադիմութեան համար։* 1838*ին գնաց ի Կալկաթա՝ վարդապետ դասական լեզուաց յեպիսկոպոսական դպրոցի* (Bishop's College) *տեղւոյն, ուր և մնաց ցամն* 1840*։ Տարի մը յառաջագոյն Պենկալայի ասիական ընկերութեան քարտուղար անուանուած էր և եկեղեցական զանազան աւագութեանց բարձրացած։*

*Զմիւռնիոյ մէջ գտնուած ատենին ետեւէ եղաւ հայ լեզուի ուսման, և ուզելով բուն խօսքերն երկրորդել « որովհետեւ շատ սիրեց և ցանկացաւ լեզուին վրայ՝ ա՛լ չուզեց ետ կենալ անոր ուսմանէն »։ Այլ և աղօթքներ և հոգեւոր գրքեր թարգմանեց ի հայէ յանգղիականն․ ինչպէս Եւդոկիացի Հ․ Մատթէոս վարդապետի* Մտածութիւնք ի չարչարանս Քրիստոսի (Meditations on our Lord's Passion, 1863) *և* Գիրք հանապազօրեայ պահոց (Thoughts for every day in Lent, 1867)*։ Իր գրուածոցը մէջ կարեւորագոյնն է՝* Կեանք և ժամանակ սրբոյն Գրիգորի Լուսաւորչի*, որ ինչպէս յայտնի է՝ հիմնադիր պաշտպան է Հայաստան եկեղեցւոյ* (Vie et époque de S. Grégoire l'Illuminateur)*, թարգմանեալ ի հայ լեզուէ և տպագրեալ ի* 1868*։ Եւ որովհետեւ այս տպագրութիւնս վաճառքի դրուած չէ, օրինակաց մեծագոյն մասը ի Կալկաթա ղրկուած ըլլալուն, անտարակոյս մանրամասն տեղեկութիւն մը տալ՝ հաճոյ պիտի ըլլայ մեր ընթերցողաց։* Ներածութեան *մէջ համառօտ տեղեկութիւն մը կուտայ Հայաստանեայց եկեղեցւոյ և հայ ժողովրդեան վրայ, ռուս լեզուով գրուած քանի մի պաշտօնական գրութիւններէ թարգմանելով․ ինչպէս* 1843 *տարւոյն ներքին մատակարարութեան նախագիծ օրինակը, յորմէ*

օրինակ մը ընդունեցաւ Մալան ի Պլաքմոր (Blackmor R. W.) երիցուէ, որ ինքն ալ ընդունած էր ի Ներսէսէ այն ժամանակին Հայոց կաթողիկոսէ, որուն այցելութեան եկաւ յէջմիածին զօրավարն Մուրաւիէւ, ինչպէս կը պատմէ այս ճանապարհորդ։ Ասկէ կրնանք հետեւցնել թէ համառօտութեանս մէջ տրուած տեղեկութիւնք ճիշդ են։ Երեք գլխի բաժնուած է այս ծանօթութիւն. և նախ Հայոց թագաւորութեան ու ժողովրդեան վրայ (3–22), երկրորդ Հայոց եկեղեցւոյն (23–50), և երրորդ Հայոց նուիրապետութեան վրայ (51–66)։ Ներածութենէն ետք գրուած է՝ նոյնպէս երեք մասի բաժնուած, պատմութիւն մուտից քրիստոնէութեան ի Հայս, և նախ Գործք և վկայաբանութիւն սուրբ առաքելոյն Թադէի, թարգմանուած ի հայկական տպագրութենէն Վենետկոյ 1853 (66–99). երկրորդ՝ Գործք և վկայաբանութիւն սուրբ առաքելոյն Բարթուղիմեայ, թարգմանուած նմանապէս ի հայ տպագրէն Վենետկոյ ի 1854 (99–104), և երրորդ վարք և ժամանակ սրբոյն Գրիգորի Լուսաւորչի, թարգմանեալ ի հայ բնագրէն Մատթէոս վարդապետի Եւդոկիացւոյ հրատարակելոյ ի Վենետիկ ի 1749 (105–188)։ « Գրուածիս առաջին մասը պատրաստելուս ատեն, կ'ըսէ Մալան, երկու բանի մէջ հարկ էր ինձ ընտրութիւն ընել. կա՛մ ետեւէ ըլլալ ընտրութեան նիւթերուս և գրել քննադատական պատմութիւն մը սրբոյն Գրիգորի, և կամ արդէն եղածը թարգմանել, հիմնուելով ընդունելի հեղինակութեանց վրայ, օրինակ իմն՝ Ագաթանգեղոսի կամ Սիմէոնի Մետափրաստեայ, և որոյ հեղինակն հայ մ'է, վառուած հայու մը համակրութեամբ առ « արեգակն Հայաստանեայց » ինչպէս իր հայրենակիցք կը կոչեն զսուրբն Գրիգոր։ Այս ընտրութեան մէջ նախամեծար սեպեցի երկրորդը, վասն զի նպատակս ոչ այնչափ է որոշել զճշմարտութիւն ի կեղծեաց, կամ հաւանականը ի պարզապէս անվաւերականաց, որչափ անգղիական լեզուով պատմութիւնն ընել առաջին պատրիար-

*քին և պաշտպանին Հայաստանեայց՝ անանկ ինչպէս որ հասարակաբար ընդունուած է իր եկեղեցւոյն մէջ, առանց իմ կողմանէս մեկնութիւն մը աւելցնելու, բաց ի քանի մը բառէ կամ ծանօթութիւն մը տալէ՝ զոր հարկաւոր սեպած եմ, և այս գխպուածին մէջ՝ ջանացեր եմ միշտ փակագծի մէջ առնուլ իմ կողմանէ գրուած տողերը։ Ուստի ըրածս ուրիշ բան չէ՝ բայց քերականական թարգմանութիւն մը, և մասնաւոր դարձուածներն ալ դիտմամբ պահեր եմ որպէս զի հասկըցընեմ ընթերցողին՝ թէ ինչպէս սկզբնագրին սանկ ալ թարգմանութեանս իմաստը միայն հեղինակին կը վերաբերին և ոչ թէ ինձ յատուկ են »։*

*Բաց յայս երից գլխոց Թադէի, Բարթուղիմեայ և Ս. Գրիգորի վրայ, Մալան միտք ունէր ուրիշ հինգ գլուխ ալ աւելցընել։ Բայց անոնք այս հրատարակութեան մէջ չանցան, ու ժամանակ անցնելէն ետքը տպագրուեցան։ Առաջինն է* Դաւանութիւն հաւատոյ եկեղեցւոյ Հայաստանեայց, *որ Ֆորթըսքիւ հարիւրապետին Հայաստան եկեղեցւոյ վրայ գրած գրքին մէջ տպագրուեցաւ (249-289)։ Թարգմանիչն դիտել կուտայ որ « Այս թարգմանութեան ձեռք զարկի Յովսեփայ Տոլկորուքի իշխանին ու Նախկին Հայոց կաթուղիկոսի ռուս լեզուով գրուած երկասիրութենէ մը տպագրելոյ ի Պետրպուրկ ի 1799, և որ ցայսօր այս նիւթիս վրայ եղած հրատարակութեանց մէջ ընտրելագոյն համարուածն է։ Թէպէտ և այնպէս կը կարծուի թէ ի հայերէնէ թարգմանուած է՝ խորագրէն դատելով, բայց մէկէն իմացայ որ բառ առ բառ թարգմանութիւն է Դաւանութեան հաւատոյ Հայաստանեայց եկեղեցւոյ, զոր Շրօտէր գրեր ու ծանօթութիւններով տըպագրեր է յիւր գիրսն* Գանձ լեզուին Հայոց։ *Ուստի հայկականին վրայէն թարգմանեցի զայն յանգլիարէն, բաղդատելով զսկզբնագիրն ընդ ռուս թարգմանութեան, որ բաւական հաւատարիմ է. միայն թէ ի բաց թողլով գերմանացի ուսուցչին հմուտ և քննադատական ծանօթու-*

թիւններն։ Բայց խիթալով որ չըլլայ թէ սխալիմ իրեն հետեւելով, գրեցի ի Պետրպուրկ, և չնորհիւ բարեխիրութեան մեծափառ Տըկալոմէնինի, նախկին նախարարի ուսմանց, իմացայ ի Յ. Գ. Գեյլիանովէ որ հայազգի մ'է, ծերակուտի անդամ և պետական պաշտօնեայ, հասարակաց կրթութեան պաշտօնարանին անդամ և տեսուչ կայսերական մատենադարանին՝ թէ Յովսէփ կաթուղիկոսին ձեռքով եղած ռուս թարգմանութեան հայերէն սկզբնագրին օրինակ չկայ, որով Տրոտէրի գրուածքը կրնանք հայաստան եկեղեցւոյ հաւատոց ճշմարիտ բացատրութիւն համարիլ. որովհետեւ կաթուղիկոսն զԱստուած և զմարդիկ վկայ կը կոչէ որ յամենայնի ի ճըշմարտութեան է, ու ապարէզ կը կարդայ զորոնք կը համարին սխալ գտնել այն դաւանութեան մէջ։ Ուստի կրնանք վստահիլ այս գրուածին վաւերականութեան վըրայ, գիտնալով նաեւ յայլուստ որ այս դաւանութիւնը տպագրուած է միշտ ի գլուխ ժամագրոց, որ ի գործածութեան է Գրիգորեան կամ Էջմիածնական կոչուած մասին մէջ, ուր ի հռովմէական կամ ի բուն Հայոց անջատելոց տպագրութեան մէջ կը պակսի այդ դաւանութիւն, ինչպէս նաեւ ուրիշ քանի մի աղօթքներ։ Ասանկ չի գտնուիր իմ ձեռքս եղած ժամագրոց տպագրութեան մէջ, որ յամին 1837 հրատարակուած է ի Վենետիկ »...

Մալան թարգմանած է նաեւ գձառ կամ գծխարան սուրբ Մկրտութեան յեկեղեցւոյ Հայոց, և Ֆորթէսքիւի տպագրին մէջ անցած է (281–301), ի մեծ Մաշտոցէ հանելով և բաղդատելով զայն ընդ ռուս թարգմանութեան Յովսեփայ կաթուղիկոսի, և ընդ ծխարանին Մըկըրտութեան զոր տուաւ նմա Հայոց Երուսաղեմի արքեպիսկոպոսն, որոյ հաւանութեամբ ու վաւերացմամբ տըպուած է։

Վեցերորդ ճառն է Կարգ աստուածային պաշտաման յեկեղեցւոյ Հայաստանեայց թարգմանուած ներածութեամբ մը ու ծանօթութիւններով, որ և կը գտնուի նաեւ հայ և անգ-

ղիական լեզուով, տպագրեալ ի Լոնտոն 1887 (Gilbert et Rivington) խնամօք Եսայի վարդապետի Աստուածատրեանց. յառաջաբանին մէջ կը ծանուցանէ թէ հայ խորհրդատետրը արդէն երկու անգամ թարգմանուած է յանգղիականն. առաջնոյն թարգմանիչն է Պլաքմոր (Blackmor) երէցն՝ Տօլկորուքի–Արղութինաքի հայ արքեպիսկոպոսի ձեռքով եղած ռուս թարգմանութեան վրայէն. և երկրորդին Ս. Կ. Մալան երէց, ի Կոստանդնուպոլիս տպուած հայ սկզբնագրի մը վրայ՝ հրամանաւ Ագրիանուպոլսեցի Պօղոս պատրիարքի: Հայկականին համար հրատարակողն օրինակ առեր է 1761ին Զմիւռնիոյ եղած տպագիրն ու 1813 յԵրուսաղէմ. իսկ անգղիականին համար կ'ըսէ թէ նախամեծար սեպեր է Մալանի թարգմանութիւնը՝ նկատելով հաւատարմութիւնն ու ոճոյ ընտրութիւնը:

Եօթներորդ ճառն՝ Հրահանգ քրիստոնէական հաւատոյ Էկեղեցւոյ Հայաստանեայց ի Մեսրայ մագիստրոսէ, և տպագրեալ ի հայ լեզու ի Մոսկուա՝ յամի 1850 հովանաւորութեամբ Ներսէս Ե կաթուղիկոսի: Հետաքննելի գրուած մը ի ծանօթութիւն հաւատոց Հայ ժողովրդեան: Մալանի թարգմանութիւն հրատարակուած է ի Occasional Papers of the Eastern Church Association, (Londres, Rivington, 1869).

Ութերորդն և վերջին գլուխ խօսի հայ և յոյն եկեղեցեաց իրարմէ ունեցած տարբերութեանց վրայ: Տպագրեցաւ նաև Արեւելեան եկեղեցւոյ ընկերութենէն, ինչպէս կը ծանուցանէ Մալան յ'էջ 241 Փորթըրըքիւի երկասիրութեան, բայց մեզ անկարելի եղաւ գտնել զայն: Հետաքննական և ոճով գրուած մ'է Մուրատիէւի, ոչ միայն վարդապետականաց տարբերութեանց վրայ որովք իրարմէ կը զանազանուին հայ և յոյն եկեղեցիք, այլ նաև այն ամենայն ջանից որ եղած են ի միաբանել այս երկու եկեղեցիքը, և մանաւանդ ի Ներսիսէ Կլայեցւոյ կաթուղիկոսէ, և ի համանուն արքեպիսկոպոսէն Լամ-

բրոնի։ Այս տեղեկութիւն թարգմանուած է ի ճանապարհորդարան գրոց Մուրաւիէւի ի ռուս (Հատ. Բ. 206–251)։

Աւելորդ է մեզ անդրադարձընելը թէ Մալան մեծ ծառայութիւն մը մատոյց Հայոց՝ իրենց վարդապետականքը և ազգային եկեղեցւոյ սկզբունքը այսպիսի պայծառ կերպով մը անգլիական հասարակութեան ներկայացնելով։ Դժբաղդաբար այս թարգմանութիւններէն շատերը՝ հիմա ձեռք ձգելը դժուարին է անգիւտ ըլլալնուն. և յուսալի է որ զանոնք միացընելով նոր տպագրութիւն մը ըլլայ շուտով։...

## Պ. ՅՈՎՍԷՓ ԼԱՅՖՈՒՏ

Աստուածաբանական ուսմանց տեսակէտով հայերէն լեզուի ուսման ետեւէ եղաւ ուրիշ եկեղեցական մը անգլիական եկեղեցւոյ, Տըրհամի եպիսկոպոսն Պ. Յովսէփ Լայֆուտ (Joseph Barber Lighfoot, 1828–1890), և հրատարակեց երկասիրութիւն մի Առաքելական հարց վրայ, և մասնաւորապէս Սրբոյն Իգնատիոսի և Պողիկարպոսի, և տպագրեց ի Լոնտոն ի 1885 (Macmillan)։ Հայկական թարգմանութիւն Իգնատեան թղթոց առ Եփեսացիս, Հռովմայեցիս, Զմիւռնացիս, առ Պողիկարպոս. զորս հայրապետ վկայն Անտիոքայ իր ի Հռովմ ճանապարհորդութեան ատեն գրած էր, և ուր կ'երթար գազանաց ժանեօք մարտիրոսական պսակին արժանաւոր ըլլալու. արդէն տպագրուած էր ի 1847, ինչպէս յառաջագոյն մեր այս գրուածին մէջ յիշատակած ենք, ի Պետերմանայ, մի և նոյն տարւոյն մէջ՝ յորում Ուլիէմ Գիւրըթոն տպագրեր էր իր Իգնատեան համառօտը (Corpus Ignatianum) յոյն, լատին, ասորի լեզուներով և անգլիական թարգմանութեամբ (Լոնտոն, առ Riving-

tonի)։ Այս թղթոց ոմանց հարազատութիւնք դեռ խնդրական են։

Զենք ուզեր մանրամասն խօսիլ այն ամեն գրուածոց վրայ՝ որ Եդեսիոյ եկեղեցւոյն սկզբնաւորութեան վրայօք հրատարակուած են։ Սակայն յիշատակենք զհմուտ համառօտութիւն խնդրոյն ի մեծարգոյ Յ. Տաշեան հօր, վիեննական Մխիթարեանէ, իր Աբգարու Թուղթ (Zur Abgar-Sage) երկասիրութեամբ. Նոյնպէս Վրայթի, ասորական լեզուի ուսուցչի ի Քէյմպրիճ, հրատարակութիւնն ասորի գրչագրաց՝ Ճառից Յակոբայ Աֆրահատայ (Պարսիկ Իմաստնոյն), զոր հինգերորդ դարու հայ թարգմանիչն մեծին Յակոբայ արքեպիսկոպոսին Մծբնայ տեղ տալու, և զոր (ազգական կամ) բարեկամ համարին ոմանք սրբոյն Գրիգորի։ Ծանօթ է մեր բանասէր ընթերցողաց որ ծիրանաւորն Նիկ. Մ. Անդոնէլլի, այս ճառերէն մեծ մասը հայ և լատին լեզուով հրատարակեց ի Հռովմ (Opera S. Jacopi Nisibi) ի 1756. որ ապա կրկին տպագրութիւն ունեցաւ ի Վենետիկ ի 1765, ինչպէս նաև ի Մատենադարանի Գալլանդի (Bibl. Vet. Patr. ի հատորն Ե, ի 1769)։ Հայ բնագիրն առանձին հրատարակուած է ի Կոստանդնուպոլիս ի 1824։

Յիշենք վերջապէս զՀամաբարբառն Տատիանոսի (Diatessaron), նախակարգ ուսումնասիրութիւն Ռունդէլ Հէրրիսի ի Կլէյ վարժարանէ ի Քէյմպրիճ, ուսուցիչ Սուրբ Գրոց մատենագրութեան ի Հաւէրֆորդ դպրոցի Բենսիլվանիոյ. (London, C. G. Clay, 1890). Ներածութիւն մ'է սուրբ աւետարանաց համաբարբառին ի Տատիանոսէ, որոյ արաբական երկու գրչագիրք կը պահուին այսօր ի Հռովմ. (Տես Tatiani Evangeliorum Harmoniæ arabice, nunc primum ex duplici codice edit et translatione donavit P. Augustinus Ciasca ord. Erem. S. Augustini, Biblioth. Ap. Vat. scriptor. Romæ 1888). Արդէն 1862ի Պօղ Լակարտ իր Աստուածային Սահմանադրութեանց գրուածքին մէջ ակնարկութիւն մը կ'ընէր

սրբոյն Եփրեմի ասորւոյ հայկական թարգմանութեան, տպագրելոյ ի Վենետիկ ի չորս հատորս. բայց ոչ զք առանձին մտադրութիւն ըրաւ վրան, մինչեւ որ Աւգերեան Հ. Մկրտչի թարգմանութիւնն՝ որ եղած էր ի 1841, հրատարակուեցաւ ի 1876, թարգմանչին մահուընէն (1854) շատ ետքը Սալցպուրկի ուսուցիչ Գէորգ Մէօսինկէր վարդապետին ձեռքով. (Evangelii concordantis expositio facta a S. Ephræmo Doctore, in latinum translata a R. P. Joanne Baptista Aucher mechitarista, cujus versionem emendavit, abnotationibus illustravit et edidit Dr. Georgius Mösinger. prof. studii biblici a. t. Salisburgi, Venetiis, S. Lazari) 1876, էջք ԺԲ–292, ընծայեալ յիշատակի Գէորգայ արքեպիսկոպոսի Հիւրմիւզ, հանգուցելոյ ի նմին 1876 ամի ի 11 ապրիլի: Եփրեմի այս գրուածք մեկնութիւն մ՚է Տատիանոսի Համաբարբառի կամ Համաձայնութեան աւետարանաց. հայկական թարգմանութիւնն եղեալ ի վերայ ասորականին ի միջոցի 364 կամ 373 ամաց, շատ հաւատարիմ է. որովհետեւ թարգմանիչն իր լեզուին ոճոյ յատկութիւնը կը զոհէ ասորական սկզբնագրին համաձայն ընթանալու համար: Այս հրատարակութիւն մեծապէս նպաստաւոր եղաւ Թէոդորի Ցահն հետազօտութեանց ի վերայ պատմութեան կանոնի նոր կտակարանին, մասն Ա. Համաբարբառ Տատիանոսի, տպագրեալ յԷրլանկէն 1883, էջ. 329, և մասն Բ. 1883 էջք 286–299. Հառնաքի քննադատութենէն ետք ալ՝ ի գիրսն՝ Պատմութիւն կանոնի նոր կտակարանի, հատ. Ա. Էրլանկէն, 1888, էջք 369 և հետեւեալք. Առաքական Եկեղեցւոյ ակըբնագիր նոր կտակարան: Եփրեմի գրուածք հաւաքում մը կրնայ համարուիլ դասախօսական ծանօթաբանութեանց, զոր Գերմանացիք իրենց լեզուով սովոր են կոչել Collegienheft, և հեղինակն սուրբն Եփրեմ ըրած է յեգեխա բանախօսութեամբք, որոց ամենուն սկզնաւորութեան՝ յառաջագոյն ընդարձակ ընթերցում մը կ՚ըլլար

գրոցն՝ որոյ մեկնութիւնը պիտի տրուէր, և ապա իր բանախօսութիւնն կ'ընէր իմաստուն և աստուածախօս վարդապետն։

Աստուածաբաններէն անցնինք՝ հայկական լեզուի ուսումը սիրողի մը (dilettante). Այն բազմաթիւ լեզուաց մէջ զորս Գէորգ Պօրրօյ (1803–1881) սորվեցաւ, կը գտնուէր նաև հայերէնն։ (կենսագրութիւնն կրնան գտնել խնդրողք ի Dictionary of National Biography)։ Գրուածոց մէջ՝ ի Savengro the Scholar, the Gypsy, the Priest; յերիս հատորս, (1851), դիւցազնը որ յաճախ նոյն ինքն Պօրրօյ կ'ենթադրուի՝ յաճախ ակնարկութիւն կ'ընէ հայ լեզուի, և կը թուի վշացընել իր հայրն երբ կ'ըսէ թէ սորվեր է այդ լեզուն՝ որ ծերունւոյն աչքին առջև անօգուտ ուսում մը համարուած է։

Առանց յիշատակութեան չթողունք նաև զՃԷՅՄՍ ԲՐԱՅՍ, Անդամ Անգղիոյ խորհրդարանին և արքունական ուսուցիչ քաղաքական իրաւագիտութեան ի համալսարանին Օքսֆորդի, որ Հայաստան ճանապարհորդութիւն ըրաւ ի 1876, և վերելք մը ընելով յԱրարատ լեառն, ի դարձին հրատարակեց՝ ժողովրդական դարձած գրուածք մը որոյ խորագիրն է. Անդրկովկաս և Արարատ (Transcaucasie and Ararat).

## ՓՐԵԴԵՐԻԿ Կ. ԿՈՆԻԲԻՐ

1877 թուականին Տեղեկագիր մը ներկայացուեցաւ Լոնտոնի բանասիրական ընկերութեան՝ հայկական ուսմանց յառաջադիմութեան վրայ։ Այս գրուածքիս հեղինակըն, ինչպէս որ յառաջագոյն յիշատակեցինք, էր ուսուցիչն Հիւպշման, և Սուիտ (Sweet) որ ի բացակայութեան նորա կարդաց այն գրուածք, իր ցաւը կը յայտնէր թէ ինչպէս Անգղիոյ մէջ չեն երևցած երբէք հայագէտք։

Բայց հիմա իմաստուն անգղիացի մը մեծ յոյս կուտայ կարեւոր արդեանց իր անխոնջ քննադատական ուսումնասիրութեամբ լեզուին Հայոց։ Այս անձն է Փրեդերիկ Կ. Կոնիբիր (Frederick C. Conybeare) որ ծնած է ի 1856 ամի, և նախնական ուսմանց ընթացքն ըրած ի Թընբրիճ դպրոցի և ապա ի համալսարանին Օքսֆորդի, ի 1875–1881ին ուսուցիչ էր, և ի հետեւեալ ամին՝ խոկոյն բարձրացաւ պաշտամամբն ու պատուով (grade de maître-ès-arts)։ Մաքս Միւլլէր անուանի արեւելագէտ ուսուցչին անդրանիկ դասեր հետ ամուսնացաւ, ու անոր մահուընէն ետքը երկրորդ պսակի անցաւ Տորէյլ օրիորդին, որոյ հետ երկու անգամ ճանապարհորդեց ի Հայս, ի 1888 և ի 1891։ Ահաւասիկ ցուցակ մը եւեթ իր գրուածոցը՝ նկատմամբ հայերէն լեզուի և մատենագրութեան։

Փորձ հայերէն ընթերցուածոց (Specimen lectionum armenicarum) հատուածք Փիլոնի հերրայեցւոյ, նորոգապէս ի լոյս ընծայեալք ի Ռունդէլ Հարրիս անգղիացւոյ (G. Rundel Harris) տպ. յՕքսֆորդ ի 1889, էջ 15։ Կը համեմատէ բաղդատութեամբ Փիլոնի քանի մի հատուածք ընդ հին հայկական թարգմանութեան։

2. Փիլոնի նորագիւտ գործոց վրայ, հատուած մը յAcademy ուսումնաթերթի (12 յուլիս, 1892, էջք 32).

3. Պղատոնի գրուածոց հին հայկական թարգմանութեանց վրայ յուսումնաթերթն Classical Review, Հատ. Գ. Թիւ 8 (հոկտ. 1889, յէջս 340–343...)

4. Համեմատութիւն Արիստոտելի քանի մի գրուածոց յոյն բնագրին՝ ընդ հին հայկական թարգմանութեան. ընտիր և բազմավաստակ գրութիւն ընդարձակ և հմուտ յառաջաբանով։ Գրքին բուն խորագիրն է. Anecdota Oxoniensia. Texts, documents and extracts chiefly from Manuscripts in the Bodlian and other Oxford libraries. — Classical Series. Vol. 1. Part VI. A collation with the ancient Armenian Versions of the

Greek text of Aristotle's Categories, De Interpretatione, De Mundo, De Virtutibus et Vitiis, and of Porphyry's Introduction. Oxford, at the Clarendon press, 1890։ Լիուլի հմտութեամբ կը ճառէ իր առաջարկութեան և նիւթոյն վրայ, և որոյ հայկական կրկին թարգմանութիւնք հրատարակեցան յազգային հանդէսս և առանձինն, և ծանօթ են արդէն մեր ընթերցողաց։

5. Անգղիական թարգմանութիւն մը ի հայկական հին թարգմանութենէ Անկիւրիոյ ժողովոյն կանոնաց (ի կանոնագրոց), նախաբան ծանօթութեամբ, յաւելեալ ի հատուածն Մ. Բ. Ռակհամ (Rackham) ի տպելոյ յԱստուածաբանական և յեկեղեցական ուսումնասիրութիւնս (Studia Biblica et Ecclesiastica) որ կը հրատարակուի յՕքսֆորդ։

6. Հայաստան և Հայք, յեռեալ յԱզգային հանդէսն (National Review), նոյեմբեր 1889։ Նկարագրութիւն մ'է ուղեւորութեանն զոր Կոնիբիր ըրաւ ի Հայաստան ի 1888։

7. Պօղոսի թուղթը է մարկիոնականութեան, յուսումնաթերթըն Academy, 11 ապրիլ 1891. յորում յօդուածագիրն մրիպակաւ կը համարի կարծել՝ թէ առ Եգնըկայ գտնուած տուրք բառն՝ նոյն է ընդ զենդ տուրք փոխագրութեան։ Այս ենթադրութիւնը յետոյ ուրիշ հատուածով մը եւ առած է։

8. Ի վերայ հատուածոց ինչ՝ սրբոյն Հերոնիմոսէ առաջ եղած Աստուածաշունչ գրոց լատին թարգմանութեան մը։ 1891 տարւոյն Expositor ուսումնաթերթին մէջ հրատարակուեցաւ այս գրուած։ Յառաջաբանին մէջ Կոնիբիր կը խօսի Հ. Մ. Աւգերեան աշխատասիրութեան վրայ, յորում այս հատուածներն սրբոյն Ամբրոսիոսի գրուածներէն առնըլով, միացուց յիւրում լատին թարգմանութեան Փիլոնի խնդրոց՝ հրատարակելոց ի 1822։ Միւս ունի Կոնիբիր Եօթանասնից ընթերցուածոց տարբերութիւնքն հրատարակել ըստ հին հայկական թարգմանութեան Փիլոնի խնդրոց ի գիրս Ծննդոց։

Այսոնցմէ զատ ուրիշ հատուածներ ալ հրատարակած է Կոնիբիր և կը շարունակէ հրատարակել, որոց համար մեծապէս երախտագիտութիւն պարտի նմա հայ մատենագրութիւնն, ուր այդպիսի փութով ասեւէ կ'ըլլայ անոր զարգացման և ծանօթութեան յԱնգղիա։ Իրմով կրնայինք փակել զակաւուր թիւ անգղիացի հայագիտաց, եթէ մօտերս ծանօթացած չըլլայինք երկու անգղիացւոց, իրենց եկեղեցական դասէն, որ եկան ի քաղաքս 1893 տարւոյն յուլիսին կատարելագործելու իրենց արդի սկսած և յառաջ տարած հայկական լեզուի ուսումը։ Այսոնցմէ մէկն է Արմիտէյճ Ռոպինսըն և երկրորդն Ա. Պրուկկ. Քէյմպրիճի համալսարանին վարդապետք. որոց առաջինն՝ հրատարակած է [illegible] ամբողջ, հայ՝ ասորի և յոյն բնագրովը և թարգմանութեամբք և բաղմահմուտ տեսութեամբ. և բաց ուրիշ նմանօրինակ եկեղեցական հընութենէ ինչուան առ մեզ հասած անվաւեր (apocryphe) գրութեանց հրատարակութիւններէ, կը գրաղի հիմա Տատիանոսի կամ սրբոյն Եփրեմի Համաբարբառին քննադատական երկասիրութեամբ։ — Գիտեն մեր ընթերցողք որ քանի մը տարիէ ի վեր հայկական լեզուի աթոռ մը հաստատուած է ի Թագաւորական դպրոցի (King's College) Լոնտոնի։

# ԻՏԱԼԱՑԻ ՀԱՅԱԳԷՏՔ

Արեւմտեան ազգաց մէջ թերեւս ամենէն յառաջ և բազմազգի յարաբերութիւններ ունեցած է Իտալիա՝ մեր աշխարհի և ժողովրդեան հետ. Վենետիկ, Գենուա, Փիզա՝ Ռուբինեանց ժամանակէն ի վեր, ինչպէս պատմութիւնք և յիշատակարանք կ'աւանդեն, դէպ յարեւելս արշաւանաց աւիթներով՝ մուտ գտած են շահավաճառի

և առևտրոյ պատճառաւ ի Հանգրուանս և ի քաղաքս Կիլիկիոյ, ուր և բնակութիւններն հաստատելով, փոխադարձաբար նոյն և նոյնպիսի առիթներով անցեր են և ազգայինք մեր յԻտալիա։ Միայն երեսունումէկ և աւելի Իտալիոյ զանազան քաղաքաց մէջ՝ այլեւայլ հոգետունք և եկեղեցիք Հայոց կը յիշատակուին, և ոմանք դեռ եւս կանգուն, յորոց հնագոյնն ի 1240, շարունակելով մինչեւ չորեքտասաներորդ դարուն վերջերը. և թուով բաւական ստուար, ճոխ և պատուաւոր գաղթականութիւնք ի բազմաշահ և ի մեծանուն քաղաքս, ի Հռոմ, Վենետիկ, Լիվոռնոյ և այլուր, ուր և ազգային տպարանք և հաստատութիւնք։

Այսոնք արդէն ծանօթ են մեր բանասէր ընթերցողաց։ Բայց այսչափ յաճախեալ յարաբերութեամբ ալ, համեմատաբար քիչ եղած են իտալական ժողովրդեան մէջ՝ հայկական լեզուի գրականութեան և պատմութեան ուսմամբ զբաղողք, թէ մեզմէ քանի մը դար յառաջ և թէ արդի ժամանակաց մէջ։ Առաջնոց թուոյն մէջ կրնանք անցընել՝ զՍորբենացին Կղեմէս Գալանոս, որոյ անուան և նկատմամբ մեր լեզուին և պատմութեան գրուածոց յիշատակութիւնն ըրած ենք արդէն։ Իրեն գործակից ունէր քանի մի համակրօն համազգիք, ի հարկէ չափով մը տեղեակք նաեւ մեր լեզուին, թէպէտ և մասնաւոր ու յականէ յանուանէ յիշատակութեան մը հանդիպած չըլլանք։ — Տիմոթէոս Գառնուկ, կամ՝ իւրենց լեզուով Agnellini, եպիսկոպոսի անուն մ'ալ կը գտնենք ի գլուխ Դաշանց Թղթոյն հայ տպագրի յիտալական թարգմանութեան հրատարակելոյ ի Փատուա Իտալիոյ յամի 1690, նոյնպէս և Հաւատով խոստովանիմ աղօթից Շնորհալւոյն բնագրին և թարգմանութեան յիտալականն՝ ի նմին ամի։ Թէպէտ չենք կրնար որոշակի ըսել թէ ո՛ր ազգին կը վերաբերի այս անձն, բայց օրուհետեւ իրեն ձեռքով եղած թարգմանութիւն մ'ալ

տեսեր ենք յիտալ լեզու արեւելեան առածից*, հաւա-նականաբար հայազգի եպիսկոպոս մ'է նա։

⁂

Յամի 1715՝ նախահայր Ուխտիս ի Մութոնէ Պեղո-պոնիդայ կ'անցնի իւրովքն և կը հաստատուի ի Վենե-տիկ, ուր դարերէ ի վեր կայր արդէն բազմաթիւ և պատուաւոր հայ գաղթականութիւն մը՝ ազգային եկե-ղեցեաւ և քահանայիւք։ Բայց ինչպէս յառաջ՝ և ոչ աւ անկէ ետքը՝ հայ լեզուի ուսման նկատմամբ փոյթ մը չենք գտնէր, ոչ ի Վենետիկ և ոչ այլուր առ Իտա-լացիս։

Իսկ երբ դարուս սկիզբը իտալեան պետութիւն մը կազմուեցաւ՝ արդէն ինչուան այն ատեն գտնուող այլ-եւայլ պետութեանց ու հասարակապետութեանց ի մի ձուլմամբը՝ մեծին Նափոլէոնի խիզախ արշաւանօքն և յաղթանակօք, յընդհանուր տեսչէ համալսարանին Փա-ւոյի, ի Յովսեփայ Հաժէր (Joseph Hager) աղերսա-գիր մը կը գտնենք մատուցուած առ Եւգենիոս Բոհառ-նէ փոխարքայ Իտալիոյ ի 1809 ի դեկտ. 20 որոյ մէջ յիշեցընելով ինչուան այն ատեն անծանօթ մնացած Հայ պատմչաց և պատմութեան կարեւորութիւնն, և թէ յի-տալիա՝ և մանաւանդ ի Վենետիկ կը գտնուին կարող և ձեռնհաս անձինք և հայկական տպարան՝ եւրոպական լեզուով մը այդ պատմիչներն ուսումնական աշխարհի ծանօթացընելու, կ'առաջարկէր որ կառավարութիւնն պէտք եղած ջանքն ու ծախքն ընէ՝ անոնց թարգմանու-թեան և հրատարակութեան։

Այս աղերսական առաջարկութեան, որ արդէն ծա-

* Proverbi utili e virtuosi in lingua araba, persiana e turca, gran parte in versi con la loro spiegazione in lingua latina ed italiana, raccolti da Timoteo Agnellini. Padova, 1688.

նօթ է մեր ընթերցողաց *, անգործադրելի մնալը՝ յայտնի նշանակ մ՚է որ Գաղղիոյ կառավարութիւն հարկ չհամարեցաւ, կամ բազմապատիկ գործառնութեանց և զբաղմանց մէջ ժամանակ չունեցաւ լուրջ նկատողութեան առնուլ զայն։ Բայց անկէ քիչ յառաջ, 1786ին, ազնուատոհմ և ուսումնասէր ազգային մը, Յովհաննէս մարգիզ Սերպոսեան, իտալացի ճարտար և բազմահմուտ գրչի մը շարագրութեամբ՝ մեր ազգին վրայ ինչուան նոյն առեններն երևցած գրուածոց մէջ ընտրելագոյնն և ճշմարտաճառ հրատարակեց յիտալական լեզու, Հայ աշխարհի հին պատմութեան, մատենագրութեան և աշխարհագրութեան վրայ, թէպէտ աւելի եռանդուն սրտի և ոգւոյ տպաւորութեանց անսալով տեղ տեղ, և ոչ միշտ առողջ քննադատութեան** ։

Առաջին գիրքն է Տեղագրական բնական նկարագիր Հայաստան աշխարհի։ Երկրորդին մէջ անոր հին և նոր քաղաքական վիճակին վրայ կը խօսի։ Երրորդին՝ սկզբնաւորութիւն, յառաջադիմութիւն և հաստատութիւն քրիստոնէական կրօնից ի Հայաստան։ Չորրորդն է ժամանակագրական դասակարգութիւն կաթուղիկոսաց նորա։ Հինգերորդն՝ պատմութիւն ժողովոց որ գումարեցան, նպատակ ունենալով զկրօնս և զեկեղեցական բարեկարգութիւն։ Վեցերորդ գրոց մէջ կը ճառէ՝ Հայոց սովորութեանց վրայ ընդհանրապէս։

***

Բայց այս գրուածքին երևնալէն ետքն ալ՝ Հայագիտութիւն՝ նշանաւոր քայլ մը յառաջադիմութեան չյաջողեցաւ ընել յիտալիա։ Այդ ջանից և փութոյ առաջ-

* Տես յ՚էջ 135։

** Compendio storico di memorie cronologiche concernenti la religione e la morale della nazione Armena. Opera divisa in sei libri.

նութիւնը՝ արժանապէս կը պատկանի վենետկեցի քահանայի մը, Յովսեփայ Գափելլեդդի (1810–1876)։ Դեռ եկեղեցական վարժարանի մէջ իր ուսմանց ընթացքը կատարելու հետ էր, երբ ձեռքն ինկաւ Ջախջախեան վարդապետին Հայ և իտալական բառգրոց առաջին թերթերն, և ի գլուխ գրոցն գրուած Հայ քերականութեան համառօտութիւնը. առաջարկեց որ շնորհուին իրեն այն թերթք, խոստանալով ուսանել զլեզուն. և տուած խօսքին վրայ հաստատուն կեցաւ, անխոնջ և յարատեւ ջանիւք պարապելով քանի մը տարի չարունակ յուսումն և ի հմտութիւն հին լեզուին։

Իր ուսմանց առաջին ճաշակն ընծայեց յամի 1829 թարգմանելով ի լատին Շնորհալի Հայրապետին Թուղթն առ համօրէն Հայաստեա ազինս. և այդ ձեռնարկին յաջողութեամբն և ընդունելութեամբ խրախուսուած՝ նոյն սուրբ Հայրապետին ուրիշ թղթերն թարգմանեց ի լատին, և երեք տարիէն (1832) հրատարակելով տպագրութեամբ նուիրեց Հռովմայ սրբազան քահանայապետին Պիոսի Ը։ Նոյն ատեններն հրաւիրուելով ի Գենուա Իտալիոյ ի քարոզութիւն բանին Աստուծոյ նոյն քաղաքին Սրբոյն Բարթուղիմեայ առաքելոյ նուիրուած և Հայոց վերաձայնեալ եկեղեցւոյն մէջ, ուր՝ ըստ աւանդութեան կը պահուի և կը մեծարուի Քրիստոսի Տեառն մերոյ առ Աբգար ղրկած դաստառակն, մասնաւոր ներբողիւ պատուելով զսուրբ առաքեալն Հայաստանեայց, հաչակ ունեցաւ իր հայկական ուսմանց հըմտութեամբ։

*
* *

Այս փորձերէն ետքն էր որ մտածեց հայ պատմագրաց հնագունից և կարեւորաց երկասիրութեանց իտալական թարգմանութեամբն զբաղիլ, ու Սարտենիոյ Կարոլոս Ալբերտ թագաւորին ընծայելով, դնել գործը ա-

նոր արքունական պաշտպանութեան ներքեւ, դրամական նպաստից օժանդակութեան ակնկալութեամբ ալ: Հայ պատմագիրքը Եւրոպիոյ ծանօթացուցած ատեն՝ անհրաժեշտ էր և զՀայաստան ծանօթացընել իր հնախօսութեամբն ու քաղաքական ու զինուորական օրէնքներով ու սովորութեամբք: Այս փափաքանաւ յօրինած և հրատարակած է հեղինակն եռահատոր՝ Հայաստան (L'Armenia) կոչուած երկասիրութիւնն, որ՝ ինչպէս ինքն աշխատասիրողն յառաջաբանին մէջ կը ծանուցանէ՝ Ինճիճեան վարդապետին Հնախօսութիւն Հայաստանեայց կոչուած գըրքին համառօտութիւնն է: Մեծ պարգեւ մ'էր զոր կ'ընծայէր բովանդակ ուսումնասէր արեւմտից. և գրեթէ հաւասարապէս օգտակար ծառայութիւն մը զոր իրմէ յառաջ կը մատուցանէր համբաւեալ արեւելագէտն և հայագէտն Սէն-Մարդէն իւր Յիշատակարաններով: Տարակոյս չկայ որ չէր զերծ և ի թերութեանց ինչ. բայց անոնցմով վաստակաւէր հայագիտին արդիւնք և գովութիւն չեն նսեմանար:

Այս երկասիրութեան հրատարակութենէն քանի մը տարի յառաջ արդէն տպագրութեամբ ի լոյս ընծայեր էր Եղիշէի և Խորենացւոյ պատմութիւնը (1842) յիտալական լեզու. յետոյ Պերգաստելի եկեղեցական պատմութեան նոր տպագրութիւն մը և ամբողջ հարիւր տարուան շարունակութիւն (1844), յաւելով ի նմա ըստ իւրաքանչիւր դարուց նաև հայ եկեղեցւոյ պատմութեան գլխաւոր և հետաքննական անցքը, և մանաւոր ու հըմտական երկար տեղեկութիւններ աւելցընելով այն պատմական դիպուածոց կամ եկեղեցական ազգային խնդրոց՝ որ խնդրականք համարուած են: Այսինքն Աբգարու առ Քրիստոս գրած և ի նմանէ ընդունած թըղթոց վաւերականութեան չափուն, դաստառակին աւանդման և ցարդ գոյութեան, Թադէի ու Բարթուղիմեայ քարոզութեան և նահատակութեան ի Հայս վիճելի կարծեաց և հաւանականութեան, և այլն: Նոյն գրուածքն

յետոյ աւելի ընդարձակելով ու ճոխացընելով՝ նոր կերպարանաց տակ սկսաւ հրատարակել ի Փլորենտիա, և որ անկատար մնաց տպագրապետին սնանկանալուն պատճառաւ։

* * *

Այլևայլ օրագրական յօդուածներ ալ հրատարակած է իտալեան զանազան բանասիրական հանդէսից մէջ՝ մեր ազգին և պատմութեանց տեսակիտով, յորոց զոմանս և մեզի ծանօթներն նշանակեմք.

Regno dell'Arm.. (Cosmorama pittorico di Milano, 1840, թիւ 81)։

Colpo d'occhio di Siria. (Անդ, 1840 թիւ 50)։

Lettere, scienze ed arti degli antichi Arm. (Անդ, 1841 թիւ 12)։

Poesia armena, *Il naufrago nel mare di Van.* (Vaglia di Venezia, վեցերորդ տարի, թիւ 24)։

S. Giovanni d'Acri. (Cosmorama, տարի Է. թիւ 1)։

Mechitar Abate di Pietro. (Cosmorama, տարի Է. թիւ 1)։

Invenzione dei caratteri armeni (?)

Semiramocerta o Van (?)

Riti funebri degli Armeni (?)

Abgaro, primo re Cristiano (Giornale Eccl. di Milano 1840)·

Patriarcato di Armenia (Անդ, 1840)։

Terza lettera di S. Paolo ai Corinti (Անդ, 1840)·

Gli eretici Pauluciani (Անդ, 1841)·

Santa Ripsima vergine martire e sue compagne. (Անդ, 1841)։

⁂

Գափելլեդդիի ժամանակակից է ուրիշ Իտալացի հայագէտ իշխանական անձ մը, Լուքքա քաղաքին դուքսը Կարոլոս Պուրպոն որ մասնաւոր սէր մը ձգելով մեր լեզուին ուսման և պատմութեան, տարիով հետամուտ եղաւ՝ հմուտ ու ազգային ուսուցչի առաջնորդութեամբ։ Բայց Իտալիոյ 1848ին յեղափոխական շարժումն վրայ հասնելով, ստիպեցաւ հրաժարիլ իշխանութենէն ի շնորհս որդւոյն, որ և նա չեղաւ բարեբաստիկ՝ ժառանգած փոքրիկ իշխանութեան աթոռոյն վրայ, բռնամահ կորուսանելո՛վ զայն։

Ասոնցմէ ետքը և աւելի նորագոյն և մեզի ժամանակակից Իտալացի հայագիտաց թուոյն մէջ մասնաւոր յիշատակութեան արժանաւոր է ուսուցչապետն Եմիլ Դէզա։ Հմտութեան հետ գրականական գովելի համեստութիւն երեւցընելով շատ կարդացող ու պրպտող, բայց քիչ գրող մ՚է, և գրուածքն են համառօտ՝ բայց հմտութեամբ լի։ Ուսումը ի Վիէննա առած է, ու սանսքրիտ լեզուի ու համեմատական բանասիրութեան ուսուցչապետ եղած ի համալսարանս Պոլոնիոյ, Փիզայ և Փաւուայի։ Հայկական ուսմանց վերաբերեալ իր մեզ ծանօթ գրուածներէն առաջին կը կարծենք Ագաթանգեղոսի Փլորենտիոյ Լաւրենտեան գրատան մէջ գտնուած յոյն օրինակին տարբերութիւնները և հայերենին հետ ունեցած նմանութիւնները։ Նոյն նիւթոյն վրայ տեղեկութիւններ իր ուրիշ բանախօսութեան մէջ՝ զոր Հայկականք կը կոչէ (Cose Armene), և որ տպագրուած է ի Համառօտման գործոց Վենետիկոյ գիտութեանց, դպրութեանց և արուեստից կաճառին (Atti del R. Istituto veneto di scienze, lettre ed arti, շար Է, հատոր Ա. յէջ 197–928), յորում կը խօսի Հայկական հին Թարգմանութեանց նորատիպ գրոց վրայ, Նորայրի Քննական թերթից, և մանաւանդ՝

ինչպէս ըսինք, Ագաթանգեղոսի յոյն բնագրին վրայ՝ զոր տպագրութեամբ հրատարակած էր Պօղ Տըլակարտ։ Մանդակունեոյ մէկ ճառին իտալական թարգմանութիւնն ըրած է և տպագրած. (Una lettera di Giovanni Mandacuniese — Atti e Memorie della R. Accademia di scienze, lettere ed arti di Padova 1889–90, Հատ. Զ. 153–167։ Նեմեսիոսի հայկական թարգմանութեան վրայ ալ քննադատական տեսութիւն մը յօրինած է, և Վենետկոյ կաճառին գործոցը մէջ տպագրած, որ առանձին հրատարակութիւն ալ ունի։

Առնցմէ եւս հրատարակած է «Զվեցօրէից Գեորգայ Պիսիդեայ՝ ըստ հին հայկական Թարգմանութեան». Dell'Essamero di Giorgio Piside, secondo la antica versione armena; 1893.

Հելլէն իմաստասիրաց հատընտիր բարոյական առածք Թարգմանեալ ի հայոց (Delle sentenze morali di filosofii greci, scelti e tradotti da Armeni; 1893.

Եղիշէի պատմութեան գրոց — անոր նորագոյն տպագրութեանն ի Մոսկուա քննադատութիւն մը, ի 1893.

Առնց նման համառօտ՝ բայց ուրիշ լուրջ գրուածներ։

*
* *

Իտալացի հայագիտաց թուոյն մէջ կրնանք սեպել նաեւ զԳարլոյ Մորադդի ուսուցիչ լատին և յոյն գրականութեան՝ Փաւիոյ Ռոկոյ Ցօքօլոյ վարժատան մէջ։ Իմաստուն բանասէրս 1885 թուականին հրատարակեց Հայ եւ Հնդկեւրոպական կոչուած տետրակ մը, 52 էջ, տպագրեալ ի Պերկամոյ. յորում այբուբենի կարգաւ կը խօսի ստուգաբանութեանց վրայ, ցանկով մը՝ որ դիւրութիւն կ'ընծայէ հետաքննին բանասիրաց։ Դժբաղդաբար այս ստուգաբանութիւնք մեզի կը թուին թէ հաստատուն հիմանց վրայ չեն՝ ինչ որ կը պահանջէ մեր այժմու լեզուաքննական ուսումը։ Մորադդի հեղինակ է դար-

ձեալ Ուսումնասիրութիւնք ի վերայ հին իտալական լեզուաց կոչուած (Studii delle antiche lingue italiche, 1887), և Ռոմանական լեզուաց մէջ Նախալատին հիմունք (Fondi Antelatini nelle lingue romanze, 1889, ի Փարիզ, մասն Ա, էջք 54)։ Պուկկէի ստուգաբանական ուսումնասիրութեանց վրայ խօսած ատենինս՝ արդէն առիթ ունեցանք այս խնդիրը յուզելու։ Հոս միայն այս ալ յաւելումք ընել, թէ հայկական լեզուի նկատմամբ կը գտնենք իտալիոյ մէջ հրատարակուած համեմատական բանասիրութեան վրայ այլեւայլ տեղեկութիւններ Ասկոլիի և այլոց գրուածոց մէջ, (Studii critici, Դուրին, 1877), որոնց և գերման թարգմանութիւնն ըրած են Ռայնհալտ Մերզորփ և Բեռնարդ Մանկոլտ, (Kritische Studien zur sprachwissenschaft von G. P. Ascoli, Veimar, 1878, էջք ԼԸ–418, ուր քառասուն և երկու հայկական բառից կամ յետադաս վանկերու (suffixe) խնամով քննարանութիւնք։

Յիշենք նաեւ Մարկ՝Անդոնիոյ Գանինիի Ստուգաբանական ուսումնասիրութիւնքը (Études étymologiques) տպագրեալ ի 1882· ուր մեր լեզուին վրայ այլեւայլ հետաքննութեան արժանաւոր տեղեկութիւնք կան։

*
* *

Մեր յօդուածոց այն հայագիտաց վրայ որ գերման լեզուով գրեցին, յաւելուլ արժան է տեսութիւն մը նօրերս լոյս տեսած քերականութեան վրայ հրատարակելոյ առ Հարտլէբէնի։ Այս փոքրիկ գրուած կը ձեւացնէ երեսներորդ հինգերորդ հատոր Մոտեռնագալեան լեզուագիտական կոչուած շարք մի գրուածոց, յորում արդէն եբեւցան համառօտութիւնք և թարգմանութեան հրահանգք աշխարհիս վրայ ամենէն աւելի ընդհանուր եղած լեզուաց. հատորը 2· 50 Ֆր. չափաւոր գնով։ Հայերէն քերականութեան հեղինակն, Կարլ Կէնգ, արդէն նոյն

հաւաքման մէջ հրատարակեր էր սիննէական լեզուի քերականութիւն մը։ Իսկ նկատմամբ այս հատորին՝ պատուական գործակից օժանդակութիւն մը ունեցաւ ի Հարց Մխիթարեանց վիէննականաց, ոչ միայն քերականութեան տպագրութեան, այլ նաեւ ձեռագրին վերաքննութեան և սրբագրութեան։ Երկու մասն կը բաժնուի այս գրուածք. առաջինն՝ (7–80) հին լեզուին կամ գրաբարին վրայ կը խօսի. երկրորդը արդի լեզուին, բայց միայն արեւմտեան գրաւոր լեզուին (91–196)։ Զենք կրնար լուապէս ըմբռնել թէ ինչո՞ւ արեւելեան լեզուն տեղ մը գրաւած չէ այս քերականութեան մէջ։ Իրաւ է որ հեղինակին ընտրած սահմանը չի ներեր նըմա երկար ու ընդարձակ հատոր մը գրել, բայց քանի մի էջ բաւական էին նմա համառօտիւ նշանակելու Ռուսիոյ Հայոց լեզուին ընդհանուր յատկութիւնները։ Մեզ կը թուի թէ լաւ կ'ընէր Կէնզ, եթէ իր գրոցը մէջ յաւելուր փոքրիկ մատենախօսական ցուցակ մը՝ անոնց համար որ քիչ մը աւելի հեռուն երթալու կամք ունին հայ լեզուին ուսման մէջ։ Բաց ի այս թերութիւններէն, մեզ համար աւելի ցաւալին այն է որ գրաբար լեզուի վարդապետական բացատրութեանց մէջ մեծագոյն պակասներ կան. որովհետեւ հեղինակը խօսք մը չընէր ոչ մասնըկանց և ոչ լեզուական դարձուածոց կազմաւորութեան վրայ. խիստ անկատար է անկանոն բայից ցուցակը, որ միայն հնգետասան թուով կը բովանդակէ, և այսպէս հետեւաբար։ Իսկ նկատմամբ իտալական–հռոմէական գրերով դրուած հնչմանց, շատ պակասաւորք են ուղղութեան և ճշդութեան կողմանէ... Որովհետեւ գրքին նըպատակն է առանց ուսուցչի սորվեցընել լեզուն, մեզի կ'երեւնայ թէ աւելի ջանք և մտադրութիւն ըլլուելու էր հնչման նկատմամբ։ Ասոնցմով հանդերձ, մեծ օգնութիւն կրնայ մատուցանել այս երկասիրութիւն, և փափաքելի է որ նորանոր հայագէտներ երեւցընէ։



Գափելլեդդիի ժամանակակից է ուրիշ Իտալացի հայագէտ իշխանական անձ մը, Լուքքա քաղաքին դուքը Կարոլոս Պուրպոն որ մասնաւոր սէր մը ձգելով մեր լեզուին ուսման և պատմութեան, տարիով հետամուտ եղաւ՝ հմուտ ու ազգային ուսուցչի առաջնորդութեամբ։ Բայց Իտալիոյ 1848ին յեղափոխական շարժումին վրայ հասնելով, ստիպեցաւ հրաժարիլ իշխանութենէն ի շնորհս որդւոյն, որ և նա չեղաւ բարեբաստիկ՝ ժառանգած փոքրիկ իշխանութեան աթոռոյն վրայ, բռնամահ կորուսանելով զայն։

Ասոնցմէ ետքը և աւելի նորագոյն և մեզի ժամանակակից Իտալացի հայագիտաց թւոյն մէջ մասնաւոր յիշատակութեան արժանաւոր է ուսուցչապետն Եմիլ Դէդա։ Հմտութեան հետ գրականական գովելի համեստութիւն երեւցընելով շատ կարդացող ու պրպտող, բայց քիչ գրող մ՚է, և գրուածքն են համառօտ՝ բայց հմտութեամբ լի։ Ուսումը ի Վիէննա առած է, ու սանսքրիտ լեզուի ու համեմատական բանասիրութեան ուսուցչապետ եղած ի համալսարանս Պոլոնիոյ, Փիզայ և Փատուայի։ Հայկական ուսմանց վերաբերեալ իր մեղ ծանօթ գրուածներէն առաջին կը կարծենք Ագաթանգեղոսի Փլորենտիոյ Լաւրենտեան գրատան մէջ գտնուած յոյն օրինակին տարբերութիւնները և հայերենին հետ ունեցած նմանութիւնները։ Նոյն նիւթոյն վրայ տեղեկութիւններ իր ուրիշ բանախօսութեան մէջ՝ զոր Հայկականք կը կոչէ (Cose Armene), և որ տպագրուած է ի Հաստատման քորձոյ Վենետիկոյ գիտութեանց, դպրութեանց և արուեստից հանդէսին (Atti del R. Istituto veneto di scienze, lettre ed arti, շար Է, հատոր Ա, յէջ 197–928), յորում կը խօսի Հայկական հին Թարգմանութեանց Նորատիպ գրոց վրայ, Նորայրի Քննական Թերթից, և մանաւանդ՝

*յօրինել։ Այս նկատմամբ կրնան աչքէ անցուիլ Պրոսէի նախապատրաստական տեղեկութիւնք՝ որ տպագրուած են ի Ցիշատակագիրս Ակադիմիոյ* (*Հատ. Գ.* 1845. *Հատ. Դ.* 1846). *ի* 1846 *գրուած երրորդ տեղեկագրին մէջ կը հետեւցընէ Դեմիդոֆի սահմանած կէս մրցանակը պատկանեցընել,* 2,500 *ռուբլ. և այս մրցանակ* 1851*ին հրատարակուեցաւ ընդհանուր նիստին մէջ ի* 24/12 *մայիսի, և այն ատեն երեւցաւ Պրոսէի չորրորդ տեղեկագիրը... Պերայիէֆ կարդաց իր գրուածքը Ակադիմիոյ Պատմական–բանասիրական նիստին մէջ (ի* 1 *հոկտ.* 1851) *և յորում որոշուեցաւ տպագրել իւր Ցիշատակագրոց* (Bulletin) *կարգին մէջ...*

*Անցնինք յիշատակել Կ. Եզովի, ի պաշտօնարանէ Հասարակաց կրթութեան, աւելի կարեւոր գրուածները։ Ռուս կամ հայ պարբերական գրուածոց մէջ* 1857 *էն ի վեր հրատարակած հատուածոց մէջ, մանաւոր յիշատակութեան արժանի կը սեպենք ուսումնասիրութիւն մը Ի վերայ վորդադելտոսնեան մտօոց Պուշկնի։ Լազարեան ուսումնարանին մէջ առանձին ընթացք ըրած ատեն յօրինեց Եզով այս երկասիրութիւնը, և ի* 1858 *հրատարակեց յՕրագրի Նախարարութեան հասարակաց կրթութեան ի ռուս լեզու. և որոյ համար արծաթի մետալ ընդունեցաւ։ Հետեւեալ տարին հրատարակեց իւր բանմրցութիւնն՝ վարդապետի կամ մագիստրոսի* (magister) *աստիճանն ընդունելու. Ընտանեկան կեանք Նախնեայն Հայաստանի, որ և ռուսերէնէ թանգմանեցաւ ի հայ։* 1884*ին Եզով թարգմանեց ի հայ՝ Լեհաստանի լատին քարոզչաց երկու գրուած, ու կոչեց զայն Բանք մաոբեան Լեհաստանի Հայոց ընդ Եկեղեցւոյն Հռովմայ, դնելով ի գլուխ գրոցն* 65 *էջերէ բաղկացած յառաջաբան մը Հայաստանի մէջ կատարուած դէպքերուն վրայ՝ որովք բռնադատեցան ի դաւանափոխութիւն, և Լեհաստանի Հայոց վիճակին և վրանին յարուցուած կրօնական հալածանաց պարագայից։ Հեղինակը կը յաւելու դնել քանի մը հա-*

ձեռլ Ուսումնասիրութիւնք ի վերայ հին իտալական լեզուաց կոչուած (Studii delle antiche lingue italiche, 1887), և Ռոմանական լեզուաց մէջ Նախալատին հիմունք (Fondi Antelatini nelle lingue romanze, 1889, ի Փարիզ, մասն Ա, էջք 54)։ Պուկկէի ստուգաբանական ուսումնասիրութեանց վրայ խօսած ատենինիս՝ արդէն առիթ ունեցանք այս խնդիրը յուզելու։ Հոս միայն այս ալ յաւելունք ըսել, թէ հայկական լեզուի նկատմամբ կը գտնենք Իտալիոյ մէջ հրատարակուած համեմատական քերականութեան վրայ այլեւայլ տեղեկութիւններ Ասկոլիի և այլոց գրուածոց մէջ, (Studii critici, Թուրին, 1877), որոնց և գերման թարգմանութիւնն ըրած են Ռայնհոլտ Մերզորփ և Բեռնարդ Մանկոլտ, (Kritische Studien zur sprachwissenschaft von G. P. Ascoli, Veimar, 1878, էջք ԼԸ–418, ուր քառասուն և երկու հայկական բառից կամ յետադաս մասնկերու (suffixe) խնամով քննարանութիւնք։

Ցիշենք նաեւ Մարկ'Անդոնիոյ Գանինիի Ստուգաբանական ուսումնասիրութիւնքը (Études étymologiques) տպագրեալ ի 1882. ուր մեր լեզուին վրայ այլեւայլ հետազննութեան արժանաւոր տեղեկութիւնք կան։

*
* *

Մեր յօդուածոց այն հայագիտաց վրայ որ գերման լեզուով գրեցին, յաւելուլ արժան է տեսութիւն մը նորերս լոյս տեսած քերականութեան վրայ հրատարակելոյ առ Հարտլէբէնի։ Այս փոքրիկ գրուած կը ձեւացնէ երեսներորդ հինգերորդ հատոր Մոտենաշրջան լեզուագիտական կոչուած շարք մի գրուածոց, յորում արդէն երեւցան համառօտութիւնք և թարգմանութեան հրահանգք աշխարհիս վրայ ամենէն աւելի ընդհանուր եղած լեզուաց. հատորը 2. 50 ֆր. չափաւոր գնով։ Հայերէն քերականութեան հեղինակն, Կարլ Կէնդ, արդէն նոյ

կուս։ Անտի ի 1851 գնաց ի համալսարանն Դորպատի, ուր կեցաւ մէկ ու կէս տարի։ Քիչ մը ժամանակ ի Պետրպուրկ գեգերելէն ետք, անցաւ ի Կովկաս ու Ստաւրոպոլի գիմնազիոնին մէջ մանկագիտութեամբ զբաղեցաւ։ Տէրպտեան օրագրին մէջ հրատարակեց հատուած մը Երգիծաբանութեան վրայ ընդհանրապէս և Կանտէմիրի երգիծանաց վրայ (1853 թիւ 2, էջք 11–18։) Նախապէս թարգմանութիւններ ըրած էր ի հայ Հայնէի, Շիլլէրի, Կէօթէի, Պերանժէրի, Թոմաս Մուրի քերթուածոց հատուածներ։ 1853ին Մանկավարժական կաճառին մէջ ընդունուելով՝ փիլիսոփայական պատմական ճիւղին մէջ գրուեցաւ, և մանաւոր կերպով հետամուտ եղաւ ի մշակել ռուս, գաղղիական և գերմանական բանաստեղծութիւն, սովրելով նաեւ զանգլիական և զիտալական լեզուս։ 1855–1857 տարիներու մէջ այլ և այլ բանաստեղծութիւններ շարադրած է, որք յետոյ հաւաքուելով ի մի հատոր հրատարակուեցան Քաման Գուլիստա (արաբերէն Վարդարան ծերունեաց) կեղծ անուամբ։ 1851ին աւարտեց իւր ընթացքը ի Մանկավարժական կրթանոցին և դարձաւ ի Կովկաս՝ Տփղիսի մէջ ուսուցչութեամբ զբաղելու։ Հետեւեալ տարին արձակուրդով երթալով ի Պետրպուրկ՝ ամուսնացաւ ընդ Աննայի Աղաթոնով, որ դուստր էր Ակիմով Դաւիթովիչ Աղաթոն հայ քահանայի․ 1860 հրատարակեց գաղղիարէն լեզուով զՑուցակ հայերէն մատենագրութեան ի սկզբանէ չորրորդ դարու մինչ ի կէս եօթնեւտասներորդին (Catalogue de la littérature arménienne depuis le commencement du IVe siècle jusque vers le milieu du XVII.e ) ի Յիշատակագիրս պատմական և բանասիրական մասին Գիտութեանց Ակադեմիոյ․ (Հատ․ Բ․ 49–91)․ 1861ին յաջորդեց Պերոյիէֆի, որ Պետրպուրկի համալսարանի հայ լեզուի ուսուցչութենէ իւր հրաժարականն տուաւ․ և նոյն տարւոյն հրատարակեց թարգմանութիւն մը ի ռուս լեզու Աղուանից պատմութեան Մովսիսի Կաղանկատուացւոյ, տա-

# ՌՈՒՍ ՀԱՅԱԳԷՏՔ

*Եթէ ուզենանք ժամանակագրական կարգով խօսիլ ռուս հայագիտաց վրայ, պէտք էր որ յառաջ քան զամենայն յիշատակէինք Յովսէփ Յովհաննիսով անձի մը ձեռքով եղած թարգմանութիւն մը Խորենացւոյ Պատմութեան և Աշխարհագրութեան. (ի Պետրպուրկ,* 1809 *Աղեքսանդր Ա. կայսեր նուիրուած է այս գրուածք, և երկու մասն կը բովանդակէ. առաջինն յէջս Ժ*+356+*ԺԶ, և երկրորդն՝ Զ*+242+*Ը*:

*Յառաջ խօսեցանք Պետրպուրկի Կայսերական Գիտութեանց ձեռքով հրատարակուած Պրօսէի և Լանկլուայի երկասիրութեանց վրայ, աւելցընենք նաեւ Շոպէնի յիշատակագիր մը Հայաստանի մէջ բնակող ժողովրդոց ծագման վրայ, ընթերցեալ ի* 6 *մարտ* 1840, *և որոյ համառօտութիւնը կը գտնուի ի Յիշատակագիր Ակադեմիայ, ի հատորն Ը, յէջ.* 16–20, *ու Կորգանովի թուղթ մը առ Ակադեմիայն՝ Հայոց պատմութեան և մատենագրութեան այլ և այլ նիւթոց վրայ, ընթերցեալ ի* 16 *սեպտ.* 1842 (*ի Յիշատակագիրսն Ակադեմիայ, Հատոր Ա. էջք* 59–69):

*Կայսերական Ակադեմիոյ պատմական–բանասիրական դասակարգին մէջ երեւցաւ ի հատորն Թ* (1852, *յէջս* 118–134) *համառօտութիւն մը հայկական քերականութեան, ռուս բացատրութեամբ և հետեւեալ խորագրով.* Տօբէր+ հայկական (gaïcan?) լեզուի, կամ գործնական եղանակ փխրացընելու այս լեզուին ուսումը: *Պերոյինէֆ, այս պզտի երկասիրութեան հեղինակ՝ Պետրպուրկի համալսարանին մէջ հայերէն լեզուի ուսուցիչ էր, և կ'երեւի թէ շատ տարիներէ ի վեր Պրօսէ յանձնարարած էր նմա աշխարհիկ կամ խօսուած լեզուի քերականութիւն մը*

յօրինել։ Այս նկատմամբ կրնան աչքէ անցուիլ Պրօսէի նախապատրաստական տեղեկութիւնք՝ որ տպագրուած են ի Ցիշատակագիրս Ակադեմիոյ (Հատ. Գ. 1845. Հատ. Դ. 1846). ի 1846 գրուած երրորդ տեղեկագրին մէջ կը՛ հետեւցընէ Դեմիդոֆի սահմանած կէս մրցանակը պատկանեցընել, 2,500 ռուբլ. և այս մրցանակ 1851ին հրատարակուեցաւ ընդհանուր նիստին մէջ ի 24/12 մայիսի, և այն ատեն երեւցաւ Պրօսէի չորրորդ տեղեկագիրը... Պերոյիէֆ կարդաց իր գրուածքը Ակադեմիոյ Պատմական–բանասիրական նիստին մէջ (ի 1 հոկտ. 1851) և յորում որոշուեցաւ տպագրել իւր Ցիշատակագրոց (Bulletin) կարգին մէջ...

Անցնինք յիշատակել Կ. Եզովի, ի պաշտօնարանէ Հասարակաց կրթութեան, աւելի կարեւոր գրուածները։ Ռուս կամ հայ պարբերական գրուածոց մէջ 1857 էն ի վեր հրատարակած հատուածոց մէջ, մանաւոր յիշատակութեան արժանի կը սեպենք ուսումնասիրութիւն մը Ի վերայ վարդապետութեան մեծոյն Պօղոսի։ Լազարեան ուսումնարանին մէջ առանձին ընթացք բրած ատեն յօրինեց Եզով այս երկասիրութիւնը, և ի 1858 հրատարակեց յՕրագրի Նախարարութեան հասարակաց կրթութեան ի ռուս լեզու. և որոյ համար արծաթի մետալ ընդունեցաւ։ Հետեւեալ տարին հրատարակեց իւր բանմրցութիւնն՝ վարդապետի կամ մագիստրոսի (magister) աստիճանն ընդունելու. Ընտանեկան կեանք նախնեաց Հայաստանի, որ և ռուսերէնէ թանգմանեցաւ ի հայ։ 1884ին Եզով թարգմանեց ի հայ՝ Լեհաստանի լատին քարոզչաց երկու գրուած, ու կոչեց զայն Բանք վասն Լեհաստանի Հայոց ընդ եկեղեցւոյն Հռովմայ, դնելով ի գլուխ գրոցն 65 էջերէ բաղկացած յառաջաբան մը Հայաստանի մէջ կատարուած դէպքերուն վրայ՝ որովք բռնադատեցան ի դաւթականութիւն, և Լեհաստանի Հայոց վիճակին և վրանին յարուցուած կրօնական հալածանաց պարագայից։ Հեղինակը կը յաւելու դնել քանի մը հա-

տուածներ ի գրոց Առաքել պատմչի, որոյ երկասիրութեան նոր և լիակատար տպագրութիւն մը եղեր էր յէջմիածին, 1885ին: Ասողիկ պատմագրին գրուածքը տպագրեց Եզով, տասներորդ դարու պատմչի, իր մատենադարանին մէջ գտնուած գրչագրի մը համաձայն. 1887ին Ղեւոնդեայ երիցու (Ը դար) պատմական գրուածը, երկայն ներածութեամբ մը ի վերայ Արաբացւոց աշխարհակալութեանց՝ ըստ պատմչաց Հայոց, և անոնց վերաբերութեանց ընդ նուաճեալ ազինս: Իսկ ի 1891՝ տպագրել տուաւ զգաղղիական ժամանակագրութիւն Դարդելի (ԺԴ դար) 81 էջ նախաբանութեամբ ի վերայ Կիլիկիոյ, ժամանելոյ Հայոց յերկիրն, հոն հաստատուած հայկական թագաւորութեան սկզբնաւորութեան, վերաբերութեանց ընդ Խաչակիրս և ընդ քահանայապետաց Հռովմայ, և պատճառաց անկմանն: Կը յանձնարարենք մեր ընթերցողաց այս կարեւոր հրատարակութեանց ընթերցումը, և կը յուսանք թէ ինչպէս Պատկանեանի և Էմինի քանի մը գրուածքներ, ասոնք ալ պիտի թարգմանուին եւրոպական լեզուաւ մը:

***

Ձենք ուզեր յերկարել մեր խօսքը Քերովբէ Պետրոսեան Պատկանեանի կենսագրութիւնն ընելով. արդէն ըստ բաւականի ծանօթ է այն մեր ընթերցողաց, և երկու տարի յառաջ Վեսէլովսքի մասնաւոր գրքոյկով մը հրատարակեց, ի տպարանի Պետրպուրկի Գիտութեանց Ակադեմիային, և որոյ թարգմանութիւնը դրինք 1891 տարւոյ Բազմավիպի մէջ:

Ծնեալ ի Նոր Նախիջեւան (առ Դոն գետով) ի 4 մայիսի 1833 և հօրեղբօրորդի հռչականուն ազգային բանաստեղծին Ռափայէլի Պատկանեան: Նախնական ուսմանց ընթացքն ըրաւ ի գիմնազիոնին Ստաւրոպոլի և շարունակեց ապա յՈւսումնարանին Լազարեանց ի Մոս-

ւառաբարբառոց համար. նախ, Արարատեան կամ Կով-կասի բարբառը, որոյ մէջ պէտք է սեպել երկրորդական գաւառաբարբառք՝ որ ի գործածութեան են ի Ռուսիա և յԱնդրակովկասեան գաւառս. երկրորդ՝ Տփղիսու գա-ւառաբարբառը. երրորդ՝ արեւմտեան հայկական գաւա-ռաբարբառը՝ զոր կը խօսին Եւրոպիոյ Հայք, և Ասիոյ Տաճկաստանի մէջ բնակող Հայերէն մաս մը, և գրեթէ 30.000 Հայք ի Ռուսիա, (ի Խրիմ, Նոր Նախիջեւան առ Դոն գետով և ի Բեսարաբիա). չորրորդ, Վանի գա-ւառաբարբառը, հինգերորդ, Մոկացը. վեցերորդ, զոր չի նշանակեր հեղինակն. եօթներորդ, Սասունցոց լեզուն ի լերինս Տօրոսի. ութերորդ, Բէյլանի գաւառաբար-բառ ի շրջակայս Անտիոքայ. իններորդ, Զէյթունի կամ Ուլնիոյ լեզուն, ի լերինս կիլիկեան Տօրոսի. տասնե-րորդ, Ջօկերու բարբառը, զոր Ագուլեցիք ու Գարապա-ղի քանի մի գիւղերու մէջ կը խօսին. մետասաներորդ, Գողթան բարբառը, և երկոտասաներորդ, Հին Ջուղայի ու Հնդկահայոց մէջ գործածական լեզուն: «Այս եր-կոտասան գաւառաբարբառոց մէջ, — կը գրէր նոյն ա-տեն Պատկանեան, միայն երեք առաջինք մեզի քաջ ծա-նօթ են». ու ջանաց անկէ ետքը զանոնք ալ ծանօթա-ցընել: Ուստի 1865ին ղրկեց առ ուսուցիչն Հենր. Պե-տերման ի Պեռլին Ագուլեաց լեզուին վրայ տետրակ մը, որ գերման լեզուաւ հրատարակուեցաւ ի Monatsbe-richte ուսումնաթերթի Ակադեմիոյ Գիտութեանց ի Պեռ-լին, ի դասակարգի փիլիսոփայական, պատմական ու-մանց ի 26 Նոյեմբերի, 1866 (եր. 727–741): Հիմայ աւելի ծանօթադոյն է մեզ այս գաւառաբարբառ շնոր-հիւ ընտիր երկասիրութեան Սարգսի Սարգսեանց ի Լա-զարեան ճեմարանէ, և որոյ խորագիրն է [illegible], տպ. ի Մոսկուա ի 1883: Ի 1869 Պատկանեան հրատարակեց ի ռուս բարբառ [illegible] (Պետրպուրկ, 100 էջ.) և ո-րոյ վրայ 1875ին աւելցուց՝ նոյնպէս ի ռուս, « [illegible]

ներորդ դարու մատենագրի, ծանօթութեամբք և յաւելուածներով, զոր և տպագրեց ի տպարանի Գիտութեանց Ակադեմիոյ. և որոյ վրայ քննադատութիւն մը ըրաւ հմուտն Գ. Ի. Լերք ի Յիշատակագիրս կայսերական ընկերութեան Ռուս հնախօսութեան. (Հատ. Գ. 479-499). 1862ին հրատարակուեցաւ իր ռուս թարգմանութիւնն Սեբէոսի Պատմութեան է Հերակլ, հայ մատենագրի եօթներորդ դարու. (էջք ԺԶ-216), և նոյն տարւոյն նաեւ Ղեւոնդեայ երիցու Արաբաց արշաւանաց պատմութեան (էջք ԺԲ-861). 1863 տարւոյն ներկայացոյց իբրու քննադրութիւն (thèse) մագիստրոսի աստիճանի ընդունելութեան, իր Պատմական ճաշակ հարստութեան Սասանեանց (Essai historique sur la dynastie sassanide) ըստ տեղեկութեանց քաղելոց ի հայ պատմագրաց: Այս ուսումնասիրութիւն հրատարակեցաւ նախ ի ռուս լեզու Հնախօսական ընկերութեան գրուածոց արեւելեան մասին մէջ, և յետոյ Եւարիստ Պրիւտոմ թարգմանեց ի գաղղիարէն և տպագրեցաւ յԱսիական օրագրի, ի 1866 (Հատ. Ա. 801-231), և նոյն օրագրին մէջ ի 1868 (Հատ. Բ. 304) քննադատութիւն մը ըրաւ Լանկլուա:

Ի ռուս Համայնագիտական բառարանի հրատարակելոյ ի 1861-63, Պատկանեան հատուած մը գրաւ Հայոց պատմութեան, աշխարհագրութեան և մատենագրութեան վրայ: 1864ին վարդապետի ուսմանց աստիճանն ընդունեցաւ ի շնորհս քննադրութեանն ի ռուս լեզու, որ այս խորագիրն ունէր. Հետազօտութիւնք ի վերայ կազմութեան հայ լեզուի (էջ ԻԳ-106). թարգմանեցաւ ի գաղղիարէն յԵւարիստ Բրիւտոմէ (Recherches sur la formation de la langue arménienne), և Եդ. Տիւլօրիէ բաղդատելով ընդ բնագրին ծանօթութեամբք հրատարակեց յԱսիական օրագրի (Զրդ շար, Հատ. ԺԶ, 1870): Մտադիր ընթերցանութեան արժանաւոր է քննադատութիւնն զոր գրուածքիս վրայ հրատարակեց Փ. Յուստի ի Göttingische Gelehrte Anzeigen, 1866, էջ 991-1000 և ին։

որ նոյն նկատմամբ բսաւ Ե. Ռընան ի տեղեկագիրն ասիական ընկերութեան մատուցելոյ ի 28 յունիս 1870։ Պատկանեան կը դնէ զհայերէնն ի թիւս իրանեան լեզուաց, « վասն զի նոյն մասնաւոր ձայնական առանձնայատկութիւններն ունի, կ՚ըսէ, որ կը զանազանեն ըզգենտ ի սանսկրիտ լեզուէ ». և սակայն ի յաջորդ իջին կը յաւելու. « Քանի մը դիպուածոց մէջ հայկական լեզուն ձայնագիտական տեսակիտով շատ աւելի հին է քան զպարսկին ». և այս ըսածին՝ ապացոյցներ մէջ կը բերէ։ Ծանօթ է յայլուստ որ հմուտ ուսուցիչն բոլորովին թողուց ապա զիրանեան վարդապետականն. Տես « Տեղէ հայկական ի դասակարգէ հնդեւրոպական լեզուաց » հրատարակեալ ի ռուս լեզու ի շարս Վարդակաց Կայսերական Աշխարհագրական ընկերութեան, 1879. և որ թարգմանեցաւ ի գերման և ի հայ լեզուս։

Այս երկասիրութեան ներածութեան մէջ Պատկանեան իրաւամբք կը պնդէ ի վերայ կարեւորութեան գաւառաբարբառոց, որոյ արդէն ակնարկութիւնն ըրած էր Ջրպետ յԱմէնական Օրագրէ (էջ 139–146 գաղղիական թարգմանութեան, Զ շար Հատ. ԺԶ, 1871)։ Կը համարի թէ հայ գրաբարը Արարատեան գաւառին սովորական արքունական լեզուին վրայ հիմնուած է, որ դարինէն կը կոչուէր, (պարսկ. դարէ=լեզու արքունեաց). և թէ չորրորդ դարու սկիզբը, այս պաշտօնական լեզուն եղաւ միակ գրականական լեզու, և հինգերորդին մէջ՝ գիտ կամ կատարելագործութիւն հայ այբուբենին, միանալով աստուածաշունչ գրոց թարգմանութեան հետ, գործածութիւնն ընդհանուր ըրաւ բոլոր երկրին մէջ. անանկ որ բացարձակապէս գործածուեցաւ հայկական մատենագրութեան ամեղէն դարու հեղինակներէն։ Ըստ սի գրաբար հայերէնը ոչ երբեք ազգային ու կենդանի լեզու մը եղած է. և որ առաւել նկատելին է, երբեք աճումն կամ զարգացումն (développement) ունեցած չէ, այլ միշտ անշարժ ու կայուն (stationnaire) իբրեւ մեռեալ լեզու

մը։ Եթէ ուզուի՝ կարելի է հետևեալ նմանութիւն մը գտնել համեմատութեան ընդ կազմութեան գերման լեզուի, որ նոյնպէս գիւանգիտութեան մէջ գործածական լեզուէ յառաջացած է։ Արարատեան ռամկական լեզուին հետ պէտք էին ըլլալ այլևայլ աշխարհիկ գաւառաբարբառք, և աշխարհաբար անունը արժան էր հաւաքաբար հասկնալ։ Նոյն իսկ Հայաստանի բազմարկածեան երկիրը՝ թոյլ թէ բաւական պիտի ըլլար այս ենթադրութիւնը արդարացընելու համար։ Գտնուած են արդեօք մատենագիրք որ այս գաւառական բարբառներուն մէկումը գրած ըլլան։ Մենք չենք գիտեր զայս, և եթէ գիտնալու ալ ըլլայինք, անկէ մեծ շահ մը չկար մեզի համար, որովհետև ընդօրինակողք զանոնք գրաբարի վերածած պիտի ըլլային։ Բայց բարերաղդաբար լեզուի գիտութեան շահուն համար, դեռ կարելի է մեզ ուսումնասիրել արդի գաւառաբարբառները, որ անշուշտ հին լեզուաց սերունդք են, յորոց եթէ մաքրենք ինչ որ ներմուծուեր են ի գրացեաց կամ յարշաւանաց, նկատելով նաև խաչակրութեանց անցքը, ուրիշ լեզուաց վրայ առնուած այլ և այլ փոփոխութիւնք ի նմանօրինակ առիթս, կ'ապացուցանեն թէ քիչ է տարբերութիւնն հին գաւառաբարբառի մը ու իրեն արդի ներկայացուցչին մէջ։ Արդէն չորեքտասաներորդ դարու մատենագիր մը՝ Յովհաննէս Երզնկացի, Դիոնեսիոսի Թրակացւոյ քերականութեան մեկնութեանը մէջ, ութ հին գաւառական լեզու կը հաշուէ. Ա. Կորճայք (Մոկք?), Բ. Տայեցի, Գ. Խութայեցի, Դ. Սպերի, Ե. Չորրորդ Հայոց, որ արևմտեան Հայոց լեզուն էր, Զ. Սիւնեաց (Ջօկ), Է. Արցախոյ, Ը. Ոստանիկ արարատեան. և կը յաւելու՝ թէ գրական դաստիարակութեան համար՝ կը բաւէ այս վերջին լեզուն։ Սակայն մետասաներորդ դարէն կը գտնուին ի հայ մատենագրութեան այլ և այլ էջք, նա և ամբողջ ճառք՝ աշխարհիկ լեզուով գրուածք։ Պատկանեան հետևեալ դասակարգութիւնը կը դնէ՝ մեզի ծանօթ գա-

ռուսաբարբառոց համար. նախ, Արարատեան կամ Կովկասի բարբառը, որոյ մէջ պէտք է սեպել երկրորդական գաւառաբարբառք՝ որ ի գործածութեան են ի Ռուսիա և յԱնդրկովկասեան գաւառս. երկրորդ՝ Տփղիսու գաւառաբարբառը. երրորդ՝ արեւմտեան հայկական գաւառաբարբառը՝ զոր կը խօսին Եւրոպիոյ Հայք, և Ասիոյ Տաճկաստանի մէջ բնակող Հայերէն մաս մը, և գրեթէ 30,000 Հայք ի Ռուսիա, (ի Խրիմ, Նոր Նախիջեւան առ Դոն գետով և ի Բեսարաբիա). չորրորդ, Վանի գաւառաբարբառը, հինգերորդ, Մոկացը. վեցերորդ, զոր չի նշանակեր հեղինակն. եօթներորդ, Սասունցոց լեզուն ի լերինս Տօրոսի. ութերորդ, Բէյլանի գաւառաբարբառ ի շրջակայս Անտիոքայ. իններորդ, Զէյթունի կամ Ուլնիոյ լեզուն, ի լերինս կիլիկեան Տօրոսի. տասներորդ, Զօկերու բարբառը, զոր Ագուլեցիք ու Գարադաղի քանի մի գիւղերու մէջ կը խօսին. մետասաներորդ, Գողթան բարբառը, և երկոտասաներորդ, Հին Ջուղայի ու Հնդկահայոց մէջ գործածական լեզուն: «Այս երկոտասան գաւառաբարբառոց մէջ, — կը գրէր նոյն ատեն Պատկանեան, միայն երեք առաջինք մեզի քաջ ծանօթ են». ու ջանաց անկէ ետքը զանոնք ալ ծանօթացընել: Ուստի 1865ին ղրկեց առ ուսուցիչն Հենր. Պետերման ի Պեռլին Ագուլեաց լեզուին վրայ տեսութիւն մը, որ գերման լեզուով հրատարակուեցաւ ի Monatsberichte ուսումնաթերթի Ակադեմիոյ Գիտութեանց ի Պեռլին, ի դասակարգի փիլիսոփայական, պատմական ուսմանց ի 26 Նոյեմբերի, 1866 (եր. 727–741): Հիմայ աւելի ծանօթագոյն է մեզ այս գաւառաբարբառ շնորհիւ ընտիր երկասիրութեան Սարգսի Սարգսեանց ի Լազարեան ճեմարանէ, և որոյ խորագիրն է [illegible] [illegible], տպ. ի Մոսկուա ի 1883: Ի 1869 Պատկանեան հրատարակեց ի ռուս բարբառ [illegible] (Պետրպուրկ, 100 էջ.) և որոյ վրայ 1875ին աւելցուց՝ նոյնպէս ի ռուս, «[illegible]

ատամնամաքրութեան հայ ձեռագրութեանց. Ա. Նախիջեւանի գաւառաբարբառ էջ ԺԶ–140. որ ուրիշ նիւթերէ զատ կը պարունակէ երեք վէպ Ռափայէլ Պատկանեանի, որ թարգմանուեցան ի գերման յԱրթիւր Լէյստէ ի Հայ-կան մատենադարանէ Արգարու Յովհաննիսեան (տպագր. ի Լէյպցիկ առ Գ. Ֆրիտրիխ 1886)։ Բ. Մշոյ բարբառը (էջք ԺԲ–72) համդերձ արձակ լեզուաւ գրուած վիպասանականաւ «Սասունցի Դաւիթ» ըստ բնագրին հրատարակելոյ ի 1874 ի Սրուանձտեանց Գարեգին Վարդապետէ Գրոց և Բրոց կոչուած երկասիրութեան մէջ։ Կարելի է համեմատել այս վիպասանութիւնը ուրիշ ժողովրդական վիպասանութեան մը, Մհերի Դուռ անուար քերթուածին հետ՝ հրատարակելոյ յԱբեղեանէ ի Շուշի, 1889 (էջք 64), ինչպէս նաեւ «Լէօնիի» մէկ հատուածը այս նիւթին նկատմամբ Մոսկուայի Պատմա-կան ու Գրականական հանդիսին մէջ, և առանձինն տպագրուած առ Մկրտչի Բարխուդարեանց, ի Մոսկուա, 1891, էջք 42։ Ո՞վ գիտէ թէ պիտի չըլլայ օր մը՝ յորում կարելի ըլլայ ի մի հաւաքել հայկական դիւցազնական քերթուած մը՝ բերնէ բերան աւանդութեամբ պահուած, ինչպէս Փիննեաններու Գալէվալա քերթուածը։

Բանասիրական ուսումնասիրութիւնք են Պատկանեանի հետեւեալ երկասիրութիւնք. «Հայերէն լեզուէ բառարան մը շինելու նիւթեր. մասն Ա (1882), մասն Բ (1884) ի ռուս լեզու. Քանի մը խօսք՝ կովկասեան Ցիգաններու լեզուին վրայ, ի Պետրպուրկ 1887, նոյնպէս ի ռուս, և որոյ վրայ տեսութիւն մը ըրաւ Հանուշ ի Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes, ի 1887, և ուրիշ բանաէր մ'ալ, K. J. ի Յիշատակագիրս արեւելեան բաժնի ռուս Հնախօսական ընկերութեան, ի հատորն Բ (էջք՝ 147–157)։

Գտանանք իր երկասիրութեան որ Հնդեւրոպականն է վերայ կազմութեան հայերէն լեզուի խորագիրը կը կրէ. յորում

ներածութենէ մը ետքը այն գաւառաբարբառներու վրայ զոր յիշատակեցինք, հեղինակն քանի մի գաղափար կը յայտնէ Մեսրոպեան այբուբենին ծագման կամ սկզբնաւորութեան վրայ։ Նմին՝ գրուածքի մը մէջ Հայկական այբուբենից վրայ, որ Խորենացւոյ պատմութեան ռուս թարգմանութեան մէջ դրուած յաւելուածոց չորրորդն է (Մոսկուա, 1858), կը ցուցընէ թէ Մեսրոպէն շատ յառաջ հայկական տառք կային, և թէ անոնցմէ մէկն էր սա Դանիէլի ասորւոյ գտնուածը. և Մեսրոպ ուրիշ բան չէ ըրած՝ բայց կատարելագործել դանիէլեան նշանագիրք, որ ըստ Գրիգորի Մագիստրոսի՝ քսանուչորս տառերէ ձեւացած էին։ Սակայն Նմին հետեւող է Վարդանայ կարծեաց որ կ'ըսէ՝ թէ դանիէլեան տառք քսանուերկու էին, որոց վրայ յաւելան ի Մեսրոպայ եօթն ձայնաւորք և եօթն բաղաձայնք։ Պատկանեան կը ջանայ հերքել այս ենթադրութիւնը. բայց իր պատճառաբանութիւնք մեր օրերուն ոյժ մը չունին այլ եւս։

Հետազօտութեանց առաջին գլխոյն մէջ՝ Պատկանեան կը ճառէ ձայներու (կամ մանաւանդ տառից, հայերէն լեզուի, բաղդատելով ուրիշ համազգի լեզուաց տառից հետ. (152–186)․ Տիւլորիէ մեղադիր կ'ըլլայ իրեն որ պէտք եղած կարեւորութիւնը չտար ը ձայնին, որ ղեղչուած կամ կորսուած ձայնի մը տեղ կը դրուի։ Երկրորդ գլխոյն մէջ կը խօսի քերականական ձեւերու վրայ, այսինքն՝ անուններու հոլովմանց, (186–227), դերանուանց (227–242), բայերու լծորդութեանց (242–285)․ Տիւլորիէ ասդիս անդին ուղղութիւններ և մեծապէս հետաքննական ծանօթութիւնք կը դնէ․ ի մէջ այլոց՝ ձայնաւորաց ստորհանները։ Մանրամասն չենք ուզեր խօսիլ, որովհետեւ Պատկանեանի այս երկասիրութիւն, ինչպէս Տիւլորիէի դիտողութիւնք՝ ուղղուելու կամ կատարելագործուելու պէտք ունին՝ գիտութեան ձեռք բերած արդի արգասեօք։ Բայց եթէ նկատենք ժամանակն յորում հրատարակուեցաւ, պէտք է խոստովանինք՝ թէ

հայերէն լեզուի բանասիրական ուսումնասիրութեան ըն-
գալի զարգացման՝ մեծապէս օժանդակած է։

Բաց ի բանասիրութենէ՝ Պատկանեան հետամուտ էր ուսման իր երկրին հնախօսութեան և պատմութեան, և անշուշտ շնորհիւ դասախօսութեանց Քասումլիչի հռչակաւոր իրանականին, որ յայնժամ ժամանակի ուսուցիչ էր ի Լազարեան ճեմարանին, սկսաւ ընթեռնուլ վանական կոչուած բեւեռաձեւ արձանագրութիւնքը։ Այս նիւթերուն վրայ իր գլխաւոր հրատարակութիւնք հետեւեալներն են. Ա. Քննադատական հրատարակութիւն Հայաստանի Լուսաւորութեան Տնտեսական արձանքը (ի ռուս). տես Վանայ Երրորդ քառավէմ Արեւելագիտաց, հրատարակելոյ ի Բ. Բ. Գրիգորիեւի (Պետրպուրկ, 1880) և թարգմանուած ի հայ ի Փորձ հանդիսի, (1880, թիւ 10). Բ. Ի լրագրի Հասարակաց կըրթութեան պաշտօնարանին (Պետրպուրկ, Յուլիսքեւ) չորհատուած հրատարակեց Վանի արձանագրութեանց, և անոնց Ասիոյ նախնական պատմութեան կարեւորութեան վրայ. նոյնպէս ալ անոնց ընթերցման դրութեան վրայ, զոր քննադատեց Փարիզու ուսումնաթերթն Հանդէս գրականութեան, 1883. Ի վերայ աշխարհագրութեան մասինին ընծայելոյ Մովսէսի Խորենացւոյ. — Գ. Նոր գտնուած տանէ մը ենական արձանագրութեանց վրայ (գաղղիարէն) ի Մուսէոն հանդիսի Լուվանիոյ, 1882։ Դ. Պատկանեան և Սէյս. Քանի մը նորագիւտ բեւեռակերպ գրութեանց վրայ ի սահմանս Ռուսիոյ, ի նոյն Մուսէոն լրագրի, 1883 թիւ. 3. 350-364։ — Ե. Քանի մը խօսք՝ հայկական հին ամիսներու անուանց վրայ. տպ. ի Պետերպուրկ, 1871. ի ռուս լեզու. հետեւեալ 1872 տարւոյն հրատարակուած է ի Վատակս Արեւելեան բաժնի ռուս հնախօսական ընկերութեան, ի հատորն Ժէ, 1872, էջք 295–339. Նոյնպէս և Յուստի գերման լեզուով ի լոյս ընծայեց յ'Ausland օրագրի, 1872 ի 5 փետր. ի հատուածին Յաղագս հնագոյն պատմութեան Հայոց Ueber die älteste armenische Geschichte. Այս գրուածին յառաջաբանին մէջ Պատ-

ներեակ մանկավարժական գործունէութեան Մ. Ց. Էմինեան. Մոսկուա, 1887»: Բայց այս հանդէսէն գրեթէ վեց տարի յառաջ գրաւոր աշխատանքէ դադրած էր Էմին. վասն զի 1881 ին ի Տփղիս գումարուած հնախօսական ժողովոյն ներկայ գտնուելէն ետքը՝ կաթուածահար եղաւ, որ երկար և ցաւագին հիւանդութեամբ տառապելով, յ'19 դեկտ. 1890 վախճանեցաւ եօթանասուն և եօթնամեայ հասակին: Ճեմարանի և Վենետկոյ Մխիթարեանց ձգած գումարի մը շնորհիւ տարուէ տարի կարելի պիտի ըլլայ տպագրել յիշատակարաններ մը հայկական ուսմանց՝ որոց բարգաւաճմանց այնչափ եռանդն երեւցուց ի կեանս:

Իր գլխաւոր երկասիրութիւններն յիշատակելով բաւականանանք, քիչ մը յերկարելով մատենախօսական տեղեկութեանց վրայ, որպէս զի ընթերցանելեան հետաքրքրութիւնը գոհ ընենք:

Գաղղիական լեզուով հրատարակեց Էմին Փաւստոս Բիւզանդացւոյ պատմութիւնը, և տպագրուած է Լանգլուայի Հայ պատմագրաց հաւաքման մէջ, ի հատորն Ա. Փարիզ (առ Տիտոյի, 1867): Քննադատական տեսութիւն մը հրատարակեցաւ ի Տիւլորիէէ յ'Օրագրին Իմաստնոց (Journal des Savants), ի 1869, յամսաթերթս հոկտեմբերի և նոյեմբերի. ուրիշ մ'ալ գերման լեզուով ի Göttingische gelehrte Anzeingen, ի 24 յունիսի 1868 տարւոյ. և որ թարգմանուեցաւ ի հայ ի Հայկական աշխարհ ամսաթերթս Տփղիսի, 1868 թիւ 12:

Թարգմանեց Էմին ի ռուս բարբառ զպատմութիւն Մովսիսի Խորենացւոյ, զընդհանուր պատմութիւն մեծին Վարդանայ և զՍտեփանոսի Տարօնեցւոյ: Խորենացւոյ պատմութիւն տպագրեցաւ ի Մոսկուա (առ Խատկովի) ի 1858, էջք 384+ը. և այսպիսի է ցուցակ բովանդակութեանն, Ներածութիւն (1–26): Թարգմանութիւն պատմութեան Խորենացւոյ (27–132): Հինգ հարիւր վաթսուներեք թիւ ծանօթութիւնք (133–329): Ցուցակ թա-

Վերջացընենք ի Պատկանեանէ հրատարակուած պատմական գրուածներով. և են Ա. Ճաշակ ի վերայ Նախնական պատմութեան Քրիստոնէութեան Հայոց, ռուս լեզուով, և յաւելուլ յԸնդհանուր պատմութեան Քրիստոնէութեան հրատարակելոյ ի Գործէ, ի չորրորդ տետրի, Պետրպուրկ 1880։ — Բ. Դիտողութիւններ, շատ ուշի առջեւ առնելու արժան է ի հրատարակել շարունակեալն աղբերս աշխարհին պատմութեան ի Քունիքէ և ի Ք. Պ. ի Գործս Ռուսական հնախօսական ընկերութեան, ի հատոր Ը։ — Գ. Ժամանակագրական պատմութիւն Մխիթարայ Այրիվանեցւոյ (ԺԳ դար). հայ բնագիրն ի 1867, թարգմանութիւնն ի ռուս ի 1869, և երկուքն ալ յաւելուլ ի Գործս Արեւելեան բաժնին ի հատորն ԺԴ (էջք 223—418)։ — Դ. Օրագիր պաշարման Սպահանու յԱֆղանաց ի 1722—3, գրեալ ի Պետրոսէ Սարգսեան, ի Յիշատակարանս Պետրպուրկի կայսերական Գիտութեանց Ակադեմիոյ, ի հատորն ԺԷ, մասն Գ. էջ ԼԲ–58։ — Ե. Պատմութիւն Մաղաքիայ աբեղայի (ԺԳ դար), հայ բնագիրն ի 1870, ռուս թարգմանութիւնն ի Պետրպուրկ ի 1871 (էջք Ժ–106)։ — Զ. Պատմութիւն Մոնղոլաց, ըստ պատմըչաց Հայոց երեքտասաներորդ դարու, անոնց այլ և այլ հատուածներն մէջ բերելով ու թարգմանելով ի ռուս՝ հանդերձ ծանօթութեամբք. երկու պրակք, տպագրեալք ի Պետրպուրկ ի 1873-74։ — Է. Անանիա Շիրակացի, հայ բնագիրն, տպ. ի Պետրպուրկ ի 1877։ — Ը. Պատմութիւն Հերակլի ի Սեբէոս եպիսկոպոսէ (Է դարու պատմիչ), հանդերձ շարունակութեամբ պատմութեան Մխիթարայ Անեցւոյ, (ԺԲ դար), հայ բնագիրն տպ. ի Պետրպուրկ, 1879։ — Թ. Մատենախօսութիւն հայ պատմական գրականութեան (ի ռուս). տպ. ի Պետրպուրկ 1880, ինչպէս նաեւ ի Գործս Գ. Գումարման Արեւելագիտաց. (Հատ. Ա. էջք 455–511). Թարգմանութիւնն ի հայ ի Փորձ հանդիսի, 1880. ուստի թարգմանեալ և տպ. ի Տեսութիւն (Obzor) լրագրի, ի թիւս 441–43, ի

1880․ ինչպէս նաեւ Տիլլոն արեւելագիտին կողմանէ գրուած քննադատութիւն մը ի Մուսէոն լրագրի Բելճիոյ, 1882․ թիւ 1։ — Ժ․ Փաւստոսի Բիւզանդ․ հայ բնագիր Պետըրպ․ 1883։ — ԺԱ․ Բանք չափաւ Յարութեան վարդապետի Ալամդարեանց․ հայ բն․ Պետրպ․ 1884։ — ԺԲ․ Հատընտիր ի գրոց պատմագրաց Հայոց, ի հայ․ տպ․ ի Պետըրպ․ 1884։ — ԺԳ․ Պատմութիւն Թովմայի Արծրունւոյ․ հայ բն․ տպ․ ի Պետրպ․ 1887․ տես նաեւ ի Գործս Հնախօսական ընկերութեան Տփղիսու․ ի Մոսկուա 1887։ — ԺԴ․ Քննադատութիւն ի վերայ գրոցն Լաւէրի՝ Հայկական ընտիր հատուածք (Armenische Chrestomathie) ի Քննադատական համաշխարհին հանդէսի (Revue critique internationale), 1881։ — ԺԵ․ Կենսագրութիւն և գրականական վաստակ Սէն-Մարտէն հայագէտի, ի Փորձ հանդիսի 1881, թիւ 5։ — ԺԶ․ Քննադատութիւն աշխարհագրութեան Մովսէսի Խորենացւոյ հրատարակելոյ ի Հ․ Արսէնէ Սուքրի․ ի Մուսէոն լրագրի, 1882 (էջք 447–452) K. de Restaing ստորագրութեամբ։ — ԺԷ․ Աշխարհագրութիւն Հայաստանի, ընծայելոյ Մովսիսի Խորենացւոյ, հայ բնագիր, թարգմ․ ռուս և ծանօթութիւնք․ տպ․ ի Պետրպ․ ի 1877 (էջք ԻԸ+84+26), աշխարհացոյց տախտակօք․ քննադատութիւնն ի Փորձ հանդիսի 1877, թիւ 4։

Արդէն համառօտեցինք Պատկանեանի կենսագրութիւնն մինչ ի 1862․ 1872 թուականին թոշակաւոր ուսուցիչ եղաւ ի համալսարանին Պետրպուրկի, և ի 1885 թղթակից անդամ Գիտութեանց Ակադեմիոյ։ Ճանապարհորդութիւններ ալ ըրած է ի Գաղղիա, ի Գերմանիա, յԻտալիա, ի Կովկաս և այլուր․ մեռաւ յ'2 ապրիլ 1889։ Իր որդին, Ս․ Պատկանեան, թէպէտ գիտութեանց հետամուտ, բայց բանասիրական ուսմամբք ալ կը զբաղի, որովհետեւ երկասիրած է ընտիր հեղինակութիւն մը Ռուսական վիպասանականաց վրայ, և որ հրատարակուած է ի Պետրպուրկ, 1891։

Կը մնայ մեզ խօսիլ Մկրտիչ Էմին բանասիրին վրայ,

գաւորաց Հայաստանի (138)։ Յաւելուածք. Ա. Աշխարհագրութիւն Հայաստանի (335–351)։ Բ. Քսենոփոնի Դաստիարակութիւն Կիւրոսի գրքէն հատուած Գիրք Գ. գլ. Ա. (451–358)։ Գրոց հին ցուցակէ մը քաղուած (458–360)։ Դ. Հայերէն այբուբենի վրայ ի վեց գլուխ՝ համդերձ տախտակօք (361–376)։ Ե. Քաղուած ի գրոց Սէն Մարտենի (376–7)։ Զ. Ծանօթութիւնք յաւելուածականք ի վերայ հայ այբուբենին. (377–383)։ Նոր տպագրութիւն մը նոյն գործոյն՝ յետ մահուան թարգմանչին, հրատարակութեամբ Գր. Խալաթեանց։

Ինչպէս յառաջ ակնարկեցինք, Հայկական աշխարհի վրայի յօդուածը ի 1865 թարգմանեց ի գաղղիարէն Եւարիստ Բրիւտոմ և հրատարակեց յԱրեւելեան հանդէսէ։

Վարդանայ մեծին ընդհանուր պատմութեան ռուս թարգմանութիւնը հրատարակեցաւ ի Մոսկուա ի 1861։ Այս ընտիր աշխատասիրութիւն՝ հետեւեալ գլուխներու բաժնուած է. — Ներածութիւն (Ա. — ԻԴ)։ Թարգմանութիւն բնագրին (1–202)։ Եօթն հարիւր վաթսուն և վեց ծանօթութիւնք, և յաւելուածք (1–217). որ են Մահմէտ՝ ըստ հայ պատմագրաց՝ Մովսիսի Կաղանկատուացւոյ, Թովմայի Արծրունւոյ և Կիրակոսի Գանձակեցւոյ։ — Քաղուած ի Սեբէոսէ, գիրք Գ. գլ. Լ. (163-72 էջք ըստ տպագրին Կոստանդնուպոլսի 1851 տարւոյ)։ Քաղուած ի Գրիգորէ Մագիստրոսէ, հայ բնագիրն։ Քաղուած ի Սամուելէ Անեցւոյ, հայ բնագիրն. Թարգմանութիւն Կիրակոս պատմչի, և այլն։

Վարդանայ բնագրին ալ հրատարակութիւնն, որ նախկին տպագրութիւն (Princeps) է նոյն մատենագրութեան, եղաւ խնամովք Էմինի ի Մոսկուա, նոյն 1861 թուականին, Զ+218 էջերու մէջ ամփոփուած. երկու գրչագրաց հետեւողութեամբ, յորոց մին անթուական՝ և ի մատենադարանէ գիտուն հրատարակչին, և միւսն 1814 թուականի ընդօրինակութիւն՝ հրամանաւ Ներսի-

սի Աշտարակեցւոյ՝ Վրաստանի արքեպիսկոպոսի, Էջմիածնի մատենադարանի մէջ պահուած հնգետասաներորդ դարու գրչագրի մը վրայ, և ընծայեալ ի Նմանէ Խումիանցով կոմսին։

Պետրպուրկի Գիտութեանց Կայսերական Ակադեմիոյ Յիշատակարանաց մէջ (Է շար., հատ. Դ. թիւ 9, 1862) Պրոսէ հրատարակեց այս տպագրին և թարգմանութեան վրայ մեծապէս հետաքննական տեսութիւն մը։ Դիտողութիւն ընել կու տայ որ շատ տեղ բռնադատուած է հզօր մրցման՝ կարգէ դուրս սեղմ բնագրի մը դիմաց. կրնար նաև յաւելուլ՝ անգիտաբար կրճատեալ և խառնակ անհոգ և տգէտ ընդօրինակողաց ձեռքով։ Տպագրութիւն մ'ալ Վենետկոյ Մխիթարեանք հրատարակեցին (ԺԳ+184) ի 1862, շատ հմուտ՝ բայց դժբաղդաբար սակաւաթիւ ծանօթութիւններով։ Կը յուսանք որ քիչ ատենէն ճանչցուելով այլեւայլ ընթերցուածոց կարգադրութեան օգուտը, ռուս լեզուէ շատ աւելի տարածուած լեզուով Վարդանայ պատմութեան թարգմանութիւն մը ընծայուի։

Ինչ որ Վարդանայ՝ նոյնն ըրաւ Էմինեան նաև ուրիշ ոչ նուազ կարեւորագոյն հայ պատմչի մը, Ստեփանոսի Տարօնեցւոյ՝ Ասողիկ կոչեցելոյ. որոյ երկասիրած պատմութեան ռուս թարգմանութիւն հրատարակեցաւ ի Մոսկուա ի 1864. որ կ'ամփոփուի 1–209, բուն բնագրին թարգմանութիւն, ու շատ ծանօթութիւնք և յաւելուածք կը պարունակէ, որով ամբողջ գիրքն է Ի×336 էջ։ Ծանօթ է բանասիրաց, որ Տիւլորիէ հայագիտին ձեռքով եղած գաղղիական թարգմանութեան առաջին հատորն արդէն հրատարակուած է, և Գարրիէր հետամուտ է ի գլխաւորել զայն։ Իսկ բնագրին՝ փառաւոր և ընտիր տպագիր մը ունինք հիմայ՝ Եզովլի խնամօք։

Հետեւեալներն են Էմինեանի ուրիշ հայ մատենագրութեանց թարգմանութիւնք ի ռուս.

Ա. Ներսիսի Լամբրոնացւոյ արքեպիսկոպոսին Տար-

թեան ուսուցչէ Լազարեան ուսումնարանի ի Մոսկուա. Մովսէս Խորենացի և հին Հայոց վէպերը խորագրով, որ նախ տպագրեցաւ յԱրձագանք օրագրի, և ապա առանձին տետրակով ալ ի Տփղիս, 1886: Հետեւեալ տարին, նոյն քաղաքին մէջ, երկրորդ թարգմանութիւն մ'ալ հրատարակեցաւ ի Խ. Ցովհաննիսեանէ: Յիշենք նաեւ Մեղու Հայաստանի լրագրին մէկ քննադատութիւնը ի 1871, թիւ 163 և 164:

Այս «Պատմական երկերէն» զատ՝ ուրիշ ընտիր գրուածք մը ունի Էմին, նոյնպէս ի ռուս լեզու, Հետազօտութիւնք ի վերայ հեթանոսական կրօնից Հայոց կոչուած, Մոսկուա 1864: Գաղղիական թարգմանութիւն մը կայ գրուածքիս ի Տըւթաւլերէ, և զետեղեալ ի Հանդէսն Արեւելից: Իսկ եղած քննադատութեանց նկատմամբ՝ յիշատակութեան արժանաւոր է Լանկլուայինը ի Հիւսիս (Nord) լրագրի, ուստի թարգմանեցաւ ի ռուս և տպագրեցաւ երկու օրագրաց մէջ:

Այսոնցմէ զատ հրատարակած է Էմին նաեւ հետեւեալքը՝ Հայոց և հայերէն լեզուի նկատմամբ, ի ռուս բարբառ.

Հետազօտութիւնք ի վերայ դաւանութեան առաքելական եկեղեցւոյ հայաստանեայց, ի Մոսկուա, յՈւղղափառ հանդէսի, 1864:

Վահագն Վիշապաքաղի վրայ հրատարակուած հատուածները. Մոսկուա, 1873:

Տեղեկութիւնք Կարսայ հին եկեղեցւոյն վրայ, ի լրագրին Մոսկուայի, 1879, թիւ 49:

Գաղթականութիւնք Հրէից, ի հինն Հայաստան, որ տպագրեցաւ ի Յիշատակագրի Հնախօսական ընկերութեան Մոսկուայի, հատոր Ը, 1880:

Քննադատութիւն մը Ռընանի յայտնած մէկ կարծեաց վրայ Արիստիդեայ ջատագովութեան գրոց նկատմամբ, ռուս Քննադատական հանդէսի մէջ:

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՀԵՆՐԻ ԳԵԼՑԵՐ

*Հենրի Գելցեր ծնաւ յամի* 1847 *ի Բերլին ի* 1 *յուլիսի։ Երեք տարեկան էր երբ հայրը ընտանեօք փոխադրուեցաւ Զուիցերիոյ Բալ կամ Բազիլէա քաղաքը։ Հոն յաճախեց ի դպրոցս* 1854*էն* 1865, *և ի համալսարանն* 1865*էն* 1867։ 1867*էն* 1869 *գնաց ի Կէօտինկէն, ուր ուսմունքը առաջ տարաւ, հետևեալ վարժապետաց մօտ, Կուրտիուսի (այժմ ի Բերլին) Սոպպէ Հերմանի* (+ 1894) *և Վաշմուտի (այժմ ի Լայպցիկ)։ Ի Կէօտինկէն իւր վարդապետութեան աստիճանի բանմրցութիւնն ըրաւ։ Յետոյ* 1869*էն* 1873 *ուսուցչութիւն ըրաւ Բազիլէայի կրթարանին.* 1872*էն* 1873 *կը յաճախէր նաև նոյն քաղաքի* « Privatdozent » *համալսարանը։ Նոյն* 1873*ին կոչուեցաւ իբրև արտաքոյ կարգի* (extraordinaire) *ուսուցիչ հին պատմութեան ի Հայդելբերգ. ուր հինգ տարի ըրաւ իւր ուսուցչութիւնը։* 1878*ին եղաւ սովրական* (ordinaire) *ուսուցիչ, դասական բանասիրութեան և հին պատմութեան Ճենայ քաղաքի համալսարանին, ուր է մինչև ցայժմ։*

*Գելցեր հրատարակած է բազմաթիւ պատմական և քննադատական գրուածքներ ի գերման լեզու։* 1871–72 *ուղևորութիւն մ'ըրած է ի Փոքր Ասիա և ի Յունաստան իւր Կուրտիոս և մի քանի այլ ուսուցչաց ընկերութեամբ, և այդ պատճառաւ գրած է տեղագրութիւնք այլ և այլ տեղեաց։*

*Ինչպէս յեւրոպացի հայագիտաց շատերը այցելած են ի վանս Ս. Ղազարու, նոյնպէս և Գելցեր տարւոյս մէջ Վենետիկ գալով մի քանի օր այցելեց ի Վանս, դրա-*

դելով Բիւզանդայ պատմութեան բաղդատութեամբ։ Գրեթէ աւելի վերջերս սկսած է Գելցեր զբաղիլ հայկական ուսմամբ և այդ պատճառաւ մինչեւ ցարդ հրատարակած գրուածքներէն խիստ նուազունք կը պատկանին մեր մատենագրութեան։ Յիշենք միայն իւր գրուածքներէն միքանին. Գէորգ Կիպրացւոյ տեղագրութիւն Հռովմէական գաւառաց» Georgii Cyprii descriptio orbis Romani. *Leipzig* 1890. «Դիցաբանութիւն Հայոց» Die Armenische Mythologie. տարւոյս մէջ հրատարակեց ի կայսերական ընկերութեան հանդիսի և առանձին գրքոյկ մը «Սկիզբն հայկական Եկեղեցւոյ» խորագրով գրուածք մը. Die Anfäge der armenischen Kirche. Գելցերի այժմեան անքոյթ ջանքն յուսումն հայկական մատենագրութեան, յետագայ տարիներու մէջ կը խոստանայ երկասիրել և հրատարակել բազմաթիւ ընտիր գրուածքներ յօգուտ մեր պատմութեան և մատենագրութեան և ի պատիւ իւր անուան։

Յիշելու արժանի է նաեւ Հերնրիկ Գուալէն, Գերմանացի հայագէտն որ մեծապէս հետաքրքրուելով հայ լեզուի ուսմամբ և մատենագրութեամբ, ոչ ինչ նուազ ջանքով և տոկունութեամբ ուսած է հայերէն լեզուն և միանգամայն ծանօթացած մեր նախնեաց մատենագրութեան։ Ինքն այժմ Ստրասբուրգ կը գտնուի և զինուորական ժողովրդապետ է (Curé militaire). իւր մեզի ծանօթ հայկական մատենագրութեան վերաբերեալ գրութիւնն է Յաղագս հայկական մատենագրութեան գլխաւորապէս Նախնեաց թարգմանութեանց ի լատին լեզու. նոյնպէս նաեւ Յայտնութեան Յովհաննու հին թարգմանութիւն, ոչ Լամբրոնացւոյն. այս երկու գրութիւնքն եւս դեռ տպագրութեամբ ի լոյս ընծայուած չեն։

Նոր հայագիտաց կարգէն կրնայ համարուիլ նաեւ Զուեցերացի ուսուցիչն իմաստասիրութեան Օգոստ Պուրկարդ։



Գրքոյս վերջ հասնելով հոս կ'արժէ որ Շրումպֆի յաւելուածով համառօտիւ յիշատակութիւն մը ընենք՝ հայ ազգին վերաբերեալ այն ամէն եւրոպական լեզուով հրատարակութեանց, որ եղած են խնամօք և ի ձեռն Մխիթարեանց Վենետկոյ և Վիեննայի։ Արդէն խօսեցանք Եւսեբեայ Քրոնիկոնին կամ Ժամանակականաց ի լատին թարգմանութեան և տպագրութեան վրայ՝ Աւգերեան Հ. Մկրտչի ձեռքով։ Գեր. Սուքիաս Սոմալ առաջին եղած է Եւրոպացի գիտնոց մատուցութիւնն հրաւիրելու հայկական մատենագրութեան մէջ պահուած բազմաթիւ գանձերուն վրայ, իր երկու իտալական լեզուով հրատարակութեամբք, որ են Գրացուցակ դասական երկոց սրբոց Հարց և այլոց մատենագրաց որ ի նախնեաց թարգմանեալ են ի հայ (Catalogo delle opere classiche dei SS. Padri e di altri scrittori tradotte anticamente in armeno) 1825 և Պատկեր մատենագրական պատմութեան Հայաստանի (Quadro della storia letteraria di Armenia), 1829։ Յայտնի է որ Մխիթարեանք դեռ հետամուտ չեն եղած ընդարձակել այս փորձերը, հրատարակելով ընտիր ընդհանուր պատմութիւն մը հայկական գրականութեան, օրինակ իմն գաղղիական կամ գերմանական թարգմանութիւն մը ընտիր երկասիրութեանց Հօր Գարեգնի, ի վերայ Հայկական հին թարգմանութեանց յայն հեղինակաց, Հին և նոր մատենագրութեան Հայաստանի, և վերջապէս իր Հայկական մատենագիտութիւնը։ Նոյն դիտողութիւն կրնանք ընել նկատմամբ պատմութեան, աշխարհագրութեան և հնութեանց։ Այս տեսակէտով ինչուան հիմայ ունեցածնիս համառօտութիւններ են, թէպէտ և մեծապէս յարգի, Հօր Իսավերտենցի յանգլիական լեզու՝ Հայաստան և Հայք (Armenia and the Armenians, 1874–76)· Առաջին մասն Աշխարհագրութիւն. երկրորդն Քաղաքական պատմութիւն. երրորդ՝ Պատմութիւն

Եկեղեցւոյ Հայոց: Այս երեք հատորէն զատ՝ Հայկական ծիսարան (The Armenian Ritual, 1872–76). Ա. Խորհրդատետր. Բ. Մեկնութիւն և Դրոշմ. Գ. Ձեռնադրութեան Քերթ. Դ. Ծէսք և արարողութիւնք: Նոյնպէս իր թարգմանէր Հայոց պատմութիւն, զաղղիարէն լեզուաւ, յերկուս հատորս: Բայց չունինք Զամչեանի Հայոց պատմութիւն, և լոկ համառօտութիւն մը Աւդալեանցի ձեռքով (History of Armenia, with a continuation by the traslator. 2 vols. Calcutta, 1827).

Գալով հայ հեղինակաց գրուածոց՝ որոց թարգմանութիւնն հրատարակեր են Մխիթարեանք եւրոպական լեզուներով, խիստ բազմաթիւ են: Այսպէս բաց ի Քրոնիկոնէն Եւսեբեայ, նոյն Աւգերեան Հ. Մկրտիչ թարգմանեց ի լատին Փիլոնի հեբրայեցւոյ երեք ճառք (1822), զՄնացորդս նոյն հեղինակին (1827), զՀամաբարբառ սրբոց աւետարանաց սրբոյն Եփրեմի ասորւոյ (1874), ուղղագրութեամբ Մերսինկերի գերմանացւոյ զգրուածս Յովհաննու Դ կաթուղիկոսի Օձնեցւոյ (1834), Սեբերիանոսի ճառերը, և յիտալական լեզու զԱստնաբանութիւն Ներսիսի Լամբրոնացւոյ (թարգմանութեամբ Հ. Յարութեան Աւգերեան): Արդէն խօսեցանք Ագաթանգեղոսի և Խորենացւոյ պատմութեան գրոց խտալ թարգմանութեան, և Ներսիսի շնորհալւոյ գրուածոց ի լատին՝ թարգմանութեամբ Գափփէլլէտտի քահանայի. և Միքայէլի Ասորւոյ երկասիրութեան թարգմանութեանն ի գաղղիական ի Վիկտորէ Լանկլուա:

Պակաս չեն սրբոյն Ղազարու վանից վրայ տեղեկութեան գրքեր եւրոպական լեզուներով. օրինակ իմն՝ ի գաղղիականն Պորէի, Լըվայեան Տըֆլորիվալի, Վիկտոր Լանկլուայի (թարգմանեալ յանգղիականն ի Փրեդ. Տրէտէր, 1874), Ջէլինաքիի ի լեհ, Աւգերեանի յիտալ 1819), Եգիպտոսի Հէնիըման ի գերմ, Լուդովիկեայ Աստքային Պաւարիոյ մէկ քերթուածը, որ այլեւայլ լեզուներու թարգմանուած ու տպագրուած է: Յիշենք անցո-

ղարար գրագմալեզու հրատարակութիւն սրբոյն Ներսիսի Շնորհալւոյ Հաւատով խոստովանիմ աղօթից այլեւայլ անգամ (1810–82), յորոց վերջինն երեսունուվեց լեզուով է, և Պայեան հօր թարգմանութեամբ հայկական ժողովրդական առածից գաղղիական ու անգղիացի թարգմանութիւնք։

Ապա կը յաջորդեն քերականութիւնք և բառագիրք։ Համառօտ բառգիրք գաղղ — հայ և հայ գաղղ. Հ. Ցարութեան Աւգեր, յերկուս հատորս, 1812–7. – Անգղ–հայ և հայ. անգղ նոյն հեղինակին, Յոհան Պրանդ անգղիացւոյն գործակցութեամբ յ՚2 հատորս, 1821–25. գարձեալ նոյն վարդապետին բառարան գաղղ. հայ. և տաճկ. 1840. Բառարան Անգղ–հայ և Հայ–Անգղ երկրորդ տպագրութիւն, 1868. Համառօտ բառգիրք Անգղ,–հայ և Հայ–անգղ, Գեր. Սուքիասայ Սոմալեան, 1832, որոյ երկրորդ տպագրութեան առեն ուեկլցաւ նաեւ երրորդ հատոր մը, Տաճիկգ–հայ և անգղ. լեզուաց, ի 1843։ — Բառարան իտալ–հայ և տաճիկ, Հ. Մանուելի Ջախջախեան, ի 1804. և համառօտութիւնն նոյն գրոց. 1829. բառարան հայ—իտալ, հեղինակին մահուընէն ետքը հրատարակուած խնամօք Գեր. Ս. Սոմալ, 1837, և որ ինչուան հիմայ ունեցած բառագիրներնուս ընտրելագոյնից մէկն է. — Նոր բառգիրք Հայ–անգղ, երկասիրեալ ի Հ. Մ. Պետրոսեան, 1875–79։

Իսկ օտարաց համար իրենց լեզուով հայ քերականութեանց հրատարակութեանց մէջ յիշենք Անգղ–Հայ, հրահանգօք հայ լեզուի, յորս այլեւայլ հատուածք ի հայ հեղինակաց, և անվաւերական թուղթ Կորնթացւոց առ Պօղոս, և սորա երրորդ թուղթ առ Կորնթացիս, թարգմանութեամբ Պայրընի 1819. երկրորդ տպագրութիւն մ՚ալ ի 1873, բայց առանց հրահանգաց։ Ծանօթ է թէ ինչպէս Պայրըն կը հետաքրքրուէր հայերէն լեզուի ուսմամբ, և յաճախ յայց կ՚ելլէր կղզւոյն սրբոյն Ղազարու, խորհրդածելով այն ձիթենեաց տակ որ դեռ իր ա-

նունը կը կրեն։ Այս ալ յիշատակենք որ ի Վենետիկ տպագրուած բառգրոց չատերը՝ քերականութեան համառօտութիւն մ'ալ կը բովանդակեն։

Մխիթարեանց մէջ որ ջանացին ծանօթացընել օտարաց զգիտութիւն հայկականաց, ամենէն առաջ յիշել արժան է զՀ. Ղեւոնդ Ալիշան, որ տուած է մեզ չատ հետաքննական հաւաքում մը ժողովրդական երգոց ի հայ և յանգղիական. (Armenian Popular songs, 1852, 1886), ինչպէս նաև զՊատկերագարդ Հայաստան գաղղիական և անգղիացի լեզուներով, 1867. Իր գլխաւոր երկասիրութիւններն չեն թարգմանուած. ի բաց առեալ մասն մի եւեթ իր Սիսուանայ վրայ գրած հոյակապ երկասիրութեան, որ է Լեւոն Մեծագործ, առաջին Թագաւոր Սիսուանայ կամ Հայ-Կիլիկիոյ, թարգմ. ի գաղղ. ի Հ. Գէորգայ Պայեան. Վենետիկ, 1888, ԺԲ–394։ Բանասիրաց մասնաւոր մտադրութիւնը կը հրաւիրենք Գ. Յաւելուածին վրայ, յորում հեղինակը կը խօսի Ռուբինեան հարստութեան ժամանակամիջոցին հայ մատենագրութեան վրայ։ Ինքն Հ. Ալիշան թարգմանած է ի գաղղիարէն Անտիոքայ Ասիզքը, որոյ սկզբնագիրն կորսուած է, և հասած է առ մեզ Սմբատ Գոնդստապլի հայկական թարգմանութիւն։ (1876)։ Իտալական լեզուով ունինք իր մէկ ճառը, Երկրագրութիւն Հայաստանի որ ի 1881 ի Վենետիկ գումարուած Աշխարհագիտաց Համազգային ժողովոյն համար գրուած է. և ի Հայոց պատմութենէ՝ մեծածին Վարդանայ դրուագ մը (1877)։ Հրատարակուած են Սամուէլի Մուրատայ ի Փարիզ հաստատուած դպրոցին տեսչութեան ժամանակ խօսած երկու ճառք. Հայկ և իր շրջանը (Haïg, sa période et sa fête). և Բնախօսութիւն Հայաստան (Physiographie de l'Arménie), և որոց կրկին տպագրութիւնք եղած են ի Փարիզ և ի Վենետիկ։...



*Իսկ Վիեննայի Մխիթարեան Հարց ջանիւք հրատարակուեցան հետեւեալ երկասիրութիւնք ։*

*Բառարան Իտալ. – Գաղղ. – Հայ. – Տճկ. ի Հ. Փիլիպպոս Վ. Ճամճեան.* 1846 ։

*Բառարան Յուն. – Իտալ. – Հայ. – Տճկ. յօրին. Արիստակ. եւ Սահ. Ազարեան.* 1849 ։

*Վեցլեզուեան խօսակցութեան գիրք, Գաղղիերէն, Անգղիերէն. Հայերէն (աշխ), Տաճկերէն, Գերմաներէն, Իտալերէն. ի Հ. Փիլիպ. Վ. Ճամճեան.* 1848 ։

Guide de conversation, français–anglais–armen.–turc–allem. – ital. 1864 ։

*Բառագիրք Գաղղ. – Հայ. – Տաճկ. ի Հ. Սրապիոն Վ. Էմինեան.*

Ա. Տպ. 1853 ։

Բ. » *Յաւելուածով.* 1871 ։

*Երեքլեզուան խօսք, Տաճկ. (արաբ. գրով.) գաղղ. գերմ. ի Հ. Սամուէլ Վ. Գաթրճեան.* 1855 ։

*Չորեքլեզուեան խօսակցութիւն, գաղղ. գերմ. (հայերէն գրով ալ), հայ. ու տճկ. համառօտեալ ի Վեցլեզ. խօսակցութենէ Հ. Փիլիպպ. Ճամճեան.* 1864 ։

*Հանգիստ երանելւոյն Յովհաննու, Հայ. եւ Լատ ի Հ. Յովսեփայ Վ. Գաթրճեան.* 1877 ։

De fidei symbolo, quo Armenii utuntur observationes. *ի Հ. Յովսեփայ Վ. Գաթրճեան* 1893.

Armeniaca I. Das Altarmenische Ք ein Beitrag zur indoeuropäischen Lautlehre. Anhang Altarmeni-Baktrische Etymologien: von P. Seraphin Dr. Derwischian, Mitglied der Wiener Mechitharisten–Congregation. 1877.

*Պատմութիւն կաթուղիկէ վարդապետութեան ի Հայս և միութիւն նոցա ընդ Հռովմէական եկեղեցւոյ ի Փլո-*

րենտեան սիւնհոդոսի ։ Գրեց Աղեքսանդր Վ. Պալճեան արքեպիսկոպոս Ակրիդայ. 1878 ։

Historia doctrinae catholicae inter Armenos, unionisque eorum cum Ecclesia romana in concilio florentino. Auctore Dre Alexandro Balgy, Archiep. Acridensi, ex Congr. Mechith. Vienn., S. C. de pr. fide Consultore, 1878.

Բառարան Տաճկ. – Հայ. – Գաղղ., հանդերձ համառօտ քերականութեամբ Օսմանեան բարբառոյ, ի Հ. Ամբրոսեայ Վ. Քիւփէլեան. 1883 ։

Բառարան գերմ. – Հայ ի Հ. Աւետիք Վ. Կոյլաւ, 1889 ։

SAMUELJAN P. M. Bekehrung Armeniens durch den hl. Gregor Illuminator. Nach national-historischen Quellen, 1844.

— Hist.-krit. Abhandlung über das wunderthätige, ohne menschliche Kunst verfertigte Bild unseres Herrn und Heilandes, das er dem König Abgar von Armenien nebst einem Briefe nach Edessa gesandt hat. 1847.

KALEMKIAR, P. G. Die siebente Vision Daniels. Wien, 1892.

— Catalog der armenischen Handschriften in der K Hof-und Staatsbibliothek zu München. 1892.

— Precatio pro universa ecclesia, ex sacra liturgia S. Joan. Chrysostomi. 50 linguis. 1893.

BARONCZ, P. Raph, Mechith.-Ord.-Pr. Sinnsprüche und Fabeln, Roth-und Schvarzdruk, 1892.

DASHIAN P. J. Zur Abgar-Sage 1890.

— Das Hochland Ulnia oder Zeitun. 1890.

— Catalog der armenischen Handschriften in der k. k. Hofbibliothnek zu Wien, 1891.

— Das Leben und die Sentenzen des Philosophen Secundus des Schweigsamen, in altarmen. Uebersetzung 1895.

— Catalog der armenischen Handschriften in der Mechitharisten-Bibliothek zu Wien. 1895.

Յիշենք նաեւ Մեծ. Յովհաննէս Միսկճեան վարդապետի երկու հատոր բառգիրքներն, յորոց մին Հայ և լատ. հրատարակուեցաւ 1887ին, Հռովմ, տպ. Ս. Ժողովոյ տարածման հաւատոյ, և միւսն լատ. և հայ. 1893ին։



# ՑԱՆԿ

